Հ. Գ. Վ. ՔՈՒՇՆԵՐԵԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

# ԽՐԻՄՈՒ ՀԱՅՈՑ

Ա. ԺԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ Ի ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆ

Բ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԷՈԴՈՍԻՈՅ

Գ. ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ Ի ԿԱՄԵՆԻՑ



ՎԷՆԵՏԻԿ Ս. ՂԱԶԱՐ

1895

Հ. Ք. Վ. ՔՈՒՇՆԵՐԵԱՆ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

# Խ Ր Ի Մ Ո Ւ  Հ Ա Յ Ո Ց

Ա. ԺԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ Ի ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆ

Բ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԷՈԴՈՍԻՈՅ

Գ. ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ Ի ԿԱՄԵՆԻՑ



ՎԷՆԵՏԻԿ Ս. ՂԱԶԱՐ

1895






փոքրիկ հատորիս մէջ ամփոփելով կը հրատարակենք, ինչպէս խոստացեր էինք, մեր հանգուցեալ Փուշնէրեան Հ. Քերովբէ վարդապետին քանի մը մանր, ու ազգային նոր պատմութեան տեսակէտով հետաքննական երկասիրութիւնները, որ արդէն տպագրուած են ի Բազմավէպ հանդիսարանի։

Կը սիրենք յուսալ թէ սգալի մահուամբ տարաժամ մեզմէ յափշտակուած Հանգուցելոյն շիրմին վրայ, իր գրչովն ու սրտիւ հիւսուած ու մեզմէ դրուած այս պսակն՝ պիտի հաճոյանայ իր մերձաւոր սիրելեաց և բազմաթիւ բարեկամաց և ծանօթից, որոնք մեծարողք իր աստուածանուէր եռանդեան և հանճարոյն. մեզի հետ սգացին անոր մահը, և անով փշրուած ամէն իրաւացի յոյսերը։

# ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

## Ի ԹԷՈԴՈՍԻՈՅ ԴԷՊ Ի ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆ

28 Ապրիլ — 26 Մայիսի 1884։

«Ցայնժամ (ԺԴ դարուն) զօրացաք մեք (Հայքս)
» և բազմացաք, և շինեցաք զգիւղս և զգաւառս.
» իշխանք և ազնուականք, ի Ղարապազարին¹
» սկսեալ մինչև 'ի Սուրխաթ և 'ի Թէոդօսիա,
» 'ի լերին և 'ի դաշտս լի արարին վանօրէիւք և
» եկեղեցեօք... շինեցաք տունս հարիւր հազար և
» զեկեղեցիս հազար. և 'ի անէ հոռնականաց պա-
» րըսպեցին 'ի քաղաքն Թէոդօսիա»։

ՀԻՆ ՂՐԻՄԵՑԻ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

## Ա

### ԻԲՐԵՒ ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

Բազմաթիւ ազգային գրաւոր յիշատակարաններէ և վաւերական քարուկիր աղիւսակերտ շէնքերէ, որոց ոմանք դեռ ևս կանգունք՝ այլք կիսակործան, գիտեմք որ ԺԴ դարուն, Նոյն և 'ի մօտաւոր անցելում՝ Հայոց մի մեծ գաղթականութիւն բնակած է Տաւրիդ Թերակղզւոյն մէջ։ Եթէ ճանապարհորդ

1. Յիշատակարանի մէջ յիշուած անունները, այժմ ոմանք սակաւ մի այլայլած, ոմանք բոլորովին տարբեր կը հնչեն. Ղարապազարն՝ այժմեան Խարասուն է, Սուրխաթն՝ Էսկի-Ղրիմ. Թէոդոսիայն՝ Թէոդոսիա կամ Քէֆէ քաղաքն։

մի՝ վերը յիշած յիշատակարանին ցուցած ճամբովը՝ այժմեան Թէոդոսիոյ արեւելեան ծայրէն (արգելանոցին կոզմէն) սկսելով՝ սարերուն վրայէն անցնի երթայ 'ի Սուրխաթ (Հին-Ղրիմ), և անտի անտառաց միջէն և սարերուն վրայէն դէպ 'ի Ղարապազար (Խարասու), անձամբ կարող է ստուգել յիշատակարանիս վաւերականութիւնը։ Վասն զի այդ ճամբուն վրայ գրեթէ յամենայն քայլափոխի կը գտնայ հին հայրենի յիշատակաց ցանկալի՝ մանաւանդ և ցաւելի՝ մնացորդքը. անտառաց մէջ, սարերու ծայր ամրակուռ եկեղեցիք, անապատացեալ վանքեր, տխրատեսիլ գերեզմանոցք՝ սեւացեալ և մամռապատ քարերով, 'ի միջի որոց մեծ խնամքով փորուած և քանդակուած խաչքարինք մեսրոպեան տառերով։

Տեղ տեղ մեր նախնեաց տանուտէր իշխանաց և բարեպաշտ տիկնանց և օրիորդաց Նուր-Մելէքներու և Կուսիկեանց շինել տուած ականակիտ աղբերք՝ կ'անցընեն ճանապարհորդին ծարաւը, և այլ ուրեք մեր պապերուն խնամով տնկուած և մշակուած պարտէզներն՝ դեռ ևս կ'ընծայեն առատապէս քաղցրահամ պտուղներ։

Ի մօտաւոր անցելում՝ Տաւրիոյ հայաբնակ և հայախօս քաղաքներն և աւաններ, այժմ այլալեզու ժողովուրդք կը բնակին։ Կէօզ-Թէփէ. Նախջուան (այժմ Քռինիչքա), Սուլթան-Սալա, Թօփլու, Օրդալան, Խշլաւ, Սօվուք-Սու, երբեմն մեծամեծ հայաբնակ աւաններուն մէջ, այժմ բնաւ հայ չկայ. Մողկան[1] և Քեմճակ (Գամճակ) վանքերն՝ այժմ բոլորովին անապատացել են. Կազարաթ, մեծ գիւղը

1. Մողկան՝ Խշլաւ գիւղին մէջ վանք էր Հայոց. Քեմճակ, Հին-Ղրիմու անտառին մէջ, եկեղեցին՝ Ս. Աստուածածին։

որ երբեմն ծուխ էր Ս. Նշան վանքին Սուրխաթու՝ և բնակարան հայկազն իշխանին Մուղալենց, որ ըստ ձեռանէ Գ.ենուացւոց՝ իւր գործերով կը պահպանէր զաւանը և զՍուրխաթ իւր վանքերով ընդդէմ այլազգեաց յարձակմանց, այժմ դերբկաց կոյտ մի մեր առջև կը ներկայացընէ:

Այժմ Թերակղզւոյս մէջ 5000էն աւելի չեն հայկազունք, որք մեծաւ մասամբ քաղաքաց մէջ կը բնակին և առևտրով կը պարապին. շատ Թաթարաբնակ, ռուսաբնակ և գերմանացի գեղերու մէջ ևս խանութպանք՝ մեր ազգայինք են. Համեմատութեամբ բազմաթիւ են Սիմֆերոպոլի, Խարասուի և Օր-Բազարի հայկազունք: Գիւղատէր և այգետէր հայեր ևս կան, այլ մշակ կամ գիւղացի ազգայինք բոլորն ևս գաղթած են յԵկատերինեսլաւ գաւառ 1778ին[1], ուր շինած են Նոր Նախիջևան քաղաքը, չորս կողմը հինգ մեծամեծ հայաբնակ գիւղերով. ահա 'ի տես այդ երբեմն Տաւրիացի հայկազանց՝ ելայ 'ի ճանապարհ այս տարի (1884):

Եթէ այս մեծ գաղթականութիւնը եղած չլինէր ասկէ 114 տարի առաջ 'ի Ղրիմէ, այժմ հին յիշատակարանիս գրութեան համեմատ բիւրաւոր հայախօս ժողովուրդ մի, հազարաւոր եկեղեցեօք պիտի չէնցընէր գծովապատն Տաւրիա...:

1. Ոմանք 1776ին, այլք մի տարի վերջը կը դնեն գաղթականութեան սկիզբն. այլ մեր վերը յիշուած Թուականն ստոյգ կ'երևի և համաձայն ընդ պատմութեան:

# Բ

## Ի ԿԵՐՉԷ ՄԻՆՉԵՒ ՑԹԱՑՂԱՆ.

Ռուսաց մեծ փուշքին կոչուած շոգենաւով մեկ-ցանք 'ի Թէոդոսիոյ, մի քանի Նախիջեւանցի երիտա-սարդ բարեկամաց հետ 'ի 28 ապրիլի, գիշերուան ժամը տասին. միւս օր առաւօտուն արեւածագին հասանք 'ի Կերչ: Որովհետեւ մեծ նաւ է Փուշքին՝ նաւապետն զգուշացաւ նեղուցէն ներս մտնել, այլ կանգ առաւ բաց ծովուն վրայ, առաջին կարգի մեծ բերդերուն դիմաց, որք կը պաշտպանեն զնեղուցը: Արդէն ինձ 'ի վաղուց ծանօթ էր տեղին, եւ չկար ինչ անսովոր կամ հետաքրքրութեան արժանի. այն պատճառաւ՝ նաւին խորը, առաւօտեան քաղցր քունը կը քաշէի. սակայն երբ մեծ շառաչմամբ խա-րիսխ ձգեց նաւն, եւ կը սպասէր որ փոքր շոգենաւ մի գայ՝ Կերչի ճանապարհորդները կրելու համար, հարկ եղաւ ինձ անուշիկ քունս ընդմիջելով փութալ 'ի վեր՝ նաւուն տախտակամածին վրայ:

Ի ծովէ շունի Կերչ այն ակնապարար եւ հաճոյա-կան երեւոյթը, ինչ որ կ'ընծայեն Եալթա եւ այլ գիւղօրէք հարաւային ափանց Ղրիմու. սակայն հան-դարտ կապուտակ ծովը, մեղմիկ եւ ջերին՝ ծովային զոլորշեօք տամուկ օդն, մայիսի առաւօտն, նոյն եւ դիմացս բարձրացած Միհրդատ կոչուած բլուրն ստորոտի մանեկաձեւ ձգուած տներով, թոքի եւ ա-չաց ոչ անհաճոյ ազդեցութիւն կ'ընէին: Հարկ եղաւ սպասել զմեզ կրելի նաւուն՝ Փուշքինի վրայ: Ան-ախորժ վիճակ է մարդուս համար՝ աչքը մի կողմ յառած սպասելը, յակամայ կամս մեջ այդ վիճակին

մէջ կը գտնուէինք. սակայն մարդուս դիրքը, թէպէտև ժամանակ մը կապուած և անազատ ևս լինի, այլ միտքն միշտ ազատ է. եթէ այն միջոցին մարմնով Սնիգալէի նեղուցին դիմաց անգործ սպասելու դատապարտուած էի, այլ մտացս համար չկար արգելք Նախիջևան երթալ գալ, նոյնպէս մինչև ցհեռաւորն Անի. Այլ հանգամանք պարագայից շատ չհեռացուցին միտքս այդ ափունքէն: Կը ներեն ինձ անշուշտ արգոյ ընթերցողք, եթէ ես աստ մտացածին ցնորիւք հայ ճանապարհորդի՝ սակաւ մի զբաղեցնեմ զիրենք, մինչև որ զմեզ կրելի նաւն գայ:

Անձին փորձով անշուշտ ամեն ոք գիտէ, թէ շատ անգամ մի վանկ, մի բառ, մի անուն՝ մարդուս միտքը որ տեղուանք կը տանի. իմ դիմացս մի պատմական մեծ անուն, լերին յատկացեալ, կանգնած կեցած էր, Միհրդատայ Եւպատորի փեսայի կամ քեռառն՝ մերս քաջին Տիգրանայ Արշակունւոյ: Ի պատմութենէ գիտեմք՝ որ Միհրդատ Եւպատոր տիրած է Թերակղզւոյս, փրկչին թուականէն 80 տարի առաջ, Քերսոնիսեան հզօր հասարակապետութիւնը, Վոսփորեան թագաւորութեան հետ 'ի միասին, որոյ մայրաքաղաքը դիմացս կեցած էր, մարզ կացուցանելով իւր աշխարհին կամ թագաւորութեան Պոնտոսի:

Կերջի հին անունն Պանտիկապէոն է, քաղաք-հինգ-բազնաց. ե՞րբ կամ յորո՞ց կրած է այդ անուանափոխութիւնը, յայդմ զանազանին կարծիք գիտնոց: Այլ ես Տիգրանայ փեսին վրայ կը սքանչանայի մտօք, որ 2000 տարի անցնելէն վերջ անգամ՝ կը տիրէր երկուց ծովուց Սևին և Ազախու, լեռնահանգէտ անուամբն: Արդեօք, կ'որոճայի մտօք Թուրքաց Կէչ (անցք) բա՞ռն է, որ այս քաղաքս կը

կրէ իւր վրայ, իբրև յատուկ անուն. այլ երևակայութիւնս զիս այնպէս կ'ուզէր համոզել՝ որ Հայերէն կիրճ բառը լինի, իբրև նեղուց գործածուած. վա՜շ ցնորից երևակայութեան... այնպէս ինձ կ'երևար որ Միհրդատ անմիջապէս թերակղզւոյս տիրելեն վերջ՝ 'ի ձեռն Դիէոփանդոսի զօրավարին, եկած է հոս 'ի Սինոպայ, կողակցին հայկազն բամբշին հետ 'ի միասին, և երբ պերճանօք կը յայտնէ իւր կամքը ընկերոջը՝ թէ կ'ուզէ՞ այդ երկուց ծովուց միջավայրքն հաստատել իւր գահը, փոխելով 'ի Սինոպայ. խոհական բամբիշն մեղմել ուզելով քաջին յոխորտ բարքը, կը յայտնէ թէ «Ինքն այն տեղ նեղուց կամ կիրճ մի կը տեսնէ»: Քաջն Միհրդատ հասկնալով թագուհւոյն միտքը՝ Կիրճ կամ Կերչ կը կոչէ տեղին, և լերին իւր անունը կը սեփականէ, և շուտով թագաւորանիստ քաղաք կը լինի Կերչ:

Շատ անգամ երևակայութեան գծած պատկերը քան զբնականը կը գերազանցէ, զի երևակայութիւնն գունոց և ներկերու խնայութիւն անել չախորժիր. անհրաժեշտ է որ Միհրդատ այդ բլուրին վրայ շատ անգամ ելած է թագուհւոյն հետ 'ի միասին. զի զբօսանաց մի միայն յարմարաւոր դիրքն է Կերչի. այլ ինձ 'ի ծովէ այնպէս կ'երևէր, որ բլրիս բարձրագոյն կէտին վրայ կանգնած է տիտանային Միհրդատ, Պոնտոսի իշխող. Հռովմայ արժանաւոր ախոյեան, Տիգրանայ համապատշաճ փեսայ. գլուխը փետրազարդ սաղաւարտ, զրահաւորեալ հսկայիտակ մարմնով, աջ ոտքը ամուր կոխած նոր տիրած հողին վրայ, և բազուկը դէպ 'ի ծով պարզած, իբրև թէ զրուցէր 'ի ձախմէ կանգնած թագուհւոյն. «Տես որպիսի՜ քաջի ունիս բաղդ հարսն և թագակից լինելու». իսկ թագուհին համապատշաճ քաջի

տանն, նոյնպէս բարձրադիտակ, այլ կանացի և վայելչական գեղով, ծիրանեաց և չղարշներու մէջ. իբրև յաւերժ հարսնուհի, քմծիծաղով հաճիլ կը ձևացընէ. այլ 'ի սրտէ անշուշտ կը ղրուցէ՝ թէ «Այդ փառք՝ նոր չեն ինձ համար. զի քոյր եմ «մեծին և քաջին 'ի թագաւորս՝ Տիգրանայ Ար«շակունւոյ»։ — Մինչդեռ այս կարճ միջոցին, որ հազիւ քառորդ մի ժամու տևեց. Միհրդատ անունը իբրև ելեկտրական կայծ մի կը մղէր կը տանէր միտքս՝ հնադարեան պատմութեանց մէջ, փոքրիկ շոգենաւը մեծին մերձենալով, որոյ հազիւ կայմը կ'երևնար, վարէն 'ի վեր կը սուլէր 'ի Կերչ նաւորդաց՝ թէ ժամանակ է մեկնելու. հապճեպով պարկիկս առած՝ իջայ փոքր նաւուն վրայ, որ շուտով հասուց զմեզ 'ի Կերչ։

Սա երկուց ծովուց մէջ, նոյն և երկուց աշխարհաց (Կովկասու և Ռուսաստանի) վաճառաշահ և Ղրիմու բազմամարդ քաղաքաց մին է. իւր բնակիչքն 22,000 Սևաստապոլեան պատերազմէն վերջը՝ տէրութիւնն մասնաւոր խնամք դարձուցել էր այս քաղաքիս վրայ, իբրև պատերազմական նշանաւոր կէտ մի. բերդը Ռուսաստան աշխարհի առաջնակարգ ամրութեանց մէկն է, որ զնեղուցը կը պաշտպանէ. յետին արևելեան պատերազմին միջոց, երբ Թուրք մարտիկ նաւերն ռմբակոծեցին անպատսպար ծովափնեայ քաղաքները Եւպատորիա և Թէոդոսիա, չհամարձակեցան Կերչի մօտենալ։

Հայկազունք սակաւաթիւ են քաղաքիս մէջ, այլ ունին փոքրիկ վայելչաձև եկեղեցի՛ հանդերձ փոքրիկ ուսումնարանով։

Նոյն օրը՝ կիրակի երեկոյին՝ փոքր շոգենաւով մեկնեցայ 'ի Կերչէ դէպ 'ի Պերտեանսք, ուր հարկ

եղաւ ինձ մնալ մինչև ցՑ մայիսի։ Նոր քաղաք է Գերտեանք, բնակիչքը 14,000, Ազախու ծովու վրայ. ցորենի մեծ վաճառականութիւն ունի։ Եւրոպացիք ունին մեծամեծ վաճառաշահ տներ, և ցորեն գնելով յԵւրոպայ կ'ուղարկեն. ազգայինք սակաւաւոր են հոս, և չունին առանձին եկեղեցի. Թէպէտ ծուխը ոչ բազմաթիւ, այլ վայելչաձև է հռովմէականաց եկեղեցին։

Շաբաթ օր, ամսոյն Ց ին, առաւօտեան ժամը ութին մեկնելով քաղաքէս շոգենաւով, վեց ժամէն հասանք Եկատերինեսլաւ գաւառի, (Ղրիմեցի գաղթական Յունաց) մայր քաղաքը Մարիապոլ, որ և Մարիամու քաղաք, 'ի պատիւ հրաշագործ պատկերի Տիրամօրն, զոր Ղրիմու Պահչէսերայի վանքէն հոս փոխադրուելուն պատճառաւ՝ այդ անունը տուած են քաղաքին. բնակչաց թիւը 10,000 մեծաւ մասամբ Յոյն են, որ և նոյն տարին Նախիջևանու ազգայնոց հետ գաղթած են 'ի Ղրիմէ. սոքա գրեաթէ ամենքը ձկնորսութեան կը պարապին. փոքրիկ ծովուն ամեն անկիւններուն և խորշերուն մէջ ձգած՝ տարածած են ցանցեր և ուռկաններ. Թուխու [1] ձկան զանազան տեսակները, իրենց համեղաճաշակ կիթերով, տեղացւոց ապրուստի, միանգամայն վաճառականութեան մեծ և շահաբեր նիւթ են. բաց աստի՝ կան քաղաքիս մէջ Իտալացի ցորեն ժողովող տներ։ Կէս օրէն վերջը ժամը երկուսին հասանք հոս, և որովհետև նաւը մինչև երեկոյեան ժամը տասին պիտի սպասէր բեռ տալու և բեռ առնելու համար, իջայ քաղաքը պտտելու։ Քարուխին ճանապարհին ուղղութեամբ գնալով փոքրիկ

(1). Esturgeon.

այլ բարեձև մի եկեղեցի առաջս հանդիպեցաւ. մտայ ներս, տեսայ որ կաթոլիկաց եկեղեցի է. շէնքին ձևը, կոկութիւնն այնպէս կը ցուցընէր, որ եկեղեցւոյս ժողովուրդն թէպէտ քիչ, այլ ունևոր մարդիկ են։ Եկեղեցւոյն ծառայն ինձ ծանօթ մէկն էր, որոյ հրաւիրանօք՝ մտայ քահանային տունը. ծերունի երէցն ընդունելով իմ յարգութիւնս՝ հարցուց ռուսերէն թէ «Ի՞նչ ազգէ ես, որ լեզուաւ կարելի է խօսիլ հետդ» այդ հարցմունքը ինձ տարօրինակ երևցաւ, իբրև թէ ինքն ամենայն լեզուաց տեղեակ, ամեն ազգին հետ կարող է իւր լեզուաւ խօսիլ. փոքր մի նենգութեամբ՝ կամ լաւ ևս պատժել ուզելով փրանկ երիցուն մեծախօսութիւնը, պատասխանեցի թէ «Հայ քահանայ եմ, Նախի-
«ջևան կ'երթամ գործով, և թէ շատ հաճելի է
«ինձ հայերէն խօսիլը»։ — «Խնդրում եմ, նստէք». ասաց փրանկ, երէցն։ Դորա հայերէն խօսիլն այն աստիճանի գլխս շփոթեց, որ հազիւ զարմացումս զսպելով, շնորհակալ եղայ, ծերը զուարթանալով և իւր յաղթանակին վրայ սիրտը գոհ, ձեռքը երկնցընելով՝ օդոյն մէջ կիսաբոլոր ձև մի անելով, հայերէն այս խօսքերը կ'արտաբերէր, «Ես քարոզեալ և աւետարանեալ» զմայլեցայ, մնացի յաղթահարեալ՝ ծեր երիցուն դիմաց. հայերէն սկսայ շարունակել խօսակցութիւնը, այլ նա ինձ բացատրեց ռուսերէն, որ շատ տարի առաջ Աժտերխան քահանայութիւն անելով՝ ազգայնոց հետ շատ յարաբերութիւններ ունեցել է, որով և սովել է հայերէն, այլ ապա երկար միջոց չխօսելով՝ կորուսել է վարժութիւնը։ Պատուական ծերոյն մօտ քանի մի ժամ մնալէն վերջը՝ դարձայ 'ի նաւ. որ երեկոյեան 11 մնալով անդ, գիշերով մեկնեցաւ 'ի Մարիապոլէ և առա-

ւստը դեռ նոր բացուած՝ հասանք յԵյսք քաղաքը, որ ինչպէս Պերտեանսք՝ նոր քաղաք է, այլ ազգայինք ինչպէս աստ նոյնպէս և 'ի Նողայսք ունին եկեղեցի, որոց ժողովուրդը Նախիջևանցւոց հատուածներ են։ Այս կողմերս գրեթէ ամեն քաղաքաց մէջ կը գտնուին ազգայինք, որք 'ի միասին համրելով, պէտք է լինին 10,000 բաց 'ի Նախիջևանէ։ Նոր-Չերքասքի, Ստաւրապոլի, Եկատերինետարի և ապա դէպ 'ի Կասպից ծով՝ Ղզլարի մէջ կան բազմաթիւ Հայք, որ մեծագոյն մասամբ վաճառականութեան կը պարապին։ Որովհետև Եյսքի նաւամատոյցը քաղաքէն բաւական հեռու շինուած է, և նաւը շատ չի մօտար հոն, այն պատճառաւ քաղաք կարող չեղայ գնալու։

Եյսքէ մեկնելով՝ ճիշդ կէսօրին հասայ Ազախու ծովուն հիւսիսային ծայրը, Թայղան կոչուած քաղաքը։ Քաղաքիս անունը Թաթար նշանակութեամբ՝ սահած կամ սպրդած կը թարգմանի հայերէն. և յիրաւի, բարձրադիր ցամաքն իբրև թումբ՝ կամ լաւ ևս հրուանդան սահած իջած է 'ի ծով։ Ռուսք Թականրօկ կը կոչեն որ եռանկիւնի-եղջիւր կը նշանակէ։ Չկայ ազգային եկեղեցի աստ՝ այլ բաւական հայկազունք կան 'ի քաղաքիս, զորս կը հովուեն Նախիջևանու երիցունք, զի երկաթուղւով երկու ժամուան ճանապարհ է աստի 'ի Նախիջևան։

Թայղանի բնակչաց թիւը 30,000, այլ ինքն առաւել մեծ և փառաւոր քաղաքի երևոյթ ունի, փողոցները լայն և ընդարձակ, երկու կողմը մեծամեծ շէնքերով և ծառաստան ճեմելեօք զարդարուած. սակայն սորա անցեալն աւելի շքեղ է քան ներկայն. մերձաւոր դրացին Դոնեան Ռոստով

յափշտակած է նորա վաճառականութիւնը, նա օր ըստ օրէ կ'աճի և սա երթալով կը մեղմանայ։ Ի պատմութեան նշանաւոր է Թայղան այնու՝ զի հոն վախճանած է յաղթողն Ա. Նապոլէոնի՝ Աղէքսանդր Ա. Կայսր Ռուսաց 1825 ին։ Արքային պալատն, որում 'ի գարձիս այցելութեան ելայ, անշուք է և կարասին շատ հասարակ. ասկէ 50 տարի առաջ, այն անշուք կարասեօք բաւականացել է աշխարհիս մեծազօր իշխողներէն մին, մինչդեռ այժմ մեր գաղթական Նախիջևանցի տանուտերանց բնակութիւնն և կարասիքն շատ աւելի վայելուչ են և ճոխ։ Գեղեցիկ է կայսեր պղնձաձոյլ արձանն, որ բարձր պատուանդանի վրայ կանգնած է քաղաքին մեծ հրապարակին վրայ. մեծ և ընդարձակ է քաղաքին զբօսական պարտէզը։

Գ

ԱԶԱԽՈՒ ԾՈՎ.

Ընդհատեալ ճանապարհորդութեամբ 20 ժամ ճանապարհորդելէն վերջ, ընդ երկայնութիւն ծովուս 'ի հարաւոյ դէպ 'ի հիւսիս, կ'արժէ քանի մի տողեր նուիրել այս ծովուս. ես այնպէս կարծեմ որ այս ծովակս իւր աշխարհագրական դիրքն և ձևով հետաքրքրական է՝ եթէ ոչ ամենուն, այլ գոնէ աշխարհագրութիւն ուսանող համբակաց։ Ինքը փոքր, այլ ծով անունը կը կրէ հաւասար մեծամեծ ծովերու. դիրքը՝ Եւրոպայի մի անկիւնը, ագռաւի թևի նման կպած է Սև ծովուն՝ զոր աւելի լիճ կարելի է զրուցել քան թէ ծով.

երկու մեծամեծ գետեր կը թափեն սորա մէջ հեռաւոր աշխարհներէ բերած ջրերը, Դոն հիւսիսային կողմէն և Կուպան հարաւէն։ Երկայնութիւն ծովակիս 340 հազարամետր և լայնութիւն 240. յատակը խոր չէ, այն պատճառաւ միայն փոքր նաւեր կարնան վրան շրջել, տափակ յատակներով. շատ տեղ երկու կողմէն ցամաքը կ'երեւայ. հանդերձ այնու, մեծ և անտանելի կը լինի ալէկոծութիւնը և լի վտանգօք. շատ անգամ 5 և 6 ժամուան ճանապարհը, օրերով չեն կարող կտրել անցնիլ. անհնարին կը լինի ծովային հիւանդութենէ բանուորներուն վիճակը. զի անհանդարտ կոհակները ոչ մի րոպէ հանգիստ չեն շնորհեր հիւանդաց։ Լատինացիք Palus Meotis կոչել են զնա, արևելեան կողման եղէգնուտներուն պատճառաւ։ Ծովակին ջուրը պղտոր է և դեղնագոյն, աւելի գետի ջրերի յատկութիւն ունի քան ծովու, մանաւանդ գետաբերանաց մօտ տեղուանք. կը խմեն և կը գործածեն բոյսեր ջրելու։

Գենուացիք ԺԲ դարուն տիրած են ծովուս և շրջակայ աշխարհին, և իրենց հետքը ցարդ թողուցել են գեղեցկաշէն աշտարակներով։ Ծովակիս համանուն (Ազով) փոքրիկ քաղաքին մէջ նահատակուած է յայլազգեաց հայկազն Սահակ պատանին, որոյ վկայաբանութիւնը նոտրագիր գրուած գտայ Նախիջևանու ձեռագիր Յայսմաւուրաց մէկուն ետևը, որ կը պահուի Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն պահարանին մէջ։

Թայղանէ կարելի էր փոքր շոգենաւով Դոն գետին վրայէն գնալ 'ի Ռոստով, այլ որովհետև կէսօրէն վերջը անմիջապէս ժամը երեքին երկաթուղւոյ ընթացք մի պիտի մեկնէր 'ի Թայղանէ Ռոստով,

ընտրեցի ցամաքի ճանապարհը։ Ժամադրեալ ա-
տեններին մեկնեցաւ ընթացքը։ Պայծառ և գեղեցիկ օր
մի էր, երթալով կը մօտենայի նպատակիս, երկու
ժամէն պիտի լինէի հայանուն քաղաքին մէջ, և
պիտի տեսնէի, երբեմն մեզ նման Անեցի և ապա
Տաւրիացի, իսկ այժմ Նախիջևանցի համազգի և
համշիրակ եղբարքը։

Թէպէտ և երկար չէր ճանապարհը, սակայն և
այնպէս կառքին պատուհանէն դէպ 'ի շրջակայից
վրայ նայելով, կ'ուզէի գաղափար ստանալ, այդ
Եկատերինեսլաւ գաւառին քաղաքերութեան և այլ
հանգամանաց վրայ։ Կը տեսնէի յաջմէ Դոն գետն՝
հեղած զեղած, անկանոն ընթացքով, տեղ տեղ
ջրերը մինչև հորիզոնին կը հասնէին. որոց միջէն
տխրատեսիլ կորացեալ ուռիք, արմատներն և ճիւ-
ղերուն կէսը ջրոց մէջ, իսկ միւս կէսն՝ օդոյն մէջ
երերագին, լալական և տրտմալի տեսիլ մի կ'ըն-
ծայէին. ուռեննացս նման աւաղելի դրից մէջ էին
ցիր ու ցան ձկնորսաց հիւղերը, անկարգ և անկա-
նոն ձևով կը տեսնէի հեռուն՝ Դոնեան Խազախաց
գիւղերը։ Ի ձախմէ դաշտ էր և անապատ. մշա-
կութիւնը սակաւ. անտառ կամ պարտէզ քիչ ան-
գամ կը հանդիպէին աչացս։ Ի՛նչ զգալի հակա-
պատկեր անցեալ տարուան ճանապարհորդու-
թեանս և այս տարուանին մէջ. հոն Փոտոլեան և
Քիևի գաւառները և առ հասարակ Ուքրայիա,
թէպէտ և աչնանային տարազի մէջ, այլ ամե-
նուրեք կեանք և մշակութիւն կը տեսնէի. դաշտք առ-
հասարակ արօրադիր՝ մշակուած, ամեն կողմ պըտ-
ղատու պարտէզներ, կանոնաւորեալ անտառներ.
մինչդեռ հոս ամայի և խոպան։ Սակայն հոս ելք
ճանապարհին՝ հայ ուղևորի համար լի մխիթարու-

*թեամբ. մինչդեռ հօն կուրի և լքանի հայ սիրտը ազգութեանս իսպառ կործանումը տեսնելով։ Հոս հայաշէն և հայախօս հազարաւոր ժողովրդով քաղաք մի կ՚ելնայ ընդ առաջ ճանապարհորդին հինգ մեծամեծ հայաբնակ գիւղերով. խօսքս Նոր-Նախիջևանու համար է։ — Այլ մեք դադրեցընելով առ ժամս մեր ուղևորութեան պատմութիւնը, քննենք թէ ի՞նչ պատճառաւ Հայք թողլով զՂրիմ եկած են այս տեղ, ի՞նչպէս եկած են, և ո՞յք եղած են նոցա առաջնորդք։*

## Դ

### ՀԱՅՈՑ Ի ՂՐԻՄԷ Ի ՆԱԽԻՋԵՒԱՆ

### ԳԱՂԹԵԼՈՒՆ ՊԱՏՃԱՌՆ.

*Օրինօք բնութեան՝ մարդս կը սիրէ իւր ծնած և մեծցած տեղը. և .քիչ են այն անհատներն՝ որք թողլով իրենց սննդեան վայրը՝ աստանդական կեանք վարեն։ ինչպէս առանձին մարդ, նոյնպէս ժողովուրդ մի, ազգ մի, բնական կերպով չէ կարող թողուլ լքանել իւր պապենական աշխարհքը, և երթալ օտար տեղ, անծանօթ երկնից ներքև տուն և բնակութիւն հաստատել։ Այդպիսի բանի ձեռք զարնելու համար՝ մեծ և հարկեցուցիչ պատճառներ կարևոր են. ինչպէս մեր տարաբաղդ Անեցւոց պատահած են, ժաժ, հուր, թուր։ Ղրիմեցի Հայոց իրենց 400 տարուան՝ ծնած, սնած և մշակած բարեբեր և գեղեցիկ աշխարհքը, երկորդ հայրենիքը Ղրիմը՝ թողլու և երթալու հիւսիսային աշխարհաց մէջ բնակութիւն հաստատելու*

համար, Թէպէտ վերը յիշած պատճառաց և ոչ երեքին մէկը կար, այլ ուրիշ չորրորդ մի՝ որոյ այժմ քաղաքականութիւն անունը կու տան, ստիպուած է Թողլով զՂրիմ, տարագիր գնալու յօտար երկիր։ Ժամանակին՝ ինչպէս պիտի տեսնենք՝ բողոքած են Հայք, այլ նոցա բողոքը լսելի եղած չէ։ Քաղաքականութիւնն բռնի պահանջած է նոցանէ այդ զոհողութիւնը, և նոքա կամայ և ակամայ յանձն առած են զայն։

Մինչդեռ Թաթարք տակաւին կը տիրէին Թերակղզւոյս, ոչ միայն 'ի Հայոց, այլ և յամենայն քրիստոնեայ Ղրիմաբնակ ժողովրդոց, պահանջուած է այդ զոհողութիւնն. այլ Թաթարք չեն պահանջողը, նոքա կը ստիպուին թողուլ զքրիստոնեայս որ ելնեն Ղրիմէ. քրիստոնեայք հնազանդելով հզօրագոյն կամաց՝ կը թողուն ու կ'երթան։ 1778ին Թաթարաց երբեմն հզօր և քանդիչ ազգը, առաւել հզօրագունին ձեռքը խաղալիկ դարձել էր, այն է Ռուսաց քաղաքականութեան։

1774ին թէպէտ և Ղրիմ առանձին խանութիւն էր Թաթարաց, այլ քաղաքական անընդմէջ յարաբերութիւն ունէր Թուրք իշխանութեան հետ. Բարձրագոյն Դուռը կը վաւերացընէր յիշխանութեան՝ 'ի Թաթարաց ընտրուած իշխանը կամ խանը։ Քիւչիւկ-Քայնարճըի[1] դաշնագրութեամբ, զոր նոյն

1. Բուլղարաց աշխարհին մէջ մի փոքր քաղաք է որ այսու դաշնագրութեամբ պատմական նշանակութիւն ստացաւ. դաշանցս զօրութեամբ ստացաւ Ռուսաստան նոր երկիրներ և ճանապարհ դէպ 'ի Սև ծով։ Թաթարք անկախ հրատարակուեցան, և Ռուսաստան 'ի Թուրքիա բնակող քրիստոնէից պաշտպան հանդիսացաւ, որ և կողմնակի պատճառ եղաւ առաջին արևելեան պատերազմին։

տարին ստորագրեցին Կատարինէ Բ. կայսրուհին Ռուսաց և Համիտ սուլտանն Թուրքաց, Ղրիմ ինքնագլուխ և անկախ իշխանութիւն հրատարակուեցաւ։ Այս դէպքս Թաթարաց իշխանութեան կործանման նախադուռն եղաւ, ինչպէս նաև Ղրիմու քրիստոնէից գաղթելուն սկզբնապատճառ։

Ռուսաստան երկար ժամանակէ 'ի վեր աչք ունէր այն ծովապատ և քաջարեր աշխարհին վրայ, որոյ տիրողք 1240-1389 իրենց իշխանութեան տակ առել էին Ռուս Մոսկուայի նախարարները՝ որոց հարկատիր լուծը հազիւ 1481ին կարող եղել էր վերցընել իւր ազգէն Իւան Գ. սակայն և այնպէս Ղրիմեցի Թաթարք, մինչև ԺԶ դար, ըստ կամաց կամ ակամի յարձակմամբ միշտ նեղութիւն էին դրացի ազգաց Ռուսաց և Լեհաց։ Ռուս քաղաքականութիւնը որոշեց որ տիրելով Թաթարաց աշխարհին, ապահովէ իւր սահմանը, որ մինչև ցծով պիտի հասնէր, որով և Եւրոպայի հետ 'ի հարաւոյ ևս անընդմէջ յարաբերութիւն պիտի ունենար։

1774ին յաղթութիւնը Ռուսաց կողմը լինելով, տէրութիւնը առաջարկեց Բարձրագոյն Դրան իրեն նպաստաւոր դաշնադրութիւն, որ ակամայ ընդունելի եղաւ Թուրքաց[1]։ Դաշանցս զօրութեամբ տիրանալով Ռուսք Կերչի, Ենի-Գալէի, Ազովի և Քիմպուրունի, և տակաւ առաջ վարելով առաջարկեցին Թաթարաց իրենց զօրաւոր պաշտպանութիւնը ընդդէմ Օսմանեանց։

1. Այս այլ և այլ յետագայ տեղեկութիւնք մասամբ կը համառօտենք Ֆ. Խաթթախեանի Քրիստոնէութիւն ի Ղրիմ կոչուած պրակէն որ հրատարակուած է ի Սիմֆերոպօլ, 186'ին։

Ղրիմ անկախ երկիր լինելով միայն իրեն կ՚իյնար իր իշխանը կամ խանը ընտրելն. Ռուսաց քաղաքականութիւնն այս ընտրութեանս մէջ ևս ձեռք երկնցուց, և այնպիսի մէկուն ընտրութիւնը յաջողցուց, որ յետոյ իր ձեռաց մէջ յարմար գործիք կամ խաղալիկ դարձաւ. այդ մէկն էր Շահան-Գերէյ, Թաթարաց վերջին խանը։ Թաթար մռզաները (Նախարարք) հասկնալով բանին էութիւնը և հետևանքները՝ շատ կը հակառակին. այլ պաշտպանին զէնքը կը ստիպէ զիրենք, սկսած գործը գլխաւորելու. այս գործիս համար Ռուսաց քաղաքականութիւնը բաց ՚ի զինուց, մեծամեծ գումարներ ևս կը ծախէ, մռզաներն կաշառելու համար։ Թուրքիոյ հետ Թաթարաց յարաբերութիւնք կը դադարին. Ղրիմու բարեբեր մասը դեռ ևս ազատ խանին Շահան-Գերէյի ձեռքն է. այլ նա իր մեղկ կառավարութեամբ և թոյլ բնաւորութեամբ, անկարող կը լինի տիրաբար իշխելու, և զուրկ իր Նախորդաց Բադուներու և Իւզբէկներու արութենէն, ատելի կը լինի իւրոց և անարգ օտարաց առջև։

Այս միջոց ժամանակին՝ ռուս քաղաքականութիւնը անխոնջ կ՚աշխատի, որ ազատ խանը ոչ միայն իր պաշտպանութեան կարօտ, այլ և դրամական ևս նպաստ ընդունի, իբրև սպասաւոր արծաթոյ։ Ռումեանցեւ զօրավարն վերոյգրեալ նպատակին հասանելու մի միայն յարմար միջոց կ՚առաջարկէ ռուս պետութեան, Ղրիմու մէջ բնակող երկրագործ մշակ և արուեստաւոր Հայերը և Յոյները հանել անտի, որպէս զի երկիրն անմշակ մնալով՝ սնանկանայ խանին գանձարանը, և ակամայ ստիպուի ռոճիկ ստանալ ի Ռուսաց։

Իշխանաբար կը պահանջէ Կատարինէ 'ի Շահան-Գերէյէ քրիստոնէից գաղթելու առաջարկութեան կատարումը. վասն խանը չի համարձակիր մերժել կայսրուհւոյն առաջարկութիւնը։ Այլ որովհետև քրիստոնէից եւ ինքնակամ յօժարութիւնն հարկաւոր կը լինի, կաշառք և այլ խաբեպատիր միջոցք 'ի գործ կը դրուին, իբր թէ պիտի գան այլազգիք քարուքանդ անելու զՂրիմ, և բոլոր քրիստոնեայք ոտնակոխ պիտի լինին, եթէ չթողուն չելնեն Ղրիմէ։ Ռումեանցեւ իւր առաջարկութիւնը յաջողցնելու համար, քրիստոնէից հոգևոր առաջնորդքը կը շահի իւր կողմը. խոստանալով նոցա ամենայն ազատութիւն, միանգամայն մինչև ցմահ հաստատութիւն իրենց առաջնորդութեան պաշտամանց մէջ։ Պատմութիւնը կը գրուցէ՝ որ Իգնատիոս Յունաց մետրապօլիտը մեծ համակրութեամբ կ'ընդունի Ռումեանցեւի առաջարկութիւնը, Հայոց առաջնորդք՝ Պետրոս վարդապետ Մարկոսեան Լուսաւորչականաց և Տէր Յակոբ Վարդերեսեւիչ կաթոլիկացը՝ ծանր կը շարժին, անշուշտ հասկընալով գործոյն ծանրութիւնը, միանգամայն և ակնածելով իրենց հօտէն։

1778ին, ապրիլի 23ին Ս. Զատկին օրը, Պահչէսերայի (որ այն միջոց մայրաքաղաք էր Ղրիմու) Յունաց Աստուածածնայ վանքին եկեղեցւոյ մէջ՝ Իգնատիոս Մետրապօլիտ կ'առաջարկէ քրիստոնէից գաղթականութեան խնդիրը, շուտով կը տարածուի այն ձայնը Թերակղզւոյն մէջ, առհասարակ քրիստոնեայք և ոչ քրիստոնեայք կ'ամբոխին ու կը շփոթին։ Թաթարք հասկնալով որ այդ Ռուսաց հնարքն է, կը բողոքեն խանին վատութեան դէմ. քրիստոնեայք՝ իրենց առաջնորդքը կաշառակուրծ

կը համարին։ Թողումք մեք Ցունաց և Թաթարաց թողըքները, թարգմանեմք միայն Հայոց տուած աղերսագիրը[1] առ Շահան-Գերէյ. «Մեք երեք «հարիւր[2] տարիէ 'ի վեր Ձեր ծառայքն և հպա-«տակքն եմք, և գոհ կերպով կը բնակիմք Ձեր «տէրութեան մէջ, և երբեք անհանգստութիւն մի «կրած չեմք. այժմ կ'ուզեն քշել հանել զմեզ աստի։ «Ցանուն Աստուծոյ, մարգարէին և Ձեր նախնեաց՝ «կը պաղատիմք, այդ բռնութենէ ազատեցէք զմեզ «Ձեր ստրուկները, մեք միշտ աղօթող պիտի լի-«նիմք Ձեր կենաց համար առ Աստուած»։

Այս սրտառուչ աղերսագրոյն խօսքերը, եթէ բոլորը յանկեղծ սրտէ չհամարիմք, սակայն և այնպէս յայտնի ցոյցք են մեր պապերուն կրած տագնապին և վրդովմանց՝ և միանգամայն նախահօդ սրտին։ Թողուլ տուն տեղ, գարևոր իրենց հայրենիք դարձած աշխարհքը, այգիներ, անտառներ, պարտէզներ և գեղեր, և որ առաւելն է սրբաշէն եկեղեցիներ, իրենց լուսաղբիւրներով և հոգեհատոր սիրելեաց գերեզմաններով, և երթալ անծանօթ աշխարհք, որոյ ժողովրդոց ոչ բարքը և ոչ լեզուն կը հասկընան, շատ դժար և անտանելի բան է։ Շահան-Գերէյ ոչ իրեն հաւատարիմ հպատակաց, Հայոց, աղերսը կը լսէ և ոչ Թաթարաց թողըքներուն տեղիք կու տայ, այլ անտարբեր աչօք կը դիտէ իւր և իւր աշխարհին կործանումը։ Թա-

1 Խաւթախայի առս թարգմանութենէն։

2 Վերջին և մեծ գաղթականութենէ ետ հաշուելու լինինք, որ եղած է 1330 էն մինչև ց1778, յորում ելած են Հայք 'ի Ղրիմէ, աղերսագրին մէջ վերոյիշեալ երեքհարիւր ամաց հաշիւն 448 տարի կը լինի։

Թարք՝ խանէն նեղացած իրենց ոխը կ'ուզեն 'ի քրիստոնէից հանելու. մինչև որ Թողուն ելնեն քրիստոնեայք 'ի Ղրիմէ, շատ վիշտ և նեղութիւն կը կրեն Թաթարաց ձեռքէն. կանայք ծակամուտ, որք հրացաննին ուսերուն վրայ, անքուն կ'անցընեն գիշերները. իսկ առաջնորդք քրիստոնէից, երբև չարեաց մակարդ, ծպտեալ և անծանօթ տունէ տուն կը պահուըտին, որ չգիտնան Թաթարք ուր լինելնին։ Այդ վերջին պարագայից ահն այնպէս սաստիկ ահացուցել է մերոց սրտերը, որ շատ տարի անցնելէն վերջը, մինչև ցայսօր ևս, պառաւունք՝ անշուշտ 'ի լրոյ՝ սոսկալով կը պատմեն այն դէպքերը, որ եթէ չԹողուին և չելնէին 'ի Ղրիմէ՝ ամէնքը Թաթարաց և այլազգեաց Թուրին բերանը պիտի ինկնային։

Վերջապէս այլ ինչ հնարք կամ դարման չգտնելով. կը յօժարին Հայք գաղթել 'ի Ղրիմէ, և իրենց առաջնորդաց միջոցիւ կ'առաջարկեն տէրութեան խնդրական ձևով հետևեալ պայմանները. որոց յօժարելով տէրութիւնն և այլ արտօնութիւնք ևս վրան աւելցընելով, միւս տարին կը շնորհէ իրենց պարգևագիր Ողորմածագոյն թաւն։ Հայք կը խնդրեն ա) Որ տէրութիւնն յանձն առնու վճարելու իրենց՝ պարտիզից, այգեաց և այլ անշարժ կայից գինը[1]. բ) Նոյնպէս վարուցաններու գինը՝ զոր 'ի դաշտին պիտի Թողուն. գ) Վճարել Թաթար մուրզայից իրենց պարտքերը. դ) Ջիրենք և իրենց

1 Գեղերու վրայ խօսք չկայ, զի արդէն Տէրութիւնը խոստացել է տալ նոցա իբր 80,000, դեսեատինէն հող Նախիջևանցի Հայոց։ Նոյնպէս առանձին յԵկատերինեսլաւ գաղթող հայ կաթոլիկաց, որք հրաժարելով այդ հողէն դարձել են 'ի Ղրիմ։

չարժական կայքը արքունի հաշուով տեղափոխել։ Դարձեալ ճանապարհի պիտոյքնին հոգալ, և երբ հասնին սահմանեալ տեղը, շնորհել արքունուստ ցանելու կարևոր հունտը, և մինչև նոր ցորենը հասնելուն՝ տալ իրենց ապրուստ. ճանապարհին ոչ ոք չխուէ զիրենք, և տեղերնին հասնիլէն վերջը հոս հոն տեղափոխուելու չստիպուին։

Տէրութեան կողմանէ քրիստոնէից տրուած պարգևագիրը՝ մագաղաթի վրայ տպուած է ռուս և հայ լեզուներով, և ոսկի մեծ արքունի կնքով կնքուած 1779, Նոյեմբերի 4. զոր Կատարինէ Բ. ստորագրած է. Նորանէ վերջ հետզհետէ, իրենց թագաւորութեան միջոց՝ ստորագրութեամբ վաւերացուցած են Պաւել, Ա. Ալեքսանդր, Ա. Նիկոլայոս։ Մեր օրերը՝ այն է (1868) Ալեքսանդր Բ. թագաւորութեան միջոց, երբ հասարակաց զինուորագրութեան և այլ բարեկարգական օրէնք հրատարակուեցան 'ի Ռուսաստան, ինչպէս այլ զանազան ժողովրդոց արտօնութիւնք, նոյնպէս մեր Ղրիմեցի և Նախիջևանցի հայկազանցը, հասարակաց օրինաց ենթարկուեցան, և Հայք ևս սկսան զինուոր տալ։

## Ե

## ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Այս ծանր և մտատանջ խնդիրը 3–4 ամիս մեր պապերը, բարոյապէս և նիւթապէս տագնապելէն և վրդովելէն յետոյ, վերջապէս կը յանձնուի առ Սուորով մեծ զօրավարն (ապա կոմս Իտալիոյ), որ

խնամով հոգայ գաղթելոց կարեւոր պէտքերը ։ Ազովի գաւառապետը 6000 սայլեր կը ղրկէ նոցա կարասիքը վերցընելու ։ Եկատերինեսլաւ գաւառը կը սահմանուի գաղթական քրիստոնէից տեղի բնակութեան. Յունաց՝ Ազախու ծովուն եզերքը, ուր կը շինեն Մարիամպօլ քաղաքը. Հայոց լուսաւորչականաց՝ Դօն գետին հիւսիսային ափանց վրայ, ուր է այժմ Նախիջեւան քաղաքը. Հայոց Կաթոլիկաց՝ որք սակաւաթիւ եղած են, բնակութիւն կը սահմանի գաւառին համանուն Եկատերինեսլաւ քաղաքը, ուր ապա գաւառապետն կը նստի, և այժմ է մեծ քաղաք Տնեբեր գետոյն վրայ ։ Գաղթականաց առաջին խումբն կը մեկնի 'ի Ղրիմէ յ18 յուլիսի (1778), երկրորդն 'ի 20 օգոստոսի, երրորդն որ և վերջինն 'ի 28 սեպտեմբերի ։

Կը մեկնին, այո՛, Հայկազունք 'ի Ղրիմէ, իրենց դարեւոր հայրենիքէն, այլ մինչեւ որ կռնակնին դարձընեն, և դէպ 'ի հիւսիս առաջ վարեն ճամբանին, ի՞նչ կը կրէ, ի՞նչ կը զգայ այդ տարաբաղդ ժողովուրդն ։ Մինչեւ ցայժմ գտնուած չէ հայ գրիչ մի, որ ստորագրէ մանրամասն այդ աղեխարշ բաժանումը, որ անշուշտ կարի՛ սրտառուչ եղած պիտի լինի ։

Վերջին անգամ կը ժողովին Հայք իրենց եկեղեցեաց մէջ, զորս ամենայն խնամքով իրենք և իրենց նախնիք ամրակուռ շինած են, այնպէս որ իբրեւ ցյաւիտենանս ժամանակաց որդւոց որդի պիտի վայելեն զանոնք. որոց ամէնն ունին իրենց սրբազան և պատմական նշանակութիւնը. Ս. Խաչ և Ամենափրկիչ վանքեր, ապաստանարան սրբասէր աբեղայից և դպրասէր գրչաց. Զարխափան և Ս. Կարապետ, որ այլադենից մէջ

չարէն պաշտպանուած՝ կարենան ամուր պահել Հայք սուրբ հաւատքը. Ս. Նիկողայոս գմբէթաւոր եկեղեցին 'ի յիշատակ հազարաւոր նահատակաց կոտորելոց 'ի Կէտիկ Ահմէտէ (1478). դարձեալ որբոց ձիաւոր զօրավարաց՝ Գէորգայ, Սարգսի և Թորոսի, որ 'ի կարեւոր ժամու երագ հասնին իրենց բարեխօսութեան ապաւինելոց. և այլ որ մէկը առեմ, եկեղեցի շա՜տ, և ամէն մէկը զատ զատ նպատակաւ շինուած: Ահա այդ որբաշէն եկեղեցեաց մէջ կը ժողովի հայ ժամասէր ժողովուրդն՝ վերջին պատարագը լսելու, և ապա թողուլ լքանելու այդ տաճարները՝ յանդարձ յօտարութիւն գնալու համար: Ո՜րչափ արցունք, քանի՜ սրտաճմլիկ հառաչանք, որպիսի՜ հրաժարական սրտախօսիկ բարով մնայքներ չեն մրմնջած նոքա, որբաշէն խորանաց, խաչանիշ սիրելեաց գերեզմանաց... և այլն, և այլն:

Երբոր ժամարարը բեմէն կը ծանուցանէ Հայոց՝ թէ աւարտած է Ս. Խորհուրդը, կարող են ելնել գնալ 'ի տաճարէն, «Երթայք խաղաղութեամբ» գրուցելով, անշուշտ ոչ մի, այլ շատեր կոտրած սրտով մտածել են իրենք իրենց. «Ո՞ւր երթանք. որու թողունք մեր Ս. Եկեղեցիքը, Լոյս-Պարոն և Յաւնկուլի նահատակաց շիրիմքը». շատ մարց սրտեր անշուշտ գող ելած են այդ Խաղաղութեան խօսքերէն, շուարել մնացել են թէ ինչպէս թողուն և երթան իրենց հօգեհատոր զաւակաց ոսկերք և նշխարքն այլազգեաց ձեռքը: — Այլ սակայն կամայ և ակամայ հարկ է գնալ: — Մի կողմանէ երէցը «Տէր ողորմեա՛» կը մաղթէ, միւս կողմանէ, դպրաց դասն «Ճանապարհ բարի Քրիստոս», տխուր կ'եղանակեն. եկեղեցեաց երէց-

փոխանք կը գետեղեն անդուկներու մէջ արծա-
թագործ և արծաթապատ խաչեր և աւետարան-
ներ, սկիհներ և բուրվառներ. այլք՝ պատերէն
իջեցընելով սրբալոյս մեռոնիւ օծեալ պատկերքը՝
կը պատեն պաստառներով։ Եթէ կարելի լինէր
չալակել տանել գեղեցկաշէն եկեղեցիքը, անշուշտ
կը տանէին [1]։ Ինչ որ կարելի եղած է՝ տարեր
են. մանաւոր չնորհակալութեան արժանի են
ծանրագին մագաղաթեայ ձեռագիրները [2] խնամ-
քով տանելնուն համար, որք ցարդ Նախիջեւանու
եկեղեցեաց պահարաններուն մէջ կը պահուին։

Վշտագին ներկայ և անստոյգ ապագայ։ Կը
թողուն կը մեկնին Հայք՝ իրենց 400 տարուան
հայրենիքէն. այլ այն երկար տարեաց պարագայիւք
յօդուած կապերը, մէկ հրամանաւ կամ քաղա-
քականութեան մի հարուածով չեն քակուիր. կը
դառնան՝ կը դառնան ետեւնին կը նային, մինչեւ որ
քաղաքաց և գիւղից հետքը, Ս. Եկեղեցեաց խա-
չերը հորիզոնին հաւասարին։ Երբ ամենայն ինչ
կ'անհետանայ, հեղձամղձուկ սրտերնին ամուր կը
կնքեն նշանաւ Ս. Խաչի, որ արդէն մեզի ընդ-
դէմ ամենայն ցաւոց և վշտաց ապաւէն տրուած
է, և առաջ կը վարեն ճանապարհնին։ Պառաւ-
ներ և այլ անկարող ծերեր՝ կարասեաց սայլերուն
վրայ կըծկուած, նոյն և մատաղերամ մանկտին կա-

1 Շատ եկեղեցեաց քանդակագործ դռներ և այլ շատ մարմարեղէն գերեզմանաց խաչքարերնք տարել են հետեր-նին գաղթական Հայք։

2 Ճանապարհորդութեանս գլխաւոր նպատակն այդ ձե-ռագիրքն էին, յորս կը յուսար Սիսուանի Համաքրութեան Հեղինակն գտնել տեղեկութիւնս ինչ՝ նոյն գրուածին հա-մար։

նայք աղջկունք ոտքով, և համեստութեան քօղը գլուխնին, տանուտէրք և երիտասարդք երկայնախոնջ կօշիկնին վեր քաշած, գօտիներն ամուր կապած, գեղացիք տրեխնին զապած, տրտում տխուր առաջ կ'երթան օտար և անծանօթ աշխարհք: Կարծես Իսրայելի նոր բանակ մի է, որ եգիպտական բանութենէ փախստական կ'երթայ: Սոցա առաջնորդք թէպէտ հանգոյն Մովսիսի բազմապատիկ վտանգներու ենթարկուած 'ի Թաթարաց, այլ չունին ոչ Մովսիսի քաջութիւնը և ոչ նորա լուսապայծառ դէմքը, որպէս զի նոցանէ պատկառին ժողովուրդք: Արդեօք այսոր պատճառը հազարաւոր րուբլիներն են, որովք վարձատրած է զնոսա ռուս տէրութիւնն[1]. այլ ես չեմ կարող հաւանիլ որ Տէր Պետրոս և Յակոբ վարդապետները թողլով հետիոտ իրենց հօտը, իրենց կառքերու մէջ բազմած առաջ գնացած լինին: Որպէս և իցէ՝ Հայք իրենց այս միջոցիս առաջնորդաց վրայ՝ ոչ այն ատեն և ոչ այժմ ժամանակ անցնելէն, չեն ունեցեր այն գոհացուցիչ համակրութիւնը, որում, ըստ իմ կարծեաց, արդար կերպով մտածելով՝ մեծապէս արժանաւորք են. վասն զի բազմապատիկ վտանգաց ենթարկուած են այդ սեւագլուխ առաջնորդք, մինչև որ Թաթարաց վերջին կատաղութենէ ազատեն իրենց հօտը: — Զրուցենք քանի մի խօսք ևս այդ առաջնորդաց մասին:

1 Առաջնորդք դաղթականաց ստացել են 'ի տէրութենէ. Իգնատիոս Մեսրապօլիտ 6550 ր. Պետրոս վարդապետ 2820 ր. Յակոբ կանոնիկոս 1250 ր. դարձեալ նոցա կառքերու և ձիերու համար տուած է տէրութիւնն 2779 րուբլի: Խառթախայ գրեաց. 'ի Ղրիմ:

## Զ

## ԱՌԱՋՆՈՐԴՔ ԳԱՂԹԱԿԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ

Խառթախամ՝ գաղթականութեան խնդրոյն առաջնորդութեան մեծ պատիւը Յունաց Իգնատիոս մետրապոլտին կու տայ բոլորովին. (ինքն ևս նոյն ազգէն է). և Հայոց առաջնորդքը ըստ ձեռանէ կամ իբրև երկրորդական անձինք կը դնէ։ Մեք մեր կողմանէ ամբողջապէս այդ պատիւը յոյն մետրապոլտին ժառանգութիւն կը թողումք, անփականելով ազգիս առաջնորդաց՝ կրած բազմապատիկ վիշտերը։ Սակայն ազգիս վերջին ժամանակի գրիչք չեն յօժարիլ բոլորովին մետրապոլտին անփանակել այն պատիւը. այլ մի մասն կը շնորհեն ժամանակին Թեմակալ առաջնորդին Հայոց Ռուսաստանու, Յովսեփայ Երկայնաբազուկ — Արղութեանց արքեպիսկոպոսին, որ թէպէտ անձամբ գլուխ կեցած չէ գործոյս, այլ տէրութեան հետ բանագնացութեանց միջոց մեծ դեր խաղացել է. ինքն Արղութեանց սրբազան կը հաստատէ զայն յետագայ բանիւք. «Զամս երկուս 'ի դրունս մեծի կայսրուհւոյն դեգերեցաք»։ Սա ինքն հանդիսապէս օրհնած է 1779 ին, Նոր գաղթականաց Դոնի եզերք Նախիջևան քաղաքին հիմը, և ապա չորս տարի վերջը (1783 ին) քաղաքի կեդրոնը դրած է Ս. Լուսաւորիչ հոյակապ եկեղեցւոյն հիմը, պարգև և յիշատակ թողլով եկեղեցւոյն արծաթապատ ընտիր գրչագիր աւետարան մի, ինքնագիր յիշատակարանաւ. յորում կը գրէ իրեն ով և ուստի լինելը, և եկեղեցւոյն համար պերճանօք կը յա-

ւելու. «Ես հիմնարկեցի 'ի 1783 թուի»։ Մի տարի վերջը դարձեալ այս Սրբազանս օրհնած է հիմն Ս. Խաչ վանքին Նախիջևանու, 'ի յիշատակ Ս. Նշան հին և հռչակաւոր վանքին Ղրիմու, հաստատելով անդ տպարան մի։ Յովսէփ Սրբազան՝ մեր Ղրիմեցի գաղթականաց պիտոյքը հոգալէն վերջը, 1791 ին Բեսսարաբիոյ մէջ Գրիգորուպոլիս հայաբնակ քաղաքին ևս հիմունքը օրհնած է, և ազգիս մեծամեծ ծառայութեանց և միանգամայն տէրութեան հաւատարիմ հպատակութեանց 'ի վարձ՝ ստացել է 'ի պետութենէ վեղարին վրայ կրելու ադամանդեայ թանկագին մետրապօլտական խաչ մի և փիլոն (МАНТІЛ)։ Ապա 1779 ին կը ստանայ Ս. Աննայի առաջին կարգի ասպետական շքանշանը. և տարի անցնելէն վերջը (1800) բովանդակ ազգատոհմովն Ռուսաց իշխանազանց կարգը կ'անցնի, իբրև Նախարար քնեազ։ Զհեռանալով մեր նպատակէն՝ հարկ է յաւելուլ՝ որ թէպէտ պատերազմական միջոց ժամանակին, յորում Յովսէփ Սրբազան իբրև 'ի պաշտօնէ պաշտպան հանդիսացաւ հայկազանց Ղրիմու և Կովկասու, այլ սոցա վրայ յաւելլով իւր սեփական անձնական ձիրքերն, արթնութիւն մտաց, անխոնջ աշխատութիւն, վայելուչ և միանգամայն պատկառելի տեսիլն արտաքին՝ գրաւած են իշխողնազանց ուշադրութիւնը, որով փառաց 'ի փառս յառաջադիմած է, շատ հեռու թողլով իրեն նախանձորդները։

Հայ հոգեորականի համար (չեմ ուզեր Մեսրոպատիպ ճգնազգեաց վարդապետները սոցա թուէն համարիլ) մի բան կը պակասէր Արղութեանց Սրբազանին, այն է ամբառնալն 'ի գերագոյն

Իշխանաբար կը պահանջէ կատարինէ 'ի Ղահան-Գերէյէ քրիստոնէից գաղթելու առաջարկութեան կատարումը. վասն խանը չի համարձակիր մերժել կայսրուհւոյն առաջարկութիւնը։ Այլ որովհետև քրիստոնէից եւս ինքնակամ յօժարութիւնն հարկաւոր կը լինի, կաշառք և այլ խաբեպատիր միջոցք 'ի գործ կը դրուին, իբր թէ պիտի գան այլազգիք քարուքանդ անելու զՂրիմ, և բոլոր քրիստոնեայք ոտնակոխ պիտի լինին, եթէ չթողուն չելնեն Ղրիմէ։ Ռումեանցեւ իւր առաջարկութիւնը յաջողցնելու համար, քրիստոնէից հոգևոր առաջնորդքը կը շահի իւր կողմը. խոստանալով նոցա ամենայն ազատութիւն, միանգամայն մինչև ցմահ հաստատութիւն իրենց առաջնորդութեան պաշտամանց մէջ։ Պատմութիւնը կը գրուցէ՝ որ Իգնատիոս Յունաց մետրապոլիտը մեծ համակրութեամբ կ'ընդունի Ռումեանցեւի առաջարկութիւնը, Հայոց առաջնորդք՝ Պետրոս վարդապետ Մարկոսեան Լուսաւորչականաց և Տէր Յակոբ Վարդերեսեւիչ կաթոլիկացը՝ ծանր կը շարժին, անշուշտ հասկընալով գործոյն ծանրութիւն ը, միանգամայն և ակնածելով իրենց հօտէն։

1778ին, ապրիլի 23ին Ս. Զատկին օրը, Պախչէսերայի (որ այն միջոց մայրաքաղաք էր Ղրիմու) Յունաց Աստուածածնայ վանքին եկեղեցւոյ մէջ՝ Իգնատիոս Մետրապոլիտ կ'առաջարկէ քրիստոնէից գաղթականութեան խնդիրը, շուտով կը տարածուի այն ձայնը Թերակղզւոյն մէջ, առհասարակ քրիստոնեայք և ոչ քրիստոնեայք կ'ամբոխին ու կը շփոթին։ Թաթարք հասկնալով որ այդ Ռուսաց հնարքն է, կը բողոքեն խանին վատութեան դէմ. քրիստոնեայք՝ իրենց առաջնորդքը կաշառակուրծ

կը համարին։ Թողումք մեք Ցունաց և Թաթարաց թողղքները, թարգմանեմք միայն Հայոց տուած աղերսագիրը[1] առ Շահան-Գերէյ. «Մեք երեք «հարիւր[2] տարիէ 'ի վեր Ձեր ծառայքն և հպա- «տակքն եմք, և գոհ կերպով կը բնակիմք Ձեր «տէրութեան մէջ, և երբեք անհանգստութիւն մի «կրած չեմք. այժմ կ'ուզեն քշել հանել զմեզ աստի։ «Ցանուն Աստուծոյ, մարգարէին և Ձեր նախնեաց՝ «կը պաղատիմք, այգ բռնութենէ ազատեցէք զմեզ «Ձեր ստրուկները, մեք միշտ աղօթող պիտի լի- «նիմք Ձեր կենաց համար առ Աստուած»։

Այս սրտառուչ աղերսագրոյն խօսքերը, եթէ բոլորը յանկեղծ սրտէ չհամարիմք, սակայն և այնպէս յայտնի ցոյցք են մեր պապերուն կրած տագնապին և վրդովմանց՝ և միանգամայն նախահօր սրտին։ Թողուլ տուն տեղ, գարևոր իրենց հայրե- նիք դարձած աշխարհքը, այգիներ, անտառներ, պարտէզներ և գեղեր, և որ առաւելն է սրբաշէն եկեղեցիներ, իրենց լուսաղբիւրներով և հոգեհա- տոր սիրելեաց գերեզմաններով, և երթալ անծա- նօթ աշխարհք, որոյ ժողովրդոց ոչ բարքը և ոչ լեզուն կը հասկընան, շատ դժար և անտանելի բան է։ Շահան-Գերէյ ոչ իրեն հաւատարիմ հպա- տակաց, Հայոց, աղերսը կը լսէ և ոչ Թաթարաց թողղքներուն տեղիք կու տայ, այլ անտարբեր աչօք կը դիտէ իւր և իւր աշխարհին կործանումը։ Թա-

1 Խառաթախայի ռուս թարգմանութենէն։

2 Վերջին և մեծ գաղթականութենէ եւ հաշուելու լինելը, որ եղած է 1330 ին մինչև ց1778, յորում ելած են Հայք 'ի Ղրիմէ, աղերսագրին մէջ վերոյիշեալ երեքհարիւր ամաց հաշիւն 448 տարի կը լինի։

Թարք՝ խանէն նեղացած իրենց ոխը կ'ուզեն 'ի քրիստոնէից հանելու. մինչև որ Թողուն ելնեն քրիստոնեայք 'ի Ղրիմէ, շատ վիշտ և նեղութիւն կը կրեն Թաթարաց ձեռքէն. կանայք ծակամուտ, արք հրացաններին ուսերուն վրայ, անքուն կ'անցընեն գիշերները. իսկ առաջնորդք քրիստոնէից, իբրև չարեաց մակարդ, ծպտեալ և անծանօթ տունէ տուն կը պահուըտին, որ չգիտնան Թաթարք ուր լինելնին: Այդ վերջին պարագայից ահն այնպէս սաստիկ ահացուցել է մերոց սրտերը, որ շատ տարի անցնելէն վերջը, մինչև ցայսօր ևս, պառաւունք՝ անշուշտ 'ի լրոյ՝ լսկալով կը պատմեն այն դէպքերը, որ եթէ չթողուին և չելնէին 'ի Ղրիմէ՝ ամէնքը Թաթարաց և այլազգեաց Թուրին բերանը պիտի իյնային:

Վերջապէս այլ ինչ հնարք կամ դարման չգտնելով. կը յօժարին Հայք գաղթել 'ի Ղրիմէ, և իրենց առաջնորդաց միջոցիւ կ'առաջարկեն տէրութեան խնդրական ձևով հետևեալ պայմանները. որոց յօժարելով տէրութիւնն և այլ արտօնութիւնք ևս վրան աւելցընելով, միւս տարին կը շնորհէ իրենց պարգևագիր Ողորմածագոյն թագ: Հայք կը խնդրեն ա) Որ տէրութիւնն յանձն առնու վճարելու իրենց՝ պարտիզից, այգեաց և այլ անշարժ կայից գինը [1]. բ) Նոյնպէս վարուցաններու գինը՝ զոր 'ի դաշտին պիտի թողուն. գ) Վճարել Թաթար մուզայից իրենց պարտքերը. դ) Ջիրենք և իրենց

[1] Գեղերու վրայ խօսք չկայ, զի արդէն Տէրութիւնը խոստացել է տալ նոցա իբր 80,000, դեսեատին հող Նախիջևանցի Հայոց: Նոյնպէս առանձին յԵկատերինոսլաւ գաղթող հայ կաթոլիկաց, որք հրաժարելով այդ հողէն դարձել են 'ի Ղրիմ:

չարժական կայքը արքունի հաշուով տեղափոխել։ Դարձեալ ճանապարհի պիտոյքնին հոգալ, և երբ հասնին սահմանեալ տեղը, շնորհել արքունուստ ցանելու կարևոր հունտը, և մինչև նոր ցորենը հանելուն՝ տալ իրենց ապրուստ. ճանապարհին ով որ չխուէ զիրենք, և տեղերնին հասնիլէն վերջը հաս հոն տեղափոխուելու չստիպուին։

Տէրութեան կողմանէ քրիստոնէից տրուած պարգևագիրը՝ մագաղաթի վրայ տպուած է ռուս և հայ լեզուներով, և ոսկի մեծ արքունի կնքով կնքուած 1779, Նոյեմբերի 4. զոր Կատարինէ Բ. ստորագրած է. Նորանէ վերջ հետզհետէ, իրենց թագաւորութեան միջոց՝ ստորագրութեամբ վաւերացուցած են Պաւել, Ա. Ալեքսանդր, Ա. Նիկոլայոս։ Մեր օրերը՝ այն է (1868) Ալեքսանդր Բ. թագաւորութեան միջոց, երբ հասարակաց զինուորագրութեան և այլ բարեկարգական օրէնք հրատարակուեցան 'ի Ռուսաստան, ինչպէս այլ զանազան ժողովրդոց արտօնութիւնք, նոյնպէս մեր Ղրիմեցի և Նախիջևանցի հայկազանցը, հասարակաց օրինաց ենթարկուեցան, և Հայք եւս սկսան զինուոր տալ։

## Ե

## ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Այս ծանր և մտատանջ խնդիրը 3–4 ամիս մեր պապերը, բարոյապէս և նիւթապէս տագնապելէն և վրդովելէն յետոյ, վերջապէս կը յանձնուի առ Սուարով մեծ զօրավարն (ապա կոմս Իտալիոյ), որ

խնամով հոգայ գաղթելոց կարեւոր պէտքերը ։ Ազովի գաւառապետը 6000 սայլեր կը ղրկէ նոցա կարասիքը վերցընելու ։ Եկատերինեսլաւ գաւառը կը սահմանուի գաղթական քրիստոնէից տեղի բնակութեան. Յունաց՝ Ազախու ծովուն եզերքը, ուր կը շինեն Մարիամպօլ քաղաքը. Հայոց լուսաւորչականաց՝ Դոն գետին հիւսիսային ափանց վրայ, ուր է այժմ Նախիջեւան քաղաքը. Հայոց Կաթողիկաց՝ որք սակաւաթիւ եղած են, բնակութիւն կը սահմանի գաւառին համանուն Եկատերինեսլաւ քաղաքը, ուր ապա գաւառապետն կը նստի, և այժմ է մեծ քաղաք Տնեբեր գետոյն վրայ։ Գաղթականաց առաջին խումբն կը մեկնի 'ի Ղրիմէ յ18 յուլիսի (1778), երկրորդն 'ի 20 օգոստոսի, երրորդն որ և վերջինն 'ի 28 սեպտեմբերի։

Կը մեկնին, այո՛, հայկազունք 'ի Ղրիմէ, իրենց դարեւոր հայրենիքէն, այլ մինչև որ կռնակնին դարձընեն, և դէպ 'ի հիւսիս առաջ վարեն ճամբանին, ի՞նչ կը կրէ, ի՞նչ կը զգայ այդ տարաբաղդ ժողովուրդն ։ Մինչև ցայժմ գտնուած չէ հայ գրիչ մի, որ ստորագրէ մանրամասն այդ աղեխարշ բաժանումը, որ անշուշտ կարի՛ սրտառուչ եղած պիտի լինի։

Վերջին անգամ կը ժողովին Հայք իրենց եկեղեցեաց մէջ, զորս ամենայն խնամքով իրենք և իրենց նախնիք ամրակուռ շինած են, այնպէս որ իբրև ցյաւիտեանս ժամանակաց որդւոց որդի պիտի վայելեն զանոնք. որոց ամէնն ունին իրենց արքայազան և պատմական նշանակութիւնը. Ս. Խաչ և Ամենափրկիչ վանքեր, ապաստանարան սրբասէր աբեղայից և դպրասէր գրչաց. Զարխափան և Ս. Կարապետ, որ այլազգենից մէջ

չարէն պահպանուած՝ կարենան ամուր պահել Հայք սուրբ հաւատքը. Ս. Նիկողայոս գմբէթաւոր եկեղեցին 'ի յիշատակ հազարաւոր նահատակաց կոտորելոց 'ի Կէտիկ Ահմէտէ (1478). դարձեալ սրբոց ձիաւոր զօրավարաց՝ Գէորգայ, Սարգսի և Թորոսի, որ 'ի կարեւոր ժամու երագ հասնին իրենց բարեխօսութեան ապաւինելոց. և այլ որ մէկը առեմ, եկեղեցի շա՜տ, և ամէն մէկը զատ զատ նպատակաւ շինուած: Ահա այդ սրբաշէն եկեղեցեաց մէջ կը ժողովի հայ ժամասէր ժողովուրդն՝ վերջին պատարագը լսելու, և ապա թողուլ լքանելու այդ տաճարները՝ յանդարձ յօտարութիւն գնալու համար: Ո՜րչափ արցունք, քանի՜ սրտաճմլիկ հառաչանք, որպիսի՜ հրաժարական սրտախօսիկ բարով մնայքներ չեն մրմնջուած նոքա, սրբաշէն խորանաց, խաչանիշ սիրելեաց գերեզմանաց... և այլն, և այլն:

Երբոր ժամարարը բեմէն կը ծանուցանէ Հայոց՝ թէ աւարտած է Ս. խորհուրդը, կարող են ելնել գնալ 'ի տաճարէն, «Երթայք խաղաղութեամբ» գրուցելով, անշուշտ ոչ մի, այլ շատեր կոտրած սրտով մտածել են իրենք իրենց. «Ո՞ւր երթանք, ո՞ւր թողունք մեր Ս. Եկեղեցիքը, Լօյս-Պարոն և Ֆանկուլի նահատակաց շիրիմքը». շատ մարց սրտեր անշուշտ դող ելած են այդ Խաղաղութեան խօսքերէն, շուարել մնացել են թէ ինչպէս թողուն և երթան իրենց հոգեհատոր զաւակաց ոսկերք և նշխարքն այլազգեաց ձեռքը: — Այլ սակայն կամայ և ակամայ հարկ է գնալ: — Մի կողմանէ երէցը «Տէր ողորմեա» կը մաղթէ, միւս կողմանէ, դպրաց դասն «Ճանապարհ բարի Քրիստոս», տխուր կ'եղանակեն. եկեղեցեաց երէց-

փոխանք կը գետեղեն անդուկներու մէջ արծա-թագործ և արծաթապատ խաչեր և աւետարան-ներ, սկիհներ և բուրվառներ. այլք՝ պատերէն իջեցընելով սրբալոյս մեռոնիւ օծեալ պատկերքը՝ կը պատեն պաստառներով։ Եթէ կարելի լինէր շալակել տանել գեղեցկաշէն եկեղեցիքը, անշուշտ կը տանէին [1]։ Ի՛նչ որ կարելի եղած է՝ տարել են. մանաւանդ շնորհակալութեան արժանի են ծանրագին մագաղաթեայ ձեռագիրները [2] խնամ-քով տանելնուն համար, որք ցարդ Նախիջևանու եկեղեցեաց պահարաններուն մէջ կը պահուէին։

Վշտագի՛ն ներկայ և անստոյգ ապագայ։ Կը թողուն կը մեկնին Հայք՝ իրենց 400 տարուան հայրենիքէն. այլ այն երկար տարեաց պարագայիւք յօդուած կապերը, մէկ հրամանաւ կամ քաղա-քականութեան մի հարուածով չեն քակուիր. Կը դառնան՝ կը դառնան ետևնին կը նային, մինչև որ քաղաքաց և գիւղից հետքը, Ս. Եկեղեցեաց խա-չերը հորիզոնին հաւասարին։ Երբ ամենայն ինչ կ'անհետանայ, հեղձամղձուկ սրտերնին ամուր կը կնքեն նշանաւ Ս. Խաչի, որ արդէն մեզի ընդ-դէմ ամենայն ցաւոց և վշտաց ապաւէն տրուած է, և առաջ կը վարեն ճանապարհնին։ Պառաւ-ներ և այլ անկարող ծերեր՝ կառատեաց սայլերուն վրայ կըծկտած, նոյն և մատաղերամ մանկտին կա-

1 Շատ եկեղեցեաց քանդակագործ դռներ և այլ շատ մարմարիոնէ գերեզմանաց խաչքարերը տարել են հետեր-նին գաղթական Հայք։

2 Ճանապարհորդութեանս գլխաւոր նպատակն այդ ձե-ռագիրքն էին, յորս կը յուսար [illegible] Հեղինակն գտնել տեղեկութիւնս ինչ՝ նոյն գրուածին հա-մար։

նայք աղջկունք ոտքով, և համեստութեան քօղը գլուխնին, տանուտէրք և երիտասարդք երկայնախոնջ կօշիկնին վեր քաշած, գօտիներն ամուր կապած, գեղացիք որեխնին զապած, տրտում տխուր առաջ կ'երթան օտար և անծանօթ աշխարհք: Կարծես Իսրայելի նոր բանակ մի է, որ եգիպտական բանութենէ փախստական կ'երթայ: Սոցա առաջնորդք թէպէտ հանգոյն Մովսիսի բազմապատիկ վտանգներու ենթարկուած 'ի Թաթարաց, այլ չունին ոչ Մովսիսի քաջութիւնը և ոչ նորա լուսապայծառ դէմքը, որպէս զի նոցանէ պատկառին ժողովուրդք: Արդեօք այսոր պատճառը հազարաւոր ռուբլիներ՞ն են, որովք վարձատրած է զնոսա ռուս տէրութիւնն [1]. այլ ես չեմ կարող հաւանիլ որ Տէր Պետրոս և Յակոբ վարդապետները թողլով հետիոտս իրենց հօտը, իրենց կառքերու մէջ բազմած առաջ գնացած լինին: Որպէս և իցէ՝ Հայք իրենց այս միջոցիս առաջնորդաց վրայ՝ ոչ այն ատեն և ոչ ապա ժամանակ անցնելէն, չեն ունեցեր այն գոհացուցիչ համակրութիւնը, որում, ըստ իմ կարծեաց, արդար կերպով մտածելով՝ մեծապէս արժանաւորք են. վասն զի բազմապատիկ վտանգաց ենթարկուած են այդ սեւագլուխ առաջնորդք, մինչև որ Թաթարաց վերջին կատաղութենէ ազատեն իրենց հօտը: — Զրուցենք քանի մի խօսք ես այդ առաջնորդաց մասին:

1 Առաջնորդք պաշտօնականաց ռոճկեալ են 'ի տէրութենէ. Իգնատիոս Մետրապոլիտ 6550 ր. Պետրոս վարդապետ 2820 ր. Յակոբ կանոնիկոս 1250 ր. դարձեալ նոցա կառքերու և ձիերու համար տուած է տէրութիւնն 2779 րուբլի: Խառնաշփոթ գրեան. 'ի Ղրիմ:

## Չ

## ԱՌԱՋՆՈՐԴՔ ԳԱՂԹԱԿԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ

Խառաթախամ՝ գաղթականութեան խնդրոյն առաջնորդութեան մեծ պատիւը Յունաց Իգնատիոս մետրապոլտին կու տայ բոլորովին. (ինքն ևս նոյն ազգէն է). և Հայոց առաջնորդքը ըստ ձեռանէ կամ իբրև երկրորդական անձինք կը դնէ։ Մեք մեր կողմանէ ամբողջապէս այդ պատիւը յոյն մետրապոլտին ժառանգութիւն կը թողումք, սեփականելով ազգիս առաջնորդաց՝ կրած բազմապատիկ վիշտերը։ Սակայն ազգիս վերջին ժամանակի գրիչք չեն յօժարիլ բոլորովին մետրապոլտին սեփականել այն պատիւը. այլ մի մասն կը շնորհեն ժամանակին թեմակալ առաջնորդին Հայոց Ռուսաստանու, Յովսեփայ Երկայնաբազուկ — Արղութեանց արքեպիսկոպոսին, որ թէպէտ անձամբ գլուխ կեցած չէ գործոյս, այլ տէրութեան հետ բանագնացութեանց միջոց մեծ դեր խաղացել է. ինքն Արղութեանց սրբազան կը հաստատէ զայն յետագայ բանիւք. «Զամս երկուս 'ի դրունս մեծի կայսրուհւոյն դեգերեցաք»։ Սա ինքն հանդիսապէս օրհնած է 1779 ին, Նոր գաղթականաց Դոնի եզերք Նախիջևան քաղաքին հիմը, և ապա չորս տարի վերջը (1783 ին) քաղաքի կեդրոնը դրած է Ս. Լուսաւորիչ հոյակապ եկեղեցւոյն հիմը, պարգև և յիշատակ թողլով եկեղեցւոյն արծաթապատ ընտիր գրչագիր աւետարան մի, ինքնագիր յիշատակարանաւ. յորում կը գրէ իրեն ով և ուստի լինելը, և եկեղեցւոյն համար պերճանօք կը յա-

ւելու. «Ես հիմնարկեցի 'ի 1783 թուի»: Մի տարի վերջը դարձեալ այս Սրբազանս օրհնած է հիմն Ս. Խաչ վանքին Նախիջևանու, 'ի յիշատակ Ս. Նշան հին և հռչակաւոր վանքին Ղրիմու, հաստատելով անդ տպարան մի: Յովսէփ Սրբազան՝ մեր Ղրիմեցի գաղթականաց պիտոյքը հոգալէն վերջը, 1781 ին Բեսսարաբիոյ մէջ Գրիգորիուպոլիս հայաբնակ քաղաքին ևս հիմունքը օրհնած է, և ազգիս մեծամեծ ծառայութեանց և միանգամայն տէրութեան հաւատարիմ հպատակութեանց 'ի վարձ՝ ստացել է 'ի պետութենէ վեղարին վրայ կրելու ադամանդեայ թանկագին մետրապօլտական խաչ մի և փիլոն (мантіл): Այս 1779 ին կը ստանայ Ս. Աննայի առաջին կարգի ասպետական շքանշանը. և տարի անցնելէն վերջը (1800) բովանդակ ազգատոհմովն Ռուսաց իշխանազանց կարգը կ'անցնի, իբրև Նախարար քնեազ: Զհետանալով մեր նպատակէն՝ հարկ է յաւելուլ՝ որ թէպէտ պատերազմական միջոց ժամանակին, յորում Յովսէփ Սրբազան իբրև 'ի պաշտօնէ պաշտպան հանդիսացաւ հայկազանց Ղրիմու և Կովկասու, այլ սոցա վրայ յաւելլով իւր սեփական անձնական ձիրքերն, արթնութիւն մտաց, անխոնջ աշխատութիւն, վայելուչ և միանգամայն պատկառելի տեսիլն արտաքին՝ գրաւած են իշխանազանց ուշադրութիւնը, որով փառաց 'ի փառս յառաջադիմած է, շատ հեռու թողլով իրեն նախանձորդները:

Հայ հոգեորականի համար (չեմ ուզեր Մեսրոպատիպ ճգնազգեաց վարդապետները սոցա թուէն համարիլ) մի բան կը պակասէր Արղութեանց Սրբազանին, այն է ամբառնալն 'ի գերագոյն

աթոռ կաթողիկոսութեան, որում՝ ըստ գրութեան Արարատ օրագրի Էջմիածնի (1886) թիկնածու եղած է. սակայն երկինք այլազգ տնօրինած էն։ Թէպէտ և ընտրութիւնն յաջողած է և 'ի շարս հայրապետաց ազգիս Յովսէփ Դ կաթողիկոս ամենայն Հայոց կը յիշուի, այլ նա յԷջմիածին չհասած՝ վախճանած է բազմարդիւն կենօք 'ի Թիֆլիս (1801). մարմինը տեղափոխուած է յԷջմիածին, հանգչեցընելու 'ի քնարանի հայրապետացն Հայոց։

Ինչպէս կանխեցի գրեցի, Արղութեանց արքեպիսկոպոսն դաղթականութեան գործոյն մէջ անձամբ գլուխ կանգնած չէ, այլ այդ ծանր և վշտալի պաշտօնը կատարել է Պետրոս վարդապետ Մարկոսեան։ Գաղթականք տեղը հասնելէն վերջը, վարդապետին անունը բոլորովին կը նսեմանայ Արղութեանցի փառաւոր անուան դիմաց. արդէն իսկ կ'երեւի որ Պետրոս վարդապետ իբրև ըստ ձեռանէ ոմն գործ տեսած է, կամակատար կամ գործիք Արղութեանցի, այսինքն ազգիս տարագնացութեան ուղեկից, վշտաց և գանգատանաց վշտակից և կարեկից, փառաւոր հանդիսատարութիւնքը թողլով որբազան առաջնորդին։

Նոյնը կարելի չէ գրուցել Տէր Յակոբ Վարդերեսկիչ վարդապետի համար. սա իբրև գլխաւոր գործող անձն, 80 տուն հայ կաթոլիկաց առաջնորդելով յԵկատերինեսլաւ քաղաքը, հիմն կը դնէ փայտաշէն Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն 1781ին, և տասն և երկու տարի ազգիս վշտաց համբերութեամբ կարեկից լինելով, միջնորդ կը լինի տէրութեան, և բազում թախանձանօք յաջողցընելով վերադարձի հրամանը, 1790ին, վերստին

կ՚առաջնորդէ իւր հօտին 'ի Տաւրիա, և կը բնակեցընէ Թերակղզւոյս կեդրոնական քաղաքը՝ Խարասու, նոյն արտօնութիւնքը զորս տէրութիւնը գաղթական գնալնուն պատճառաւ շնորհել էր ժողովրդեան, դարձեալ սեփականելով իւր հօտին։ Այդչափ վիշտ և նեղութիւն կրելէն յետոյ, այն բազմարդիւն վարդապետն պատճառաւ ժողովրդեան անհամաձայնութեան՝ կը թողու իւր հօտը, և կը հեռանայ վշտագին դարձեալ յԵկատերինեսլաւ գաւառի մի գիւղի մէջ, և հոն կ՚անցընէ իւր ծերութիւնը, ու կնքէ բազմարդիւն և վշտալից կեանքը [1]։ Կայսերական պարգևագրին զօրութեամբ, գաղթականաց առաջնորդք՝ մինչև կենաց վերջը՝ իրենց պաշտօնին մէջ հաստատ պիտի մնան. Տէր Յակոբայ այդպէս հեռանալը յայտնի կը ցուցընէ՝ որ անկարելի եղել է նմա մնալ իւր պաշտօնին մէջ. և 12 տարուան միջոց կրկին անգամ տեղէ տեղ գաղթող ժողովուրդը, որք շատ ու շատ զոհողութեանց և զրկմանց ենթարկուած են, անշուշտ՝ անձեռնհաս բարձրագոյն իշխանութեանց դէմ մաքառելու, իրենց համբերատար հովուին դէմ ըմբոստացել են, որ աշխատած է միշտ կատարել ժողովրդեան կամքը. խօսքիս մեծամեծ ապացոյց մի է Հայոց կաթոլիկաց վերադարձն

1 Շատ տարի անցնելէն վերջէ (1859) Խարասուի Գեբարդոյ Հ. Վրթանէս վարդապետն Պուտուրեան, մարմարէ քանդակագործ տախտակ մի յարմարցընել կու տայ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն մուտից ձախակողմը, պատին մէջ, կոփել տալով բարեպաշտ Տէր Յակոբայ կիսապատկերը. տախտակին վերի կողմը դրել տալով վարդապետին անունը, պարգևագրին ստացումը և մահուան տարին։

'ի Խարասու։ Երբ տասնուերկու տարի անցնելէն վերջը դարձեալ կու գան Հայք 'ի Ղրիմ, և քարուքանդ կը գտնեն աշխարհքը, և երբ կը յիշեն որ յԵկատերինեօլաւ հազարաւոր տեսանարին հողեր, զոր տէրութիւնն ձրիաբար իրենց պարգեւել էր, և իրենք կարող չեղան շահուիլ, անշուշտ դարձեալ ոչ սակաւ գանգատ և տրտունջ հասուցել են Տէր Յակոբու ականջը. արդեօք տրտմունջ միայն. անտարակոյս նա ժամանակին յորդորած է ժողովուրդը որ մնան յԵկատերինեօլաւ, և աշխատին արդիւնաւորել իրենց տրուած հողը. այլ ռամիկ ժողովուրդն միշտ անցեալը կը յիշէ, և այդ պատճառաւ շատ անգամ իւր ներկայն և ապագայն կը թշուառացընէ։ Եթէ Խարասուցի հայ կաթոլիկ ժողովուրդն մնար յԵկատերինեօլաւ, որ այժմ մեծ և վաճառաշահ քաղաք է, և գիտնար արդիւնաւորել իրեն տրուած հողը, այսօր մեծամեծ հարուստ վաճառականներ պիտի լինէին Հայք, և պիտի ունենային իրենց ձեռքը ցորենաբեր դաշտեր։

Սակայն ըստ օրինակի ռամիկ մարդկան, աւելորդ է անցելոյն վրայ ափսոսալը. այժմ ևս եթէ Հայք չափաւորեալ կենօք շատանալով, աւելի աշխատասիրութեամբ գործեն, դարձեալ իրենց հանգիստ ներկայիւ՝ լաւագոյն ապագայ պիտի կարենան պատրաստել իրենց սերնդոց։

# Է

«Զի՜ գեղեցիկ իմ կորուսեալ հայրենիք.
Ո՜վ յիշատակ աղետաւոր եւ քաղցրիկ»։

Իտալացի բանաստեղծին այս երկու տողերը, զորս դրած է Բաբելացւոց գետոյն եզերք տարագրեալ Իսրայելացւոց բերանը, յոյժ վայելչական էին մեր գաղթական եղբարց ալ, երբ ընդ երկար ճանապարհորդելով հասան իրենց խոստացեալ երկիրը, Դոն գետին հիւսիսային ափանց վրայ։ Աչք մի կու տան նոքա այն վայրենի և անծառ անապատին, որոյ ծայրը հեռուն երկնից հետ կը միանայ, ուր չիք ոչ լեռ, ոչ բլուր և ոչ անապատ ամայի. ուր միայն տեղ տեղ չամբեր և եղէգնուտներ կ'երևան ամառ ատեն, վասն զի Դոն գետն վեր բարձրանալով գարնան իւր թումբերէն՝ կ'ողողէ երկիրը ցմեծ տարածութիւն, և ապա տակաւ յետս քաշուելով ճախճախուտներ կը թողու այս դին այն դին։ Զայս ամենայն տեսնալով տարագիր հայկազուն Տաւրիկացիք, կը լքանին, կը կոտրի սրտերնին, աչքերուն առաջ կը բերեն իրենց կորուսեալ հայրենիքը՝ հեշտին ելևէջներով, հոյակապ մայրաքաղաքն Կաֆա՝ իւր 36 ծովահայեաց և գմբէթազարդ եկեղեցեօք, այգիներով և պարտէզներով, Սուրխաթ նսեմաստուեր խիտախիտ անտառներով, և անոնց մէջ վանքերով և աբեղայից հողետներով. Կէօք-Թէփէ՝ բարձրաբերձ ժայռերով. Սուլտան-Սալա, Թոփլու, Օրդալան, Սօվուք-Սու, Սոլդայիա, իրենց կանաչազեղ բլուրներով, այգիներով, պտղատու պարտէզներով, անտառներով. կը հառաչեն նոքա սրտերուն խորե-

րէն. երթալով կը բազմապատկի Նոցա դիմաց հեռաւոր Տաւրիոյ գեղեցկութիւնը. կը հալի Նոցա սիրտը երբ կը յիշեն որ անդարձ պիտի լինի իրենց պանդխտութիւնն, « ո՜վ յիշատակ աղետաւոր և քաղցրիկ »։ Կը Նզովեն այն ժամը՝ յորում Թողին զՂրիմ, կ'երդնուն որ անպատճառ վերադառնան ու վայելեն իրենց պապենական այգիներն ու պարտէզները. կը բողոքեն կը պաղատին, այլ լսող չի լինիր։ Քանի մի գերդաստանք ինչպէս Տէօլվէթեանքը կ'անցնին յԵկատերինեսլաւ իրենց կաթոլիկ եղբարց մօտ, և ապա Նոցա հետ 'ի միասին կը վերադառնան 'ի Ղրիմ. այլք ոմանք գիշերախառն կ'ուզեն վերադառնալ փախչելով, այլ սոցա առաջ պատ կ'ելնեն Խազախաց սուինք։ Կամայ և ակամայ կը խոնարհին առ ժամն ճակատագրին անողոք օրինաց։ Յովսէփ սրբազան՝ Նոցա Թեմակալ առաջնորդը շատ յորդոր և խրատներ կու տայ, որ Ողորմած կայսրուհւոյն կամացը հնազանդին. մեծահանդէս կ'օրհնէ ըստ գծագրեալ յատակաձևոյն Նոր շինուելիք քաղաքին հիմունքը, և 'հին' միանգամայն ցանկալի անուամբ կը կնքէ քաղաքը Նախիջևան կոչելով։ Այս կը լինի 1779 ին, Ղրիմէ ելնելնուն երկրորդ տարին. կ'անցնին ամիսներ, կ'անցնին տարիներ, տապակէզ ամարանց՝ խստաշունչ ձմեռներ կը յաջորդեն, կու գայ գարուն. կը յիշեն գեղացիք իրենց Ղրիմեցի համանուն [1] գեղերն անտառազարդ բլուր-

1 Նախիջևանցի գեղացիք իրենց գեղերուն Թաթարահնչիւն անուններ տուած են, 'ի յիշատակ իրենց հին բնակութեան Չալթըր (Օրդալան), Մեծ Սալա, Սուլտան – Սալա, Թոփտի և Նեսվեթա. այս վերջինս Թաթարահնչիւն չէ, և Ղրիմու մէջ լսած եմ մինչև ցայսօր այդ անուամբ գեղ։

ներով, ուր գոյնզգոյն ծաղկունք հազարներով կը բացուին, ուր անտառք կը հնչեն սոխակին և սարեակին գեղգեղներով, դարձեալ կը բորբոքի նոցա մէջ Ղրիմ դառնալու փափաքը, ափերնուն մէջ կ'առնուն զատիկ կոչուած փոքր միջատը ու կը հարցընեն կողկողագին «Ղրիմին ճամբան որն է». անբան մեջատը չփոթած՝ մի այս և մի այն կողմը կ'երթայ։

Ղրիմեցի գաղթականաց մի մասն, կորուսեալ հայրենեաց ցաւով, միանգամայն չկարենալով դիմանալ օդոց խստութեան, այդ անսիրելի աշխարհքին մէջ կը փակեն աչքերը. Մնացեալք տակաւ կը հասկնան որ իրենք շատ անզօր են մաքառելու հզօր իշխանութեան դէմ. միւս կողմանէ հզօրագոյն ևս հարկ մի կը ստիպէ զնոսա 'ի Ղրիմ վերադարձի ցնորքն մէկ կողմ դնելով՝ աշխատութեան ձեռք զարնել. այդ հարկն էր կարևոր ապրուստի և առտնին պիտոյիցը։ Նեղը ինկած Նախիջևանցին, և ըստ վկայութեան նոցա, «ասեղով հորեր փորելու ստիպուած», կը սրէ գեղացին իւր խոփը, և Խազախաց աշխարհին հողն տակն ու վրայ կը բերէ. քաղաքացին, ըստ բնատուր հանճարոյ, վաճառականութեան ձեռք կը զարնէ, և շահաւոր կերպով իրեն կը ծառայեցնէ Դոնի ալիքը. Սիբերիայէ սկսեալ մինչև ցԿասպիական ծով, քաղաքէ քաղաք, տօնավաճառէ տօնավաճառ կը յաճախէ Նովկորոտ, Խարքով, Քիեվ, Փոլթաւա, կաշի, մորթ, ճարպ, իւղ, բուրդ, երկաթ, ածուխ, ցորեան, ձուկն և այլ և այլ ձեռագործ ապրանքներ՝ կ'առնու կը ծախէ, և քիչ ժամանակի միջոց այնպիսի նոր վաճառաշահութեան դռներ կը բանայ այն վայրենի աշխարհին մէջ, որ օտարք

կը Նախանձին, կ'ուզեն Նախիջևանու քաղաքացի գրուիլ, այլ Նախիջևանցիք Կայսրուհւոյն շնորհած պարգևագրին զօրութեամբ՝ կը մերժեն օտարաց մուտքը 'ի Նախիջևան։ Այս է անոր պատճառը, որ Նախիջևանու մօտ, Ռոստով կոչուած աննշան բերդը կամաց կամաց 100,000 բնակչով մի մեծ քաղաք կը դառնայ. ուր բնական ճամբով կ'անցնի Նախիջևանու առևտուրը. սակայն Ռոստով գիտնալով որ շնորհիւ Նախիջևանու է իւր գոյութիւնը, տակաւ մօտենալով բարեկամութեան ձեռք կը կարկառէ. Նախիջևան իր առանձնաշնորհութիւնքը և ամփոփութիւնը պահելու մտքով, հեռու կը բռնէ զինքը. այլ կու գայ ժամանակ և արդէն մօտ է, որ այդ երկու քաղաքներ իրարու պէտք է խառնուին. զգուշանալին այն է՝ որ մեծը զփոքրը չկլանէ բարոյապէս։

# Ը

## ՆՈՐ ՆԱԽԻՋԵՒԱՆ

Մայիսի 6ին, ժամը կէս օրէն վերջ հինգ և կէս հասայ Նախիջևանու դրկից Ռոստով մեծ քաղաքը. այլ զի վախճանս մեծամեծ քաղաքաց ժխորիւ զուարճանալ չէր՝ իսկոյն փոքրիկ կառք մի վարձեցի 'ի Նախիջևան գնալու։ Ռոստովի սալայատակ մեծ փողոցներէն անցնելու միջոցիս, երկու կողմը բարձրացած աղիւսակերտ վայելչաձև տներուն վրայ էր աչքս, մանաւանդ հարուստ խանութներուն վրայ, որոց ճակատը կը տեսնէի զարդարուած ոսկէտառ վերտառութիւններով։ Ար-

դէն գիտէք՝ որ Ռոստովի վաճառականութեան մի մասն Նախիջևանցի Հայոց ձեռքն է. սակայն և ոչ մի հայագիր վերտառութիւն չզարկաւ աչքիս բաց յայտմանէ, հայերէն մականուանքն ևս այլայլած գտայ, այլ և յախուռն կերպով թարգմանած. Նոյնպէս գեղեցիկ եան վերջաւորութիւնը ովի փոխուած: Շատ կարելի է որ Նախիջևանցիք, կամ Ռոստովցի հայկազունք՝ այդ մասնկանց և վերջաւորութեանց խնդիրը բծախնդրութիւն համարին. սակայն ազգային ոգւոյ նախանձախնդիր մարդը, փոքրէն մեծը գուշակելով՝ անկարելի է որ չվշտանայ: Ո՞ւր են այժմ ասկէ երկու հարիւր տարի առաջ մեծանուն և փարթամ Եանովիչ, Վարդերեսևիչ, Ակոբովիչ, և այլ Լեհաստանի հայկազուն վաճառականներն և ազնուականներն. չէ որ նոքա տակաւ հեռանալով յազգութենէ՝ բոլորովին օտարացան լեհանալով:

Առաջ գնալով, քաղաքին արուարձաններուն կը մօտենայի, և ահա տափարակ դաշտին վրայ յերևան եկաւ հայաբնակ Նախիջևան քաղաքն իւր կանոնաւորեալ փողոցներովն և գմբէթազարդ եկեղեցեօք, բարձրաբերձ զանգակատամբ, որոց գագաթան ոսկէզօծ խաչերը դէպ 'ի մուտս խոնարհած արևուն ճառագայթներէն գեղեցիկ կը ցոլային:

Նոյն օրը թագաժառանգ պայազատին Նիկոլայոս Ալեքսանդրովչի ծննդեան օրը լինելով, բոլոր քաղաքը եռագոյն դրօշակներով զարդարուած էր. օրը հանդարտ և ջերին, փողոցաց մէջ բազմութիւն զբօսասիրաց, այլ որ սխրալին և քան զամենայն ինչ ինձ հաճոյական, ամէն կողմանէ Հայոց բարբառը կը լսէի, գրեաթէ ամէն տեսածս

հայկական տիպար էր. յոյժ ախորժելի և անմոռանալի զգացմամբ տրոփեց սիրտս, երբ Ս. Լուսաւորիչ փողոցէն առաջ գնալով՝ յանուն Սըրբոյն կանգնած հոյակապ եկեղեցին դիմացս ելաւ, 'ի ճակատուն կրելով ազգիս լուսատուին վայելչանկար պատկերը, անհրաժեշտ Տրդատ Թագաւորն Հայոց՝ առաջի Սրբոյն ծնրադիր։

Անցեալ տարի աշնան, օգոստոս 20, Փոտոլեան գաւառին մէջ հայաշէն Կամենից քաղաքը մտնելու միջոցիս, բոլորովին տարբեր զգացում կրած էի, քան ինչ որ այժմ զգացի. հոն քարակարկառ երկյարկ բերդի դռնէն կ'անցնէի Հայոց քաղաքը մտնելու համար, իսկ աստ անբերդ և անդուռն՝ հայութեամբ կենդանի քաղաքին մէջ ազատ կը շնչէի. հոն ինչպէս եղանակն աշնան, նոյն և ազգիս աշունը կամ ձմեռը պիտի տեսնէի, իսկ աստ՝ ազգս գարնան վիճակի մէջ, ուր էր թէ երկայն լինէր այդ գարունը, և երկարագոյն ևս ամառն յաջորդէր նմա։ Երկու քաղաքներս ևս Անեցի հայկազանց չէնք, օտար աշխարհաց մէջ՝ մին ԺԴ դարուն չէնք, քարաշէն պատեր չորս կողմը, որոց պտոյտը ջրալիր խրամ, որպէս զի Թշնամին ազատ մուտք չգտնէ, մինչ երկրորդս ազատ յահէ Թշնամւոյն, անպարիսպ և անխրամ ԺԸ դարուն վերջերը շինուած. Առաջնոյն մէջ Հայկազունք երկար տարիներ իրենց դերը փառաւոր կերպով խաղալէն վերջը՝ քաշուել են, Իսրայելի[1] որդւոց Թողլով Թատրը, իսկ աստանօր նոր կը սկսին ազ-

1. Այժմ Կամենիցի վաճառականութիւնը Հրէից ձեռքն է՝ մինչդեռ երբեմն Հայոց ձեռքն էր ինչպէս քաղաքին, նոյնպէս և աշխարհին վաճառականութիւնն։

գայինք դպրութեամբ լուսաւորեալ, ազգիս անունը արգոյ ընծայելու օտարաց առջև։

Նախիջևան հայաբնակ քաղաք է 16,000 բնակչով, որոց թէպէտ իբրև կէսն օտարազգի կը համարուին, այլ քաղաքին մէջ հայ տարրն է տիրողը, Մնացեալք ծառայ մարդիկ են։ Նախիջևանի հայ բնակչաց վրայ խօսելով մեզ հարկ կը լինի սակաւ մի ուղիղ Նպատակէն խոտորելով, ընդհանուր գաղթական Հայոց թիւերով զբաղիլ, որ կարծեմ հետաքրքրական լինի ընթերցողաց։ Խառթախա՝ վաւերական աղբիւրներէ հաւաքելով, ընդհանուր գաղթական քրիստոնէից թիւը՝ որ ելած են 'ի Ղրիմէ 1778 ին՝ 31,386 կը դնէ. այս ժողովրդոց կէսը (եթէ ոչ և աւելին) Հայք են, զի քիչ վերջ ազգային գրիչք 3000տուն Հայոց կը գրեն. եթէ տուն գլուխ հինգ հոգի հաշուելու լինիմք, Հայոց թիւը 15,000 կը լինի։ Այժմ Նախիջևան 8,000 կը հաշուի քաղաքին ազգայնոց թիւը, նոյնչափ կամ սակաւ մի պակաս՝ Նախիջևանու հինգ գեղերուն բնակիչք, ընդ ամէնը բոլոր հաշւով՝ Նախիջևան իւր գեղերով 16,000 հայ Անեցի գաղթականք, եթէ սոցա վրայ աւելցընեմք 5,000 Ղրիմեցի Հայք, որք դարձել են յԵկատերինեսլաւէ, կը լինի 21,000։ Ազովեան կամ Եկատերինեսլաւ գաւառի շատ քաղաքաց մէջ և Կուբան գետի վրայ ցրուած Հայերն, հաւանական է որ 9ը կամ 10ը հազարի հասնին. որով Ղրիմէ ելնող հայ գաղթականաց թիւը, 'ի միասին հաշուելով վերադարձողները, կը լինի 30,000։ Հարիւր տարուան միջոց կրկնապատիկ եղած է Հայոց թիւը, որ թէպէտ օտար ազգաց ազգահամարին նայելով չէ մխիթարական, այլ այս պէտք

է 'ի նկատի ունենալ, որ բազմաթիւ եղած է՝ մինչև Եկատերինեսլաւի կլիմային վարժելու հայ մեռելոց թիւը։ — Այլ մեք դառնանք 'ի Նախիջևան։

Քաղաքը հեռուէն դիտելով՝ չափաւոր տարածութեամբ քրիստոնեայ քաղաքաց երևոյթ կ'ընծայէ, որոյ հաւատոյք են վեց եկեղեցեաց կաթուղիկէք և զանգակատունք։ Բուսականութեան մասին շատ աղքատ է քաղաքս, որոյ վրայ այժմ նոր կը սկսին խնամք տածելու։ Քաղաքիս ներքին և կամ քաղաքական կառավարութիւնքն յուսալիր ապագայ կը խոստանայ հայ սերնդոց, դպրոցաց յաճախութիւնն, որոց վրայ մեծամեծ գումարներ կը ծախեն, պիտի հաւաստեն օր մի գրածս. այժմ ևս մօտ հազարի երկսեռ ուսանողք դպրոցայ, ինչպէս քաղաքին նոյն և եկեղեցեաց կենդանի զարդարանք են, իրենց միանձև զգեստներով։

Այլ ես դեռ փոքրիկ կառքով առաջ կ'երթայի, դէպ իմ առանձնական մեծարգոյ Եպիփան Պոպոյեանցի տունը, որ արդէն 'ի վաղուց ինձ ծանօթ էր և բարեկամ։ Պ. Պոպոյեանցի տունը Ս. Լուսաւորիչ փողոցին վրայ, գեղեցկաշէն տանց մին է, առաջ գնալու միջոցիս աստի և անտի շատ հայերէն բացատրութիւնք յականջս կը հասնէին, որք թէպէտ ինձ համար նոր չէին, վասն զի մեծաւ մասամբ նոյն է Նախիջևանու հայ բարբառը Ղրիմեցւոյն հետ, սակայն և այնպէս այդ հեռաւոր աշխարհին մէջ, և այն 'ի փողոցի, Հայոց լեզուն լսելը ինձ շատ ախորժելի կու գար. ուշադրութեամբ մտիկ կ'անէի՝ որ բառ մի ուշադրութենէս չվրիպի. մին բարձրաձայն կ'ասէր ընկերին. «Հածէ ինա բանը գիտիսու, սախըն չմոռանաս».

ընկերը կը պատասխանէր. «Ատ ինչ կալանի է, հիչ կը մոռնամ եղիլ է, ատ շատ ինթեռէսնի բան է ու». երրորդ մի «Աճ իրկուն սատ (գրօսարան) կու գամ». չորրորդը կը պատասխանէ «Օխթնի ութնի արալըխ խայրէթ կ'անիմ գալու, առաջ չիմ կարնալ». ասոնք և այլ ասոնց նման աղայ-մաղայ, ափաղ-թափաղ, ձորով-մորով բացատրութիւնք, որոց քչէն կարելի է մնացեալն գուշակել։ Այս ևս հարկաւոր է աւելցընել, որ Նախիջևանցիք իրենց համար առանձին զատ քաղաք և բնակութիւն ունենալով, յօտարաց ամենևին ակնածութիւն չունին, և տան և փողոցի մէջ ամենևին տարբերութիւն չեն դնել. շատ անգամ տան մէջ և այն՝ ցած ձայնով լինելու բացատրութիւնք կամ խօսք, հրապարակներու վրայ բարձրաձայն կը հնչեն։ Այլ ինձ, այս պարագայիս մէջ, ամենայն բառ, ամեն հայկական խօսք կամ գրոյցք քաղցր կը հնչէր. այդպէս սիրելի է սովորութեան օրէնքըն, և ախորժելի հայրենեաց յիշատակն։

Հասայ շուտով մեծարգոյ բարեկամիս տունը, որոյ սիրալիր հիւրընկալութիւնն առաջին վայրկենէ մինչև մեկնելու օրս, մեծապէս զիս պարտաւորած է։ Նախիջևանու արժանի յիշատակի շինութեանց վրայ խօսելէն առաջ մի քանի խօսք գրուցեմ դոցա աշխարհաբար լեզուին վրայ, որոյ աղաւաղմունքն արդէն քանի մի բառով քիչ մ'առաջ յիշեցինք։ Այդ բարբառոյն վրայ յիրաւի երկարօրէն խորհրդածել կարևոր է. զի այդ այն սրբազան աւանդն է՝ զոր յընթացս 600 տարիներու պահած է իրեն սեփական յատկանիշ Անեցի ոստանիկ ժողովուրդն, որով կը զանազանի յօտարաց, որով կը տածէ ոգի ազգի և սէր հայրենեաց։

Թէպէտ ռամկին բերանը աղաւաղ եւ երևնայ, բազմութեամբ Թաթար և ռուս բառերու. այլ հիմը և արմատը գեղեցիկ է և վայելուչ և քաղցրահնչիւն քան զամենայն գաւառական բարբառ հայկական լեզուիս։ Եթէ հայագէտ մի ուշադրութեամբ միտ դնէ, կրթեալ և հայրենագէտ Նախիջևանցւոց երիտասարդաց և օրիորդաց, որք հայկական տառերն նազանօք և փափուկ հնչելով կը խօսին իրենց անեցի լեզուն, թօթափելով եկամուտ խորթաձայն օտարոտի բառերը, կրնայ ստուգել գրուցածիս ճշմարտութիւնը։

Ոմանք Նոր հայագէտք, իրենց Նորահնար լեզուով պանծացեալ համարձակ կը գրեն պախարակելով քանի մի օտարամուտ բառք Նախիջևանցւոց բարբառոյն՝ ի բերան ներտած. այլ լեզուաց կանոնը և կազմը քննողին յայտնի է գեղեցկութիւնը Անեցւոց բարբառոյն։ Բացատրութեան անկարօտ ճշմարտութիւն մի է, որ որչափ ազգ մի կրթուի և յղկուի՝ նոյնչափ այն ազգին լեզուն մատենագրութեամբ կը կոկուի։ Նախիջևանցիք և Ղրիմեցիք գերահռչակն Անւոյ Բագրատունի ոստանիկ ժողովրդեան մասն են. ինչպէս քաղաքն Անի աննըման է գեղեցկութեամբ, այլոց քաղաքաց աշխարհիս մերոյ, նոյնպէս կը վայլէր որ լինի նորա ժողովրդոց բարբառը։ Թաթարաց լուծը և այլ օտար ազգաց ազդեցութիւնը եթէ տակաւ Նախիջևանու բարբառէն վերցուի մաքրուի, անշուշտ այդ բարբառը ամենայն աշխարհիկ բարբառէ աւելի քաղցրահնչիւն և ճկուն պիտի հանդիսանայ։ Նախիջևանցիք այդ բանին դրաէն վարժապետաց կամ հեղինակութեանց կարօտութիւն չունին. շատ գեղեցիկ, միանգամայն ախորժալուր հնչմամբ կը խօ-

սին քաղաքին կրթեալ մասն. այդ գործոյն համար մեծ դիտութիւն և մեծ խելք ևս հարկաւոր չէ. ամենայն հայկական ականջ կը զանազանէ որ աւելի ընտրելի է խորդաձայն թաթար բառերուն տեղ՝ կոկ հայերէնը գործածել. ինչպէս շըտըխի տեղ՝ հիմայ, աղայ մաղայի տեղ՝ բոլորովին, ափալ թափալի տեղ՝ աճապարելով ճէշպէթի տեղ՝ հարկաւ։ Նոյնպէս վերջին ժամանակի ռուս եկամուտ բառերուն տեղ նորա հայկականը գործածել. գրագէտ Նախիջևանցին չի գրուցել սիռքատոռշբիռն, այլ թացութիւն խոնաւութիւն; չի գրուցել ուշիցա, այլ փողոց. ոչ փլոշչատ, այլ հրապարակ. ոչ քուչուռ, այլ կառավար։ Ըստ իմ կարծեաց Նախիջևանու հին և ընտիր աշխարհաբառին խանգարման մեծապէս պատճառ կրնան լինել, գեղերու ոմանց մէջ գտնուած կովկասցի ուսուցիչք. Նախ սոքա տղայոց զարգացումը հարկաւ քանի մի տարի ետև կը ձգեն, զի ոչ տղայք վարժապետին գրուցածը կը հասկնան, և ոչ վարժապետը տղայոց լեզուն. երկրորդ հաւանական է որ շատ անգամ տղայոց գեղեցիկ անեցի բացատրութիւնք՝ անիմանալի լինելով վարժապետաց համար, ծաղրածութեան նիւթ կը լինին 1։ Որչափ գովելի բան կը լինէր, եթէ Նախիջևանցիք շուտով իրենց դպրավանուց և այլ վարժարանաց մէջ գեղերու և քաղաքին ուսումնարանաց համար վարժապետ պատրաստէին. որով մեծապէս՝ փոքր տղայոց իրենց մայրենի գեղեցիկ աշխարհաբար լեզուաւ զարգանալուն պատճառ կը լինէին։

1. “Մանր մանր մի ասել” կովկասցւոյն անիմանալի է. «խելքս միտ կու դայ», նոյնպէս անսովոր կովկասցւոց. “Ճրագ անցուր.” մարէ տեղ. “ապուշ տուեց լեռնէն վար”, թողուց, և այլն։



## ԵԿԵՂԵՑԻՔ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆՔ ՆԱԽԻՋԵՒԱՆՈՒ

*Նախիջևան չէն և պայծառ վեց եկեղեցի ունի քաղքին մէջ. Ս. Լուսաւորիչ մայր եկեղեցին իւր ընդարձակութեամբ և ճոխութեամբ կը գերազանցէ զայլս. 'ի միջավայր քաղքին շինուած է՝ մեծագործ և հոյակապ, չորս կողմը ծառաստան, զոր կը շրջապատէն դրսէն երկաթեայ ճաղք, լայնանիստ է կաթողիկէն, արտաքոյ և 'ի ներքոյ նկարեալ. բարձրաբերձ է զանգակատունն՝ որ մուտից դաւթին վրայ կ'ամբառնայ: Եկեղեցեաց ճարտարապետութիւնն առ հասարակ տեղական կամ ռուսական է, աւելի պիտոյից և յարմարութեան ուշ դարձուած է՝ քան թէ գեղեցկի և վայելչութեան. այս դատողութիւնս բոլորովին սխալ կը լինի գերեզմանոցի Ս. Կարապետ նորաշէն եկեղեցւոյ մասին, որոյ վրայ առանձին խօսիլ հարկ է: Քաղաքիս եկեղեցիք ամէնք ալ ունին մուտից առաջ մեծամեծ գաւիթներ, որոց վրայ կը բարձրանան զանգակատունքն. յաջմէ պահարան, յորում կը պահուին ընդ այլ եկեղեցական սպասուց՝ բազմաթիւ գրչագիրք. 'ի ձախմէ ժամակոչի կամ պահապանի համար սենեակ մի: Եկեղեցեաց ներսի կողմէն, մուտից դրանց վրայ կան վերնատուններ. ընդարձակ է եկեղեցեաց մէջն և առհասարակ մաքուր կը պահուին. դասը զատուած է եկեղեցիէն, խորանները միշտ բարձրաբերձ խաչկալներով զարդարուած են, ուր բաց 'ի խորանին պատկերէն, այլ շատ պատկերներ կան, յորոց ոմանք*

արծաթի հանգերձիւք պաճուճեալ են. խորանաց ետի կողմը, 'ի միջավայրին մի մեծ խաչ, վրան փրկչական արձանով, և ընդ աջմէ ընծայարան, խաչկալին ետևի կողմը։ Սեղանից վրայ բաց 'ի արծաթապատ խաչէ և աւետարանէ՝ կայ ըստ Ռուսաց եկեղեցեաց՝ եօթնաջահեան աշտանակ մի։

Նախիջևան հասնելուս երկրորդ օրը՝ արգոյ բարեկամիս հետ՝ առաջին այցելութիւն Ս. Լուսաւորչիս տաճարին տուինք, ուր արդէն պատարագն առաջ գնացեր էր, այլ 'ի միջավայր դասուն կանգնած ալախօսիկ դպիրն՝ իմ ուշադրութիւնս գրաւեց, իւր ախորժալուր երգեցողութեամբ։ Անմիջապէս ժամէն վերջը ծանօթանալով եկեղեցւոյն աւագ երէց Տէր Խաչատուր Զարիֆեանի հետ, մտանք պահարանը, ձեռագիրքը աչքէ անցընելու համար։ Լուսաւորչի պահարանը անհամեմատ կերպով հարուստ է գրչագրօք, քան այլոց եկեղեցեացը. ուր կան երկու հարիւրէն աւելի գրչագիրք, ըստ մեծի մասին հոգևոր գրեանք։ Մեծայարգ են երեք մագաղաթեայ աւետարանք՝ Կիլիկեան յիշատակարանօք. կան և 'ի Կաֆա գրուած պատկերազարդ աւետարանք, որոց նկարք ներկայացընեն փրկչական առակները. այս պատկերք նկարչութեան արուեստի մասին՝ գերազանց երևցան ինձ՝ քան մինչ ցայսօր տեսածներս հայկական ձեռագրաց մէջ, որ թերևս արդիւնք լինի մերայնոց ընդ Գենուացւոց ունեցած յարաբերութեանց. բաց յայսցանէ Լուսաւորչի պահարանին մէջ կը գտնուին ընտիր Ճաշոցք, Յայսմաւուրք, Ճառընտիրք, երկու օրինակ Սարգիս Շնորհալի, Գանձարանք, Շարականք, Պատարագամատոյցք, ընդհանրապէս մաքուր գրուած, որոց երեք չորրորդ մասը 'ի ճաշակաւոր

մայրաքաղաքն Կաֆա և 'ի հոյակապն Սուրխաթ գը-րեալք, ընդ հովանեաւ զանազան եկեղեցեաց, 'ի ձեռն փցուն և մեղսամեղ երիցանց և աբեղայից։ Ձեռագիրքս թղթատած մինչոցիս, որոց կոկիկ և վայելչաձև գրչութեանց վրայ ոչ սակաւ ախորժա-նօք կը զմայլէի, մօզք լատին բառերն կ'որոճայի Sic transit gloria mundi. Երբեմն բազմաթիւ Հայ գաղթականք, չէն Հայ եկեղեցեօք և բազմագոյն ևս Հայազէտ հոգևորականօք պայծառացեալն Կա-ֆա, այժմ նկուն և անփառունակ. չաղք յեկե-ղեցեաց հիմնայատակ, մնացեալ դատարկ, և նո-ցա ծուխն և ժողովուրդ՝ սաս՝ Դօնեան աշխարհ-քը չէնցընելու քչուած։

Եթէ այդ ձեռագիրք, նոյնպէս և այլ եկեղե-ցեաց մէջ գտնուածք, նոյն և որք առանձնակա-նաց մօտ կը գտնուին, մանր քննուին, ոչ սա-կաւ տեղեկութիւն կարելի է հաւաքել, ինչպէս ազգիս ընդհանուր պատմութեան, նոյնպէս և աւե-լի ևս Ղրիմեցի գաղթականաց մասին։ Մեծա-պատիւ Գրիգոր աղա Սալթիքեան, որ այժմ ար-ժանաւոր քաղաքագլուխն է Նախիջևանու, խոս-տացաւ Ս. Լուսաւորչի մօտ շինել տալ առանձին գրատուն գրչագրաց համար, և հոն ժողովել այդ թանկագին յիշատակարանները։

Երկու մեծ ծառայութիւն պիտի մատուցանէ ազգիս Գրիգոր աղա այդ գրատան շինութեամբ. մին՝ հաւաքելով 'ի մի տեղ ձեռագիրները, կոր-սուելու և սաս և անդ ցիրուցան լինելու վտանգը կը վերանայ. և երկրորդ՝ ազգիս դպրութեան համար վաստակող անձին մեծ դիւրութիւն կը լինի, ամփոփ գտնելով այդ կարևոր գործիքը. կը փա-

փագիմք որ օր մի սառը իրագործէ Գրիգոր աղա իւր խոստմունքը [1]։

Միւս եկեղեցիք որ Նախիջևանու այլ և այլ թաղերուն մէջ շինուած են, ինչպէս Ս. Համբարձման, Աստուածամօր, Ս. Նիկողայոսի, Ս. Գէորգայ, Ս. Թորոսի, մասնաւոր յիշատակութեան արժանաւոր բան չունին։ Ի յիշատակ համանուն կաֆայեցի եկեղեցեաց, անշուշտ շինած են Նախիջևանցիք, քաղաքին հիմն օրհնուելուն պէս՝ փայտաշէն եկեղեցիք, ուր և զետեղուած են Ղրիմէ բերած սրբազան համանուն եկեղեցեաց սպասքը և սրբազան անօթները, և ապա ժամանակ անցնելէն վերջ՝ փայտաշէնք 'ի քարաշէն փոխուած են։ Ս. Լուսաւորչի ընդարձակ բակին մէջ տեսնելով քառակուսի մատրանաձև փոքրիկ անդուռն և անպատուհան շէնք մի, որ սրբոյն պատկերը կը կրէր վրան, հարցուցի թէ ինչ վախճանի համար է. ինձ պատասխանեցին թէ հին եկեղեցւոյն խորանին տեղն է, որ ոտնակոխ չլինելու համար պատսպարել է Յովհաննէս աղա Փոփովեան [2]։

Խորհուրդ կու տամ ես ամէն հայ ճանապարհորդի, նախ հեռուէն և ապա 'ի մօտոյ լաւ մի զննել գերեզմանոցի Ս. Կարապետ նորաշէն եկեղեցին որ իւր ճարտարապետութեամբ և վայելուչ կոնաձև

1. Գ. Կարապետ Եղիան արդէն 10–15 տարիներէ 'ի վեր գրած է Ս. Պետերբուրգէն առ ականաւոր Նախիջեւանցիս, որ սոքա թանգարան մի շինեն քաղաքին մէջ ամէն տեսակ հնութիւններ պահպանելու համար. սակայն ցայսօր ժամանակի այս կարեւոր բանին հոգ տանող չէ եղած։

2. Յովհաննէս աղա Փոփովեան այժմ հանգուցեալ 100000 ռուբլեաց գումար յօգուտ ազգային՝ բարեգործական հաստատութեանց, բաց յողջութեան միջոց տուածներէն։

կաթողիկէիւ, երկնաշու կամարօք, բարձր սիւներով և քանդակագործ խարիսխներով և խոյակներով, կը յիշեցընէ կամ լաւ ևս կը պատկերացընէ աչաց դիմաց՝ տարաբաղդն Անւոյ գեղեցկագոյն եկեղեցեաց մին։ Եկեղեցւոյն մէջ ամենայն ինչ ազգային ճաշակով յարդարուած է, և հայութիւն կը շնչէ. ազգային սրբոց կենդանագիրք կը զարդարեն պատերը, Թագապսակ հայրապետք ազգային տարազով, սրբակրօն վարդապետք վեղարիւ զքողեալք։ Աւագ խորանին պատկերը նմանութիւն է Մուրիլլոյ սպանիացի նկարչին՝ Աստուածամօր անարատ յղութեան պատկերին, վերի կողմը նկարուած է ամենասուրբ Երրորդութիւն, որ զհրաշագեղ Կոյսը կը պսակէ երկնային պսակաւ Թագուհի երկնի և երկրի։ Քրիստոնէական սուրբ հաւատոյս մերոյ էական մասունք համդերձ պատմութեամբ Հայաստանեայց եկեղեցւոյ, յանդիման կ՚երևնայ փոքր եկեղեցւոյս մէջ, որ կը կրէ զանուն Ս. Կարապետի՝ պաշտպանի ազգիս Հայոց։ Եկեղեցւոյս ճարտարապետն եղած է Պ. Բաղտասար Հազր—Բէգեան՝ հայ երիտասարդն, որ ճարտար յատակագծին համար ստացել է վարձ արծաթի միտալ Ս. Պետրբուրգի ակադեմիայէն. վերակացու գործոյն եղած է Յովհաննէս աղա Խաթրանեան. բովանդակ եկեղեցին շինուած է տրովք բարեպաշտ տիկնոջ Ակուլինէ Աղաճանեան. 1882ին Մակար սրբազան, յետոյ կաթողիկոս ամենայն Հայոց, հանդիսապէս օծած է։ Ինքնին Յովհաննէս աղա, ոգևորեալ կերպով խօսելով քննողիս հետ՝ եկեղեցւոյ մասին, կը հարցընէր թէ «Օտարոտի իմն կամ ոչ ազգային՝ արդեօք սպրդած է շէնքին». վասն զի նա բանեցուցել է ամենայն ջանք՝ որ ամենայն

ինչ հայկական լինի. ես ազդեցի՝ որ «Բաց 'ի եօթնաջահեան աշտանակէն որ աւագ խորանին վրայ է, օտար բան չտեսայ. զի իմ տեսած տաւրիացի հայկական եկեղեցիք խորանին միջավայրը ունին մի խաչ, և երկուստեք երեք կարգ փոքր աստիճանաց վրայ՝ մի մի աշտանակ, ընդ ամէնն վեց աշտանակ»: Յովհաննէս աղա աւելցուց. «Եօթնաջահեան ոսկեզօծ աշտանակը 700 ռուբլիով գնուած է, սակայն և այնպէս որովհետև չէ ազգային, փոխելը հարկ է»: Եթէ Յովհաննէս աղայի ոգւով լինէին միւս այլ գործող անձինք Նախիջևանու, աւելի պայծառ պիտի փայլէր ազգութիւն 'ի Նախիջևան: Սակայն և այնպէս չէն է ազգութեամբ Նախիջևան և կենդանի լեզուն ազգիս ամեն տեղ: — Այսչափ՝ եկեղեցեաց մասին:

Դպրոցաց մէջ անշուշտ առաջին տեղին պէտք է գրաւէ դպրավանքն կամ Թեմական դպրանոց վիճակին (Սեմինարիում), յոր դասական վարժութիւն կը ,ստանան ուսանողք՝ հմտութեամբ հին յոյն և լատին լեզուաց, որոց աւանդողն և միանգամայն պաշտօնավար-տեսչի վարժարանին է Գ. Գալուստ Զարըխեանց՝ տասուերկու ազգային վարժապետօք:

Ապա արհեստական վարժոցը ընդ խնամով Գ. Ռափայէլ Պատկանեանցի, ազգային պուետի և հեղինակին Գամառ-Քաթիպայի:

Կոկոյեան գիշերօթիկ օրիորդաց ուսումնարան, յորում են 60 օրիորդք:

Հռիփսիմեանց կոչուած օրիորդաց վարժարանը, յորում 123 են ուսանող օրիորդք:

Ծխական դպրոցք Ս. Համբարձում և Ս. Թորոս եկեղեցեաց մօտ՝ մանչերու համար:

Բաց յայսցանէ կան և ուռ վարժարանք և մարզոցք, որոց մին Թէպէնտ և կրէ ազգիս երանելի Թարգմանչաց անուանքը 'ի ճակատու, այլ եթէ երանելեաց ոգին հոն չի տիրել, միայն պիտակ անուանքն՝ չեմ կարծել որ մեծ օգուտ բերեն Նախիջևանցւոց։

## Ժ

## ՍՈՒՐԲ ԽԱՉ ՎԱՆՔ

Սուրբ խաչ Նախիջևանու հիւսիսային կողմը, քաղաքէն եօթն վերստ հեռաւորութեամբ, ապառաժներին վրայ շինուած է. դիրքը վայելուչ է, այլ եկեղեցւոյն ճարտարապետութիւնը նոյն է՝ ինչ որ ունին քաղաքին եկեղեցիք։ Սորա հիմը օրհնուած է 1784 ին Յովսէփ Արղութեանց. վանքը կամ առաջնորդարանն նոյն ապառաժին վրայ շինուած են անշուք սենեկներով. ապառաժէն քաղցրահամ ջրոյ աղբիւր կը հոսի դէպ 'ի վար, ուր շինուած է ընդարձակ պարտէզ։ Վանքն ունեցել է ժամանակաւ կոկիկ մի հայ տպարան, ուր և տպուած են զանազան գրեանք. այժմ կարեւորութիւն չկայ տպարանի, վասն զի Ռոստովի մէջ Գ. Յովհաննու Տէր—Աբրահամեան տպարանը իւր արագատիպ մեքենայիւք, նոյնպէս և Նախիջևանու մէջ Պ. Յարութեանը, կարող են տպել և հրատարակել արագապէս ամենայն հայ մտաց և գրչաց արտադրութիւնք։ Կայ այժմ վանքին մէջ դպրոց կամ կղերանոց, ուր քառասնիւ չափ աշակերտք, ընդ խնամով մեծապատիւ վանահօր Տեառն Կիւրղի

Սրապեան՝ կը վարժին հոգևորական կենաց մի-ջոցները ուսանելով և ազգային դպրութեանց մէջ յառաջելով [1]։ Այս ուսանողացմէ ոմանք բոլորովին հոգևորական կենաց կը նուիրեն զիրենք, և այլք Նախիջևանու կամ այլ եկեղեցեաց մէջ դպրաց պաշտօն կը վարեն։

Վանքիս եկեղեցւոյն մուտք աջակողմեան պատին այս յիշատակարանս կարդացի. «Շնորհօքն Աստուծոյ կառուցի զՍուրբ Խաչ վանքս, 'ի սմա զդըպրոց և զտպարան, ես Սանահնեցի Արղութեանց Շիօշ — Բէկի որդի, և սուրբ Էջմիածնայ նուիրակ Ռուսաց երկրի Հայոցս առաջնորդ Յովսէփ արքեպիսկոպոս, 'ի կայսերութեան ամենայն Ռուսաց Եկատերինէ Ալէքսէյօվնայի երկրորդի, և 'ի հայրապետութեան Հայոց Տեառն Ղուկասու, աշխատութեամբ հոգևոր որդւոյ իմոյ Բայազիտցի Կարապետ վարդապետի։ Օծեալ եղև յամի Տեառն 1791 և 'ի Հայոց Թուականի 1240, 'ի սեպտեմբերի։ Այս յիշատակարանի մարմարիոնեայ քառակուսի քարը, ինչպէս կ'երևայ յետ 'ի հիմանց նորոգութեան տաճարին՝ վերստին ագուցած են որմին մէջ, վասն զի այլ նոր յիշատակարան մի կը ծանուցանէ մեզ, թէ 1863 ին «Ի հիմանց նորոգեցաւ այս Սուրբ Խաչ եկեղեցին՝ յորդորանօք Գերյ. Տեառն Գաբրիելի Այվազեան, հոգաբարձութեամբ ՊՊ. Գէորգայ Խաթրանեան և Աղեքսանդրի Ալաճալեան»։

1. Այս դպրոցս Մարդասիրական ընկերութեան խնամով և նպաստիւք կը յառաջադիմէ. իսկ այդ ընկերութիւնը իւր արդիւնքներով, պատուաւ է անխոնջ աշխատութեանց իմ սա-ղընջականի, Պ. Եղիփանոս Գույմոյեան։

Ի նմանութիւն՝ կամ լաւ ևս 'ի յիշատակ հին Գրիմեցի Սուրբ Նշան վանքին շինած են Նախիջևանցիք այս Նոր վանքս. այլ նախատիպը ոչ միայն իւր հնութեամբն՝ այլ և շատ մասամբ գերագոյն է քան զնորս: Հնոյն վրայ մինչև ցայսօր յայտնի կ'երևայ հայկական ճարտարապետութեան ճաշակ, վսեմութիւն, գեղեցկութիւն և ամրութիւն. միով բանիւ՝ ազգային պատմութեան տեղեակ ճանապարհորդը շօշափելով կը նշմարէ, որ այդ վեց դարուց վանքին շինութեան վրայ աշխատած են՝ զտարաբաղդիկն Անի աննման գեղեցկութեամբ զարդարող քարակոփք: Այլ մեք դառնալով այժմ դարձեալ Նախիջևանու Սուրբ Խաչին, Գրիմեան Սուրբ Նշանի վրայ 'ի ստորև խօսիլ կը խոստանանք:

Վանքի ընդարձակ պարտէզը՝ մի միայն ամառուան տաքին ազատ շունչ առնելու տեղ է Նախիջևանցւոց համար. անշուշտ վանքին սրբազան հիմնադիրն այդ նպատակաւ տնկել տուած է այդ պարտէզը, որպէս զի Գրիմու հովասուն լերանց և անտառաց սովոր ժողովուրդը հոս գալով առնու կարօտը կորուսեալ հայրենեաց: Սրբազան առաջնորդն իւր նպատակին հասած է, այլ իմ կարծեօք Նախիջևանցիք անդր ևս անցած են հիմնադրին նպատակէն. զի Սուրբ Խաչ ոչ միայն Նախիջևանցւոց զբօսարան դարձուցեր են, այլ հասարակաց ճեմելեաց տեղի երկուց քաղաքաց՝ Նախիջևանու և Ռոստովի, ուր սահմանեալ օրեր՝ կու գան երեկոյին խուռն բազմութիւն ազգայնոց և օտարաց, և մինչև ցկէս գիշեր կը զբօսնուն վանքին պարտիզին մէջ, արք և կանայք, ուր կը հնչեն պարք երաժշտաց: Թէպէտ և ես անձամբ ականատես չեղայ այդ հանդիսից, այլ 'ի պարտիզին տեսած տախ-

տակամած չէնքն, յայտնի ապացոյց էին լամծներուն։ Կարող չեզայ մտացս մէջ համաձայնելու այդ երկու հակառակ իրքն՝ վանք՝ հոգևորականաց կրթութեան տեղի՝ և միանգամայն հասարակաց զբօսարան։ Թէպէտ և եղան զրուցողներ որ վանքը այն առթիւ բաւական շահ կը ստանայ, այլ ես զրուցեցի, (և միայն իրաւամբ կարծեմ և արդարութեամբ) թէ պէտք չէ այն շահը՝ որ դպրաց բարոյական վնասովն լինի։ Կարելի է սխալիմ, ընթերցողն կարող է դատաստան կտրել։ Ընդհանրապէս Նախիջևանու Սուրբ Խաչը չունի վսեմ կերպարանքը, ինչ որ կ'ընծայէ ցայսօր Սուրբ Նշան Ղրիմու որոյ վրայ կ'արժէ համառօտիւ խօսիլ առթիւս։

Ղրիմեցի վանքին հին կոչումը Սուրբ Նշան է, շինած յառաջին կէս ԺԴ դարու Ճենովացւոց Ղրիմու տիրապետութեան միջոց, ոչ հեռի Սուրխաթ քաղաքէն իւր անտառին մէջը Կազարաթ կոչուած մեծ աւանին վրայ, ուր նստելով Թեմական առաջնորդք, հինգ հարիւր տարուան միջոց կառավարել են Թերակղզւոյս հայասեռ ժողովուրդը։ Կազարաթ մեծ աւանը՝ ծուխ կամ վիճակ եղած է Սուրբ Նշանի, որոյ ցարդ մնացած քարուքանդ դերբուկները՝ վկայ են զրուցածիս։ Ցիչատակարան մի յանուանէ կը յիշէ հայաբնակ քաղաքներն և գեղերը, որք էին ընդ իշխանութեամբ Սուրբ Նշանի արքեպիսկոպոսին, և իրենց առատ տրովք վերանորոգել են զՍուրբ Նշան. ինչպէս հայասեռ ժողովուրդք «Կաֆայու, Ղարասույու, Բաղչասարայու, Կէօզլէվու բոլոր գիւղօրէիւքն, հանդերձ Ղաւշանաւն... 'ի ժամանակս առաջնորդութեան Ադամայ արքեպիսկոպոսի կղզւոյս»։ Ի Սուրղաթէ

(Հին - Ղրիմէ) դէպ 'ի Սուտաղ գնալու անտառամէջ ճանապարհէն նայելով շատ գեղեցիկ է վանքիս դիրքը, որ հեռուն լերան վրայ, անտառախիտ ծառոց միջէն խորհրդական ձևով յերևան կու գայ կրկնայարկ վանքն, խաչապսակ եկեղեցեաւն, վասն զի այժմ այդ երկու հաստատառոյց շէնքն կանգուն մնացել են, իսկ յիշատակարանաց մէջ յիշուած այլ շինութիւնք կործանել են հողուն հաւասար: Անշուշտ աւելէ 300 տարի առաջ՝ երբ շէն էր վանքս՝ և բաց 'ի ներկայ շէնքերէս՝ կային այսդին և այնդին անտառին մէջ կրօնաւորաց խղիկներ, լերան դարևանդին վրայ փորուած, և յորս նստած բարեպաշտիկ աբեղաներ՝ ամենայն խնամքով կը գրէին և կ'օրինակէին սուրբ աւետարաններ և այլ եկեղեցական գրեանք, ինչպէս կը գրէ 1347 ին գրուած աւետարանի յիշատակարան մի.
«Ի Թիւ Հայոց ՉՂԶ կատարեցաւ սուրբ մատեանս
«աստուածախաւս աւետարանիս յաշխարհս Հո-
«նաց, որ այժմ Ղրիմ ասի, 'ի մեծ և 'ի հոյա-
«կապ քաղաքն Սուրխաթ կոչեցեալ, 'ի ճողեա-
«Ճերս վերի, առ ոտն Սուրբ Խաչին, և այլն»: Ես այնպէս կ'երևակայեմ որ այդ միջոցներուն աննման եղած ըլլայ հեռուէն Ս. Խաչի դիրքը, մանաւանդ գիշեր ժամանակ, ուր բարձրադիր հողետներէն շողշղալով կանթեղաց լոյսը, աստղերու նման, կը յիշեցընէին հայ ճանապարհորդին թէ հոն հեռուն այդ աստեղներու առաջ նստած հայ ճգնաւորներ կը տքնին օրինակելու աստուածախօս պատգամները՝ մեզ 'ի ժառանգութիւն թողլու համար:

Թէպէտ հեռուէն տակաւին ևս կորուսած չէ Ս. Խաչ իւր վսեմ և խորհրդաւոր տիպարը, այլ մօտէն աւաղելի վիճակի մէջ է: Չկայ հոն այժմ վանահայր,

միակ պահապան մը կը հսկէ, այն երբեմն փառատեսիլ վանքին տխրատեսիլ և ծեփաթափ որմոց վրայ, որոց ստուերին տակ կը հանգչին վանքին սըրբասուն հիմնադրաց ոսկերք, դարևոր կնձնիք, կաղամախք, նշդարիք և հացիք հաստաբեստ բուներովն, վկայք անցեալ փառաց, կարծես այժմ կ'ողբան վանքին ամայութեան վրայ՝ երբ յանկարծ գերեզմանական լռութեան մէջ կը փչէ քամին: Այլ կրկին անապակ ջրերով յորդառատ լուսաղբիւրք՝ անտարբեր անցեալ և ներկայ վիճակի վանացս՝ իրենց սառնորակ ջրերով միակերպ կը հոսին: Վանքիս արժանավայել գաղափար մի տալու համար ընթերցողաց, 'ի մէջ կը բերեմք Յակոբ վարդապետի Կաֆայեցւոյ գրած տողերը, որ բաղդ ունեցել է ականատես վկայ լինելու վանքիս փառացն և ճոխութեան (1694):

Կամաւ Սուրբ Հոգւոյն ոմըն գիտնական,
Յովհաննէս անուն շնորհիւ պետական.
Լեալ նա յաշխարհէն մեծ Սեբաստական,
Կանգնեալ հաւատով զվանքս Սուրբ Նշան:

Ունելով ընդ իւր զփոյթըն փրկչական,
Եկեալ 'ի յաշխարհս փառօք մեծական,
Ամփոփեալ զմասն խնամօք տեառնական,
Վերակառուցեալ զվանքս Սուրբ Նշան...

Բանք ժողովրդոց մեծ և փոքրկան,
Անչափ բարութեամբ առ 'ի քեզ ուխտ գան.
Հոգւով և մարմնով ցնծան և խնդան.
Ապաւէն ազգիս աթոռ Սուրբ Նշան...

Արտաքոյ ներքոյ պատեալ ամրական,
Սրբատաշ քարիւք ես կամարական.
Մեծ կաթուղիկէ, տուն արքայական,
Ձեմեալ ճեմարան, ճարտակ Սուրբ Նշան...

Ի միջի քում կան հաստատ բնակարան,
Թէ և կորդուորք կամ աշխարհական
Քեզ ապաստանորեն միշտ ծառայական,
Տիրող, անընչալի տաճար Սուրբ Նշան։

Կարգաւ բոլորիս բազում օթևան;
„ Երթևեկողաց տեղ ապրընջական.
Դու ի ծոց նորին բազմեալ գովական
Հանգիստ հաճելի, հաստատ Սուրբ Նշան։

Ցայտ ես, և ոչ կայ քեզ նմանական,
Տեսք և տեղեաւ յոյժ հիացական,
Ամենայն բարեօք լցեալ լիական
Փառօք փառաւոր, փարթամ Սուրբ Նշան։

Արծաթ և ոսկի անօթ ընտրական,
Բուրվառ և կանթեղ, խաչ, աւետարան,
Շուրջառ և վակաս, ուրար և բազպան
Զանազան զարդիւք զեղուն Սուրբ Նշան ։

Երկու աղբերք ջուր համեղական.
Ատեալ են մայրք դքև պարտուական,
Կաս դու 'ի միջի պերճով սեփական,
Կազմաւեալ կայթեա, կայան Սուրբ Նշան։

Ցանկան փափաքին ազինք ամենայն,
Մինչև այլազգիք առ ոտըս քո գան,
Մըրզա և պարոն համ Սուլդան և խան,
Հիացեալ հայրին հիմանդ Սուրբ Նշան։

Թէպէտ և այժմ թափուր է Ս. Նշան այն արծաթեայ և ոսկեայ ընտրական անօթներէն, այլ ունի մեծ գիւղեր, անտառներ և այգիներ, որք տարուէ տարի 6000 ռուբլի եկամուտ կու բերեն, եթէ այդ հազարաց վեցին մին ամէն տարի. այդ հին սրբատեղւոյն վրայ ծախուի, թափած և ըլածը ծեփուի նորոգուի, դարձեալ կը շէննայ Ս. Խաչ, և ազգիս

հին, փառաւորեալ, սրբազան յիշատակը երթալով չի կործանիր։

# ԺԱ

## ԳԻՒՂՕՐԷՔ ՆԱԽԻՋԵՒԱՆՈՒ

Հինգ հայաբնակ գիւղեր կան Նոր-Նախիջևանու չորս կողմը, 18–25 վերստ հեռաւորութեամբ քաղաքէն։ Ամէն գիւղի մէջ կան նորաշէն ընդարձակ եկեղեցիներ և նոցա մօտ գիւղացի մանկանց համար դպրատուններ։ Եկեղեցեաց վերատին շինութեան գլխաւորապէս պատճառ եղած է Սրբազ. Գաբրիէլ՝ առաջնորդ վիճակին, յորդորելով գեղացիները և ցուցնելով միջոցները։

Մեծ-Սալա. Ս. Խաչ վանքէն դէպ 'ի արևելեան հիւսիս, բանուկ ճամբով գնալով ընդարձակ հայաբնակ գիւղ մի կ'ելնէ ճանապարհորդին ընդառաջ. այլ դեռ գիւղը չհասած՝ ճամբորդը արդէն կը ծանօթանայ գիւղացւոց տիպարին և տարազին՝ մասամբ և նոցա բնաւորութեան։

Հայ գիւղացին կը տարբերի Ռուս մուժիկէն, ինչպէս կերպարանքով, նոյն և զգեստուք. յաճախ նոցա վրայ կը տեսնուի կոճկէն կապայ մինչև ծունկ իջած, մէջքերնին գօտի, ոտքերնին երկայնախոնջ կօշիկ, գլուխնին բոլորաձև գտակ, աշխատող մշակի համար՝ շատ յարմար զգեստ։ Առհասարակ սոքա քաշուած և անհաղորդ կերպ մի ունին. որով կը տարբերին ռուս պարզամիտ մշակէն, երկայն վարոց ձեռքերնին, չո՛չ, չո՛չ գոչելով յառաջ կը վարեն սայլերը. այլ մտքով միշտ զբաղած

կ'երևան, երկայն խօսիլ ամենևին չեն սիրեր անցող դարձողի հետ, նաև բարև տալու անգամ շատ սովորութիւն չունին, եթէ Տէրտէր անգամ լինի անցաւորը. մինչդեռ ասոս գեղացին հեռուէն յարգութեան նշան կու տայ իւր և այլ գեղերուն Տէրտիրոջ։ Քանի մ'անգամ մասնաւոր կառքը կեցընելով՝ խօսք խառնեցի Սալացի գեղացւոց հետ. նոքա շնորհքով հակիրճ պատասխաններ տալով ճամբանին առաջ վարեցին։ Երբոր հարցուցի արգոյ ուղեկցիս Տէր Սարգսի Ոսկերչեան թէ « ինչու մեր հայ գեղացին այդպէս անտարբեր կը վարուի իւր հոգևորականաց հետ ». պատասխանեց — « Այդ անդրադարձութիւնը ես ևս անելով հարցուցի մի անգամ գիւղացւոյ մէկին, և այս պատասխանը ստացայ իրմէն. Հովիւը պէտք է փնտռէ ոչխարին, չէ թէ ոչխարը հովուին »։ Ցանդուգն պատասխան՝ գեղացւոյ մի բերնի...

Սալա ամենէն բարեկարգն է Նախիջևանու գիւղերուն մէջ, փողոցը և տները կարգով, այլ ծառոց շուքը կը պակասի. փողոցին վրայ են տանց պատուհանները, և նոցա անմիջապէս մօտ՝ մտից դուռը։ Քարուկիր շինուած են տներն, տանց տախտակեայ յատակը մաքուր ներկած, նոյնպէս պատուհանաց շրջանակներն և դռներն. ընդարձակ է, ընդունելութեան սենեակն։ Սալայի մէջ մինչև 70.000 րուբլի կարողութիւն ունեցող գեղացիներ կան, որք բաց 'ի վարուցանէ՝ առևտրով ևս կը պարապին, և անպաճոյճ գիւղական կենօք կը շատանան, եթէ տակաւ քաղաքային զեղծմունք մուտք չգտնեն այդ գեղացւոց բնակարանաց մէջ, նախանձելի է նոցա ապագայն։ Գիւղին մէջ ամէն բանէ առաջ աչքի զարնուողն է նորաշէն բարձրաբերձ եկե-

ղեցին, նոյնպէս բարձր զանգակատամբ։ Աշխատակերտ, ընդարձակ եկեղեցին նուիրեալ է 'ի պատիւ Վերափոխման Կուսին. ինչպէս արտաքուստ՝ նոյնպէս 'ի ներքուստ պայծառ և շէն է, մանաւանդ աւագ խորանը պատկերազարդ և ոսկեզօծ խաչկալովը. այս եկեղեցին ոչ միայն գիւղի մէջ, այլ որ և իցէ քաղաքի մէջ պարծանք կրնայ լինել իւր ժողովրդեան։ Տեսայ հոն հին ղրիմեցի խաչեր, աւետարաններ՝ յայսմաւուրք. ունի երկսեռ վարժարան, ուր կ'ուսանին իբր 100 աշակերտք և աշակերտուհիք։ Գիւղիս աւագ երէցն, Տէր Յովհաննէս Աֆտանդիլեան, Եգերացի է ազգաւ (հայացեալ), որ բազում մարդասիրութիւն ցըցուց առ մեզ. քանի մի ժամ մնացինք գիւղիս մէջ, եկեղեցւոյն երէցփոխանն Եղիազար աղայ՝ իւր տունը հրաւիրեց. և որովհետև ինձ հետաքրքրական էր տեսնել գեղացւոց բնակարանը, յօժարութեամբ ընդունեցայ հրաւէրքը։

Համբաւաւոր է Նախիջևանու գիւղերուն մէջ պատրաստուած գոմէշի սերը, արդէն լսած էի գովեստ այդ սերի մասին, մայիսի գեղեցիկ օդը և կանաչ դաշտին մէջ երկժամեան ճանապարհորդութիւնը ֆայտոնեով, գրգռիչ ազդեցութիւն մի արած էր՝ իմ արգոյ ուղեկցիս, նոյն և իմ ախորժակաց վրայ, ուստի Գ. Եպիփան խոհական ձևով իմացուց պառաւեալ երէցփոխանուհւոյն՝ որ գոմէշի սերով պատուել Ղրիմեցի հայր սուրբը՝ շատ վայելուչ կը լինի. ինձ հարկ եղաւ այդ միջոցին՝ իբրև չլսող առաջարկութեան լռութիւն պահել։ Հազիւ մի կէս ժամ անցաւ, արդէն սեղանի նստած էինք, հասաւ խոր պնակով համբաւեալ սերը. աւելորդ է ասելը, որ բաց 'ի սերէն, ամե-

նայն գիւղական բարեօք լեցուն էր պատուական երէցփոխանին սեղանը. ճարտարախօս երեցփոխանուհին առջևս դնելով սերին պնակը, լիարերան և առատասիրտ կերպով, — « Կեր, հայր սուրբ կ՚ասէր. ձեզի համար փնտռել տուի գեղին մէջ այս սերը, մեր գոմէշները այսօր չկթուեցան »: Հիւրընկալ տանտիկնոջ մարդասէր և քաղցր ընդունելութեան համեմատ գտայ ես այն սերը, համեղաճաշակ և արժանի համբաւոյ: Սեղանի միջոց մեր խօսակցութեան գլխաւոր նիւթն Ղրիմն և նորա գեղրանքն էին, զոր ախորժելով մտիկ կ՚անէին բարեպաշտ ասպնջականք: Հարիւր տարին անցել է՝ որ սոցա պապեր թողել գնացել են Ղրիմէ, այլ որդւոց որդի դեռ ևս վառ պահած են կորուսեալ հայրենեաց յիշատակը. Ղրիմ ասելու միջոց՝ մասնաւոր կերպով կը չեշտեն Նախիջևանցիք:

Յետ երկար խօսելու, չհամբերեց ես տանտիկինն, և հարցական ձևով աւելցուց, — « Այս ինչ է, որ այս հայր սուրբին ամէն կալաճին տեղովը կը հասկցուի. այդ ինչպէսնակ բան է »: — Այդոր պատճառը այն է, գրուցեցի, որ մենք ամէնքս Անեցի հայեր ենք, ու կալաճիներս մէկ »: « Այդպէսնակ ասա », աւելցուց պառաւը գոհութեամբ սրտի: Բարեպաշտիկ պառաւը՝ միայն 'ի Հայաստանէ եկող արևելեան վարդապետներ տեսնելով, անշուշտ այս գաղափարը ստացել է, որ վարդապետաց իմաստուն խօսակցութիւնքը կէսիկէս պէտք է անիմանալի լինին հասարակ մահկանացուաց:

Ընդունելութիւնը սիրալիր, խօսակցութիւնը զըւարթ. այլ հարկ էր ինձ առաջ գնալ 'ի Նիսվիթա գիւղ, որ եօթն վերստիւ հեռու է 'ի Սալայէ: Յե-

տրինս ինձ աւելի հետաքրքրական էր իւր մէջը պահուած ('ի ժամանակս ճանապարհորդութեան Վ. Հ. Մինասայ Վ. Բժշկեան), նշանաւոր Յայսմաւուրքին պատճառաւ. յորում գրուած է. Անեցւոց դէպ 'ի Ղրիմ գաղթելուն պատմութիւնն։ Այլ աւաղ որ փափաքս թերակատար մնաց, չգտայ այն գիւղին մէջ փնտռածս. կարող չեղան տեղացիք իմացընել ինձ գրքին ուր լինելը։

Այդ թանկագին յիշատակարանն կանազան մասամբ փափաքելի էր ինձ տեսնել, զի այնոր մէջ ըստ վկայութեան Բժշկեան Հօր. բայց 'ի սրտաճըմլիկ պատմութենէ վշտակրութեանց տառապեալ ազգիս, գծուած կայ ճիւղագիր ծառ մի տոհմի Պահլաւունի Աբրահամ իշխանի, որ ամուսնացել է Մուղալեանց ազնիւ Գէորգի դստեր՝ Թագուհւոյ հետ, և որոյ ազնիւ սերունդք բարեպաշտիկն Աննա և եղբայր նորա Տրդատ հոգացել են մեզ յետնոց աւանդել Անեցի գաղթականաց պատմութիւնը գրել տալով նոյն յայսմաւուրքին մէջ։ Եթէ այդ խնամոտ հայազատք հոգ տարած չլինէին այս բանին, մի մեծ էջ մութ պիտի մնար տոհմային պատմութեան մէջ, և ամենայն ջանք յետնոցս՝ 'ի զուր դայն լուսաբանելու [1]։

1. Սոքա Աննա և Տրդատ Պահլաւունիք շինել տուած են յառաջին կէս ԺԵ դարու, Թէոդոսիոյ սարերուն մէկուն վրայ ծովեզերեայ և գմբեթաւոր մի եկեղեցի, յորում հաստատած են տարուէ տարի «վասն սուրբ նահատակացն մերոց առնել ի սոյն եկեղեցւոյ զօմնախմբութիւն»։ Եկեղեցին նուիրած են յանուն Նիկողայոսի սքանչելագործ հայրապետի։ Նահատակներն են 1475 ին անօրէն Կէտիկ — Ահմէտի կոտորած հայկազունքը ի Թէոդոսիա։

Նիսվիթա ամենայն մասամբ խեղճ է քան զՍալատները անկարգ և աղքատին, զուրկ բուսականութենէ, եկեղեցին թէպէտ նորաշէն և աղիւսակերտ, այլ աղքատին ներսի կողմէն. վարժատան մէջ 37 բոկոտն աշակերտք, միով բանիւ ամենայն ինչ տխուր և ճնշիչ ազդեցութիւն ունեցաւ իմ վրայ։ Եթէ շուտով եկեղեցւոյն երեցը Տէր Յովհաննէս Տէր-Սիմոնեան համակրելի քահանայն չգար չհասնէր, անմխիթար և կոտրած սրտով հարկ պիտի լինէր ինձ մեկնելու 'ի գիւղէն։ Հին նոր՝ ինչ որ կար եկեղեցւոյն մէջ յետ միանգամ աչքէ անցընելու, գնացինք Տէր-Հօր անպաճոյճ բնակարանը, որ ոչ հեռի յեկեղեցւոյն՝ բարձրէն գիւղին վրայ կը հայէր։ Տէր Յովհաննէս վաթսնամեայ ոմն է. թէպէտ ըստ վկայելոյ անձին հիւանդոտ ոմն, որ արտաքուստ չէր ցուցընել, սակայն և այնպէս զուարթ և ճարտարախօս բնութեան տէր. անշուշտ շնորհիւ զուարթ բնաւորութեան՝ համբերութեամբ կը տանէր իւր ոչ նախանձելի վիճակին։

Ծուխը աղքատ, առողջութիւնը կորսնցուցած, գեղ տեղ, ուր դարման և ճար կը պակասի, և որ մեծն է՝ զուրկ այն մխիթարութենէն, որով քաջալերուած շատ երեցունք անտանելեաց կը համբերեն, այն է ունկնդրութիւն և հպատակութիւն հօտին։ Տէր Յովհաննէս այս ամէն բանէ զրկուած՝ «Այսօր եթէ մեռնիմ՝ ցաւելու բան չունիմ, աչքս յօժարութեամբ կը փակեմ» կը զրուցէր։ Վշտակից եղայ վշտամբեր Տէր տիրոջ, միանգամայն հետաքրքրութիւնս կը շարժէր լսել իմանալ քանի մի տեղեկութիւնք, և եթէ յորում մասին էր Տէր-Հօր աւելի վիշտը. այլ հարցնել ինձ անպատշաճ կ'երևնար, որ չլինի նոր վշտաց լինիմ պատճառ։

Սակայն ընդհանրապէս վշտացեալը ինքնին խօսե-
լու միջոցաւ դարման և մխիթարութիւն վշտաց կը
փնտռէ, ուստի առանց իմ հարցընելուս՝ Տէր-Հայրն
ինքնին սկսաւ. — «Ութ հարիւրի չափ կը լինի
ժողովուրդս, որք մեծաւ մասամբ Նօղայ-Թաթար-
ներ են քրիստոնեայ դարձած». այս լսելով իմ հե-
տաքրքրութիւնս բազմապատկեցաւ. — «Հայերէն
լաւ կը խօսի՞ն» հարցուցի։ — Ի՞նչպէս չէ, պա-
տասխանեց Տէր-Հայրն, Հայ են ու կան»։ Գիւ-
ղին իմ վրայ ազդած տխուր տպաւորութիւնը միգի
պէս հալածեցաւ Տէր-Հօր խօսելուն միջոց. ինչ-
պէս խօսողին՝ նոյն և նորա ծուխին վրայ համա-
կրութիւն մի սկսայ իմանալ։ Նօղայ-Թաթարներ,
քրիստոնեայ դարձած, հայերէն կը խօսին, և ըստ
բացատրութեան Տէր-Հօր «Հա՛յ են ու կան», ա-
կէ աւելի ախորժալուր նոյն պարագային մէջ ինչ
լսել, և ոչ անգամ կարնայի երևակայել։ «Անցեալ
օր, շարունակեց Տէր-Հայր, համբերութիւնս հա-
տաւ ժամէն դուրս ելնելով ասի իրենց, որ եթէ այդ
բանը ուրիշ անգամ ևս անեն, պիտի յայտնեմ գրով
'ի Նախիջևան հոգևոր կառավարութեան». — «Ի՞նչ
բան է, ինչու» հարցուցի։ «Կու գան չպո՛ւխները
(ծխամորճ) ձեռքերը, կկուզ կը շարուին ժամին դը-
րան առաջը, միակերպ խօսելով ծխաքարշը չեն պա-
կսեցնել. երբ ժամէն վերջ կ'իջնամ մատաղը օրհնելու
միաբան ետևէս կու գան, մեծ ախորժակով կ'ու-
տեն, կը սրբեն մատաղը, կ'երթան բաներնին»։
Բարեպաշտ Տէր-Հայրը որովհետև այս պատմելուն
միջոց կ'այլայլէր, «Մի վշտանաք. Տէր-Հայր, մեղ-
«մով գրուցեցի, դեռ լաւ չեն ըմբռնած Ձեր ժո-
«ղովուրդ քրիստոնէական սուրբ հաւատոյ ոգին,
«խրատուելու կարօտութիւն ունին». իսկ մտքէս

կ'անցընէր, Թաթարը շուտով քրիստոնեայ և երկիւղած Հայ չի լինիր, ժամանակ հարկաւոր է՝ որ նա իր անվայել ունակութեանց հրաժարի։

Միւս կողմանէ Ղրիմեցի Թաթարք կու գային մոտացս առաջ, որք արևակէզ դիմօք, ցանցառ մօրուօք, ամառը տաքին՝ խոշոր մորթէ գտակ գլուխնին, — զոր տեսնելով միայն՝ մարդ կը քրտնի, — կարճ ծխափայտը բերաննին խածած, կը շարուին ուրբաթ օրեր մըզկիթաց բակերուն մէջ, որը՝ ծալապատիկ քարայատակին վրայ նստած, որ՝ կկզած պատին ներքև, կծու ծուխը ներս քաշելով և փոխադարձ միակերպ աջ ու ձախ դին թուք արձակելով։

Մինչդեռ ես Տէր–Հօրմէ լածներուս վրայ կը խորհրդածէի, նա վերստին սկսաւ խօսիլը առաջ վարել. — «Խօսքը մատաղի վրայ եկաւ, ասաց մտքէս անցածը գրուցեմ թող պրծի. դա գերեզմանոցի եկեղեցին՝ Ս. Կարապետի անուամբ օծւիլը լաւ բան չեղաւ»։ Իսկոյն չհասկնալով Տէր-տիրոջ միտքը՝ — «Ինչու լաւ բան չլինի. գրուցեցի. Սուրբ Կարապետ ազգիս պաշտպան մեծ « սուրբ է, իմ կարծեօք շատ լաւ բան արել են, « որ այն գեղեցիկ եկեղեցին՝ յանուն այն մեծ « սուրբին նուիրել են»։ — Այդ չէ, պատասխանեց, Տէր–Հայր, իմ գրուցածս. հոն Ս. Կարապետ (գիւղին եկեղեցւոյն համար) մատաղը կը բաժնուի, հանդէսները առաջուանը չեն, մեր ուխտաւորք պակսեցան»։ Հասկցայ Տէր–Հօր միտքը՝ նա կը ցաւէր իր գիւղին եկեղեցւոյն ուխտը անչքանալուն մասին, զի ժողովուրդը կը բաժնուէր, և անշուշտ մատաղին դէրերը Նախիջևանու Ս. Կարապետին մասն կ'ելնէին. արդարացի էր Տէր–Հօր գանգատը.

Կիսակատար մխիթարութիւն մի տուի, զրուցածիս ինքս ևս համոզուած չլինելով։ Սակայն և այնպէս անօգուտ էր ցաւիլը. Ս. Կարապետ եկեղեցին 'ի Նախիջևան շինելուն միջոց, Նիսվիթայի Տէրտէրոջ խորհուրդ հարցնող չէ եղած, և ոչ նորա անգոհութեան պատճառաւ պիտի փակէին այն եկեղեցին։ — Երկու ժամ Մնալով գիւղիս մէջ, երեկոյեան զովլիկ օդով դարձանք 'ի Նախիջևան. Մնացեալ գեղերուն այցելութիւնը ուրիշ օրուան թողլով։

Սալայի և Նիսվիթայի մէջ փնտռածներս չգըտնելով, կարելի էր միւս գեղերը զանց առնել, այլ որովհետև երկար ճանապարհ կտրելով անցընելով եկած էի 'ի Նախիջևան, որպէս զի յապագայն ցաւելու առիթ չունենամ, օր ընդ մէջ անցնելով, Համբարձման տօնին նախընթաց օրը՝ միւս երկու գեղերու այցելութեան ելանք, Արգոյ ՏէրՍարգիս Ոսկերչեան քահանային հետ 'ի միասին։ Այն երկու գիւղերն, այսինքն Չալթըր (հին Ղրիմեցի անուամբ Օրդալան) և Թոփթի ('ի Ղրիմ Թափլուկը հնչէ) նախընթաց երկու գեղերուն կողմը կ'իյնան, Նախիջևանու արևմտեան հիւսիսային դին՝ այս երկուքն ևս բազմամարդ գիւղեր են, մէկմէկու մօտ, այնպէս որ մէկէն միւսը կ'երևայ, քաղաքէն երկու ժամու ճանապարհ հեռաւորութեամբ։

Մեծ Սալայէն յետոյ՝ բարեկարգ գիւղն Չալթըրն է. գիւղացիք ունեւոր են, եկեղեցին փառաշէն նուիրեալ 'ի պատիւ Համբարձման Փրկչին։ Այլ այս գիւղին գիւղացւոց տարազը, ինչպէս ևս յետագայ Թոփթիի, աւելի հնաձև է կամ թաթարաձև, մինչդեռ Սալացիք՝ արք և կանայք, սկսած են Եւրոպական ձևոց յարմարիլ։

Հոս կանայք՝ ըստ հին Ղրիմեցւոց սովորութեան՝ ծաղկեայ կապաներ կը հագուին, գլուխնին լաչակ կապած, մազերնին ճակատնուն վրայ՝ փէրչէմ կամ փէրչամ կտրած. ետևի կողմերէն կարգաւ բարակ հիւսուած մազերը մինչ ցգօտի կը հասնին, վզերնին և կուրծքերնին շարք շարք մանր և մեծ ոսկէ դրամք կը զարդարեն։ Նոյն ձևը կը հագնին և աղջկունք, միայն այսու տարբերութեամբ որ նոցա հալաւին գոյնը իրենց դիմաց գունին համեմատ՝ աւելի պայծառ և ծաղկալից կը լինին։ Ըստ հին Իսրայելեան սովորութեան՝ տեսայ Նախիջևանու մէջ՝ որ աղջկունք մեծամեծ սափորներ ուսերուն վրայ առած՝ ջրհորներէն ջուր կը կրէին, հանգոյն Ռաքելի և Ռեբեկայ։ Իսկ մանչեր մեծ և փոքր մինչև ցծունկ բոբիկ, կապայ կռնակնին, գօտէպինդ, տրեխնին լաւ զսպած, դաշտի վաստակոց կը պարապին. լուծ, եզ, վարուցան, կասուլ, կրել, այդոնք են նոցա գործերը։

Զալթըրցիք 'ի մշակութեան գերազանցել են քան զմիւս գիւղացիները. իրենց ցորենը, համեղ է և աճուն քան այլոցը, այնպէս որ՝ 1880 ին Մոսկուայի հանդիսադրութեան (exposition) առաջին մրցանակի արժանի եղած են։

Գիւղիս երէցփոխանն՝ երիցուն հետ 'ի միասին՝ եկեղեցւոյն ձեռագիրքը և արծաթեղէնքը ցոյց տալէն վերջ, ըստ հայկական մարդասէր հիւրամեծարութեան 'ի տուն հրաւիրեց զմեզ։ Թէպէտ և այնպիսի զբաղմանց օր՝ չէր վայելուչ ծանրութիւն լինել՝ զի գիտէի արդէն որ տնեցիք անպարապ գործի հետ են վաղուան գալու ուխտաւորները հիւրամեծարելու համար, սակայն և այնպէս կարճ միջոց եղաւ մտնել երէցփոխանին տունը։ Ինչպէս կը գու-

շակէի՝ ճշդիւ կատարուեցաւ. Երէցփոխանուհին անուշահոտ գադաները հետզհետէ փուռէն կը հանէր, կարծր պանրով, կարագով և սերով զարդարուած սեղանը պատրաստ էր, կէս օրն անցնելու վրայ: Փորձեցի Զալթըրցւոց ցորենը հայկական գադաներու փոխուած, նոր հարած կարագով իւղաթուրմ, քաղցրիկ խորիսխի մէջ, և շատ համեղաճաշակ գտայ:

Գադայից ձեւը փոխուած ինձ երեւցաւ, հարցուցի երէցփոխանուհւոյն թէ միշտ այդ ձեւով են շալթըրցի գադաները. Նա փարատեց իմ տարակոյսս, թէ այդ նոր ձեւ է, հին ձեւն՝ ինչպէս բացատրեց՝ ճիշդ նման գտայ Ղրիմեցի գադայից:

Փութացի դպրոցաց այցելութեան գնալ, յորս 150 աշակերտք և աշակերտուհիք հայ դպրութիւն կ'ուսանին: Զալթըրցի դպրոցք ինձ բարեկարգ երեւցան քան այլ գիւղօրէիցը. փոքր երախայք անսայթաք և գեղեցիկ արտասանութեամբ ասեն տէրունական աղօթքը և ապա աղերս առ Տիրամայրն «Անկանիմք», բազմութեամբ ճուացին մի քանի ազգային երգեր:

Վարժապետնին Պ. Պիճոյեան կը գանգատէր թէ տղայք՝ ամառը կանոնաւոր կերպով դպրոց չյաճախելուն պատճառաւ՝ կ'ընդհատի ուսմանց ընթացքը: Եւ ինչպէս յաճախեն... կը դիտէի ես այդ փոքր երախայից ձեռքերը և ոտից զուսպ տրեխները, որք առանց խօսքի, ինձ կը հասկցնէին որ այդ մատաղերամ հայ մանկտին, համարեա թէ յորրանէ դատապարտուած են հողի և տարերց հետ ծեծկուելու: Կադմոսի փիւնիկեցւոյն արհեստէն առաջ՝ պէտք է նոքա ուսանին Կայենի դատապարտելոյն արուեստը. այն փոքր մանկըտին ի-

բենց երեսաց քրտինքով կ'ուտեն իրենց հացը ։ — « Վնաս չունի, զրուցեցի վարժապետին, թող ամառը աշխատին, եթէ ձմեռը լաւ սորվին՝ այն ևս բաւական է նոցա »։ Անաք բարով զրուցելով սիրուն և կայտառ հայ մանկութեան, նոցա պատուական Տէր-Հօր և վարժապետաց՝ առաջ գնացինք 'ի Թոփթի։

Սա ամէն գեղերէն բազմամարդն է. բնակչաց թիւը 3000ի կը հասնի. այլ ինչպէս արտաքին ձևովն նոյնպէս և ներքին կառավարութեամբ քան զՍալա և զՁալթըր շատ յետամնաց ։ Տներուն մէջ կարգ չկայ. Ղրիմու հին Թաթարաց գիւղերուն ճիշդ տիպարը կը կրէ հեռուէն ևս, զի մի ահագին մոխրակուտի դէմ կը ներկայացընէ, բոլորովին զուրկ 'ի բուսականութենէ. եթէ նորաշէն քարձրադիր եկեղեցին հեռուէն չերևայ, անկարելի կր լինի Թաթար գիւղէ զանազանելը։ Մտեցանք եկեղեցւոյն, այլ դուռը գոց գտնելով՝ իջանք դէպ 'ի դպրոց, զոր մեծ եկեղեցւոյն համեմատելով՝ յոյժ փոքր ինձ երևեցաւ. և երբ լսեցի որ ուսանողաց թիւը հարիւրէն շատ աւելի է, զարմացայ թէ ինչպէս այդ փոքր շէնքին մէջ կը հաւաքի այնչափ բազմութիւն։ Տղայ չկար ուսումնարանաց մէջ, զի կէս օրին տուն դարձել էին, պատուհանները և դըռները բաց էին. սակայն և այնպէս ապականած էր շէնքին օդը։ Եկաւ երէցը, բացին եկեղեցւոյն դուռը. մտնելով ներս ընդարձակ տաճարին մէջ՝ ազատ շունչ առի. վասն զի այդ գեղեցկաշէն եկեղեցւոյն մէջ մարդ կը մոռանայ առ ժամն չորս դին պատող ճնշիչ առարկայքը։ Շքեղ է եկեղեցւոյս պատկերազարդ և ոսկէզօծ աւագ խորանին խաչկալը, որոյ շինութեան համար գիւղացիք 10,000 ռուբլի ծախք

արել են։ Ցակամայ կամս դառնալով դէպ 'ի Տէր-Հօր, — « Լաւ չէ՞ր լինել, գրուցեցի որ այս խաչկալը ոչ այդչափ բարձր լինէր, և փոխանակ այդոր՝ սակաւ մի գիւղին ուսումնարանը ընդարձակ լինէր, որով ուսանողք ոչ ապականեալ օդով չընչէին »։ Տէրտէրը համաձայն էր կարծեացս. այլ եղածը եղած էր։ Նուիրած է եկեղեցիս յանուն Ս. Սարգսի զօրավարին. բաց յայնմանէ՝ ջերմեռանդն ուխտաւորք Ս. Պարասքեւայ ևս մեծ յարգութիւն կ'ընծայեն այս տաճարիս մէջ, 'ի յիշատակ Ս. Ուրբաթ Գրիմեցի եկեղեցւոյն, որ ցարդ կանգուն կեցած է Թոփլու կոչուած գիւղին՝ մի սարի վերայ։

Երկրորդ օրը Համբարձման տօնն էր, արեւը դէպ 'ի մուտս կը խոնարհէր, հարկ էր մեզ փութալ 'ի Նախիջեւան. Թէպէտ և մնաց մի այլ գիւղ որոյ կարող չեղայ յայց ելնելու, այն է Փոքր կամ Սուլթան Սալա կոչուածը, այլ մեծերէն կարելի էր գուշակել և փոքրին ինչ լինելը։ Լսեցի որ այն գիւղին Նորաշէն եկեղեցին նուիրեալ է յանուն Ս. Գէորգայ զօրավարի, և ունի ուսումնարան մի 32 աշակերտով։

Ներկայ տարւոյս (1886) մի նոր գիւղ ևս ձևացուցել են Նախիջեւանցիք քաղաքէն 12 վերստ հեռաւորութեամբ դէպ 'ի Թայղան գնացող ճանապարհին վրայ, որոյ Եկատերինովքա ռուսահնչիւն անուն տուած են։ Անշուշտ այդ Նորաշէն և 'ի շարս Նախիջեւանցի հայաբնակ գիւղերուն վեցերորդն՝ քան զհիները առաւել բարեձև կը լինի, այլ դեռ չունի ոչ եկեղեցի և ոչ ուսումնարան։

Թոփթիի անապատացեալ և անբոյս երևոյթն՝ տխուր հետք մի թողուց իմ երևակայութեանս վրայ. 'ի դարձիս ֆայետոնին մէջ լաւիկ նստած

մտախոհ լինելով՝ որ այդ մոխրակոյտներուն մէջ հազարաւոր հայ կեանք կը մաշի՝ զրկուած բնութեան այն հաճոյական վայելքից՝ որ երկիրը առատ կ՚ընծայէ սակաւ մի զարգացեալ և աշխատասէր մշակին։

Ոչ ծառոց հովանի, ոչ պտղատու պարտէզ, ոչ բանջարանոց, և ոչ սեխստան, զուրկ են յայսմ ամենայնէ Թոփթիցիք. ցաւալի՜ վիճակ։ Այլ ո՞վ է այդոր պատճառը։ Ըստ իմ կարծեաց եթէ քանի մի բանիբուն և գործող անձինք բանիւ և գործով առաջնորդ լինին Նախիջևանու գեղացւոց՝ քիչ տարիներու միջոց բոլորովին կերպարանափոխ կը լինին այն տխրատեսիլ և անապատացեալ գիւղերը։ Օրինակ կարնան լինել երբեմն անբոյս և անդալարի գիւղերն Տաւրիոյ, յորս առաջ Թաթարք կը բնակէին, և այժմ Գերմանացիք դրախտ դարձուցին, մոխրակոյտ դէզերը ծածկուեցան անտառներուն և պարտիզներուն հովանեաց տակ. անգետ և անաւուռ տեղուանք՝ փորեցին քաղցրաջուր հորեր, յարդածածուկ և խղճատեսիլ ցիր ու ցան անկանոն հիւղերուն փոխանակ՝ շինեցին կանոնաւոր յատակագծի վրայ կարմիր կղմինտրով ծածկուած տներ. փոխան ծոյլ Թաթարաց այլանդակ սայլերուն, որոց լիսռանց անախորժ ճռնչիւնն ականջ կը խլացնէր, Գերմանացիք թեթևընթաց սայլեր և կառքեր կը գործածեն, որոց լծուած լայնաքամակ ձիանքն վայելչաձև խամութներով տեսնողին նախանձն կը շարժեն։ Մի և նոյն երկրին հողագործք, առաջինք իրենց ծուլութեան և անհոգութեան համար՝ կարօտութեան մէջ տուայտեալ, մինչդեռ յետինք ժրաջան մշակելով Թաթարաց գետինները, օր աւուր յառաջադիմելով կը ճո-

խանան և բարոյապէս կը տիրեն բնակած աշխարհաց վրայ։

Ես այնպէս կարծեմ որ հայ գեղացին աշխատասիրութեան և մտաց զարգացման մասին՝ ոչ Գերմանացւոյն և ոչ Ռուսին դիմաց կը խոնարհի. առաջնորդի պէտք ունի նա, մերձաւոր օրինակը և խրախուսիչ յորդորը շուտով կերպարանափոխ կարնան առնել Նախիջևանցի հայ տխրատեսիլ գեղերը։ Եթէ ոչ այժմեան գեղացիք, այլ անշուշտ՝ իմ գեղերուն ուսումնարանաց մէջ տեսած փոքրիկ և կայտառ հայ մանկութիւնն՝ որ մի մեծնալով՝ պիտի իրագործեն իմ փափաքը. իրենց բարօրութեան համար։

## ԺԲ

## ՏՕՆ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԴԱՐՁ Ի ԿԱՑԱ

« Համբարձման երկուշաբթին, առէք զփոցղ և զկերընդին », զուրցելով շիրակացի առածը 'ի դաշտ կը հրաւիրէ զհայ մշակը՝ ատոքացեալ ցորենը հնձելու համար. այլ Եկատերինեսլաւ գաւառի հայ մշակին համար դեռ շատ կանուխ էր այդ հրաւէրը, մանաւանդ այս տարի (1884), զի Մայիսի 17 տօն էր Համբարձման և դեռ ցորեանք չէին հասկ կապել։ Մեք թողլով գիւղերը 'ի քաղաք դառնանք ներկայ գտնուելու տօնական հանդիսից։ Նախիջևանու եկեղեցեաց մէջ, ըստ վաղեմի հայկական սովորութեանց, եկեղեցական պաշտամունք կանուխ կը լինին. ուստի առաւօտեան ժամը 8 ին

արգոյ բարեկամիս հետ, հետիոտս կամաց կամաց կ'երթայինք Համբարձման եկեղեցին. սոյն միջոցին միակերպ մեր քովէն կու գային կ'անցնէին գեղեցիկ և թեթևընթաց ֆայետոններ և արագավազ թեթև կառքեր ահիպարանոց և թանկագին ձիեր լծուած, որոց մէջ բազմողները հայկազուն տեարք և տիկնայք էին, որ ժամ կ'երթային Նախիջևանու բոլոր ծուխերէն, պատուելու այդ մեծ տօնը՝ համանուն եկեղեցւոյն մէջ: — Նախիջևանցիք սիրող և յարգող են եկեղեցական հանդիսից և ուխտագնացութեանց: Նախընթաց օրը ես՝ մինչդեռ գիւղերէն կը դառնայինք՝ կարգ կարգ ուխտաւորք 'ի Չալթըր կ'երթային. զի գիւղին եկեղեցին ևս ի պատիւ Համբարձման Փրկչին կանգնած է: — Հասանք եկեղեցին. որոյ մուտից առջև կարգաւ շարուած էին բազմաթիւ կառքեր, որոց լծուած ձիերուն մեծամեծ աչքերով կրակոտ նայուածքը, խրխինջը և դոփիւնը՝ մեծահանդէս և անսովոր իմն տօն կ'աւետէին. մտանք եկեղեցւոյ բակին մէջ՝ ուր ժողոված էր խուռն բազմութիւնն. հեռուէն մեզ ներդաշնակութիւն պաշտամանց եկեղեցւոյ, բոցավառ ջահք՝ որք պատուհաններէն 'ի դուրս կը ցոլային խառն ընդ անուշահոտ բուրմանց խնկոց, յոյժ հաճոյական եւ բերկրալից մի զգացումն ազդեցին յիս: Ճեղքելով ժողովրդոց բազմութիւնը՝ արգոյ բարեկամս տարաւ զիս 'ի դաս, ուր կանգ առի այլորեալ և երկաքին աչօք լուսաւորեալ[1] մի երիցուքով: Սուրբ պատարագն առաջ կ'երթար վայելուչ և բարեկարգ ձևով, նափորտապատ և սաղաւար-

1. Ղրիմեցիք և Նախիջևանցիք փոխաբերաբար լուսաւորել կուրանալու մտքով կը գործածեն:

տեալ երէց մի, կրելով ուսոց վրայ արծաթապատ և ծանրակշիռ վակաս մի կանգնած էր սեղանոյն առաջ. ուրարաւոր սարկաւագ մի՝ յաջին բուրվառ և ձախ ձեռքը մի ճրագ վառ՝ կը վարէր պաշտօն աւագի, սարկաւագի և կիսասարկաւագի եւս. վասն զի միակ ինքը մնացել էր, և չկար իրեն օգնական: Նախիջևանու պէս հայութեամբ բազմամարդ և շատ հոգևորականօք քաղաքի (20 քահանայք և նոյնչափ սարկաւագունք) կը վայելէր, ըստ իմ կարծեաց, եկեղեցական պաշտամունքները, գոնէ մեծամեծ տօներու օրեր, բազմութեամբ հոգևորականաց կատարել. քանի՜ շքեղ պիտի լինէին նոյն օրուան տեսած հանդէսքն եթէ յաջմէ և ի ձախմէ սեղանոյն գոնէ վեց ուրարաւորեալ հոգևորականք կանգուն գտնուէին:

Ի միջավայրի դասուն շարուած էին դպրապետին երկու կողմը՝ փոքր երախայք, որք դպրապետին ձեռին շարժմամբ (ըստ եւրոպական ոճոյ) ոգևորեալք երբեմն քան զչափն աւելի կը բարձրացնէին ձայներնին, որով չէին համապատասխանել բեմէն եկած դաշնակաւոր և մեղմ ձայնից ժամարարին և սարկաւագին. եթէ այդ փոքր դպրաց երգեցողութիւնք չափու մէջ լինէին, ամենայն ինչ ներդաշնակ և յոյժ վայելուչ պիտի լինէր:

Սակայն 'ի դասուն անմիջապէս մօտս կանգնած լուսաւորեալ աչօք անցեալ դարէ մնացեալ Տէրտէրը՝ իւր քաղցրիկ և դողդոջուն ձայնիւը իմ ուշըս գրաւեց. նա գիրս չէր տեսներ, զի զրկուած էր լուսոյ ներգործութենէ, այլ այնպէս ներդաշնակ և սրտախօսիկ ձայնիւ ամենայն պաշտամունք մեղմիկ ձայնովն կ'երգէր, որ մինչև սրտիս խորը կ'ազդէին. դեռ ես ականջացս մէջ կը հնչեն

ծերուն՝ անտառաց Փիլոմելին նման մեղրածորան հագագները։

Պատարագէն վերջ խաչալուայ հանդէսը պիտի կատարուէր. ծանրագին շուրջառ մի տուին ծերուն կռնակը, որ շատ տարի ժողովրդապետի պաշտօն վարել էր եկեղեցւոյն, և ինքն իբրև Նոր ոմն Իսահակ լուսաւորեալ աչօք, պիտի կատարէր այդ օրհնութեան հանդէսը՝ առանց տեսնելու. ինձ կարի ցանկալի էր ներկայ գտնուիլ այդ արարողութեան ևս, այլ ժամը տասը անցել էր, որով առաջ հրաւիրուած էի Ռոստովի կաթոլիկաց եկեղեցին ժամարար լինելու նոյն օրը. փոքրիկ կառք մի վարձելով փութացի 'ի Ռոստով, ուր խուռն բազմութիւն ժողոված եկեղեցւոյն չորս կողմը կը սպասէին, 'ի թիւս որոց և բազմաթիւ ազգայինք։ Մինչև երեկոյ 'ի Ռոստով մնացի և նոյն օր կէս օրուան ճաշը ունեցայ պատիւ վայելելու Պ. Յովհաննէս Տէր-Աբրահամեանի տան մէջ, որ ինչպէս կանխաւ զուրցեցի, Ռոստովի մէջ մեծ հայկական տպարան ունի, և ի վաղուց ինձ բարեկամ է։ Երեկոյին դառնալով ի Նախիջևան պատրաստուեցայ վաղուան ճանապարհին, փոքր ուղւոյ պարկիս մէջ ամփոփելով աստի և անտի ընդօրինակած յիշատակարանքս։ Ես որովհետև արդէն հրաւիրուած էինք նոյն երեկոյին Եղիա Աղա Գալապանեանի տուն բաժակ մի չայի (ըստ ռուսաց բացատրութեան), արգոյ Եպիփանու հետ գնացինք վերջին երեկոյն անցընելու մեր հին բարեկամին քով։ Եղիա Աղա դարուս հետ 'ի միասին կը քայլէ, այլ դեռ ժիր, առողջ է մտօք և մարմնով. նա Անեցի գաղթականացմէ չէ, այլ յետոյ ի Պարսկահայոց Նախիջևան եկած. ինչպէս ինքն՝ նոյնպէս և հօրամոյն զաւա-

կուռք՝ բարձր են հասակաւ և քաջառողջ կազմով, նոյնպէս ընչիւք և ստացուածովք։ Աւելորդ է կարծեմ զուրցելը, որ բաժակ մի չայի հրաւէրը՝ բազմազան քաղցրաճաշակ ըմպելեաց փոխուեցաւ, և մեծածախ ընթրեաց սեղանը զարդարեցին Ազախու ծովու ազնիւ ձկունք՝ իրենց համեղաճաշակ կիթերով։ Գիշերուան ժամը 12 ին, յայտնելով իմ սրտէ շնորհակալութիւնքս առ հասարակ ամենայն Նախիջևանցւոց, մանաւանդ անարգամեծար տանուտերց և հիւրընկալ ասպնջականաց, դարձանք 'ի տուն Պօպոյեանցի, ուստի առաւօտեան ժամը 8 ին յուղի անկայ, նոյն ճանապարհաւ որով հասել էի 'ի Նախիջևան՝ վերադառնալ ի Կաֆա։ Մեծապէս գոհ եմ որ չհանդիպեցայ Ազախու ծովուն անհանդարտ ալեաց կատաղութեան. երբ ի Կերչէ շոգենաւը կը յառաջէր դէպ 'ի Թէոդոսիա, և կը պարզէր նաւուն առաջ Սև ծովու իւր կապուտակ ծոցը վէտ առ վէտ գեղեցիկ կոհակներով, յանկարծ միտքս եկան Ազախու պղտոր և դեղնագոյն անհանդարտ ալիքը, որ Եւքսինոսի համեմատելով՝ շատ անախորժ և տգեղ երևցան։ Տակաւ առաջ գնալով, ընդ առաջ մեր կ'ելնէր (ըստ մեր ձեռագրաց բացատրութեանց) ծովադիտակ և հոյակապ մայրաքաղաքն Կաֆա, իւր այժմեան մերկագլուխ սարերով, զորս մեր տնաշէն նախնիք զարդարել են գմբեթազարդ տաճարներով, և յետոյ տնաւեր խուժանք քարուքանդ արել են և զԾովային Հայաստան (Armenia marittima) աւերակաց և դերբկաց կոյտեր դարձուցել են։ Մինչդեռ Թէոդոսիոյ նաւահանգիստը մտնելով՝ կ'ուզէի զգալ այն մխիթարութիւնը, զոր ամէն ճանապարհորդ կը զգայ՝ յետ ամսօրեայ բացակայութեան 'ի տուն վերադառնա-

լով, ամբոխեալ մտածութիւնք կը վրդովէին իմ միտքս, Թէոդոսիա, Նախիջևան, Կամենից, և ապա տարաբաղդիկն Անի միտքս կու գային, այդ քաղաքաց մէջ շատ ու շատ վշտեր կրել են Հայկազունք... « Տէր Աստուած, մտաց խորէն կը հառաչէի, երբ այդ տառապեալ ազգին գթած աչօք պիտի նայիս »։



# ՈՒՐՈՒԱԳԻԾ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

## ԹԷՈԴՈՍԻԱ-ԿԱՖԱ ՔԱՂԱՔԻՆ ՏԱՒՐԻՈՑ

## ԵՒ ԱԶԳԻՍ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## Ա

### ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Գրոցս առաջին մասին մէջ խօսելով, փոքր ի շատէ, Անեցի Հայոց դէպ 'ի Ռուսաստան գաղթելուն մասին, մանաւորապէս ի Նոր-Նախիջեւան, անհրաժեշտ հարկ մի էր մեզ, խօսիլ նաեւ, ի Տաւրիա կամ ի Ղրիմ, եւ առանձինն ի Թէոդոսիա գաղթող ազգայնոց մասին. վասն զի այս քաղաքը, իւր աշխարհագրական դրից եւ շահավաճառութեան յարմար ծովածոցով, սիրելավայր.եւ կեդրոնատեղի եղած է Հայ գաղթականաց համար. եւ արդէն ի Կաֆենից եւ ի Նոր Նախիջեւան գաղթող հայկազունք աստի ի Թէոդոսիայ շուել գնացել են այն աշխարհները[1]։

1. Ի Կաֆենից 1331 ին, Նախիջեւան 1778 ին։

Անհրաժեշտ հարկը գրուեցեցի. վասն զի թէ ի Կամենից և թէ Նախիջևան անցողաբար և քիչ ժամանակ մնացեր եմ, մինչդեռ ի Թէոդոսիա երկար միջոց բնակելով, և աչքի առաջ ունենալով ազգիս հին և նոր յիշատակաց արժանի շինութիւնք՝ որք այս կողմերս, քաղքին մէջ և դուրսը, ամէն քայլափոխի՝ հետաքննողին աչաց առջև կ՚ելնեն, ինչպէս հնաշէն և հոյակապ եկեղեցիք, ամրակուռ մատրունք, քաղցրահամ ջրոց աղբիւրք, քարակոփ խաչք և խաչքարինք հայ վերտառութեամբ . . . ։ Բաց յայսցանէ հմտալից հետազօտութիւնք բանիբուն մարդկանց զՂազարաց աշխարհէ և առհասարակ զՏաւրիոյ, յորս ազգիս գաղթականութեան մասին, նորանոր տեսութիւնք յերևան կ՚ելնան. ի վաղուց ինձ գրգիռ կը լինէին՝ գրել և հաղորդել հեռաւոր ազգայնոց, ի Ժ դարէ և այսր Տաւրիացի Հայ գաղթականաց տխուր և այլ երբեմն մխիթարական պատմութիւնը, մատնանիշ անելով նոցա յիշատակաց արժանի գործունէութիւնքը և աշխարհաշէն բարքը, որք յարակից են քաղաքիս անցելոյն հետ։ Այլ որովհետև Թէոդոսիոյ ապագայն երերուն դրութեան մէջ էր և նորա հզօր հարևանը և նախանձորդ Սևաստոպոլ՝ ամենայն միջոց ի գործ կը դնէր, զԹէոդոսիա նկուն դրից մէջ պահելով իւր վիճակը սր ըստ օրէ փառաւորելու, ահա այդ դրութիւնը քաղաքիս՝ ինձ արգելք կը լինէր հրատարակելու քաղաքիս և ազգիս մասին հաւաքած տեղեկութիւնքս։

Այդ երերուն դրութիւն, անշուշտ իւր վախճանը մօտեցած տեսնալով անցեալ տարի (1890) գնալով զայրացաւ. գրեթէ համօրէն Ռուսաստան այդ խնդրով պարապեցան. ոչ թէ միայն Ղրիմեցի լրագիրք



այլ և մայրաքաղաքաց ծանրակշիռ թերթերը Պետրբուրգի և Մոսկուայի՝ մի շարք երկար՝ յօդուածոց նուիրեցին խնդրոյս։ Ընթերցողք անտարակոյս կը հասկնան որ՝ առանձնական երկու քաղաքաց շահերը չէին որ կը խօսեցնէին մայրաքաղաքաց թերթերը, այլ ընդհանուր ազգային շահը։ Թէոդոսիոյ կամ Սևաստոպոլի, այս երկու քաղաքաց միոյն նաւահանգիստը բաց պիտի լինէր վաճառաշահ նաւերու համար, հարաւային և միջին Ռուսաստանի բոլոր հում ապրանքը պիտի իջնէր այն նաւահանգիստը և անտի պիտի անցնէր յԵւրոպա, դիւրակենցաղ կենաց հազար ու մէկ տեսակ ապրանք Եւրոպայէ ի Ռուսաստան բերող նաւերուն միջոցիւ։

Սևաստոպոլ արդէն այդ առանձնաշնորհութիւնը կը վայելէր արևելեան երկրորդ պատերազմէն վերջը․ ուստի քաղաքացիք ամենայն ջանք և գործք ի կիր արկին այդ շահաւէտ առանձնաշնորհութիւնը ընդ միշտ իրենց քաղաքին սեփականելու։

## ՍԵՒԱՍՏՈՊՈԼ ԹԷ ԹԷՈԴՈՍԻԱ

Վերնագրով երկայնածաւալ յօդուածները պարզեցին խնդիրը, իւրաքանչիւր յօդուածագիր իւր մտաց համեմատ փաստեր ի մէջ բերելով։ Սևաստոպոլցիք և նոցա հետ համաձայն այլ շատ նշանաւոր անձինք, որք բաց ի անձնական շահէ, բարոյապէս իրենք զիրենք պարտական կը ճանչնային Սեւաստոպոլի շահը պաշտպանել, ձայն վերցուցին թէ՝ « Սևաստոպոլ արժանաւոր է ամենայն առանձնաշնորհութեանց, նա Ա․ արևելեան պատերազմին միջոց պատուար կեցած է Ռուսաստանի, յինքն

ընդունելով Թշնամեաց բիւրաւոր ռումբերը. Նորա
ծովը և սարերը ներկուած են ազգին բիւրաւոր
երիտասարդաց արիւնով. Սեւաստոպոլի շահը՝
բոլոր Ռուսաստանի շահն է»: Այս զօրաւոր ձայ-
ներու դիմաց, որք ընդարձակ աշխարհին մէջ ա-
մէն անկիւնէ իրենց արձագանքը ստացան, աւելի
զօրաւոր ձայն և փաստեր կարևոր էին ցուցանե-
լու, որ առաջարկեալ խնդրոյն Թէոդոսիոյ նաւա-
հանգիստը առաւել նպաստաւոր է: Սակայն այդ
գործին ձեռնամուխ լինելու մեծ խոհեմութիւն և
շրջահայեցութիւն կարևոր էին, միանգամայն աշ-
խարհագրական և տնտեսական, նոյնպէս և պատ-
մական հմտութիւնք, որպէս զի Սեւաստոպոլի շահը
մէկդի թողլով, նշանակուի Թէոդոսիոյ նաւահան-
գիստը առանձնաշնորհ վաճառաշահ ծոց Սև ծովու
վերայ:

Եւ ահա այդ գործին ձեռք զարկաւ, և յաջողե-
ցաւ, հայկազն Լէոնիդ Մագիրեան, Տէրութեան
խորհրդականը (Conseiller d' Etat) որ կափայեցի է
ծննդեամբ, և քեռորդի միւս այլ պաշտպանին Թէո-
դոսիոյ՝ գերահանճար ծովանկարչի Յովհաննու Այ-
վազեան:

Սորա՝ Մագիրեանի գրածը, նախ իբրև ծնունդ
հայկական մտաց և ապա իբրև խոհական և իմաս-
տալից փաստաբանութիւն ներկայ խնդրոյս մա-
սին, արժանի է օրագրիս հետագայ պրակաց մէջ
ամբողջապէս հայ թարգմանութեամբ ի լոյս ըն-
ծայել:

Խոստացայ արդէն, քաղաքիս պատմութիւնը գրե-
լու միջոց մատնանիշ անել ազգիս յիշատակի ար-
ժանաւոր անձինք և արարք՝ զրուցեցի որ քաղա-
քիս պատմութեան հետ յարակից են և մերայնոց

գործունէութիւնք։ Վկայ խօսքերս են արդէն, և ազգայնոցս տեղական գործունէութեան, անցեալ տարուան և ի մօտաւոր անցելում, աստ ի Ռուսաստան հանդիպացեալ նշանաւոր անձինք ազգիս...

Նաւահանգստի խնդրոյ մասին կազմուած յանձնաժողովը (որ կարելի է գրուցել վայելչապէս Վեհաժողով), զի կը նախագահէր ի ժողովին ինքնակալ կայսրն, անդամակցութեամբ Թագաժառանգին, անդամ էր ժողովոյն և հայկազն Նախարարն Դելիանով, ի նկատի ունենալով Պ. Մաքսիմեանի գրածը, բազմութեամբ քուէից որոշեց, նշանակել Թէոդոսիոյ ծովածոցը բաց նաւահանգիստ վաճառաշահ ռուս և օտար նաւերու, Սևաստոպոլինը՝ որոշելով լինել կայարան ռուս մարտիկ նաւերու. Նորաշէն ծովաթումբերու և մեծամեծ ամբարանոցներու համար արքունի գանձարանէն վճարել միլիոնաւոր ռուբլիներու գումարը։ Այս որոշողութիւնը եղաւ 1890 Մայիս 14 ին. քիչ վերջը կայսերական հրովարտակը տպագրուեցաւ Ռուսաստանի բազմաթիւ թերթերուն մէջ, յորում բաց ի նաւահանգստին խնդրէն կը ծանուցուէր շուտով սկսելի երկաթուղւոյ[1] մասին որ պիտի կապէ զԹէոդոսիա բոլոր Ռուսաստանի հետ ի դիւրութիւն վաճառականութեան։ Այսպէս ուրեմն, երբեմն Գենուացւոց ժամանակ, հայութեամբ վաճառաշահն Թէոդոսիա, դարձեալ քիչ տարիներու միջոց պիտի հանի կամ գերազանցէ ծովային Հայաստանու[2]։ Այլ

1. Այդ երկաթի ճանապարհի գործունէութիւնը սկըսուած է 1890 ին, և աւարտած նոյն տարւոյ մէջ։

2. Առ Գենուացւոցս Armenia Marittima կոչուած է կաֆա։

մեզ փութամք տալ մի ընդհանուր տեսութիւն Թէոդոսիոյ ծովածոցին և այնոր ափերուն մօտ աղգիս անցելոյն։

## Բ

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Տաւրիական Թերակղզւոյն արևելեան ծայրը, Սև ծովուն եզերք, շինուած է Նախաքրիստոսեան հին քաղաքը Թէոդոսիա․ ի հարաւոյ, յելից և ի մտից արևու կը բարձրանան կաւեղէն բլուրներ, որոց վերին մասը լերկ, այլ ստորին մասը ծածկուած է քաղցրահաշակ և գինեբեր այգիներով։

Ծովը՝ յարևելից մօն գալով, մտած է ցամաքին մէջ, մեր երկաթագիր (Տ տիւն) տառին վերին կիսաձևով, որ և ընդարձակ տարածութեամբ և խոր յատակաւն ապահով նաւահանգիստ է մեծամեծ նաւերու։ Քրիստոսեան թուականէն 600 տարի առաջ՝ նշանաւոր եղած է Թէոդոսիա ծաղկեալ ծովային վաճառականութեամբ, այլ ի միջին դարս, փոխելով իւր անունը ի Կաւա (Կաֆա), ի ծայր փառաց հասած է Գենուացի և Հայ վաճառականաց ձեռքով։ Ի Ժ դարէ և այսր յաճախած են Հայք այս վաճառաշահ նաւահանգիստը, որոյ վկայք են ցարդ մնացած քանդակագործ և այլ գրաւոր աւանդութիւնք։ Յառաջին կէս ԺԴ դարու, կէս միլիոն հայասեռ ժողովուրդ, և ըստ գրելոյ մի հայկական յիշատակարանի, «Իշխանք և ազնուականք» բնակութիւն հաստատած են

քաղաքին մէջ, նոյնպէս և քաղաքէս դուրս՝ սարերուն վերայ ու հովտաց մէջ, տասը ժամուան ճանապարհ, ընդարձակ տարածութեան վերայ, ի Թէոդոսիոյ մինչև ցՍ. Խաչ, հայկական քաղաքը (առ Գենուացւովք աղաւաղելով Սուրխաթ եղել է, այժմ Հին-Ղրիմ), և ի Ս. Խաչէ մինչև ցՂարապազար 68 վերստ հեռաւորութեան միջոց շինած են հարիւր հազար տուն, լեռները և սարերը զարդարել են խաչապսակ եկեղեցեօք և վանորէիւք։ Եկեղեցեաց թիւը մինչև հազարի կը հասցնէ հին յիշատակարանը, «շինեցաք եկեղեցիս հազար» գրուցելով։ Այս թիւը, անշուշտ շատերուն, չափազանցօրէն գրուցուած կ'երևի, այլ մեք որ ականատես եղած եմք բազմաթիւ կիսաւեր քարուկիր ազգային եկեղեցեաց, Ղրիմու սարերուն վերայ, այնպէս կը համարիմք, որ՝ եթէ ոչ հօյակապ եկեղեցեաց, այլ ամրակուռ և փոքրադիր մատրանց թիւը, կարի շատ եղած է 1330–1475 թուականաց միջոց։ Այդ եկեղեցեաց մի մեծ մասը, բուն Թէոդոսիոյ մէջ շինուած են, հնագոյնք՝ Գենուացւոց պարսպին ներքնակողմը, նորաշէնք պարսպէն դուրս, հայկական պարսպին մէջ. և այլ շատեր պարսպէն ևս դուրս մնացել են։ Այսպէս մեծ եղած է, Անեցի Ղրիմաբնակ Հայ ժողովրդոց ժամասիրութեան և եկեղեցաշինութեան եռանդը ժամանակաւ։ Շէն և պայծառ հնչած են այդ եկեղեցիք, յընթացս 145 տարիներու հայկական ժամասացութեամբ։ 1475 թուականին շատ պակսած է Հայոց թիւը, որով և եկեղեցեաց մի մասը, անծուխ և աւերակ մնացել են. այլ վերջին գաղթականութիւն ազգիս (1778) ի Տաւրիոյ յԵկատերինեսլաւ, Դոնեան աշխարհը, բոլորովին անմարդի և անհայ թողած է, երբեմն

հայութեամբ հայկական Կաֆա որով և եկեղեցիք դարցել են բոյն ջղջկանց և բուէճից։

Սակայն աւերակն եւս Կաֆա, միշտ օիրային անկիւն մի գրաւած է հայ անեցի պաղթականաց սըրտերուն մէջ, և մինչև ցայսօր քաղցրալուր կը հնչէ այն անունը հայ ականջաց։ Անցեալ դարու մի հայ գրիչ պանծանօք կը գրէ.

« Կաֆա քաղաք ծովահայեաց, Եկեղեցիքը զարդարուած »։

Արդեօք ազգիս կրած բազմապատիկ վիշտերն են, այս քաղաքիս մէջ այդ սիրոյ զգացման շարժառիթը, թէ բիւրաւոր նահատակաց արեան գետերը, որք ողողած են քաղաքիս հողն և գետին։

Որպէս և իցէ Թէոդոսիա քաղաքը յընթացս հարիւրաւոր տարիներու, բիւրաւոր ազգայնոց գործունէութեան ասպարէզ եղած է, և կ'արժէ ազգայնոց այս քաղաքին հին և նոր պատմութեան[1] ծանօթ լինել։

1. Որպէս զի ամէն տողի չհարկադրինք ծանօթութիւնք յաւելուլ, կը կանխենք զրուցել, որ առաւելիկայ պատմական յօդուած քաղել ենք գլխաւորաբար յիշեալ աղբիւրներէ։

Յիշատակարանք Օդեսայի հնագէտ ընկերութեան, ի ռուս լեզու։ Պորմոնեան Կողոբոց ողբարհէ փիլիպ. Bruun. կանհաւորդ գիտութեանց, ակադեմեային Ս. Պետրբուրգի, ՚ի Գաղղ. լեզու։ Անտոնի Պորմոնեան Թէոդոսիոյ Փ. Լաշորիոյ. ի գաղղ. լեզու։

Ազգային աղբիւրք. Ճանապարհորդութիւն ի Լեհս Վ. Հ. Մինասայ Բժշկեան, և այլ անտիպ յիշատակարանք։

## Գ

## ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՒԱՑԻ

Կաւայի հին պատմութիւն՝ անմիջական վերաբերութիւն ունի նախնոյն Տաւրիկեան Քերսոնեսի անցից և մասամբ նաև առասպելապատում աւանդութեանց հետ։ Հաւանականաբար Քրիստոսի Թուականէն չորս հարիւր տարի յառաջ յոնիական գաղթականութիւնք եկած են այն կողմերը, հաստատուիլ բնակութեամբ և վաճառականութեամբ ի գաւառն որ ի ժամանակին՝ ծանօթ աշխարհին հիւսիսածայրն համարուած էին։ Իրենցմէ յառաջ, Թերակղզւոյն ինչպէս նաև չորս կողմի գաւառաց բնակիչքն համարուած են Սկիւթացիք։ Պլինիոս և Ստրաբոն կ'աւանդեն թէ Տաւրիկեան Թերակղզին ի ծովէ ելած է, և երկու հազար տարի յառաջ քան զհասարակաց Թուականն՝ Ասիոյ Տաւրոս լերանց կողմանէ հոն գաղթած ժողովրդեան պատճառաւ Տաւրիկէ կոչուեր է․ իսկ այլք Դիոդորի սիկիլիացւոյ հետ կը համարին թէ զանազան ժողովուրդք ի վաղընջուց հոն հաստատած ըլլան իրենց բնակութիւնը և Սկիւթացիք կոչուած, որ ընդհանուր անուն մ'է կիմմերեանց և նոյն կողմերն եղող ուրիշ ժողովրդոց։

Նիւթերնէս դուրս է պատմական — ազգագրական խնդրովք զբաղիլ և զբաղեցընել։ Յիշեցընենք միայն թէ առասպելք՝ Սկիւթացւոցմէ յառաջ ալ ուրիշ ազգ մը կը գնեն այն կողմերն, բուն կիմմերեանքը, ստոյգ կամ առասպելական, որոց

նախկին բնակութիւնն էր ըստ քերթողաց՝ հիւրատեաց և տխրագին գաւառ մը, խիտ առ խիտ անտառօք և արեգական ճառագայթից անթափանց մշտնջենաւոր միգով և մառախղով պատած։ Հալածեալք ի Սկիւթաց ի Կիմմերեան Վոսփորէ, եկան ի խնդիր նորոյ բնակութեան. և ընդ Եւքսինեանն անցնելով ի Պոնտոս, մերձաւոր ազգաց և ժողովրդոց վրայ ինկան ահաւոր արշաւանօք, և ըստ Հերոդոտեայ՝ յարձակելով ի Փոքրն Ասիա, տիրեցին Կիաքսարայ թագաւորութեան. ուր քսանևութ տարի իշխելով՝ վերջապէս հալածուեցան յԱլիադէս թագաւորէն Լիւդիոյ։

Տաւրիկեան թերակղզւոյն նախնական ժամանակաց կը վերաբերին Եւքսինեան Պոնտոսի այլ և այլ քաղաքներն, որ վաճառականական և քաղաքական պատմութեան մէջ կարևոր և ազդեցիկ դեր մը ունեցան. ասանկ՝ Պանտիկապէա (այժմու Կերչ), Թէոդոսիա (կաւա կամ Քէֆէ միջին դարուց), Քերսոն՝ որոյ դիրքը հիմակուան Սեւաստապոլի մօտերն կ'իյնայ։

Ժամանակ անցնելէն ետքը՝ Պանտիկապէա, որ Վոսփորոս ակսեր էր կոչուիլ՝ նեղուցին վրայ ունեցած դրիցը պատճառաւ, յոնիական փոքրիկ թագաւորութեան մը աթոռ եղաւ, ու կամաց կամաց տարածեց ընդարձակեց իր իշխանութիւնն բովանդակ Քերսոնեսի և Եւքսինեան ծովու հիւսիսակողման գաւառներու վրայ, ուր բազումք յիշխողաց սկիւթացի ծագումն ունէին։

Մեծ ու զգալի եղաւ յոյն գաղթականութեանց քաղաքակիրթ և բարերար ազդեցութիւնն այն կողմերու վայրենի բնակչաց վրայ. որով հին ժամանակաց բարք և սովորութիւնք կրեցին իրենց կեր-

պարանափոխութիւնը, նոյն իսկ իրենց կրօնական պաշտամանց մէջ մտցընելով յունական դիցաբանութիւնը. կրթութիւնն և ուսումն ալ ունեցան բաւական յառաջադիմութիւն: Վոսվորացիք Տաւրիոյ արեւելեան կողմեր տարածելով իրենց իշխանութիւն, շինեցին և բարգաւաճ ըրին զՊանտիկապէա յեւրոպակողման, իսկ ի կողմն Ասիոյ կանգնեցին միւս այլ քաղաք՝ զՓանակորիա: Միլեսացիք՝ Թէոդոսիա քաղաքին հիմնարկութիւնն ըրին, և այնչափ զօրացան՝ որ յաջողեցան վանել զՍոթիրոս թագաւոր Վոսվորի: Բայց Յունաստան ի կէս Բ դարու (նախ քան զՔր.), կորսնցնելով իւր անկախութիւնը, Հռովմայեցւոց մեծազօր պետութեան մարզ կը լինի. տակաւ կը սկսին պոնտական պատերազմունք. պատմական մեծ մարդը, Միհրդատ Եւպատոր (յԱ. դարու նախ քան զՔր.) ամուր թումբ կը կանգնի հռոմէական հեղեղաց դէմ. և չի թողուր նոցա լէգէոնաց անարգել ոտնակոխ անել իւր աշխարհը:

Սկիւթացիք յարմար ժամանակ գտնալով, իրենց արօրադիր խոփերը ի սուր և ի սուին կը ձուլեն. և Թէոդոսիոյ վաճառականութիւնը առ ժամանակ մի կանգ կ'առնու:

Միհրդատ մէկ կողմանէ՝ քաջապէս յետ կը մղէ Հռովմայ մեծանուն զօրավարները Սիլլա, Լուկուլլոս և Պոմպէոս. և միւս կողմանէ, իր Դիոփանդոս զօրավարին ձեռքով կը ջախջախէ Սկիւթացւոց ապստամբութիւնն, և Քերսոնեսեան հասարակապետութիւնը. հանդերձ Վոսվորեան թագաւորութեամբ, Քերսոնիսիւ, Պանտիկապէիւ և վաճառաշահն Թէոդոսիաւ, իւր պոնտական թագաւորութեան մարզ կը կացուցանէ առաջին դարուն սկիզբը նախ քան զՔր:

Տակայն Պոնտացւոյն փառքը չի տեւել երկար. Հռովմայ քաջ սպայեանը, յաղթող Սկիւթացւոց, Քերսոնեսեան հասարակապետութեան և Վոսփորեան Թագաւորութեանց նուաճողը, Եւպատոր, անարժան որդւոյն Փառնակի դաւաճանութենէն ընկճեալ կը զրուի ի կենաց, և անոր ընդարձակ պոնտական Թագաւորութիւնը Հռովմայ զինուց ներքև կը նուաճի։

Թէոդոսիոյ վաճառաշահութիւնը Հռովմայեցւոց կառավարութեան ներքև ևս կը բարգաւաճի. նա իւր ապրանքները, նաւերով մինչև 'ի Հռովմ կը հասցընէ, ինչպէս տարիացի տաւարաց համեղաճաշակ միսը, փոքրիկ տակառներու մէջ ամփոփելով, որոց ամէն մէկուն գին 400 արծաթի դենար վճարելով, հռովմայեցի սիբարեանք ախորժելով կը ճաշակեն[1]։

Այլ միւս կողմանէ, որովհետև Թէոդոսիա Թատերատեղի կը դառնայ դրացի ազգաց խլրտմանց, վասն որոյ նորա վաճառականութիւնը ժամանակ առ ժամանակ կը մեռանի։

Հռոմայեցիք առաւել համակրութեամբ կը վարուին Քերսոնիսացւոց հետ, զի նոքա արդէն հատուած են Հռովմայեցւոց, և բարբառով և քաղաքակրթութեամբ մերձաւոր։ Պանտիկապէա նախանձու աչօք կը նայի Քերսոնիսացւոց վերայ, որոյ հետևանք կը լինին արիւնահեղ կռիւներ, Թէոդոսիոյ պարապաց ներքև, որ այդ երկու քաղաքաց մէջ տեղը կ'ինկնայ։ Սկիւթացիք ևս խառնուելով Քերսոնիսացւոց և Պանտիկապէի կռուոց մէջ, ոչ թէ միայն Թէոդոսիոյ վաճառաշահութեան, այլ

1. Montesquieu. Esprit des Lois, Livre VII. Chap. I

առ հասարակ Տաւրիոյ մշակութեան և յառաջադիմութեան արգել և վնաս կը լինի։

Ի վերջ կոյս առաջին՝ և ի սկիզբն երկրորդ դարու փրկչական թուականիս, կը սուրան ի Թէոդոսիա, ընդ Տանայիս գետ, ասիական Ալան կոչուած բարբարոս ժողովուրդը, և Թէոդոսիոյ պարսպաց հետ, հիմն ի յարև կը կործանեն նորա վաճառականութիւնը։ Հաւանականաբար այս միջոց ժամանակին համար է Նիկոմիդիոյ հրամանատար Արիանոսի գրածը, որ կը կոչէ զԹէոդոսիա «Քարուքանդ քաղաք. որոյ պատմութիւնը յիշատակարանաց մէջ խնդրելի է»։

Այս յիշատակարանիս վերայ հիմնեալ, ոմանք ի գիտնոց, Թէոդոսիոյ հին պատմութիւնը աւարտեալ կը համարին. այլ մի նորագիւտ արձանագրութիւն, քանդակուած մարմարիոն սիւնի վերայ, կը ծանուցանէ որ՝ եղած է ի Թէոդոսիա, ի ժամանակս թագաւորութեան Վոսվորի Տիբերեայ-Յուլիոյ Տէյրանոսի «Պաշտօնեայ արքայի և վերակացու»[1]։

Աստի մեք կը մակաբերեմք. Թէոդոսիա՝ Քերսոնիսեան և Վոսվորեան խիզախմանց միջոց, եղած է ոտնակոխ և յԱլանաց քարուքանդ՝ առ ժամանակ մի, այլ սակաւ յետոյ դարձեալ գլուխ վերցուցած է, շնորհիւ իր աշխարհագրական դրից, երբ (այն է 200 թուին միջոցները) Գոթացիք հալածական կը վարեն ի Թէոդոսիոյ զԱլանները։ Նոյն միջոցներուն Սարմատացիք ևս, Կիմմերեան (Ենիքալէ) նեղուցէն մտնալով ի Տաւրիա կը տիրեն Պանտիկապէի. և կը սկսի երկրորդ հարստութիւն

1. Այս սիւնը գտնուած է ի Կերչ 1845ին։

Վասպուրեան Թագաւորութեան։ Կը փութան Հռովմայեցիք Սարմատացւոց ինքնիշխանութեան առջևը առնուլ ի Տաւրիա. 303 ին Կոստանդին Խլորոս, Դիոկղետիանոս կայսեր զօրավարը, Քերսոնիտացւոց օգնութեամբ կը նուաճէ զՍավրոմատ Ը. Սարմատացւոց Թագաւոր։ Նորա յաջորդը, Սավրոմատ Թ. Թէոդոսիոյ սահմանագլխոյն վերայ կը զրուի ի կենաց մենամարտելով մի քերսոնիտացի շահատակի հետ։ Յերկրորդ կէս Դ դարու, դարձեալ կը յիշուի մի Թագաւոր Վոսփորի՝ Սարմատացի ազգաւ, Ասանդրոս Բ անուամբ. որոյ իշխանութեան միջոց, այն է 378 թուին, հեղեղաբար կը սուրան յԱսիոյ Հոնք, նշանաւորք ի պատմութեան, իւրեանց քանդիչ բնաւորութեամբ, որք և վերջ կու տան Վոսփորեան Թագաւորութեան, կործանելով տաւրիացի շինանիստ քաղաքները։ Այդ բարբարոսաց հարուածներուն ներքև չիջելափառ կը կործանի վաճառաշահն Թէոդոսիա, և կը մնայ երկար ժամանակ, նախ Ալանաց, ապա Գոթացւոց և հուսկ Հոնաց դերբուկներուն ներքև, մինչև որ գան մաքրելու նորա ափունքը շահավաճառ և օգտածարաւ Հայ և Գենուացի վաճառականք։

## Դ

## ՄԻՋԱԿ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՒԱՑԻ

Աւերակաց ներքև վերջ տուինք Թէոդոսիոյ հազար և երկերիւր տարուան համառօտ հին պատմութեան։

Հոնք քար քարի վերայ չթողլով ի Թէոդոսիա,

կ'անցնին յԵւրոպա, որոց արժանաւոր առաջնորդը «Գաւազանն բարկութեան Երկնից» Ատտիլաս, ի ճանապարհին այլ շատ քաղաքներ ենթարկելով Թէոդոսիոյ ճակատագրին՝ կը հասնի Իտալիա։

Հարիւր և աւելի ևս տարիներ, Թէոդոսիա, նոյն և ամբողջ Տաւրիա՝ աւերակաց ներքև կը մնան։

501 ին կ'արշաւեն ի Տաւրիա յԱսիոյ Ուգրացիք և Բուլղարք. սոցա կարճատև տիրապետութեան վերջ կուտայ կայսրն Յուստինիանոս Ա. դարձեալ զՏաւրիա Հռովմայեցւոց իշխանութեան ենթարկելով. ծովահայեաց շատ տեղուանք կայսեր շինել տուած բոլորաձև բերդերուն, նոյն ձևով, աշտարակները ցարդ կանգուն կեցած են[1]։

Ի վերջին կէս Է դարու՝ մի նոր ժողովուրդ ևս մուտ կը գործէ ի Տաւրիա, Կազար կամ Խազար անուամբ։ Այս ազգը, համեմատ իւր երկրագործ բարուց, երկար միջոց ժամանակի կը տիրէ Տաւրիոյ դաշտային մասանց և Օրի դռնէն ևս դուրս կ'ընդարձակէ իւր իշխանութիւնը. տակաւ կը բազմանան սոքա, այնպէս որ Տաւրիա, փոխելով անունը Կազարիա (Ghazaria) կամ Խազարաց աշխարհք կը կոչուի։ Սոցա շահաստանը կը լինի մօտ այժմեան հին Ղրիմու. Կազարաթ, երբեմն կոչուած մեծ աւանը. մեք այժմ այդ մեծ աւանին սակաւաւոր նշխարք կամ մնացորդք միայն կարող եմք նշմարել, ի հին-Ղրիմէ ցՍուտաղ տանող ճանապարհին վերայ, և այն գետնին հաւասարած հիմունք և քարինք հին շէնքերու, որք մօտաւոր ա-

1. Ինչպէս ի Հալուշտա, Ղրիմու հարաւային ափանց վերայ։

ազգային հետախաղաղ պիտի կորնչէին. չմոռանանք նաև յիշելու որ՝ այդ մեծ ուանը աւելի 200 տարի առաջ ծուխ համարուած էր Ս. Խաչ վանքին, որ բարձր լերան վերայէն կը դիտէր իւր ընդարձակ ծուխը, Կազարաթ մեծ ուանը. Այժմ դարձեալ կանգուն Ս. Խաչ իւր տեղ, և 1880ին վայելչապէս նորոգուած, ի ձեռն Գերապատիւ Վարդապետին Խորէն Ստեփանէի, փոխանակ մեծ ուանին, գեղեցիկ ձորերուն և հովիտներու միայն կը տիրէ, որք ժամանակաւ բիւրաւոր Հայոց տեղի բնակութեան եղած են։ Մեք այնպէս կ'ենթադրեմք, որ Կազարաց բնակութեան միջոց ի Տաւրիա, գաղթած լինին աստ բազմաթիւ հայ ժողովուրդ, և ունեցել են իրենց եկեղեցիները և վանքերը. այս ենթադրութեանս պատճառները, զատ առանձին գլխով կ'աւանդեմք ի ստորև, ի գիտութիւն սիրողաց ազգիս հին գաղթականաց պատմութեան։

Ի մետասաներորդ դարու կը դիմեն ի Տաւրիա Պեչենեգ և Կոման կոչուած ազգերը, զորս կը հալածեն Մոնղոլ Թաթարք, 200ին վերջերը, առաջնորդութեամբ քաջակորով Բաթու խանին, որ էր թոռն, ի պատմութեան նշանաւոր Ջինգիզ խանին, հաստատողի գիշխանութիւն Խըպչախաց, ոսկի-Ջոկատին։

Բաթու՝ Թէոդոսիոյ մօտաւոր, Սոլղաթա այժմ Սուտաղ կոչուած հովտին եզերք, ապալեր սարերու վերայ կը հաստատէ իւր աթոռ, որոյ ստորոտը կը խորտակին անգուսպ ալիք Սև ծովու. և ժամանակ առ ժամանակ կու սփռէ հեղեղօրէն դէպ ի Լեհաստան և ի Ռուսաստան, և գերելով գերփելով այն աշխարհները, նոցա կանայք Սոլղաթայ և Թէոդոսիոյ հրապարակաց վրայ ամօթալից և նախատեալ կը

սպասեն գերեվան Հայերու 1, որ գան և արծաթով գնելով ազատեն զիրենք այդ տառապանաց վիճակէն, և տանին իրենց ընտանեաց մօտ։

Բագուի Թոռը Մանգու-Դէմիր, իւր որդւոց մէջ կը բաժանէ Թերակղզիս. և Օրան-Դէմիրի ժառանգութիւն կ'իյնայ Սուրխաթ քաղաքէն մինչև Թէոդոսիոյ ափունքը 1266ին։ Սուրխաթ կը լինի մայրաքաղաք Օրան-Դէմիրի. և սորա իշխանութեան միջոց կը փոխուի նորա անունը ի Ղրիմ կամ Քըռըմ. և որովհետև ժամանակ անցնելէն վերջ, բոլոր Թերակղզւոյն անուն կը դառնայ Քըռըմ, որպէս զի մասը բոլորէն զանազանի, Հին մակդիրը կը դնեն քաղաքին վերայ, կոչելով Օրան-Դէմիրի մայրաքաղաքը Հին կամ „Էսկի-Քըռըմ։ Ուշադրութեան արժանի է, որ Սուրխաթի անուանափոխութենէն իբր 300 տարի առաջ Թէոդոսիա ևս փոխել է անունը և սկսել է Կաւա-Կաֆա կոչուիլ։ Այս երեք անուանց վերայ, այդ է Սուրբխաթ, Կաֆա, և Ղրիմ առանձին գլխով պիտի խօսինք, բացատրելով նոցա ծագումն կամ ստուգաբանութիւնը։

1. Ինչպէս Օվանէս Գոկասանովիչ 1879ին։

# Ե

## ԳԵՆՈՒԱՑԻՔ Ի ԿԱՖԱ

Յայտնի է մեզ ի պատմութենէ որ Գենուացիք ԺԳ դարէ սկսեալ մեծ դեր խաղացել են Կաֆայի մէջ, այլ ստոյգ չէ որ թուականին նոցա ի ցամաք իջնալը ի Թէոդոսիա, և ուրից կռուան հաստատելը քաղաքիս մէջ, սակայն գիտեմք որ Թաթարաց իշխանութեան միջոց առաջին անգամ աստ ի ցամաք ելած են Գենուացիք։ Հաւանելի կը թուի մեզ հնագէտ Իւրգեւիչ պրոֆեսորին կարծիքը, որ կ'ենթադրէ թէ ի Կաֆա, 1204 ին, յետ առման Կ. Պոլսոյ ի Լատինաց եկած են խաչակիր իտալացի ասպետք, որոց մին R (Ռ) սկզբնանուն կրած է. վասն զի նոյն խուզարկութեամբ յերևան ելած մի յիշատակարան կը հաւաստէ որ ի սկիզբն ԺԳ դարու Ռանանով իշխան մի ի Կաֆա, արտօնութիւն կը շնորհէ տաւրիացի քաղաքաց մէջ անմաքս վաճառականութիւն անելու։ Այլ այդ իշխանը յայտնի չէ որ քաղաքէն լինելը՝ վենետկեցի՞ է արդեօք թէ Գենուացի. զի այդ քաղաքացեաց նաւերն, անխտիր նոյն միջոցներն Սև ծովուն քաղաքներուն մօտ դեգերել են։

Այլ ի վերջին կէս ԺԳ դարու, Օրան-Դէմիր Թաթարաց խանին իշխանութեան միջոց, Գենուացիք օրինաւոր պայմանագրով Կաֆա քաղաքը, հանդերձ իւր շահեկան ծովածոցով, իրենց կառավարութեան կեդրոնավայր կը ստանան. և այս է համառօտութիւն նոցա պայմանագրին ընդ Օրան-Դէ-

միրի։ Ա. Գենուացիք կը պարտաւորին վճարել խանին մաքս ի Կաֆա մտած և ելած ապրանքներէն։ Բ. Խանը կը պարտաւորի Գենուացւոց շտեմարաններ և տներ շինելու համար բաժնել տալ երկիր, զոր նոքա պարսպելով կարնան ապահովել իրենց ապրանքը։ Գ. Ամէն ազգաց նաւերու դիմաց բաց և անարգել թողուլ Կաֆայի նաւահանգիստը, Գենուացւոց հեռաւոր աշխարհներէ բերած ապրանքը դուրս հանելու համար։

Գ. Մուրզաքեւիչ «Գենուացի գաղթականութիւնք ի Ղրիմ» գրուածքին մէջ կը հաստատէ որ՝ «Թաթար խանք, ինքեանք հրաւիրեցին օտար ազգերը, շէնցնելու Ղրիմու աւերակ քաղաքները. այն միջոցներուն Գենուացւոց հետ Պիզացի և Վենետկեցի վաճառականք ունէին իրենց նաւերը Սև ծովուն վերայ. այլ Գենուացւոց քան զմիւսները առաւել յօժարակամ ի Ղրիմ դիմելուն պատճառը, անշուշտ դարուս սկիզբը, ի Կաֆա ցամաք ելնող ասպետք լինելու են, որք կարողացել են գնահատել երկրին շահեկանութիւնը»։ Վերև ի մէջ բերած պայմանագրիս համառօտութիւնը, կը լինի ամուր խարիսխ, որոյ վերայ կը բարգաւաճի տակաւ Գենուացւոց ի Կաֆա և ի Սոլդայա մեծամեծ վաճառաշահութիւնք։

Շատ երկար կը լինէր եթէ աստ մանրամասն գրելու լինէինք Գենուացւոց 200 տարուան միջոց, աստ ի Ղրիմ, անցուցած շահավաճառ և գործունեայ կենաց պատմութիւնը, որ և դուրս է մեր նպատակէն։ Նոցա գործունեայ կենաց յիշատակարանները, ցարդ՝ 500 տարին անցնելէն յետոյ, կանգուն կեցել են ի Սոլդայա և ի Կաֆա, վկայելով անբարբառ զիրենք շինողաց մեծագործութեան։

հայութեամբ հայակազմ Կաֆա որով և եկեղեցիք դարձել են բոյն ջղջիկանց և բուէճից։

Սակայն աւերակն ևս Կաֆա, միշտ սիրային ան-կիւն մի գրաւած է հայ անցեալ դաղթականաց սըր-տերուն մէջ, և մինչև ցայսօր քաղցրալուր կը հնչէ այն անունը հայ ականջաց։ Անցեալ դարու մի հայ գրիչ պանծանօք կը գրէ.

« Կաֆա քաղաք ծովահայեաց, Եկեղեցիքը զար-դարուած »։

Արդեօք ազգիս կրած բազմապատիկ փփշանքն են, այս քաղաքիս մէջ այդ սիրոյ զգացման շար-ժառիթը, թէ բիւրաւոր նահատակաց արեան գե-տերը, որք ողողած են քաղաքիս հողն և գետին։

Որպէս և իցէ Թէոդոսիա քաղաքը յընթացս հա-րիւրաւոր տարիներու, բիւրաւոր ազգայնոց գոր-ծունէութեան ասպարէզ եղած է, և կ՚արժէ ազ-գայնոց այս քաղաքին հին և նոր պատմութեան[1] ծանօթ լինել։

1. Որպէս զի ամէն տողի չհարկադրինք ծանօթութիւնք յաւելուլ, կը կանխենք զրուցել, որ առաջիկայ պատմա-կան յօդուած քաղել ենք գլխաւորաբար յիշեալ աղբիւր-ներէ։

Յիշատակարան Օդեսսայի հնագէտ ընկերութեան, ի ռուս լեզու։ Պատմութիւն Կովկասոյ աշխարհէ փիլիպ. Bruun. կանոնաւոր գիտութեանց, ակադեմեային Ս. Պետերբուրգի, ՚ի Գաղղ. լեզու։ Անտիպ Պատմութիւն Թէոդոսիոյ Փ. Լա-զորիոյ. ի գաղղ. լեզու։

Ազգային աղբիւրք. Ճանապարհորդութիւն ի Լեհս Վ. Հ. Մինասայ Բժշկեան, և այլ անտիպ յիշատակարանք։

## Գ

## ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՒԱՅԻ

Կաւայի հին պատմութիւն՝ անմիջական վերաբերութիւն ունի նախնոյն Տաւրիկեան Քերսոնեսի անցից և մասամբ նաև առասպելապատում աւանդութեանց հետ։ Հաւանականաբար Քրիստոսի թուականէն չորս հարիւր տարի յառաջ յոնիական գաղթականութիւնք եկած են այն կողմերը, հաստատուիլ բնակութեամբ և վաճառականութեամբ ի գաւառն որ ի ժամանակին՝ ծանօթ աշխարհին հիւսիսածայրն համարուած էին։ Իրենցմէ յառաջ, թերակղզւոյն ինչպէս նաև չորս կողմի գաւառաց բնակիչքն համարուած են Սկիւթացիք։ Պլինիոս և Ստրաբոն կ'աւանդեն թէ Տաւրիկեան թերակղզին ի ծովէ ելած է, և երկու հազար տարի յառաջ քան զհասարակաց թուականն՝ Ասիոյ Տաւրոս լերանց կողմանէ հոն գաղթած ժողովրդեան պատճառաւ Տաւրիկէ կոչուեր է. իսկ այլք Դիոդորի սիկիլիացւոյ հետ կը համարին թէ զանազան ժողովուրդք ի վաղընջուց հոն հաստատած ըլլան իրենց բնակութիւնը և Սկիւթացիք կոչուած, որ ընդհանուր անուն մ'է կիմմերեանց և նոյն կողմերն եղող ուրիշ ժողովրդոց։

Նիւթերնէս դուրս է պատմական — ազգագրական խնդիրովք զբաղիլ և զբաղեցընել։ Յիշեցընենք միայն թէ առասպելք՝ Սկիւթացւոցմէ յառաջ ալ ուրիշ ազգ մը կը գնեն այն կողմերն, բուն կիմմերեանքը, ստոյգ կամ առասպելական, որոց

նախկին բնակութիւնն էր ըստ քերթողաց՝ հիւրատեաց և տխրագին գաւառ մը, խիտ առ խիտ անտառօք և արեգական ճառագայթից անթափանց մշտնջենաւոր միգով և մառախղով պատած։ Հալածեալք ի Սկիւթաց ի Կիմմերեան Վոսփորէ, ելան ի խնդիր նորոյ բնակութեան. և ընդ Եւքսինեանն անցնելով ի Պոնտոս, մերձաւոր ազգաց և ժողովրդոց վրայ ինկան ահաւոր արշաւանօք, և ըստ Հերոդոտեայ՝ յարձակելով ի Փոքրն Ասիա, տիրեցին Կիաքսարայ Թագաւորութեան. ուր քսանևութ տարի իշխելով՝ վերջապէս հալածուեցան յԱլիատէս Թագաւորէն Լիւդիոյ։

Տաւրիկեան Թերակղզւոյն նախնական ժամանակաց կը վերաբերին Եւքսինեան Պոնտոսի այլ և այլ քաղաքներն, որ վաճառականական և քաղաքական պատմութեան մէջ կարևոր և ազդեցիկ դեր մը ունեցան. նման՝ Պանտիկապէա (այժմու Կերչ), Թէոդոսիա (Կաւա կամ Քէֆէ միջին դարուց), Քերսոն՝ որոյ դիրքը հիմակուան Սեւաստապոլի մօտերն կ'իյնայ։

Ժամանակ անցնելէն ետքը՝ Պանտիկապէա, որ Վոսփորոս սկսեր էր կոչուիլ՝ Նեղուցին վրայ ունեցած դիրքը պատճառաւ, յոնիական փոքրիկ Թագաւորութեան մը աթոռ եղաւ, ու կամաց կամաց տարածեց ընդարձակեց իր իշխանութիւնն բովանդակ Քերսոնեսի և Եւքսինեան ծովու հիւսիսակողման գաւառներու վրայ, ուր բազումք յիշխողաց սկիւթացի ծագումն ունէին։

Մեծ ու զգալի եղաւ յոյն գաղթականութեանց քաղաքակիրթ և բարերար ազդեցութիւնն այն կողմերու վայրենի բնակչաց վրայ. որով հին ժամանակաց բարք և սովորութիւնք կրեցին իրենց կեր-

պարանափոխութիւնը, նոյն իսկ իրենց կրօնական պաշտամանց մէջ մտցնելով յունական դիցաբանութիւնը. կրթութիւնն և ուսումն ալ ունեցան բաւական յառաջադիմութիւն: Վոսփորացիք Տաւրիոյ արևելեան կողմեր տարածելով իրենց իշխանութիւն, շինեցին և բարգաւաճ ըրին զՊանտիկապէա յեւրոպակողման, իսկ ի կողմն Ասիոյ կանգնեցին միւս այլ քաղաք՝ զՓանակորիա: Միլեսացիք՝ Թէոդոսիա քաղաքին հիմնարկութիւնն ըրին, և այնչափ զօրացան՝ որ յաղթեցան վանել զՍոթիրոս Թագաւոր Վոսփորի: Բայց Յունաստան ի կէս Բ դարու (Նախ քան զՔր.), կորանցնելով իւր անկախութիւնը, Հռովմայեցւոց մեծազօր պետութեան մարզ կը լինի. տակաւ կը սկսին պոնտական պատերազմունք. պատմական մեծ մարդը, Միհրդատ Եւպատոր (յ'Ա. դարու Նախ քան զՔր.) ամուր թումբ կը կանգնի հռոմէական հեղեղաց դէմ. և չի թողուր նոցա լէգէոնաց անարգել ոտնակոխ անել իւր աշխարհը:

Սկիւթացիք յարմար ժամանակ գտնալով, իրենց արօրադիր խոփերը ի սուր և ի սուին կը ձուլեն. և Թէոդոսիոյ վաճառականութիւնը առ ժամանակ մի կանգ կ'առնու:

Միհրդատ մէկ կողմանէ՝ քաջապէս յետ կը մղէ Հռովմայ մեծանուն զօրավարները Սիլլա, Լուկուլլոս և Պոմպէոս. և միւս կողմանէ, իր Դիոփանդոս զօրավարին ձեռքով կը ջախջախէ Սկիւթացւոց ապստամբութիւնն, և Քերսոնեսեան հասարակապետութիւնը, հանդերձ Վոսփորեան թագաւորութեամբ, Քերսոնիսիւ, Պանտիկապէիւ և վաճառաշահն Թէոդոսեաւ, իւր պոնտական թագաւորութեան մարզ կը կացուցանէ առաջին դարուն սկիզբը Նախ քան զՔր:

Սակայն Գանտացւոյն փառքը չի տեւել երկար. Հռովմայ քաջ ախոյեանը, յաղթողն Սկիւթացւոց, Քերսոնեսեան հասարակապետութեան և Վոսփորեան թագաւորութեանց նուաճողը, Եւպատոր, անարժան որդւոյն Փառնակի դաւաճանութենէն ընկճեալ կը զրկուի ի կենաց, և անոր ընդարձակ պոնտական թագաւորութիւնը Հռովմայ զինուց ներքև կը նուաճի։

Թէոդոսիոյ վաճառաշահութիւնը Հռովմայեցւոց կառավարութեան ներքև ևս կը բարգաւաճի. Նա իւր ապրանքները, նաւերով մինչև 'ի Հռովմ կը հասցընէ, ինչպէս տարիացի տաւարաց համեղաճաշակ միսը, փոքրիկ տակառներու մէջ ամփոփելով, որոց ամէն մէկուն գին 400 արծաթի դենար վճարելով, հռովմայեցի սիբարեանք ախորժելով կը ճաշակեն[1]։

Այլ միւս կողմանէ, որովհետև Թէոդոսիա թատերատեղի կը դառնայ դրացի ազգաց խիզախմանց, վասն որոյ նորա վաճառականութիւնը ժամանակ առ ժամանակ կը վնասի։

Հռոմայեցիք առաւել համակրութեամբ կը վարուին Քերսոնիսացւոց հետ, զի նոքա արդէն հատուած են Հռովմայեցւոց, և բարբառով և քաղաքակրթութեամբ մերձաւոր։ Պանտիկապէա նախանձու աչօք կը նայի Քերսոնիսացւոց վերայ, որոյ հետևանք կը լինին արիւնահեղ կռիւներ, Թէոդոսիոյ պարսպաց ներքև, որ այդ երկու քաղաքաց մէջ տեղը կ'ինկնայ։ Սկիւթացիք ևս խառնուելով Քերսոնիսացւոց և Պանտիկապէի կռուոց մէջ, ոչ թէ միայն Թէոդոսիոյ վաճառաշահութեան, այլ

1. Montesquieu. Esprit des Lois, Livre VII. Chap. I

առ հասարակ Տաւրիոյ մշակութեան և յառաջադիմութեան արգել և վնաս կը լինի։

Ի վերջ կոյս առաջին՝ և ի սկիզբն երկրորդ դարու փրկչական թուականիս, կը սուրան ի Թէոդոսիա, ընդ Տանայիս գետ, ասիական Ալան կոչուած բարբարոս ժողովուրդը, և Թէոդոսիոյ պարըսպաց հետ, հիմն ի յարև կը կործանեն նորա վաճառականութիւնը։ Հաւանականաբար այս միջոց ժամանակին համար է Նիկոմիդիոյ հրամանատար Արիանոսի գրածը, որ կը կոչէ զԹէոդոսիա «Քարուքանդ քաղաք. որոյ պատմութիւնը յիշատակարանաց մէջ խնդրելի է»։

Այս յիշատակարանիս վերայ հիմնեալ, ոմանք ի գիտնոց, Թէոդոսիոյ հին պատմութիւնը աւարտեալ կը համարին. այլ մի նորագիւտ արձանագրութիւն, քանդակուած մարմարիոն սիւնի վերայ, կը ծանուցանէ որ՝ եղած է ի Թէոդոսիա, ի ժամանակս Թագաւորութեան Վոսվորի Տիբերեայ-Յուլիայ Տէյրանոսի «Պաշտօնեայ արքայի և վերակացու»[1]։

Աստի մեք կը մակաբերեմք. Թէոդոսիա՝ Քերսոնիսեան և Վոսվորեան խիղախմանց միջոց, եղած է ոտնակոխ և յԱլանաց քարուքանդ՝ առ ժամանակ մի, այլ սակաւ յետոյ դարձեալ գլուխ վերցուցած է. շնորհիւ իր աշխարհագրական դրից, երբ (այն է 200 թուին միջոցները) Գոթացիք հալածական կը վարեն ի Թէոդոսիոյ զԱլանները։ Նոյն միջոցներուն Սարմատացիք ևս, Կիմմերեան (Ենիքալէ) նեղուցէն մանալով ի Տաւրիա կը տիրեն Պանտիկապէի. և կը սկսի երկրորդ հարստութիւն

1. Այս սիւնը գտնուած է ի Կերչ 1843ին։

Վոսվորեան Թագաւորութեան։ Կը փութան Հռովմայեցիք Սարմատացւոց ինքնիշխանութեան առաջքը առնուլ ի Տաւրիա. 303 ին Կոստանդին Խլոռոս, Դիոկղետիանոս կայսեր զօրավարը, Քերսոնէսացւոց օգնութեամբ կը նուաճէ զՍավրոմատ Ը. Սարմատացւոց Թագաւոր։ Նորա յաջորդը, Սավրոմատ Թ. Թէոդոսիոյ սահմանագլխոյն վերայ կը զրաւի ի կենաց մենամարտելով մի Քերսոնիտացի շահատակի հետ։ Ցերկրորդ կէս Դ դարու, գարձեալ կը յիշուի մի Թագաւոր Վոսվորի՝ Սարմատացի ազգաւ, Ասանդրոս Բ անուամբ. որոյ իշխանութեան միջոց, այն է 375 Թուին, հեղեղաբար կը թափեն յԱսիոյ Հոնք, նշանաւորք ի պատմութեան, իւրեանց քանդիչ բնաւորութեամբ, որք և վերջ կու տան Վոսվորեան Թագաւորութեան, կործանելով տաւրիացի չինանիստ քաղաքները։ Այդ բարբարոսաց հարուածներուն ներքև չիջելափառ կը կործանի վաճառաշահն Թէոդոսիա, և կը մնայ երկար ժամանակ, նախ Ալանաց, ապա Գոթացւոց և հուսկ Հոնաց դերբուկներուն ներքև, մինչև որ գան մաքրելու նորա աւիւնքը շահավաճառ և օգտածարաւ Հայ և Գենուացի վաճառականք։

## Դ

## ՄԻՋԱԿ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՒԱՑԻ

Աւերակացն ներքև վերջ տուինք Թէոդոսիոյ հնագոյն և երկերիւր տարուան համառօտ հին պատմութեան։

Հոնք քար քարի վերայ չթողլով ի Թէոդոսիա,

կ'անցնէին յԵւրոպա, որոց արժանաւոր առաջնորդը «Գաւազանն բարկութեան Երկնից» Ատտիլաս, ի ճանապարհին այլ շատ քաղաքներ ենթարկելով Թէոդոսիոյ ճակատագրին՝ կը հասնի Իտալիա։

Հարիւր և աւելի ևս տարիներ, Թէոդոսիա, նոյն և ամբողջ Տաւրիա՝ աւերակաց ներքև կը մնան։

801 ին կ'արշաւեն ի Տաւրիա յԱսիոյ Ուգրացիք և Բուլղարք. սոցա կարճատև տիրապետութեան վերջ կուտայ կայսրն Յուստինիանոս Ա. դարձեալ զՏաւրիա Հռովմայեցւոց իշխանութեան ենթարկելով. ծովահայեաց շատ տեղուանք կայսեր շինել տուած բոլորաձև բերդերուն, նոյն ձևով, աշտարակները ցարդ կանգուն կեցած են[1]։

Ի վերջին կէս Է դարու՝ մի նոր ժողովուրդ ևս մուտ կը գործէ ի Տաւրիա, Կազար կամ Խազար անուամբ։ Այս ազգը, համեմատ իւր երկրագործ բարուց, երկար միջոց ժամանակի կը տիրէ Տաւրիոյ դաշտային մասանց և Օրի դռնէն ևս դուրս կ'ընդարձակէ իւր իշխանութիւնը. տակաւ կը բազմանան սոքա, այնպէս որ Տաւրիա, փոխելով անունը Կազարիա (Ghazaria) կամ Խազարաց աշխարհք կը կոչուի։ Սոցա շահաստանը կը լինի մօտ այժմեան հին Ղրիմու. Կազարաթ, երբեմն կոչուած մեծ աւանը. մեք այժմ այդ մեծ աւանին տակաւաւոր նշխարք կամ մնացորդք միայն կարող եմք նշմարել, ի հին-Ղրիմէ ցՍուտաղ տանող ճանապարհին վերայ, և այն գետնին հաւասարած հիմունք և քարինք հին շէնքերու, որք մօտաւոր ա-

1. Ինչպէս ի Հալուշտա, Ղրիմու հարաւային ափանց վերայ։

պատգայրին հետախաղաղ պիտի կորնչին . չմոռանամք աստ յիշելու որ՝ այդ մեծ աւանը աւելի 200 տարի առաջ ծուխ համարուած էր Ս. Խաչ վանքին, որ բարձր լերան վերայէն կը դիտէր իւր ընդարձակ ծուխը, Կազարաթ մեծ աւանը. Այժմ դարձեալ կանգուն Ս. Խաչ իւր տեղ, և 1880ին վայելչապէս նորոգուած, ի ձեռն Գերապատիւ Վարդապետին Խորէն Ստեփանէի, փոխանակ մեծ աւանին, գեղեցիկ ձորերուն և հովիտներու միայն կը տիրէ, որք ժամանակաւ բիւրաւոր Հայոց տեղի բնակութեան եղած են։ Մեք այնպէս կ'ենթադրեմք, որ Կազարաց բնակութեան միջոց ի Տաւրիա, գաղթած լինին աստ բազմաթիւ հայ ժողովուրդ, և ունեցել են իրենց եկեղեցիները և վանքերը. այս ենթադրութեանս պատճառները, զատ առանձին գլխով կ'աւանդեմք ի ստորև, ի գիտութիւն սիրողաց ազգիս հին դաղթականաց պատմութեան։

Ի մետասաներորդ դարու կը դիմեն ի Տաւրիա Պեչէնեգ և Կոման կոչուած ազգերը, զորս կը հալածեն Մոնղոլ Թաթարք, 200ին վերջերը, առաջնորդութեամբ քաջակորով Բաթու խանին, որ էր թոռն, ի պատմութեան նշանաւոր Ջինգիզ խանին, հաստատողի գիշխանութիւն Խըպչախաց, ոսկի-Ջոկատին։

Բաթու՝ Թէոդոսիոյ մօտաւոր, Սոլդայա այժմ Սուտաղ կոչուած հովտին եզերք, ապալեր սարերու վերայ կը հաստատէ իւր աթոռ, որոյ ստորոտը կը խորտակին անդուսպ ալիք Սև ծովու. և ժամանակ առ ժամանակ կու սփռէ հեղեղօրէն դէպ ի Լեհաստան և ի Ռուսաստան, և գերելով գերփելով այն աշխարհները, նոցա կանայք Սոլդայայ և Թէոդոսիոյ հրապարակաց վրայ ամօթալից և նախատեալ կը

տպաւեն գերեհան Հայերու[1], որ գան և արծաթով գնելով ազատեն գիրենք այդ տառապանաց վիճակէն, և տանին իրենց ընտանեաց մօտ։

Բաթուի Թոռը Մանգու-Դէմիր, իւր որդւոց մէջ կը բաժանէ Թերակղզին. և Օրան-Դէմիրի ժառանգութիւն կ'ինկնայ Սուրխաթ քաղաքէն մինչև Թէոդոսիոյ ափունքը 1266ին։ Սուրխաթ կը լինի մայրաքաղաք Օրան-Դէմիրի. և սորա իշխանութեան միջոց կը փոխուի նորա անունը ի Ղրիմ կամ Քըրըմ. և որովհետև ժամանակ անցնելէն վերջ, բոլոր Թերակղզւոյն անուն կը դառնայ Քըրըմ, որպէս գի մասը բոլորէն զանազանի, Հին մակդիրը կը դնեն քաղաքին վերայ, կոչելով Օրան-Դէմիրի մայրաքաղաքը Հին կամ «Էսկի-Ղըրըմ»։ Ուշադրութեան արժանի է, որ Սուրխաթի անուանափոխութենէն իբր 300 տարի առաջ Թէոդոսիա ևս փոխել է անունը և սկսել է Կաւա-Կաֆա կոչուիլ։ Այս երեք անուանց վերայ, այդ է Սուրխաթ, Կաֆա, և Ղրիմ առանձին գլխով պիտի խօսիմք, բացատրելով նոցա ծագումն կամ ստուգաբանութիւնը։

1. Ինչպէս Օվանէս Պոկոտանովիչ 1579ին։

# Ե

## ԳԵՆՈՒԱՑԻՔ Ի ԿԱՖԱ

Ցայտնի է մեզ ի պատմութենէ որ Գենուացիք ԺԳ դարէ սկսեալ մեծ դեր խաղացել են Կաֆայի մէջ, այլ ստոյգ չէ որ թուականին նոցա ի ցամաք իջնալը ի Թէոդոսիա, և ուրից կռուան հաստատելը քաղաքիս մէջ, սակայն գիտեմք որ Թաթարաց իշխանութեան միջոց առաջին անգամ աստ ի ցամաք ելած են Գենուացիք։ Հաւանելի կը թուի մեզ հնագէտ Իւրգեւիչ պրոֆեսորին կարծիքը, որ կ'ենթադրէ թէ ի Կաֆա, 1204 ին, յետ առման Կ. Պօլսոյ ի Լատինաց եկած են խաչակիր իտալացի ասպետք, որոց մին R (Ռ) սկզբնանուն կրած է. վասն զի նոյն խուզարկութեամբ յերևան ելած մի յիշատակարան կը հաւաստէ որ ի սկիզբն ԺԳ. դարու Ռանանով իշխան մի ի Կաֆա, արտօնութիւն կը շնորհէ տաւրիացի քաղաքաց մէջ անմաքս վաճառականութիւն անելու։ Այլ այդ իշխանը յայտնի չէ որ քաղաքէն լինելը՝ Վենետկեցի՞ է արդեօք թէ Գենուացի. զի այդ քաղաքացեաց նաւերն, անխտիր նոյն միջոցներն Սև ծովուն քաղաքներուն մօտ դեգերել են։

Այլ ի վերջին կէս ԺԳ դարու, Օրան-Դէմիր Թաթարաց խանին իշխանութեան միջոց, Գենուացիք օրինաւոր պայմանագրով Կաֆա քաղաքը, հանդերձ իւր շահեկան ծովածոցով, իրենց կառավարութեան կեդրոնավայր կը ստանան. և այս է համառօտութիւն նոցա պայմանագրին ընդ Օրան-Դէ-

միրի։ Ա. Գենուացիք կը պարտաւորին վճարել խանին մաքս ի Կաֆա մտած և ելած ապրանքներէն։ Բ. Խանը կը պարտաւորի Գենուացւոց շտեմարաններ և տներ շինելու համար բաժնել տալ երկիր, զոր նոքա պարսպելով կարնան ապահովել իրենց ապրանքը։ Գ. Ամէն ազգաց նաւերու դիմաց բաց և անարգել Թողուլ Կաֆայի նաւահանգիստը, Գենուացւոց հեռաւոր աշխարհներէ բերած ապրանքը դուրս հանելու համար։

Պ. Մուրզաքեւիչ «Գենուացի գաղթականութիւնք ի Ղրիմ» գրուածքին մէջ կը հաստատէ որ՝ «Թաթար խանք, ինքեանք հրաւիրեցին օտար ազգերը, շէնցնելու Ղրիմու աւերակ քաղաքները. այն միջոցներուն Գենուացւոց հետ Պիզացի և Վենետկեցի վաճառականք ունէին իրենց նաւերը Սև ծովուն վերայ. այլ Գենուացւոց քան զմիւսները առաւել յօժարակամ ի Ղրիմ դիմելուն պատճառը, անշուշտ դարուս սկիզբը, ի Կաֆա ցամաք ելնող ասպետք լինելու են, որք կարողացել են գնահատել երկրին շահեկանութիւնը»։ Վերև ի մէջ բերած պայմանագրիս համառօտութիւնը, կը լինի ամուր խարիսխ, որոյ վերայ կը բարգաւաճի տակաւ Գենուացւոց ի Կաֆա և ի Սոլդայա մեծամեծ վաճառաշահութիւնը։

Շատ երկար կը լինէր եթէ աստ մանրամասն գրելու լինէինք Գենուացւոց 300 տարուան միջոց, աստ ի Ղրիմ, անցուցած շահավաճառ և գործունեայ կենաց պատմութիւնը, որ և դուրս է մեր նպատակէն։ Նոցա գործունեայ կենաց յիշատակարանները, ցարդ՝ 300 տարին անցնելէն յետոյ, կանգուն կեցել են ի Սոլդայա և ի Կաֆա, վկայելով անբարբառ զիրենք շինողաց մեծագործութեան։

Պատմութիւնը կը վկայէ որ՝ Գենուացիք այն երկերիւր տարուան միջոցին, մէկ կողմանէ ամրակուռ բերդեր շինել են, հեռաւոր արեւելքէ բերած ապրանքնին ապահովելու համար, միւս կողմանէ անդադար յետ մղել են այն բերդերուն վերայ յարձակող թշնամիքը։ Զի նոցա վերայ միշտ նախանձու աչօք նայել են, տիրող և գրացի ազգերը, որք հուսկ յետոյ հասած են իրենց վախճանին կործանելով և աւերելով երկու Գենուացի ծովահայեաց և գեղեցկադիր քաղաքները՝ Սոլդայա և Կաֆա, որոց բարօրութիւնը, Գենուացւոց կառավարութեան ժամանակ ծաղկեալ և նախանձելի եղած է։

Այլ մեք խօսիմք Գենուացւոց աջակից Անեցի Հայկազանց վերայ, որ և է նպատակ մեր այս գրութեան։

## Զ

## ԱՆԵՑԻ ՀԱՅԿԱԶՈՒՆՔ Ի ՏԱՒՐԻԱ

Խնդրովս՝ թէ երբ արդեօք Հայկազունք անցել են ի Տաւրիա, ազգային հեղինակներէ առաջ, պարապել են օտարք։

Նախընթաց դարուս վերջերը Թերակղզին մարզ լինելով Ռուսաց պետութեան, կայսրուհին Կատարինէ Բ. նման Արշակունեայն Վաղարշակայ, կը ցանկայ գիտել նոր նուաճած աշխարհին և նորա մէջ բնակող ազգաց պատմութիւնը, կամ ըստ բացատրութեան Խորենացւոյ, «կամ եղև գիտել որա (Կատարինեայ) թէ ոյք և որպիսի արք տիրեալ են ի վերայ աշխարհիս,... զքաջա՞ց արդեօք,

եթէ զվատաց անցեալ ունիցի զտեղի »: Մար Աբաս Կատինայ պաշտօնը կատարող կը հանդիսանայ Սեստրենցեւիչ Բոգուշ անունով համօրէն. կաթոլիկաց մետրապօլիտը, այր ուշիմ և վարժ, լեհ ազգաւ, որ կը գրէ Տաւրիոյ պատմութիւնը փրանկ լեզուաւ, քաղելով մեծաւ մասամբ Բրոնեսկի լեհ հեղինակին « Թաթարաց պատմութենէն ». յորում Բաղունները և Խըզըբէգները քաջագործութեանց հետ կը յաւելու և նուաճեալ կամ ի Տաւրիա բնակող զանազան ազգաց պատմութիւնը: Սորա գրածը մինչև ցյետին ժամանակներս աղբիւր հաւատարիմ պատմութեան Տաւրիոյ համարուած էր. այլ որովհետև հապճեպ գրուածք է, վասն որոյ կը պակասին ի նմա հետազօտութիւնք: Սրբազան Ցովսէփ Երկայնաբազուկ Արղութեանց առաջնորդ Հայոց մետրապօլիտն ևս ձեռք զարկած է գործոյս, եթէ ոչ բովանդակ Տաւրիոյ պատմութեան, այլ տաւրիաբնակ Հայկազանց մասին գրելու, որոյ բազմապատիկ զբաղանքը չեն թողուցել գլխաւորելու սկսածը: Սեստրենցեւիչ օգուտ քաղած է Արղութեանցի թողած, յետ մահու, յիշատակարաններէն. զի կը գրէ յիւրում պատմութեան թէ Հայք գաղթած են յԱնւոյ ի Ղրիմ 1340 ին: Անշուշտ սրբազանը այն տեղեկութիւնը կամ Նախիջևանու յայսմաւուրքէն և կամ Սուրղաթի (Ս. Խաչ վանքի) քարաքանդակ յիշատակարանէն հանած է. այլ յիշած թուականին մէջ, 10ը տարուան տարբերութիւն կամ սխալ սպրդած է. զի յիշեալ ազգային յիշատակարանք ի 1330 ին կը գրեն բիւրաւոր Հայկազանց գաղթը ի Ղրիմ և ոչ 1340 ին: Մեծարգոյ Փիլիպպոսի Բրիւն, բանասէր և հմուտ կաճառորդի Պետրբուրգի Գիտութեանց ակադեմիայի գրածը,

մեր նպատակին յարմար և համաձայն գտնալով համառօտելով կը դնենք աստ։ [1] «Գիտնոց մեծագոյն մասը, որք գրաղած են խնդրովս թէ՝ երբ արդեօք բնակութիւն հաստատել են Հայք Ղրիմու մէջ, ընդունած են ընդհանրապէս, Սեստրենցեւիչի կարծիքը, հանեալ ի յիշատակարանաց, յետ մահուն, Երկայնաբազուկ Արղութեանց իշխան արքեպիսկոպոսի։ Այդ յիշատակարանաց համեմատ, Թաթարք՝ նուաճելով զՀայաստան 1262 ին, երկրին բնակչաց մեծագոյն մասը տարել բնակեցուցել են այժմեան Ղազանի Աժտերխանու գաւառաց մէջ, ուսկից նոքա անցել են ի Ղրիմ 1341 ին համաձայնութեամբ Գեննուացւոց, ի Կաֆա և ի մերձակայս Սուտաղի»։

Առանց մերժելու, որ շատ Հայեր կարող եղած են անցնել ի Ռուսաստան, աշխարհին Մոնղոլաց լուծին տակ ընկնալէն վերջ, որք ապա կտրելով անցնելով անապատները եկել են բնակութիւն հաստատելու Ղրիմու քաղաքաց մէջ։ Մ. Իւրգեւիչ յայտնի կը բացատրէ որ՝ Հայոց գաղթականութիւնք եղած են այլևայլ ճանապարհներով, և արքեպիսկոպոսին ցուցուցած թուականէն շատ առաջ, այնպէս որ մեզի ուրիշ բան չինկնար, բայց եթէ հետեւիլ գիտնական հետազօտութեանց պատուական պրոֆեսորին. վասն զի սերտ կապ ունին նորա գրոյցքը խնդրոյս հետ որով այժմ զբաղիմք։

Անդստին ի ԺԱ դարէ, տարաբաղդ ժողովուրդք Հայաստանի, որ մասամբ ընկճեալ էին ի Քրդաց,

1. "Ծանօթութիւնք պատմականք և տեղագրականք խաւ-լացի գաղթականութեանց յաշխարհի Կովկասու". Պետրբուրգ 1866։

մնացեալ մասը, Թէպէտ դեռ եւ անկախ յայլ իշխանութենէ, այլ արդէն սկսած էին լքանել իրենց հայրենիքը, մէկ կողմանէ պարտասեալ Սէլճուք Թրքաց յաճախակի յարձակմունքից, միւս կողմանէ յոյն կայսերաց հարստահարութենէն, որք միշտ պնդած են թէ Հայոց աշխարհքը իրենց պէտք է ենթարկուի։

1021 ին երբ Յովհաննէս Սենեքերիմ Վասպուրականի թագաւորութիւնը թողլով, իւր իշխանութիւնը Վասիլ Բ. Յունաց կայսեր ձեռքը, քաշուեցաւ ի Կապադովկիա, աշխարհին բնակիչքը շատ անգամ ստիպուեցան թողուլ լքանել իրենց ծննդական երկիրը։

Գրիգոր երէց՝ Հայոց ԺԲ դարու պատմագիրը. յայտնապէս կը մեղադրէ յոյները, պատմելով 1160 ին հանդիպածը, ուր ի միջի այլոց կը յաւելու. « Յունաց կայսերք ոչ մի բան արած չեն քրիստոնէից ազատութեան համար, ընդ հակառակն իրենք պատճառ եղած են, նոցա քաղաքներուն և գաւառներուն կործանման։ Այդ իշխանապետաց շնորհիւ ահա հարկադրեցան Հայք լքանել իրենց հայրենիքը, անհաւատք զօրացան, և յաճախակի յարձակմամբ տիրեցին ամենայն կողմանց, սկզբան Արծնոյ, Մելիտինոյ, Սեբաստիոյ և մայրաքաղաքին Անւոյ, ապա նոցա ջոկատները տարածեցին իրենց աշխարհակալութիւնը մինչև ցմերձակայս Կ. Պօլսոյ [1] »։

Նախ և առաջ Հայք կը գաղթէին կայսրութեան ասիական գաւառաց մէջ, այլ սխալ է կարծելը որ Հայք ընդ միշտ այն տեղուանք մնացին. զի կրօնական հալածանք և տակաւ Թրքաց յառաջ խա-

1. Dulaurier, l. C. P. 357.

ղալը ափական գաւառաց մէջ. հարկաւ կը ստիպէին Հայոց փնտռել իրենց համար ապահով ապաստանարան Տաւրիոյ յունական մասին մէջ և այլ հեռաւոր տեղուանք։

Ռայնալդի գրածին նայելով[1], Ղրիմեցի Հայկազունք ի փոքր Ասիոյ եկած են. բաց աստի յաճախակի յարաբերութիւնք ափական Սև ծովուն Նաւահանգստից, Ղրիմեցի Նաւահանգստից հետ, անշուշտ իրենց կը քաշէին վաճառական Հայերը որք մինչև ցայսօր նշանաւոր են մեծ յարմարութեամբ ի տուր'ւառս։

Հուսկ յետոյ, Հայոց գոյութիւնը ի Սուտաղ շատ առաջ է քան այն թուականը, զոր կը ցուցանէ մեզ Արղութեան սրբազանը Հայոց ի Կաֆա բնակութիւն հաստատելու մասին. զի յոյն Ցայսմաւուրքի մի յիշատակարան, որ արդէն շատ հեղ յիշուած է, կը հաւաստէ մեզ այդ իրողութիւնը։

Այդ յիշատակարանին հեղինակը կ'աւանդէ որ՝ մինչդեռ 1292 ին զատկական տօնը հանդիպած է ապրիլի 6ին, Հայք տօնած են ամսոյն 16 ին ծռազատիկ։

Արդէն առաջուընէ շատ անդամ ունեցել են Յոյնք և Հայք մեծամեծ բանակռիւք զատկական թուականի մասին։ 1006 ին նոյնպէս Յոյնք տօնած են Ս. Յարութեան տօնը ի 6 ապրիլի, մինչ հայ տումարը յետաձգել է ի 13 նոյն ամսոյն։ Այս պատճառաւ Մատթէոս Ուռհայեցի յանդիմանած է զՅոյները, որք իրենց յոխորտ յամառութեամբ

1. Nec Armeni.... qui a Saracenis suis pulsi sedibus in Taurica Chersoneso agebant etc. Annal. Eccles. a. a. 1318

յաւաշ տարել են Զատիկը, ի Ծաղկազարդի կիւրակէն, հակառակելով Քրիստոսի. «Զի աղանդփիլիսոփայից հակառակամարտ է Հոգւոյն սրբոյ»։

Յոյն Յայսմաւուրքին յիշատակարանէն այս կը հետևի, որ ի Սուտաղ բնակելոց Հայկազանց թիւը շատուոր եղած պէտք է լինի, որպէս զի նոցա կարծեցեալ սխալմունքին վերայ ուշ դարձնեն միւս այլ որթոտոքս քաղաքացիք։ Թերևս նոցա մոլորութեան միւս պատճառ ևս այս կը համարին զիրենք յանդիմանողք, զի նոքա սկսել էին մերձենալ կաթոլիկ Հռովմէական եկեղեցւոյն, ինչպէս արդէն նոցա եղբարք, որք ի վաղուց կը բնակէին Կաֆայի մէջ։ Վասն զի այն քաղաքին մէջ, ըստ կարգադրութեան (règlement) 1316ին հին Հայ եկեղեցիք կային. յորոց մին խարխուլ վիճակի մէջ, թեմին արքեպիսկոպոսը յորում կը գտնուէր խարխուլ եկեղեցին արդէն ընդունած էր զգերագահութիւն սրբազանին Հռովմայ 1։

Հաւանական է որ՝ Սոլդայա (Սուտաղ) ևս ունեցել է իւր Հայ — կաթոլիկ թեմական եպիսկոպոսը 1283ին, որոյ մօտ հիւրընկալ մեծարանք վայելեր է փրանկ քարոզիչը Rubriques, զոր ինքը յոյն կը կարծէ. մեզ հաւանական չիթուիր, որ յոյն եկեղեցական մի իւր եկեղեցւոյն 2 մօտ բնակութիւն տայ փրանկ քարոզչին։

Բազմահմուտն Իւրգեւիչ և Փիլ. Բրիւն, վերը գրած փաստերով կը հաստատեն որ Հայք ԺԳ դա-

1. Rainaldi, ad annum 1318. n. 13; 1321, n. 13.

2. Այդ ԺԳ դարէն Թօթցեալ եկեղեցին նորոգեցաւ 1883ին, յորում այժմ Հայ կաթոլիկք կը պատարագեն։

րէն շատ առաջ բնակութիւն հաստատել են Տաւրիդ մէջ։

Ինչպէս տեսանք՝ ԺԳ դարու ունեցել են Թեմական եպիսկոպոսներ. և եթէ ԺԴ դարուն սկիզբները նոցա եկեղեցին խարխլել է, անշուշտ այդ եկեղեցին պէտք է լինի մի քանի հարիւր տարուան շէնք. զի հայկական քարուկիր շինուածք մի քանի տասնեակ տարիներու միջոց չեն խարխլիր. վկայ են գրուցածիս այժմ Ղրիմու սարերուն վերայ, հարիւր տարիէն աւելի անտէրունչ մնացած, դեռ ևս կանգուն Հայ եկեղեցիք։

Հայոց ի վաղուց գոյութեան ի Տաւրիա մի փաստ կարող է համարուիլ, Կաֆայէ ոչ շատ հեռի Սուրղաթ քաղաքին մերձաւոր անտառին մէջ դեռ ևս կանգուն Ս. Խաչ վանքը (ի հնումն Ս. Նշան, դեռ ևս առաջ Գամչակ կամ Քէմչակ անապատ). Թէպէտ և այդ վանքը իւր գեղեցիկ եկեղեցեաւ ԺԴ դարու սկիզբները շինուած է (1330), այլ աւանդութիւնը մեզ կ'ապահովցնէ, որ այդ Թուականէն շատ առաջ մի այլ վաղեմի հայկական վանք եղած է նոյն անտառին խորերը, որոյ հիմունքը ցարդ կեցել են։

Ըստ իմ կարծեաց, Կաֆա քաղաքին միջավայր, դեռ կանգուն Ս. Սարգիս եկեղեցին, մեծ և զօրաւոր ապացոյց է Հայոց վաղեմի գոյութեան ի քաղաքիս. դա է այն աթոռական եկեղեցին՝ որոյ շուքին ներքև շատ բարեպաշտիկ աբեղայներ և դպիրներ օրինակել են զանազան հոգևոր գրեանք յընթացս հարիւրաւոր տարեաց։ Այդ եկեղեցւոյն ետևի կողմէն, ընդ մէջ որմին ագուցիկ խաչքարինք, յայտնի վկայ են եկեղեցւոյն շատ հին լինելուն, քանզի մինչդեռ բազմաթիւ խաչքարինք ԺԴ դարէ ի խա-

նարհ, անաղարտ մնացել են իրենց տաճարով, Ս. Սարգսի որմին մէջ ագուցեալները՝ մաշած և աւրուած են և չէ կարելի կարդալ նոցա Թուականը։ Նոյն իսկ եկեղեցւոյն դիրքը ի միջավայր Կաֆայի, նորա վաղեմի լինելուն յայտնի ապացոյցն է, վասն զի այլ ազգային եկեղեցիք քաղաքին կեդրոնէն հեռու կ'իյնան, և մեծաւ մասամբ այժմեան արգելանոցին մէջը և մօտերը, ուր և առանձին Թաղ կազմելով, բնակութիւն հաստատել են Հայկազունք որք 1330 ին բազմութեամբ եկած են ի Կաֆա Գենուացի իշխանաց համաձայնութեամբ։ Այսպէս կը գրէ Ղրիմեցի մի Յայսմաւուրքի յիշատակարանը, «Գնացան յղեն (Հայք) ի Ղռիմ առ իշխանն Ջինիւիզաց, որ բնակէր ի մէջ Ֆռանկհիսարին Ֆէօդօսիու, ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէօդօսիու։ Ելեալ ի յԱխտարայէ իշխանք և աղնիւք և հասարակ ժողովուրդք, վառեալք զինու, պատերազմելով ընդ Թաթարացն, ճեղքեալ գան ի Ղռիմ. և բնակին ի Ֆէօդօսիա, ի Կազարաթ և ի Սուրխաթ և ի կողմանս նոցա. այս եղև ՉՀԹ Թուին»։

Հայոց բնակութեան տեղ կը որոշէ Ֆռէնկ հիսարէն դուրս դէպ ի հարաւային սարերը, զոր պարըսպով պատելով ազգայինք, հոն բնակութիւն կը հաստատեն։ Յիշեալ յիշատակարանը կը գրուցէ «Յահէ Հոնականաց (փոխանակ Թաթարաց գրելու) պարսպեցին քաղաքն Ֆէօդոսիա»։ Ահա այս պարըսպին մէջ շինուած են մեծաւ մասամբ բազմաթիւ հայ եկեղեցիք կամ մատրունք. սակաւ են պարսպէս դուրս մնացեալները. իսկ ի միջավայր քաղաքին միայն Ս. Սարգիս ունեցել է տեղի։ Քաղաքիս և այս ի նմա մեր ազգայնոց բռնած դիրքէն կը հետևցընեմք, որ Ս. Սարգսի շինութիւնը, շատ

առաւել է քան զվերջին գաղթականութիւնը. եկեղեցւոյ որմին մէջ զետեղուած և մաշած խաչքարինք կը հաստատեն եկեղեցւոյն բազմադարեան հնութիւնը, թերևս Գենուացւոց ի Կաֆա գալէն ևս շատ առաջ։ Սակայն ոմանք կարող են առարկել, թէ ինչպէս այդ բազմադարեան եկեղեցին, Խփչաղաց և Թաթարաց յարձակմանց միջոց, քանդողաց աչքէն վրիպել է, մինչդեռ իրմէ շատ վերջ շինուած Գենուացւոց Ս. Ագնէս փառաւոր եկեղեցին, որ քիչ հեռի եղած է Ս. Սարգսէ, և այլ շատ ազգային եկեղեցիք քարուքանդ եղել են։

Մեք այդոր պատճառ Ս. Սարգսի խոնարհ անշուք դիրքը կը համարիմք. որ քաղաքին միջավայրն լինելովը հանդերձ, աչքի չի զարներ։ Նորա ցածուն և անշուք դիրքը և չորս կողմի բարձր պատերը, ծածկել են զնա քանդիչ ձեռքերէ։ Արդեօք մեր նախնիք կանխատես զգուշութեամբ չե՞ն տուել Ս. Սարգսի այդ ցածուն դիրքը. ես այնպէս համոզուած եմ, որ հին Հայոց խոհական զգուշութեան արգասիքն է ցարդ Ս. Սարգսի կանգուն մնալը։ Վերջին և զօրաւոր ապացոյց մեր ազգայնոց ժ դարու միջոցներ ի Կաֆա գոյութիւն ունենալուն, կը համարինք մի քար, որ համայնաջինջ ամանակին ժանիքէն պրծեալ, կը պահուի ցարդ Թէոդոսիոյ հնութեանց թանգարանին մէջ։ Քառածալ թերթի ձևով՝ յասպիս քար մի է, վրան երեք խաչեր քանդակուած. միջինը մեծագոյն, որոյ պատուանդանին վերայ կը կարդանք. «Բարեխաւս է սուրբ Նշանքս Գրիգորին և իւր զաւակին». խաչին վերի կողմը կայ քանդակուած այս վաղեմի թուականը ՆՀԶ (1027)։

Վ. Հ. Մինաս Բժշկեան, Հաւատարիմ տեղա-

գրողն հայկազն յիշատակարանաց Տաւրիոյ, կը գրուցէ թէ, «Թուի թէ զայս վէմ բերեալ են աստ (Հայք) յԱնուոյ և եղեալ յեկեղեցի ինչ»: Թուի կը գրուցէ՝ տարակուսելով խաչքարին հնութեան վերայ. վասն զի նոյն միջոցին դեռ ևս իրեն ծանօթ չէին ոչ ԺԳ դարու բազմաթիւ Հայոց գոյութիւնը ի Սուտաղ, և ոչ այլ նորանոր հետազօտութիւնք գիտնոց. Հայոց հին գաղթականութեանց մասին ի Տաւրիա: Հաւանական է ինչպէս այս քարին, նոյնպէս և այլ շատ քարերու Չ. Պ. Ջ և այլն, թուականներով ի Կաֆա փորագրեալ լինելը:

Քանզի նոյն ինքն Բժշկեան վարդապետ, յեցեալ հաւատարիմ յիշատակարանաց վերայ, ինչպէս կոնդակին Գրիգորի ԺԲ քահանայապետին Հռովմայ առ Հայկազունս Տաւրիոյ (1318), որ 13 ամօք առաջ է քան զմեծ գաղթականութիւն բիւրաւոր ազգիս ի Տաւրիա, կը գրէ. «Զայնու ժամանակաւ (1318), մեծանուն հանդիսացաւ ազգս մեր ոչ միայն ի Ղրիմ, այլ և ի բազում տեղիս», մեք թողլով առ այժմ ազգիս մեծանուն հանդիսանալը ի բազում տեղիս, յոյժ հաւանական կը համարիմք որ ի Ժ դարէ և այսր միշտ հայկազունք բնակել են Տաւրիոյ զանազան քաղաքաց մէջ:

# Է

## ՍՈՒՐՂԱԹ· ՔԸՌԸՄ

## ԵՒ ԿԱՖԱ ԱՆՈՒԱՆՑ ԾԱԳՄԱՆ ՎԵՐԱՑ

Ի կաֆայէ երեք ժամ հեռի, 27 վերստ դէպ 'ի արեւմտեան-հարաւ, լեռներուն մէջ գտնուած փոքր քաղաքը, որ այժմ Հին–Ղրիմ անունը կը կրէ, առ Գենուացւովք Սուրղաթ կոչուած է. Նոցամէ առաջ և վերջը մինչև մեր օրերը, շատ Հայեր բնակած են այդ քաղաքին մէջ։ Ց' ԺԿ. դարու ալ Թաթարաց խաներուն մայրաքաղաք եղած է, որոց փողերանոցին և պալատներուն մնացորդք մինչև վերջին ժամանակներս կեցած էին, այլ այժմ հետախազաղ կորան։ Ի հնուց նշանաւոր և մեծ քաղաք եղած է. մեր ձեռագիրք իբրու յատկանիշ կը գործածեն հոյակապ ածականը. Թաթարք եւս ԺԳ դարէ սկսեալ, իրենց լեզուով նոյն ածականը տուած են Սուրղաթի[1]։ Ժամանակաւ հոյակապ եղած ըլլալուն տարակոյս չկայ. զի մեծ տարածութեամբ ցրուած կը տեսնուին ցիր և ցան դերբուկք և մնացորդք հին շինուածոց, որոց մէջ նշանաւոր են ազգային հայեցակլիտի, Զար–խափան Աստուածամօր եկեղեցւոյն աւերակք. համանուն կամրջին մօտ, և այլ դերբուկք բաղանեաց և մզկթից, նոյնպէս և ստորերկրեայ լայն քարուկիր անցքեր, քաղա-

1. Սերայ կոչուած։

քին երբեմն հոյակապ լինելուն ապացոյցքն են[1]։ Սմիրնով պրոֆեսորը, Պետերբուրգի հնագիտական յիշատակարանաց մէջ[2] քաղաքիս Սուրղաթ անունը, աղաւաղմունք կը համարի հայ Ս. Խաչ բառերուն, զի մօտ է քաղաքիս վաղեմի հայկական Ս. Խաչ (Ս. Նշան) վանքը։ Եւ արդարեւ Հայք յառաջ եկած են այս կողմերս քան զԳենուացիս, յայտ հաւանական է որ Սուրբ Խաչ բառերուն աղաւաղմունք լինի Սուր-ղաթ։ Անշուշտ սկզբան Գենուացիք այդ հայ բառերը իրենց կամ լատին լեզուին տառադարձութեան կանոնով, գրած են Surb-ghatch, եւ ժամանակ անցնելէն յետոյ այս բառերուն մէջէն քանի մի բաղաձայն թօթափելով մնացել է Sur-gat։ Նոյն միջոցներ գրուած մագաղաթի թերթ մի, որոյ վրայ հայերէն երկաթագիր գրուած տեսայ լատին պատարագամատոյցի մի մասը՝ կը հաւաստէ թէ այն միջոցին դեռ լատին լեզուին մէջ չկայ Զ տառին հնչումը, զի գրած գտայ գլորիա ին էկսցէլսիս, Զ'ի տեղ Ց տառը. այսինքն ոչ էկսչէլսիս։ Զարմանք չէ, այլ մանաւանդ շատ բնական, որ հայ անունը, անցել է առ Գենուացիս։ Բայց յայսմանէ դեռ քանի տեղ Ղրիմու մէջ իբրեւ տեղւոյ անուն, հայ բառեր կը գործածուին, ինչպէս Օր քաղաքը (տիւ նշանակութեամբ). զի ցամաքէն Ղրիմ մտնողին, դէպ արեւելք կ'ինկնայ։ Հարաւային ափանց վերայ Ալուշթայի մօտ փոքր ջրվէժ մի կայ որ ցարդ Ջուր-ջուր անունը կը կրէ։

1. Աւերակքն Զոր-խափանի գնեց մնացեալ տեղին Աննա Այվազեան և մտադիր է նորոգել այս սրբազան յիշատակը։

2. Արեւմտեայց մասին մէջ 273, 1887 ին։

Այլ մեք դառնանք դարձեալ առ Ս. Խաչ (Սուրղաթ)։ ԺԳ. դարուն երկրորդ կիսուն մէջ այս քաղաքը իւր հին հայահնչին անունը կը փոխէ և կը լինի Քըռըմ կամ Խըռըմ։ Գիտնոց մօտ քար գայթակղութեան եղած է այս անունը, և ցայսօր ոչ ոք չէ կարողացած գոհացուցիչ մի մեկնութիւն տալ։ Այս պարզ և համառօտ անուանց մեկնութիւնը գտնալու համար, ոմանք՝ ի գիտնոց բազմադարեան հնութեան մէջ թարթափելով կը հասնին մինչև Նախաջրհեղեան Նահապետին Նոյի, և նորա թոռան Գամերի անուան մէջ նմանաձայնութիւն մի հեռուէն գտնալով, աղաւաղմունք կը համարին, Քըռըմ բառը Գամեր անուան. ոմանք ալ Քիմմերեան Վոսփորէ ծագած կամ յառաջ եկած կ'ուզեն ցուցանել։ Այլք աւելի մերձաւորապէս դիտելով տեղւոյն դիրքը, որովհետև լայն խրամի հետքեր դեռ ևս կը նշմարուի քաղաքին չորս պտոյտը, (տաճկերէն հէնտէք կամ խէնտէկ) նոյն բառէն ծագած կը համարին Քըռըմ անունը. այս կարծիքէն է Ռուսաց մեծանուն պատմագիրը Քառամզին։ Անցեալ դարու գրուած ազգային մի յիշատակարան խօսելով Անեցի գաղթականաց մասին, կը յաւելու թէ Հայ գաղթականաց մի մասը Կաֆայէ դէպ արևմտեան-հարաւ գնալով բնակութիւն հաստատած են « ի Ղռիմ = լեռնամիջի ». մեք այս երկրորդ բառը ոչ իբրև ածական կ'առնումք Ղռիմի. այլ իբրև թարգմանութիւն Ղռիմ, Խըռըմ կամ Քըռըմ բառին՝ որ ի Թաթար լեզու բլուր կը նշանակէ։ Ըստ աստի կ'ուզեմք հետևցնել որ Քըռըմ անունը, որ այժմ կը կրէ Տաւրիա կամ տաւրիական Թերակղզին, ոչ ի Գամերէ. ոչ ի Քիմմերէ և կամ խրամ հէնտէկ բառերէն ծագած կամ յառաջ եկած է,

այլ Թաթար լեզուի քըռ բլուր կամ լեռ բառէն։ Իւ յիրաւի, եթէ մէկը ուշի ուշով քննէ Թերակղզւոյս պատմական ընթացքը, և հետազօտ ակնարկ մի տայ, այժմեան Հին-Ղրիմ քաղքին դիրքը և ապա սակաւ մի տեղեկութիւն ունենայ Թաթարաց լեզուին, կարծեմ դժուարութիւն չէ կրել հաւանելու մեր տուած մեկնութեան։

Թաթարաց պատմութիւնը մեզ կ'աւանդէ որ՝ զկնի մահուան Խփչաղաց նշանաւոր Բաթու խանին 1255 ին, յաջորդել է նմա ի խանութեան Բերեկա կամ Բուրգա[1]. սորա յաջորդը Մանգութիմուր, ի կենդանութեան կը բաժանէ իւր խանութիւնը ժառանգաց մէջ. այս առթիւ այժմեան Հին-Ղրիմ (առ Գենուացւովք Սուրղաթ) նոյն և ծովահայեացն Կաֆա, մասն կամ ժառանգութիւն կ'ինկնան Օրան-Թիմուրի. այս բաժանմունքը կը պատահի 1266 փրկչական թուականին։ Սորա՝ Օրան-Թիմուրի իշխանութեան միջոց առաջին անգամ ի պատմութեան կը լսուի Ղրըմ բառը, յատկացեալ տեղւոյ, այն է Աղարմըշ լերին ստորոտը շինուած քաղաքին, այլ ոչ բովանդակ Թերակղզւոյն. որոյ վերջը յատկացել է Ղրիմ անունը, փոխանակ Տաւրիոյ։

Աղարմըշ (սպիտակափառ) լերին ստորոտը գըտնուած քաղաքը, շրջապատուած է անտառազարդ բլուրներով. օդը առողջարար, ջուրը քաղցրահամ մեր ձեռագրին Ղըրիմ չեռնամիշի բացատրութիւնը, շատ յարմարաւոր է։

Արդ մեք կ'ենթադրեմք որ հայկական Ս. Խաչին և Գենուացւոց Սուրղաթի, նոր իշխեցողը Օ-

1. Ըստ ուղղային պատմչաց։

րան-Թիմուր, փոխելով տեղւոյն անունը, կոչած է Քըրըմ, անելով զայն իւր խանութեան մայրաքաղաք. և այն ոչ մասնաւոր դիտմամբ, այլ յոյժ բնական կերպով։ Եւ յիրաւի, Օրան-Թիմուր նախամեծար համարելով Աղարմճի դիրքը, կանաչազարդ բլուրներով, — քան զծովահայեացն Կաֆայի — ուր և հաստատած է իւր աթոռը, հարկաւ չէր կարող գոհ լինել հայացի Ս. Խաչ անունով կամ նորա աղաւաղմամբ (Սուրղաթ), այլ իւր սրտին և թաթար լեզուին յատկութեանց համեմատ, պէտք էր մի նոր յորջորջումն տալ իւր մայրաքաղաքին. և ահա նա կը կոչէ զայն Քըրըմ, այսինք իմ լեռս կամ լեառն իմ. որ համաձայն է սրտի զգացմանց նոր իշխեցողին և յատկութեանց թաթար լեզուին։

Խըռ կամ քըռ բառը կը նշանակէ բլուր. ինչպէս արդէն յայտնի է փոքր ի շատէ ամենայն արևելագիտաց ըմ, իմ, ում՝ մասնիկները կը նշանակեն, իբրու ստացական դերանուն իմ, օրինակի համար պաղըմ (իմ այգիս), էվիմ (իմ տունս), օղլում (իմ որդիս). կամ այսպէս գրուցենք, այդ վերոյիշեալ մասնիկները մեր լեզուին ս դիմորոշին տեղ կը գործածուին Թաթարաց լեզուին մէջ. որով եթէ երկու մասն բաժնեմք քըռըմ բառը՝ կը գտնեմք, քըռ (լեռ) և ըմ (իմ), լեռս. և ահա այդ անունը ԺԳ դարէ և այսր փոխանակած է Սուրղաթ քաղաքին անուան, և մինչև ցայսօր ևս կը կրէ։ Ռուսք նախընթաց դարուն վերջերը տիրելով Տաւրիոյ, առ հասարակ նշանաւոր քաղաքաց նախնի հին յունական անուններ տուել են, ինչպէս Սեւաստոպոլ, Սիմֆերոպոլ, Եւպատորիա, Թէոդոսիա։ Այլ Սուրղաթ ունեցած չէ վերանորոգման

պատիւը. նա միայն մեր ազգային յիշատակարանաց մէջ հոյակապ մակդիրովը գոհ կը լինի, տեղի տալով Քըրըմ Թաթարահնչիւն անուան։ Այս յիշած անուանափոխութեան խնդիրս, ըստ իմ կարծեաց, յոյժ հաւանական և ամենաբնական է. նմանօրինակ փոփոխութիւնք տեղերու անուանց, կամ սրտամերձ և հաճոյական բացատրութիւնք, քաղաքակիրթ ազգաց մէջ ևս կը գտնեմք, ինչպէս mon plaisir, mon souvenir (իմ հաճոյք, կամ յուշք), Новый свѣтъ (Նոր աշխարհք)։ Տակաւ Քըրըմ՝ Օրան-Թիմուրի մայրաքաղաքին անունը նորա իշխանութեան կամ բաժնին վերայ տարածուած է, յետոյ և ևս ընդարձակուելով, բովանդակ տաւրիական Թերակղզւոյն յատուկ անունը եղած է Քըրըմ. և որպէս զի մասը բոլորէն զանազանուի, Օրանի մայրաքաղաքին վերայ Էսկի (հին) ածականը աւելցուցած են։ Սակայն դրիմեցի Թաթարք ցայսօր առանց Էսկի ածականին կը գործածեն Քըրըմ անունը Սուրղաթի տեղ, և Բազար անունը կու տան Խարասուի, և չեն կոչել ըստ Ռուսաց սովորութեան Խարասու-Բազար։

Մեզ այնպէս կ'երևի, որ վերը գրուածներս բաւական համոզիչ մեկնութիւնք են Քըրըմ անուան։ Թէպէտև մեր նպատակէն դուրս էր ճոխանալը մի Թաթար անուան վերայ, քանզի այդոր մէջ չկայ մի հայացի հայեցակէտ, նա մանաւանդ Թաթար իշխեցողին կամքը նսեմացուցել է Ս. Խաչ հայկական շքեղ անունը՝ այլ որովհետև մեզ մի պատմական ստուգութիւն երևցաւ այս տուած մեկնութիւններս, և որովհետև ազգիս երկրորդ հայրենիք եղել են այս տեղուանք յընթացս շատ դարերու, այն պատճառաւ մեզ իբր ստուգութիւն երևցածը կարևոր հա-

մարեցանք գրելու առթիւս, վերջ տալ ուզելով հնագիտաց տեղի և անտեղի մեկնութեանց և բացատրութեանց Քըրըմ անուան վերայ։ Այլ մեք դառնամք խօսելու մի ուրիշ անուան վերայ, որ ըստ մեր կարծեաց, բոլորովին հայկական ունի տիպար, և որոյ ստուգաբանութիւն ևս ցայսօր անյայտ է. այն է Կաւա։

## Ը

## ԿԱՒԱ (ԿԱՖԱ-ՔԷՖԷ) ԱՆՈՒՆԸ

Թէոդոսիոյ պատմութեանս ընթացքին մէջ ընդհանրապէս՝ և «Հայկազունք ի Տաւրիա» գլխոյն մէջ մասնաւորապէս աշխատեցանք ցուցընելու, որ Հայք Ժ դարէ սկսեալ տաւրիական Թերակղզւոյն մէջ բնակութիւն հաստատել են. ճիշդ Ժ դարուն մէջ առաջին անգամ կը լսուի ի պատմութեան[1] Կաւա (Capha) անունը։ Հնախօսից ամենայն ջանք ի զուր եղած են, այս անուան ծագման կամ ստուգաբանութեան մասին։ Ոմանք տաճիկ քեաֆիր կամ կեաւուր բառերուն համառօտութիւնը կը համարին Քէֆէ տաճկահնչիւն անունը. և ապա առ մեզ, տառադարձութեան կանոնով, ի Կաֆա փոխուած. այլք՝ քէֆ (հաճոյք) բառէն ածանցեալ կը համարին։ Մեզ՝ այս երկու մեկնութիւնք ևս անտեղի կ՚երևան. և փոխանակ ի տաճկերենէ ի հայ տառադարձնելու այդ անունը, այնպէս կ՚ենթադրեմք, որ տաճիկք,

1. De administrando imperio. Կոստ. Պորփիւրոժենի։

Նոսա հայահնչիւն անունը, ըստ իրենց լեզուին տառադարձութեան կանոնին ի Քէֆէ փոխած են։ Եթէ յանդգնութիւն չհամարին ընթերցողք, մեք այս անուննն ևս, Քըրըմ անուան ձևով երկու մասն բաժանելով, այսպէս Կաւ ա, կ'ուզեմք մեկնել որ հայերէն կաւ և ա (փոխանակ է գրուած) բառին և տառին բարդութիւնն է այս անուն։

Կաւ հայերէն կը նշանակէ հող, մանաւանդ բրուտի հող terre glaise. ա տառը, ինչպէս յայտնի է ամենայն հայագիտաց, ցայսօր Հայաստանի շատ գաւառաց մէջ, փոխանակ է օժանդակ բային տեղ կը գործածեն. օրինակի համար փոխանակ մարդ է ասելու, կ'ասեն մարդ ա. երախայ է = երեխէ ա. մեծ է = մեծ ա. փոքր է = փոքր ա և այլն. ուրեմն Կաւա ասելով՝ հայերէն պէտք է հասկնալ Կաւ է, կաւեղէն է. ցայսօր ևս, եթէ մէկը Թէոդոսիոյ քաղքի երեք կողմէն պատած բլուրներուն վերայ նայի. մանաւանդ անձրևէ վերջ. իսկոյն նոյն բառերը պէտք է գրուցէ Կաւ է, կաւեղէն են Թէոդոսիոյ շուրջը պատած բլուրները։

Եւ որովհետև յընթացս պատմութեան քաղաքիս տեսանք որ ի Ժ դարու, նախ քան զԳենուացիս ի ցամաք ելած են ասա ի Թէոդոսիա՝ հայկազունք և առաջին անգամ նոյն Ժ դարուն մէջ կը լսուի ի պատմութեան Կաֆա անունը փոխանակ Թէոդոսիոյ, ուստի այս հանգամանքներէն կը հետևցընեմք, որ Հայք ելնելով ի ցամաք, Թէոդոսիոյ մէջ և հայելով Ալանաց և Գոթաց ապա և Հոնաց աւերակներուն վերայ տիրող բլուրներուն որ կը պատեն զԹէոդոսիա, և միանգամայն միտք բերելով, այդ հայ Անեցի ժողովուրդը Շիրակայ գեղազուարճ դաշ-

տերը, և Ծաղկոցաց-Ջորոյն ակնապարար տեսարանը, անշուշտ թացագանչել են, թէ՝ «Այս ի՛նչ Թէոգոսիա, ի՛նչ տուրք Աստուծոյ, կաւ ա, կաւ է չորս գին»։ Մեզ հաւանական կ՚երևի որ այս բացագանչումը կամ բացատրութիւնը, ապա իբրև յատուկ անուն տեղւոյ անցել է առ Գենուացիս, որք ի սկզբան, ինչպէս հին յիշատակարանաց մէջ կը կարդամք, մեր շ տառը ph գրերով գրել են, ապա մէկ f ֆով հուսկ յետոյ կարողացել են Հայոց շ (կէս վի ձայնով տառը) երկու ff ֆֆով ճիշդ հնչել կամ յարմարագրել։

Առ այժմ առաւել զօրաւոր փաստեր չունենալով՝ մեզ հաւանական երևցածը, իշխեցինք իբրու մեկնութիւն Կասա կամ Կաֆա անուան գրել, հայ լեզուէ յառաջ բերելով բառիս ստուգութիւնը։ Արդ եթէ մեզ հաւանական երևցածը գիտնոց ևս ընդունելի լինի, մինչև ցայսօր անյայտից կամ անծանօթից կարգը անցած մի պատմական քաղաքի անուան ծագումը, պարզուած և յայտնի կը համարիմք։





## ՄԵԾ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ Ի ԿԱՖԱ

### ԱՌ ԳԵՆՈՒԱՑԻՈՎՔ

Այժմ մեզ անտարակոյս է որ՝ այս մեծ գաղթականութենէ առաջ կային ի Կաֆա. ի Սուրղաթ, ի Սոլդայա բազմաթիւ Հայեր, իրենց վանքերով, եպիսկոպոսներով և եկեղեցիներով, որք Գենուացւոց աջակից ոչ աննշան, այլ նշանաւոր և բարեկեցիկ կեանք կը վարէին. որ և պատճառ կամ գրգիռ եղած է այս մեծ գաղթականութեան ազգիս յԱքսէրայէ դէպ ի Կաֆա։

1239ին Զաքարէ մեծ իշխանի որդւոյն Շահնշահի պայազատութեան միջոց, որ կը տիրէր Անւոյ՝ Բագրատունեաց գեղապանծ շահաստանին, Զարմա Խանն Թաթարաց, մեծ բազմութեամբ յարձակելով քաղաքին վերայ, քիչ ժամանակամիջոցի անհնարին կոտորած կը հասցնէ քաղաքացեաց, և դարերու միջոց շինուած գեղապանծ քաղաքը աւերակաց կոյտ կը դարձընէ. այս դէպքս ազգային ականատես պատմիչք արժանապէս ողբացել են։ Կաֆայեցի յայսմաւուրքին անանուն գրիչը, ըստ օրինակի այլոց պատմագրաց, ողբալով քաղաքին կործանումը և պատճառ բերելով թէ «ոչ արդարութիւն գտանեցաւ ի մեզ...» (կը յաւելու) «Բազումք թողեալ զոսկեզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտս, զվանորայս և զեկեղեցիս աւեր,

«շուեալ եկին ի յԱխսարայ, որ է ի մէջ Հաշտար-
«խանու և Ղազանու. ոմանք գնացին ի Ճուղայ,
«ոմանք ի Վան, և այլք ի Սիս։ Եւ որք յԱխսարայ
«եկին, հրաման առեալ ի Թաթար խանէն բնա-
«կեցան անդ, ոչ բազում ժամանակս, որ էր զայս
«ՉԽԸ (1299)»։

Ցիշատակարանիս խօսքերէն կը հետեւի որ՝ յետ կործանման Անւոյ ի Չարմա-Խանէ (1239) բազմութիւն Անեցւոց անցել են ի Թաթարաստան, ընթացս 60 տարիներու, և անդ միշտ նեղութիւն կրելով Թաթար իշխեցողաց ձեռքէն, ապաստութեան մի հնարք գտնելու աշխատել են, և «անդ բնակեցան ոչ բազում ժամանակս, որ էր զայս ՉԽԸ (1299)»։ Թէպէտ մթին է սակաւ մի յիշատակարանիս տուած բացատրութիւնը, այլ ես այնպէս կը հասկնամ որ 1299 էն սկսել են Աքսէրայցի հայերը բանագնացութիւնք ունենալ Կաֆայեցի ազգայնոց հետ, և այդ բանագնացութեանց հետեւանք եղած է բիւրաւորաց Գաղթը ի Կաֆա 1330 ին, վասն զի կը յարէ յիշատակագիրը. «Մինչ նե-
»ղեալ եղեն ի Թաթարաց դեսպան յղեն ի Ղռիմ
»առ իշխանն Ջինիւիզաց»։

Գենուացի իշխանին անունը չի դներ գրողը, առ որ ուղղեալ են Աքսէրայցի հայ դեսպանք, այլ որովհետեւ նոյն միջոցին երկու իշխեցողք[1] կը յիշուին ի Կաֆա, Ալբերդոյ և Կռռադոյ, սոցամէ միոյն իշխանութեան միջոց անշուշտ, եկած են հայ դեսպանք ի Կաֆա և պայմաններով դաշինք դնելէն

1. Ըստ ցուցակի պրոֆեսոր Իւրգեւիչի Alberto Mallone 1297 ին ընտրուած և Corrado de Roccio 1316-1332։

յետոյ, եղած է բիւրաւոր Հայկազանց գաղթականութիւնը յԱքսէրայէ. Յիշատակարանը կը յաւելու. «Ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէոդոսիու, ելեալ ի »յԱխտարայէ իշխանք և ազնիւք (հայկազունք) և »համարակ ժողովուրդք՝ վառեալք զինու, պատե-«րազմելով ընդ Թաթարացն ճեղքեալք զան ի Ղարիմ »և բնակեն ի Ֆէոդոսիա, ի Կազարաթ և ի «Սուրխաթ և ի կողմանս սոցա. այս եղև ՉՀԹ »(1330) թուին»:

Ուշադրութեան արժանի են յիշատակարանիս խօսքերը. «վառեալք զինու» գաղթականաց մէջ բազմութիւն հայ զինուորաց եղած են, իրենց սպայներով, խմբավարներով և զօրագլուխներով. զի քիչ ժամանակ վերջը, աստի ի Կաֆայէ 40,000 հայ զինուորներ անցել գնացել են ի Փառոլեան Կամենից, պաշտպանելու այն հայկական քաղաքը, ընդդէմ յարձակմանց Թաթարաց, լուծելով միանգամայն Անւոյ կործանման վրէժը: Ըստ յիշատակարանին «Պատերազմելով ընդ Թաթարացն ճեղքեալք զան ի Ղարիմ»:

Անշուշտ Թաթարք ամենայն ջանք արել են, որ ի Թաթարստան մնան, և բիւրաւոր հայ աշխատասէր ժողովուրդը, չէնցընեն և մշակեն իրենց անապատները: Նոյն այս դէպքը պատահել է 1778 ին ևս, երբ ղրիմեցի հայկազանց հրաման եղել է, թողուլ այն աշխարհը և երթալ բնակիլ ի Ռուսաստան. տեղացի Թաթարք ամենայն ջանք ի գործ դրել են, արգել լինելու Հայոց գաղթականութեան ի Ղրիմէ, այլ ի զուր: Յիշատակարանիս գրուցած տեղուանք, ուր հոծ խիտ առ խիտ բնակել են Հայկազունք, արևելեան — հարաւային մասունք են Թերակղզւոյն. Կազարաթ և Սուրխաթ մօտ են Կա-

փայի, Ղարասուպազարը 63 վերստ է ի Կաֆայէ. այն միջոցին ի Սուղդա ևս բազմացել են հայկազունք. այնպէս որ ըստ յիշատակարանիս, ի դաշտս և ի լերինս լցուցել են շէնքերով: «Յայնժամ զօրացաք մեք և բազմացաք և շինեցաք զգիւղս և զգաւառս այսինքն միանալով արդէն ի Կաֆա, ի Սուրղաթ և ի Սուղդա հինէն բնակող ազգայնոց հետ: Եթէ այս ենթադրութիւնը չլինի, յայնժամ բառը բոլորովին անյարմար և անտեղի պէտք է համարել, զի անդէն ի Թերակզգիս մտնալնուն պէս, իսկոյն բազմանալն և զօրանալն անկարելի է: «Շինեցաք «տունս հարիւր հազար, և զեկեղեցիս հազար, և «ի ահէ հոնականաց պարսպեցին ի քաղաքն Թէօ- «դոսիա»:

Նոր եկող հայկազանց առանձին տեղի բնակութեան կամ թաղ որոշուած է, և հաւանական կ'երևի, որ ուխտի կամ դաշանց գրին մէջ, դեսպանաց Հայոց ընդ իշխանին Կաֆայի, այս ևս պայման դրուած է որ, Հայք պարսպեն իրենց թաղը, ընդդէմ հասարակաց թշնամեաց, այն է Թաթարաց զորս յիշատակարանս կը շփոթէ Հոնաց հետ: Այս պարիսպը, քաղաքիս արևելեան ծայրը շինուած Ցաէնկհիսար կոչուած Գենուացի պարսպէն կցելով, ընդ հարաւ լեռներուն վրայէն հասուցել են Հայք մինչև ցհիւսիսային ծայր քաղաքին, որով քաղաքին հարաւային մասը՝ լերանց ելևէջներով, եղած է թաղ հայոց: Այդ մասին մէջն են ցարդ ևս կանգուն մնացած ԺԲ—Դ դարը շինուած չորս Հայոց եկեղեցիք, այլ շատերը հիմնայատակ կործանել են: Այլ որովհետև բիւրաւոր գաղթականք այդ փոքր սահմանին մէջ կարող չէին ամփոփուիլ, այնպէս կը համարիմք, որ յիշատակարանիս մէջը յիշուած

«իշխանները և ազնուականները» ազգիս, Կաֆայի մէջ հաստատել են բնակութիւն, մայրաքաղաք անուանելով զնա, իսկ Ռացեալ հասարակ ժողովուրդը և գիւղացիք սփռուել են մինչև ցՂարապազար ցՍուրղաթ և Կազարաթ, և մեծ բազմութեամբ ի Սոլգայա Գենուացւոց (Սուդղա), սակաւ յԵւպատորիա, յՕր և այլն։ Հայաբնակ գիւղերուն մեծ մասը Կաֆայի մերձաւոր տեղուանք եղած են, ինչպէս Կէօք-Թէփէ, Սուլթան-Սալա, Նախիջևան (այժմ Քարինիչքա), Օրթալան. Թօփլու, Ղշլաւ, Սալուք-Սու և այլն։

Յայտնաւուրաց ցցուցած ճանապարհին վերայ, ուր Հայք խիտ բնակութիւն հաստատել են, մինչև ցայսօր ամենածախ ժամանակին ձեռքէն մազապուր, կը գտնուին տակաւին, երբեմն զԹերակղզւոյ բազմամարդող և շէնցնող Հայոց հետքերը. զի յընթացս 550 տարեաց ուր և կոտորած և ապատարի եւս այլ հեռաւոր աշխարհք խմբովին գաղթականութիւն ազգիս, մեծապէս տկարացուցել հայութիւնը Ղրիմու մէջ, այլ չեն կարողացած իսպառ բնաջնջել կորուսանել։

Ամենուրեք հայ եկեղեցեաց տխրագին աւերակք, ցիր ու ցան հայ յիշատակարանք, պատերու մէջ, սանդուխներու վերայ, աղբիւրներու ճակատ. ցայսօր Թէոդոսիոյ որ կողմը մարդ փորէ, անշուշտ երկրիս խորէն դուրս կը հանէ հայկական խաչքար մի, ազգային յիշատակարանով։

Բաց ի բազմաթիւ եկեղեցիներէ, բերդերէ և պարիսպներէ, հոյախօս յիշատակարաններով, ազգայինք մասնաւոր ջանք արել են անջրդին Կաֆայի մէջ լեռներէն ագուգայներով քաղցրահամ ջրեր իջեցնելու, դրոշմելով աղբիւրներուն ճակատը, չի-

զալը ափական գաւառաց մէջ. հարկաւ կը ստիպէին Հայոց փնտռել իրենց համար ապահով ապաստանարան Տաւրիոյ յունական մասին մէջ և այլ հեռաւոր տեղուանք։

Ռայնալդի գրածին նայելով[1], Ղրիմեցի Հայկազունք ի փոքր Ասիոյ եկած են. բաց աստի յաճախակի յարաբերութիւնք ափական Սև ծովուն նաւահանգստից, Ղրիմեցի նաւահանգստից հետ, անշուշտ իրենց կը քաշէին վաճառական Հայերը որք մինչև ցայսօր նշանաւոր են մեծ յարմարութեամբ ի տուր'ւառս։

Հուսկ յետոյ, Հայոց գոյութիւնը ի Սուտաղ շատ առաջ է քան այն Թուականը, զոր կը ցուցանէ մեզ Արղութեան սրբազանը Հայոց ի Կաֆա բնակութիւն հաստատելու մասին. զի յոյն Ցայսմաւուրքի մի յիշատակարան, որ արդէն շատ հեղ յիշուած է, կը հաւաստէ մեզ այդ իրողութիւնը։

Այդ յիշատակարանին հեղինակը կ'աւանդէ որ՝ մինչդեռ 1292 ին զատկական տօնը հանդիպած է ապրիլի 6ին, Հայք տօնած են ամսոյն 16 ին ծռազատիկ։

Արդէն առաջուընէ շատ անգամ ունեցել են Յոյնք և Հայք մեծամեծ բանակռիւք զատկական Թուականի մասին։ 1006 ին նոյնպէս Յոյնք տօնած են Ս. Յարութեան տօնը ի 6 ապրիլի, մինչ հայ տումարը յետաձգել է ի 13 նոյն ամսոյն։ Այս պատճառաւ Մատթէոս Ուռհայեցի յանդիմանած է զՅոյները, որք իրենց յոխորտ յամառութեամբ

1. Nec Armeni.... qui a Saracenis suis pulsi sedibus in Taurica Chersoneso agebant etc. Annal. Eccles. a. a. 1318

յառաջ տարել են Ջամիկը, ի Ծաղկաձորձի կիւրակէն, հակառակելով Քրիստոսի. «Զի աղանդափիլիսոփայից հակառակամարտ է Հոգւոյն սրբոյ»:

Յոյն Յայսմաւուրքին յիշատակարանէն այս կը հետևի, որ ի Սուտաղ բնակելոց Հայկազանց թիւը շատուոր եղած պէտք է լինի, որպէս զի նոցա կարծեցեալ սխալմունքին վրայ ուշ դարձնեն միւս այլ որթոտոքս քաղաքացիք: Թերևս նոցա մոլորութեան միւս պատճառ ևս այս կը համարին զիրենք յանդիմանողք, զի նոքա սկսել էին մերձենալ կաթոլիկ Հռովմէական եկեղեցւոյն, ինչպէս արդէն նոցա եղբարք, որք ի վաղուց կը բնակէին Կաֆայի մէջ: Վասն զի այն քաղաքին մէջ, ըստ կարգադրութեան (règlement) 1316 ին հին հայ եկեղեցիք կային. յորոց մին խարխուլ վիճակի մէջ, թեմին արքեպիսկոպոսը յորում կը գտնուէր խարխուլ եկեղեցին արդէն ընդունած էր զգերագահութիւն սրբազանին Հռովմայ [1]:

Հաւանական է որ՝ Սոլղայա (Սուտաղ) ևս ունեցել է իւր Հայ — կաթոլիկ թեմական եպիսկոպոսը 1353 ին, որոյ մօտ հիւրընկալ մեծորանք վայելեր է փրանկ քարոզիչը Rubriques, զոր ինքը յոյն կը կարծէ. մեզ հաւանական չիթուիր, որ յոյն եկեղեցական մի իւր եկեղեցւոյն[2] մօտ բնակութիւն տայ փրանկ քարոզչին:

Բազմահմուտն Իւրգեւիչ և Փիլ. Բրիւն, վերը գրած փաստերով կը հաստատեն որ Հայք ԺԴ դա-

1. Rainaldi, ad annum 1318. n. 13; 1321, n. 13.

2. Այդ ԺԴ դարէն մնացեալ եկեղեցին նորոգեցաւ 1883ին, յորում այժմ Հայ կաթոլիկք կը պատարագեն:

րէն շատ առաջ բնակութիւն հաստատել են Տաւրիդայ մէջ։

Ինչպէս տեսանք՝ ԺԳ դարու ունեցել են Թեմական եպիսկոպոսներ. և եթէ ԺԴ դարուն սկիզբները նոցա եկեղեցին խարխլել է, անշուշտ այդ եկեղեցին պէտք է լինի մի քանի հարիւր տարուան շէնք. զի հայկական քարուկիր շինուածք մի քանի տասնեակ տարիներու միջոց չեն խարխլիր. վկայ են գրուցածիս այժմ Ղրիմու սարերուն վերայ, հարիւր տարիէն աւելի անտէրունչ մնացած, դեռ ևս կանգուն Հայ եկեղեցիք։

Հայոց ի վաղուց գոյութեան ի Տաւրիդա մի փաստ կարող է համարուիլ, Կաֆայէ ոչ շատ հեռի Սուրղաթ քաղաքին մերձաւոր անտառին մէջ դեռ ևս կանգուն Ս. Խաչ վանքը (ի հնումն Ս. Նշան, դեռ ևս առաջ Գամչակ կամ Քէմչակ անապատ). Թէպէտ և այդ վանքը իւր գեղեցիկ եկեղեցեաւ ԺԴ դարու սկիզբները շինուած է (1330), այլ աւանդութիւնը մեզ կ'ապահովցնէ, որ այդ թուականէն շատ առաջ մի այլ վաղեմի հայկական վանք եղած է նոյն անտառին խորերը, որոյ հիմունքը ցարդ կեցել են։

Ըստ իմ կարծեաց, Կաֆա քաղաքին միջավայր, դեռ կանգուն Ս. Սարգիս եկեղեցին, մեծ և զօրաւոր ապացոյց է Հայոց վաղեմի գոյութեան ի քաղաքիս. դա է այն աթոռական եկեղեցին՝ որոյ շուքին ներքև շատ բարեպաշտիկ աբեղայներ և դպիրներ օրինակել են զանազան հոգևոր գրեանք յընթացս հարիւրաւոր տարեաց։ Այդ եկեղեցւոյն ետևի կողմէն, ընդ մէջ որմին ագուցեալ խաչքարինք, յայտնի վկայ են եկեղեցւոյն շատ հին լինելուն, քանզի մինչդեռ բազմաթիւ խաչքարինք ԺԴ դարէ ի խա-

նարհ, անաղարտ մնացել են իրենց տառերով, Ս. Սարգսի որմին մէջ ագուցեալները՝ մաշած և աւրուած են և չէ կարելի կարդալ նոցա Թուականը։ Նոյն իսկ եկեղեցւոյն դիրքը ի միջավայր Կաֆայի, նորա վաղեմի լինելուն յայտնի ապացոյցն է, վասն զի այլ ազգային եկեղեցիք քաղաքին կեդրոնէն հեռու կ'ինկնան, և մեծաւ մասամբ այժմեան արգելանոցին մէջը և մօտերը, ուր և առանձին Թաղ կազմելով, բնակութիւն հաստատել են հայկազունք որք 1330 ին բազմութեամբ եկած են ի Կաֆա Գենուացի իշխանաց համաձայնութեամբ։ Այսպէս կը գրէ Ղրիմեցի մի Ցայսմաւուրքի յիշատակարանը, «Դեսպան յղեն (Հայք) ի Ղռիմ առ իշխանն Ջինուիզաց, որ բնակէր ի մէջ Ֆռանկհիսարին Ֆէօդօսիու, ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէօդօսիու։ Ելեալ ի յԱխսարայէ իշխանք և ազնիւք և համարակ ժողովուրդք, վառեալք զինու, պատերազմելով ընդ Թաթարացն, ճեղքեալ գան ի Ղռիմ. և բնակին ի Ֆէօդօսիա, ի Կազարաթ և ի Սուրխաթ և ի կողմանս սոցա. այս եղև ՉՀԹ Թուին»։

Հայոց բնակութեան տեղ կը տրուի Ֆռէնկ հիսարէն դուրս դէպ ի հարաւային սարերը, զոր պարըսպով պատելով ազգայինք, հոն բնակութիւն կը հաստատեն։ Յիշեալ յիշատակարանը կը գրուցէ «Յահէ Հռնականաց (փոխանակ Թաթարաց գրելու) պարսպեցին քաղաքն Ֆէօդօսիա»։ Ահա այս պարըսպին մէջ շինուած են մեծաւ մասամբ բազմաթիւ հայ եկեղեցիք կամ մատրունք. սակաւ են պարսպէս դուրս մնացեալները, իսկ ի միջավայր քաղաքին միայն Ս. Սարգիս ունեցել է տեղի։ Քաղաքիս և ապա ի նմա մեր ազգայնոց բռնած դիրքէն կը հետեւցընեմք, որ Ս. Սարգսի շինութիւնը, շատ

առաջ է քան վերջին գաղթականութիւնը. եկեղեցւոյ որմին մէջ զետեղուած և մաշած խաչքարինք կը հաստատեն եկեղեցւոյն բազմադարեան հնութիւնը, թերևս Գեննուացւոց ի Կաֆա գալէն ևս շատ առաջ։ Սակայն ոմանք կարող են առարկել, թէ ինչպէս այդ բազմադարեան եկեղեցին, Խփչաղաց և Թաթարաց յարձակմանց միջոց, քանդողաց աչքէն վրիպել է, մինչդեռ իրմէ շատ վերջ շինուած Գեննուացւոց Ս. Ագնէս փառաւոր եկեղեցին, որ քիչ հեռի եղած է Ս. Սարգսէ, և այլ շատ ազգային եկեղեցիք քարուքանդ եղել են։

Մեք այդոր պատճառ Ս. Սարգսի խոնարհ անշուք դիրքը կը համարիմք. որ քաղաքին միջավայրն լինելովը հանդերձ, աչքի չի զարներ։ Նորա ցածուն և անշուք դիրքը և չորս կողմի բարձր պատերը, ծածկել են զնա քանդիչ ձեռքերէ։ Արդեօք մեր նախնիք կանխատես զգուշութեամբ չեն տուել Ս. Սարգսի այդ ցածուն դիրքը. ես այնպէս համոզուած եմ, որ հին Հայոց խոհական զգուշութեան արգասիքն է ցարդ Ս. Սարգսի կանգուն մնալը։ Վերջին և զօրաւոր ապացոյց մեր ազգայնոց Ժ դարու միջոցներ ի Կաֆա գոյութիւն ունենալնուն, կը համարինք մի քար, որ համայնաջինջ ամանակին ժանիքէն պրծեալ, կը պահուի ցարդ Թէոդոսիոյ հնութեանց թանգարանին մէջ։ Քառածալ թերթի ձևով յասպիս քար մի է, վրան երեք խաչեր քանդակուած. միջինը մեծագոյն, որոյ պատուանդանին վերայ կը կարդանք. «Բարեխաւս է սուրբ Նշանքս Գրիգորին և իւր զաւակին». խաչին վերի կողմը կայ քանդակուած այս վաղեմի թուականը ՆՀԶ (1027)։

Վ. Հ. Մինաս Բժշկեան, Հաւատարիմ տեղա-

գրողն հայկազն յիշատակարանաց Տաւրիոյ, կը գրուցէ թէ, «Թուի թէ զայս վէմ բերեալ են աստ (Հայք) յԱնւոյ և եդեալ յեկեղեցի ինչ»: Թուի կը գրուցէ՝ տարակուսելով խաչքարին հնութեան վերայ. վասն զի նոյն միջոցին դեռ ևս իրեն ծանօթ չէին ոչ ԺԳ դարու բազմաթիւ Հայոց գոյութիւնը ի Սուտաղ, և ոչ այլ նորանոր հետազօտութիւնք գիտնոց, Հայոց հին գաղթականութեանց մասին ի Տաւրիա: Հաւանական է ինչպէս այս քարին, նոյնպէս և այլ շատ քարերու Զ. Պ. Ջ և այլն, թուականներով ի Կաֆա փորագրեալ լինելը:

Քանզի նոյն ինքն Բժշկեան վարդապետ, յեցեալ հաւատարիմ յիշատակարանաց վերայ, ինչպէս կոնդակին Գրիգորի ԺԲ քահանայապետին Հռովմայ առ Հայկազունս Տաւրիոյ (1318), որ 13 ամօք առաջ է քան զմեծ գաղթականութիւն բիւրաւորաց ազգիս ի Տաւրիա, կը գրէ. «Զայնու ժամանակաւ (1318), մեծանուն հանդիսացաւ ազգս մեր ոչ միայն ի Ղրիմ, այլ և ի բազում տեղիս», մեք թողլով առ այժմ ազգիս մեծանուն հանդիսանալը ի բազում տեղիս, յոյժ հաւանական կը համարիմք որ ի Ժ դարէ և այսր միշտ հայկազունք բնակել են Տաւրիոյ զանազան քաղաքաց մէջ:

# Է

## ՍՈՒՐՂԱԹ, ՔԸՌԸՄ

## ԵՒ ԿԱՖԱ ԱՆՈՒԱՆՑ ԾԱԳՄԱՆ ՎԵՐԱՑ

Ի Կաֆայէ երեք ժամ հեռի, 27 վերստ դէպ 'ի արեւմտեան-հարաւ, լեռներուն մէջ գտնուած փոքր քաղաքը, որ այժմ Հին-Ղրիմ անունը կը կրէ, առ Գենուացւովք Սուրղաթ կոչուած է. Նոցամէ առաջ և վերջը մինչև մեր օրերը, շատ Հայեր բնակած են այդ քաղաքին մէջ: Ց' ԺԳ. դարու ալ Թաթարաց խաներուն մայրաքաղաք եղած է, որոց փողերանոցին և պալատներուն մնացորք մինչև վերջին ժամանակներս կեցած էին, այլ այժմ հետախաղաղ կորան: Ի հնուց նշանաւոր և մեծ քաղաք եղած է. մեր ձեռագիրք լիուլի յատկանիշ կը գործածեն հոյակապ ածականը. Թաթարք ևս ԺԳ դարէ սկսեալ, իրենց լեզուով նոյն ածականը տուած են Սուրղաթի [1]: Ժամանակաւ հոյակապ եղած ըլլալուն տարակոյս չկայ. զի մեծ տարածութեամբ ցրըւած կը տեսնուին ցիր և ցան դերբուկք և մնացորդք հին շինուածոց, որոց մէջ նշանաւոր են ազգային հայեցակլիտիւ, Զար-խափան Աստուածամօր եկեղեցւոյն աւերակք. համանուն կամրջին մօտ, և այլ դերբուկք բաղանեաց և մզկիթից, նոյնպէս և ստորերկրեայ լայն քարուկիր անցքեր, քաղա-

1. Մեծաշուք կոչուած:

քին երբեմն հոյակապ լինելուն ապացոյցքն են[1]։ Սմիրնով պրոֆեսորը, Պետրբուրգի հնագիտական յիշատակարանաց մէջ[2] քաղաքիս Սուրղաթ անունը, աղաւաղմունք կը համարի հայ Ս. Խաչ բառերուն, զի մօտ է քաղաքիս վաղեմի հայկական Ս. Խաչ (Ս. Նշան) վանքը։ Եւ որովհետև Հայք յառաջ եկած են այս կողմերս քան զԳենուացիս, յայտ հաւանական է որ Սուրբ Խաչ բառերուն աղաւաղմունք լինի Սուր-ղաթ։ Անշուշտ սկզբան Գենուացիք այդ հայ բառերը իրենց կամ լատին լեզուին տառադարձութեան կանոնով, գրած են Surb-ghatch. և ժամանակ անցնելէն յետոյ այս բառերուն մէջէն քանի մի բաղաձայն թօթափելով մնացել է Sur-gat։ Նոյն միջոցներ գրուած մագաղաղի թերթ մի, որոյ վրայ հայերէն երկաթագիր գրուած տեսայ լատին պատարագամատոյցի մի մասը՝ կը հաստատէ թէ այն միջոցին դեռ լատին լեզուին մէջ չկայ Չ տառին հնչումը, զի գրած գտայ գլորիա ին էկսցէլսիս, Չի տեղ Ց տառը. այսինքն ոչ էկսչէլսիս։ Զարմանք չէ, այլ մանաւանդ շատ բնական, որ հայ անունը, անցել է առ Գենուացիս։ Բայց յայսմանէ դեռ քանի տեղ Ղրիմու մէջ իբրև տեղւոյ անուն, հայ բառեր կը գործածուին, ինչպէս Օր քաղաքը (տիւ նշանակութեամբ). զի ցամաքէն Ղրիմ մտնողին, դէպ արևելք կ'ինկնայ։ Հարաւային ափանց վերայ Ալուշթայի մօտ փոքր ջրվէժ մի կայ որ ցարդ Ջուր-ջուր անունը կը կրէ։

1. Աւերակքն Չոր-խափանի գնեց մօտերս տիկին Աննա Այվազեան և մտադիր է նորոգել այս արքայական յիշատակը։

2. Արեւելեան մամուլին մէջ 273, 1887 ին։

Այլ մեք դառնանք դարձեալ առ Ս. Խաչ (Սուրղաթ)։ ԺԴ. դարուն երկրորդ կիսուն մէջ այս քաղաքը իւր հին հայանունին անունը կը փոխէ և կը լինի Քրըմ կամ Խըրըմ։ Գիտնոց մօտ քար գայթակղութեան եղած է այս անունը, և ցայսօր ոչ ոք չէ կարողացած գոհացուցիչ մի մեկնութիւն տալ։ Այս պարզ և համառօտ անուանց մեկնութիւնը գտնալու համար, ոմանք ի գիտնոց բազմադարեան հնութեան մէջ թարթափելով կը հասնին մինչև նախաջրհեղեան Նահապետին Նոյի, և նորա թոռան Գամերի անուան մէջ նմանաձայնութիւն մի հեռուէն գտնալով, աղաւաղմունք կը համարին, Քրըմ բառը Գամեր անուան. ոմանք ալ Քիմմերեան վօսվորէ ծագած կամ յառաջ եկած կ'ուզեն ցուցանել։ Այլք աւելի մերձաւորապէս դիտելով տեղւոյն դիրքը, որովհետև լայն խրամի հետքեր դեռ ևս կը նշմարուի քաղաքին չորս պատոյտը, (տաճկերէն հէնտէք կամ խէնտէկ) նոյն բառէն ծագած կը համարին Քրըմ անունը. այս կարծիքէն է Ռուսաց մեծանուն պատմագիրը Քարամզին։ Անցեալ դարու գրուած ազգային մի յիշատակարան խօսելով Անեցի գաղթականաց մասին, կը յաւելու թէ Հայ գաղթականաց մի մասը Կաֆայէ դէպ արևմտեան-հարաւ գնալով բնակութիւն հաստատած են «ի Ղրիմ = լեռնամիջի». մեք այս երկրորդ բառը ոչ իբրև ածական կ'առնումք Ղրիմի. այլ իբրև թարգմանութիւն Ղրիմ, Խըրըմ կամ Քըր բառին՝ որ ի թաթար լեզու բլուր կը նշանակէ։ Եւ աստի կ'ուզեմք հետևցնել որ Քրըմ անունը, որ այժմ կը կրէ Տաւրիա կամ տաւրիական թերակղզին, ոչ ի Գամերէ, ոչ ի Քիմմերէ և կամ խրամ հէնտէկ բառերէն ծագած կամ յառաջ եկած է,

այլ Թաթար լեզուի ջըռ բլուր կամ լեռ բառէն։ Իւ յիրաւի, եթէ մէկը ուշի ուշով քննէ Թերակղզւոյս պատմական ընթացքը, և հետազօտ ակնարկ մի տայ, այժմեան Հին-Ղրիմ քաղքին դիրքը և ապա սակաւ մի տեղեկութիւն ունենայ Թաթարաց լեզուին, կարծեմ դժուարութիւն չէ կրել հաւանելու մեր տուած մեկնութեան։

Թաթարաց պատմութիւնը մեզ կ'աւանդէ որ՝ զկնի մահուան Խփչաղաց Նշանաւոր Բաթու խանին 1255 ին, յաջորդել է նմա ի խանութեան Բերեկա կամ Բուրգա 1. սորա յաջորդը Մանգութիմուր, ի կենդանութեան կը բաժանէ իւր խանութիւնը ժառանգաց մէջ. այս առթիւ այժմեան Հին-Ղրիմ (առ Գենուացւովք Սուրղաթ) նոյն և ծովահայեացն Կաֆա, մասն կամ ժառանգութիւն կ'ինկնան Օրան-Թիմուրի. այս բաժանմունքը կը պատահի 1266 փրկչական թուականին։ Սորա՝ Օրան-Թիմուրի իշխանութեան միջոց առաջին անգամ ի պատմութեան կը լսուի Ղըրըմ բառը, յատկացեալ տեղւոյ, այն է Աղարմըշ լերին ստորոտը շինուած քաղաքին, այլ ոչ բովանդակ Թերակղզւոյն. որոյ վերջը յատկացել է Ղրիմ անունը, փոխանակ Տաւրիոյ։

Աղարմըշ (սպիտակափառ) լերին ստորոտը գըտնուած քաղաքը, շրջապատուած է անտառազարդ բլուրներով. օդը առողջարար, ջուրը քաղցրահամ մեր ձեռագրին Ղռիմ լեռնամիջի բացատրութիւնը, շատ յարմարաւոր է։

Արդ մեք կ'ենթադրեմք որ հայկական Ս. Խաչին և Գենուացւոց Սուրղաթի, նոր իշխեցողը Օ-

1. Ըստ ազգային պատմչաց։

րան-Թիմուր, փոխելով տեղւոյն անունը, կոչած է Քըրըմ, անելով զայն իւր խանութեան մայրաքաղաք. և այն ոչ մասնաւոր դիտմամբ, այլ յոյժ բնական կերպով։ Եւ յիրաւի, Օրան-Թիմուր նախամեծար համարելով Ազարմչի դիրքը, կանաչազարդ բլուրներով, — քան զծովահայեացն Կաֆայի — ուր և հաստատած է իւր աթոռը, հարկաւ չէր կարող գոհ լինել հայացի Ս. Խաչ անունով կամ նորա աղաւաղմամբ (Սուրղաթ), այլ իւր սրտին և Թաթար լեզուին յատկութեանց համեմատ, պէտք էր մի նոր յորջորջումն տալ իւր մայրաքաղաքին. և ահա նա կը կոչէ զայն Քըրըմ, այսինքն իմ լեռս կամ լեռան իմ. որ համաձայն է սրտի զգացմանց նոր իշխեցողին և յատկութեանց Թաթար լեզուին։

Քըռ կամ քըռ բառը կը նշանակէ բլուր. ինչպէս արդէն յայտնի է փոքր ի շատէ ամենայն արևելագիտաց ըմ, իմ, ում՝ մասնիկները կը նշանակեն, իբրու ստացական դերանուն իմ, օրինակի համար պաղըմ (իմ այգիս), էվիմ (իմ տունս), օղլում (իմ որդիս). կամ այսպէս գրուցենք, այդ վերոյիշեալ մասնիկները մեր լեզուին ս դիմորոշին տեղ կը գործածուին Թաթարաց լեզուին մէջ. որով եթէ երկու մասն բաժնեմք քըռըմ բառը՝ կը գտնեմք, քըռ (լեռ) և ըմ (իմ), լեռս. և ահա այդ անունը ԺԳ դարէ և այսր փոխանակած է Սուրղաթ քաղաքին անուան, և մինչև ցայսօր ևս կը կրէ։ Ռուսք նախընթաց դարուն վերջերը տիրելով Տաւրիոյ, առ հասարակ նշանաւոր քաղաքաց նախնի հին յունական անուններ տուել են, ինչպէս Սեւաստոպոլ, Սիմֆերոպոլ, Եւպատորիա, Թէոդոսիա։ Այլ Սուրղաթ ունեցած չէ վերանորոգման

պատիւը. Նա միայն մեր ազգային յիշատակարանաց մէջ հոյակապ մակդիրովը գոհ կը լինի, տեղի տալով Ղրըմ Թաթարահնչիւն անուան։ Այս յիշած անուանափոխութեան խնդիրս, ըստ իմ կարծեաց, յոյժ հաւանական և ամենաբնական է. Նմանօրինակ փոփոխութիւնք տեղերու անուանց, կամ սրտամերձ և հաճոյական բացատրութիւնք, քաղաքակիրթ ազգաց մէջ ևս կը գտնեմք, ինչպէս mon plaisir, mon souvenir (իմ հաճոյք, կամ յուշք), Новый свѣтъ (Նոր աշխարհք)։ Տակաւ Ղրըմ՝ Օրան-Թիմուրի մայրաքաղաքին անունը Նորա իշխանութեան կամ բաժնին վրայ տարածուած է, յետոյ և ևս ընդարձակուելով, բովանդակ տաւրիական Թերակղզւոյն յատուկ անունը եղած է Ղրըմ. և որպէս զի մասը բոլորէն զանազանուի, Օրանի մայրաքաղաքին վրայ Էսկի (հին) ածականը աւելցուցած են։ Սակայն ղրիմեցի Թաթարք ցայսօր առանց Էսկի ածականին կը գործածեն Ղրըմ անունը Սուրղաթի տեղ. և Բազար անունը կու տան Խարասուի, և չեն կոչել ըստ Ռուսաց սովորութեան Խարասու-Բազար։

Մեզ այնպէս կ'երևի, որ վերը գրուածներս բաւական համոզիչ մեկնութիւնք են Ղրըմ անուան։ Թէպէտև մեր նպատակէն դուրս էր ճոխանալը մի Թաթար անուան վրայ, քանզի այդոր մէջ չկայ մի հայացի հայեցակէտ, նա մանաւանդ Թաթար իշխեցողին կամքը նսեմացուցել է Ս. Խաչ հայկական չքեղ անունը՝ այլ որովհետև մեզ մի պատմական ստուգութիւն երևցաւ այս տուած մեկնութիւններս, և որովհետև ազգիս երկրորդ հայրենիք եղել են այս տեղուանք յընթացս շատ դարերու, այն պատճառաւ մեզ իբր ստուգութիւն երևցածը կարևոր հա-

մարեցանք գրելու առթիւ, վերջ տալ ուզելով հնագիտաց տեղի և անտեղի մեկնութեանց և բացատրութեանց Ղրըմ անուան վերայ։ Այլ մեք դառնամք խօսելու մի ուրիշ անուան վերայ, որ ըստ մեր կարծեաց, բոլորովին հայկական ունի տիպար, և որոյ ստուգաբանութիւն ևս ցայսօր անյայտ է, այն է Կաւա։

# Ը

## ԿԱՒԱ (ԿԱՖԱ-ՔԷՖԷ) ԱՆՈՒՆԸ

Թէոդոսիոյ պատմութեանս ընթացքին մէջ ընդհանրապէս՝ և «Հայկազունք ի Տաւրիա» գլխոյն մէջ մասնաւորապէս աշխատեցանք ցուցընելու, որ Հայք Ժ դարէ սկսեալ տաւրիական թերակղզւոյն մէջ բնակութիւն հաստատել են. ճիշդ Ժ դարուն մէջ առաջին անգամ կը լսուի ի պատմութեան1 Կաւա (Capha) անունը։ Հնախօսից ամենայն ջանք ի զուր եղած են, այս անուան ծագման կամ ստուգաբանութեան մասին։ Ոմանք տաճիկ քէաֆիր կամ կեաւուր բառերուն համառօտութիւնը կը համարին Քէֆէ տաճկահնչիւն անունը. և այսպէս առ մեզ, տառադարձութեան կանոնով, ի Կաֆա փոխուած. այսինքն՝ քէֆ (հաճոյք) բառէն ածանցեալ կը համարին։ Մեզ՝ այս երկու մեկնութիւնք ևս անտեղի կ'երևան. և փոխանակ ի տաճկերէնէ ի հայ տառադարձնելու այդ անունը, այնպէս կ'ենթադրեմք, որ տաճիկք,

1. De administrando imperio. Կոստ. Պերփիւռոժենի։

Կռաւա հայահնչիւն անունը, ըստ իրենց լեզուին տառադարձութեան կանոնին ի Քէֆէ փոխած են։ Եթէ յանդգնութիւն չհամարին ընթերցողք, մեք այս անունն ալ, Քըռըմ անուան ձեւով երկու մասն բաժանելով, այսպէս Կաւ ա, կ'ուզեմք մեկնել որ հայերէն կաւ և ա (փոխանակ գի գրուած) բառին և տառին բարդութիւնն է այս անուն։

Կաւ հայերէն կը նշանակէ հող, մանաւանդ բրուտի հող terre glaise. ա տառը, ինչպէս յայտնի է ամենայն հայագիտաց, ցայսօր Հայաստանի շատ գաւառաց մէջ, փոխանակ է օժանդակ բային տեղ կը գործածեն. օրինակի համար փոխանակ մարդ է ասելու, կ'ասեն մարդ ա. երախայ է = երեխէ ա. մեծ է = մեծ ա. փոքր է = փոքր ա և այլն. ուրեմն Կաւա ասելով՝ հայերէն պէտք է հասկնալ Կաւ է, կաւեղէն է. ցայսօր ևս, եթէ մէկը Թէոդոսիոյ քաղքի երեք կողմէն պատած բլուրներուն վերայ նայի, մանաւանդ անձրեւէ վերջ, իսկոյն նոյն բառերը պէտք է գրուցէ Կաւ է, կաւեղէն են Թէոդոսիոյ շուրջը պատած բլուրները։

Եւ որովհետեւ յընթացս պատմութեան քաղաքիս տեսանք որ ի Ժ դարու, նախ քան զԳենուացիս ի ցամաք ելած են աստ ի Թէոդոսիա՝ հայկազունք և առաջին անգամ նոյն Ժ դարուն մէջ կը լսուի ի պատմութեան Կաֆա անունը փոխանակ Թէոդոսիոյ, ուստի այս հանգամանքներէն կը հետեւցընեմք, որ Հայք ելնելով ի ցամաք, Թէոդոսիոյ մէջ և հայելով Ալանաց և Գթաց ապա և Հոնաց աւերակներուն վերայ տիրող բլուրներուն որ կը պատեն զԹէոդոսիա, և միանգամայն միտք բերելով, այդ հայ Անեցի ժողովուրդը Շիրակայ գեղագուարճ դաշ-

տերը, և Ծաղկոցաց–Ձորոյն ակնապարար տեսարանը, անշուշտ բացագանչել են, թէ՝ «Այս ի՜նչ Թէոդոսիա, ի՜նչ տուրք Աստուծոյ, կաւ ա, կաւ է չորս դին»։ Մեզ հաւանական կ'երևի որ այս բացագանչումը կամ բացատրութիւնը, ապա իբրև յատուկ անուն տեղւոյ անցել է առ Գեննուացիս, որք ի սկզբան, ինչպէս հին յիշատակարանաց մէջ կը կարդամք, մեր ւ տառը **ph** գրերով գրել են, ապա մէկ **f** փով հուսկ յետոյ կարողացել են Հայոց ւ (կէս մի ձայնով տառը) երկու **ff** փփով ճիշդ հնչել կամ յարմարագրել։

Առ այժմ առաւել զօրաւոր փաստեր չունենալով՝ մեզ հաւանական երևցածը, իշխեցինք իբրու մեկնութիւն Կաւա կամ Կաֆա անուան գրել, հայ լեզուէ յառաջ բերելով բառիս ստուգութիւնը։ Արդ եթէ մեզ հաւանական երևցածը գիտնոց ևս ընդունելի լինի, մինչև ցայսօր անյայտից կամ անծանօթից կարգը անցած մի պատմական քաղաքի անուան ծագումը, պարզուած և յայտնի կը համարիմք։



## Թ

## ՄԵԾ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ Ի ԿԱՖԱ

### ԱՌ ԳԵՆՈՒԱՑԻՈՎՔ

*Այժմ մեզ անտարակոյս է որ՝ այս մեծ գաղթականութենէ առաջ կային ի Կաֆա, ի Սուրղաթ, ի Սոլդայա բազմաթիւ Հայեր, իրենց վանքերով, եպիսկոպոսներով և եկեղեցիներով, որք Գենուացւոց աջակից ոչ աննշան, այլ նշանաւոր և բարեկեցիկ կեանք կը վարէին, որ և պատճառ կամ գրգիռ եղած է այս մեծ գաղթականութեան ազգիս յԱքսէրայէ դէպ ի Կաֆա։*

*1239 ին Զաքարէ մեծ իշխանի որդւոյն Շահնշահի պայազատութեան միջոց, որ կը տիրէր Անւոյ՝ Բագրատունեաց գեղապանծ շահաստանին, Չարմա խանն Թաթարաց, մեծ բազմութեամբ յարձակելով քաղաքին վերայ, քիչ ժամանակամիջոցի անհնարին կոտորած կը հասցնէ քաղաքացեաց, և դարերու միջոց շինուած գեղապանծ քաղաքը աւերակաց կոյտ կը դարձընէ. այս դէպքս ազգային ականատես պատմիչք արժանապէս ողբացել են։ Կաֆայեցի յայսմաւուրքին անանուն գրիչը, ըստ օրինակի այլոց պատմագրաց, ողբալով քաղաքին կործանումը և պատճառ բերելով թէ «ոչ արդարութիւն գտանեցաւ ի մեզ...» (կը յաւելու) «Բազումք թողեալ զոսկէզօծ պալատս և զծաղ-*
*«կաւէտ դաշտս, զվանորայս և զեկեղեցիս աւեր,*

«չուեալ եկին ի յԱխսարայ, որ է ի մէջ Հաշտար-
«խանու և Ղազանու. ոմանք գնացին ի Ճուղայ,
«ոմանք ի Վան, և այլք ի Սիս։ Եւ որք յԱխսարայ
«եկին, հրաման առեալ ի Թաթար խանէն բնա-
«կեցան անդ, ոչ բազում ժամանակս, որ էր զայս
«ՉԽԸ (1299)»։

Յիշատակարանիս խօսքերէն կը հետևի որ՝ յետ կործանման Անւոյ ի Չարմա-Խանէ (1239) բազմութիւն Անեցւոց անցել են ի Թաթարաստան, յընթացս 60 տարիներու, և անդ միշտ նեղութիւն կրելով Թաթար իշխեցողաց ձեռքէն, ազատութեան մի հնարք գտնելու աշխատել են, և «անդ բնակեցան ոչ բազում ժամանակս, որ էր զայս ՉԽԸ (1299)»։ Թէպէտ մթին է սակաւ մի յիշատակարանիս տուած բացատրութիւնը, այլ ես այնպէս կը հասկնամ որ 1299 էն սկսել են Աքսէրայցի հայերը բանագնացութիւնք ունենալ Կաֆայեցի ազգայնոց հետ, և այդ բանագնացութեանց հետևանք եղած է բիւրաւորաց Գաղթը ի Կաֆա 1330 ին, վասն զի կը յարէ յիշատակագիրը. «Մինչ նե-
»ղեալ եղեն ի Թաթարաց դեսպան յղեն ի Ղրիմ
»առ իշխանն Ջինիւիզաց»։

Գինուացի իշխանին անունը չի դներ գրողը, առ որ ուղղեալ են Աքսէրայցի հայ դեսպանք, այլ որովհետև նոյն միջոցին երկու իշխեցողք[1] կը յիշուին ի Կաֆա, Ալբերդոյ և Կոռադոյ, սացամէ միոյն իշխանութեան միջոց անշուշտ, եկած են հայ դեսպանք ի Կաֆա և պայմաններով դաշինք դնելէն

1. Ըստ ցուցակի պրոֆեսոր Իւրգեւիչի Alberto Mallone 1297 ին ընտրուած և Corrado de Roccio 1316-1332։

յետոյ, եղած է բիւրաւոր Հայկազանց գաղթականու-
թիւնը յԱքսէրայէ. Յիշատակարանը կը յաւելու.
« Ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէօդօսիու, եկեալ ի
» յԱխտարայէ իշխանք և ազնիւք (հայկազունք) և
» հասարակ ժողովուրդք՝ փախեալք գինու, պատե-
« րազմելով ընդ Թաթարացն ճեխքեալք գան ի Ղռիմ
» և բնակեն ի Ֆէօդօսիա, ի Կազարաթ և ի
« Սուրխաթ և ի կողմանս սոցա. այս եղև ՉՀԹ
» (1330) Թուին »:

Ուշադրութեան արժանի են յիշատակարանիս խօսքերը. « փախեալք գինու » գաղթականաց մէջ բազմութիւն հայ գինուորաց եղած են, իրենց սպայներով, խմբավարներով և զօրագլուխներով. զի քիչ ժամանակ վերջը, աստի ի Կաֆայէ 40,000 Հայ գինուորներ անցել գնացել են ի Փոտոլեան Կամենից, պաշտպանելու այն հայկական քաղաքը, ընդդէմ յարձակմանց Թաթարաց, լուծելով միանգամայն Անւոյ կործանման վրէժը: Ըստ յիշատակարանին « Պատերազմելով ընդ Թաթարացն ճեխքեալք գան ի Ղռիմ »:

Անշուշտ Թաթարք ամենայն ջանք արել են, որ ի Թաթարստան մնան, և բիւրաւոր հայ աշխատասէր ժողովուրդը, չէնցընեն և մշակեն իրենց անապատները: Սոյն այս դէպքը պատահել է 1778 ին ևս, երբ Ղրիմեցի հայկազանց հրաման եղել է, թողուլ այն աշխարհքը և երթալ բնակիլ ի Ռուսաստան. տեղացի Թաթարք ամենայն ջանք ի գործ դրել են, արգել լինելու Հայոց գաղթականութեան ի Ղրիմէ, այլ ի զուր: Յիշատակարանիս գրուցած տեղուանք, ուր հոծ խիտ առ խիտ բնակել են Հայկազունք, արևելեան — հարաւային մասունք են Թերակղզւոյն. Կազարաթ և Սուրխաթ մօտ են կա-

փայի, Ղարապազարը 63 վերստ է ի Կաֆայէ, սոյն միջոցին ի Սուղդա եւս բազմացել են հայկազունք. այնպէս որ ըստ յիշատակարանիս, ի դաշտս և ի լերինս լցուցել են շէնքերով։ «Յայնժամ զօրացաք մեք և բազմացաք և շինեցաք զգիւղս և զգաւառս այսինքն միանալով արդէն ի Կաֆա, ի Սուրղաթ և ի Սուղդա հինէն բնակող ազգայնոց հետ։ Եթէ այս ենթադրութիւնը չլինի, յայնժամ բառը բոլորովին անյարմար և անտեղի պէտք է համարել, զի անդէն ի Թերակղզիս մտնալնուն պէս, իսկոյն բազմանալն և զօրանալն անկարելի է։ «Շինեցաք «տունք հարիւր հազար, և զեկեղեցիս հազար, և «ի ահէ հոնականաց պարսպեցին ի քաղաքն Ֆէօդոսիա»։

Նոր եկող հայկազանց առանձին տեղի բնակութեան կամ թաղ որոշուած է, և հաւանական կ'երեւի, որ ուխտի կամ դաշանց գրին մէջ, դեսպանաց Հայոց ընդ իշխանին Կաֆայի, այս եւս պայման դրուած է որ, Հայք պարսպեն իրենց թաղը, ընդդէմ հասարակաց թշնամեաց, այն է Թաթարաց զորս յիշատակարանս կը շփոթէ Հոնաց հետ։ Այս պարիսպը, քաղաքիս արեւելեան ծայրը շինուած Ֆաէնկհիսար կոչուած Գենուացի պարսպէն կցելով, ընդ հարաւ լեռներուն վրայէն հասուցել են Հայք մինչև ցհիւսիսային ծայր քաղաքին, որով քաղաքին հարաւային մասը՝ լերանց ելևէջներով, եղած է թաղ հայոց։ Այդ մասին մէջն են ցարդ եւս կանգուն մնացած ԺԲ—Դ դարը շինուած չորս հայոց եկեղեցիք, այլ շատերը հիմնայատակ կործանել են։ Այլ որովհետև բիւրաւոր գաղթականք այդ փոքր սահմանին մէջ կարող չէին ամփոփուիլ, այնպէս կը համարիմք, որ յիշատակարանիս մէջը յիշուած

«իշխանները և ազնիւները» ազգիս, Կաֆայի մէջ հաստատել են բնակութիւն, մայրաքաղաք անուանելով զնա, իսկ Մացեալ հասարակ ժողովուրդը և գիւղացիք սփռուել են մինչև ցՂարապազար ցՍուրղաթ և Կազարաթ, և մեծ բազմութեամբ ի Սոլգայա Գենուացւոց (Սուղդա), սակաւ յԵւպատորիա, յՕր և այլն։ Հայաբնակ գիւղերուն մեծ մասը Կաֆայի մերձաւոր տեղուանք եղած են, ինչպէս Կէօք-Թէփէ, Սուլթան-Սալա, Նախիջևան (այժմ Քաինիչքա), Օրթալան. Թօփլու, Ղշլաւ, Սոլուք-Սու և այլն։

Ցայսմաւուրաց ցցուցած ճանապարհին վերայ, ուր Հայք խիտ բնակութիւն հաստատել են, մինչև ցայսօր ամենածախ ժամանակին ձեռքէն մազապուր, կը գտնուին տակաւին, երբեմն զթերակղզիս բազմամարդող և շէնցնող Հայոց հետքերը. զի յընթացս 580 տարեաց ուր և կոտորած և ապա սատի ևս այլ հեռաւոր աշխարհք խմբովին գաղթականութիւն ազգիս, մեծապէս տկարացուցել հայութիւնը Ղրիմու մէջ, այլ չեն կարողացած իսպառ բնաջինջ կորուսանել։

Ամենուրեք հայ եկեղեցեաց տխրագին աւերակք, ցիր ու ցան հայ յիշատակարանք, պատերու մէջ, սանդուխներու վերայ, աղբիւրներու ճակատ. ցայսօր Թէոդոսիոյ որ կողմը մարդ փորէ, անշուշտ երկրիս խորէն դուրս կը հանէ հայկական խաչքար մի, ազգային յիշատակարանով։

Բաց ի բազմաթիւ եկեղեցիներէ, բերդերէ և պարիսպներէ, հայախօս յիշատակարաններով, ազգայինք մասնաւոր ջանք արել են անջրդին Կաֆայի մէջ լեռներէն ագուգայներով քաղցրահամ ջրեր իջցընելու, դրոշմելով աղբիւրներուն ճակատը, չի-

նողաց կամ շինել տուողաց անունն կամ մականունն, ինչպէս «Մելէքին և Քափանակին», որք ցարդ կանգուն կեցել են։

Ազգայինք. ինչպէս ամէն տեղ, աստ ևս ի Կաֆա իւրեանց սեփական աչքառութեամբ և հաւատարիմ գործունէութեամբ սիրելի կը լինէին քաղաքին տիրող Գենուացւոց. ի նոցանէ Նախարար, Պարոն և իշխան պատուանուններով կը մեծարէին. կ՚ունենան առանձին հայկական զինուորք, պահակապանք (gendarmerie) որք իւրեանց զօրագլխով կը կանգնէին պարիսպ ընդդէմ այլազգեաց յարձակմանց։

Արեղայք և անապատաւորք վանքերու մէջ, և անտառներուն խորեր, զատ զատ հողատներու մէջ կը քաշուէին հեռացեալք ի զբաղմանց աշխարհի. վանուց մէջ նշանաւոր են Գեմչակ կամ Քամճակ անապատները, յանուն Աստուածամօր եկեղեցւով ի Սուրխաթ, և Մողկան անապատը Ղշլաւ գիւղին մէջ, ուր կը պարապէին ուսմամբ, մշակելով իրենց հետ բերած քաղցրիկ աւանդը և դրօշմը հայութեան, այն է մեր նախնեաց ճոխ լեզուն։ Ընդօրինակած են այդ վանքերուն մէջ հարիւրաւոր հոգեխօս գրեանք և չքեղ պատկերազարդել են սուրբ կտակարանք։

Ազգիս մշակ կամ գեղացի մասը, խումբ խումբ սփռուել են Ղրիմու հովասուն լերանց ստորոտը, գեղածիծաղ անտառաց մօտերը, ուր կը բղխեն քաղցրահամ աղբիւրներ, և այն տեղեր գիւղեր և աւաններ սարքելով, ակօսաբեկ կը պատառեն արգաւանդ դաշտերը։

Կաֆայի հարաւային մասը, դէպ ի սարերը, հայաբնակ Նոր քաղաք կը լինի բիւրաւոր հայ բնակչօք և կը կրէ անուն ծովային հայաստան, Սուրխաթ

քաղաքը իւր մերձակայ Ս. Խաչ վանքով՝ բոլորովին հայոց քաղաք կը դառնայ. Սուտաղ (Soldaja Սուղդա) իւր բազմամարդ հայութեամբ մեծ-Հայաստանի անունը կը կրէ, որում կը վկայէ Եւգինէոս Դ. Հռովմայ սրբազանին կոնդակը « ի կողմանս Մեծին Հայաստանու, ուր է եկեղեցին Սոլդայեցւոց[1] » 1432։



## ԱՇԽԱՐՀԱՇԷՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ Ի ԿԱՖԱ

Հայութեան ծաղկեալ միջոցն ի Ղրիմ՝ եղած է ի 1330-1475. բազմաթիւ ձեռագիրք այն ժամանակաց մէջ գրուած են, ամրակուռ մատրունք և եկեղեցիք նոյն միջոցին կառուցել են. շատ խաչքարինք նոյն ատեններ քանդակուած և կոփուած մինչև առ մեզ հասել են իրենց յիշատակարաններով։ « Բարեխաւս են սուրբ Նշանքս » այս կամ այն բարեպաշտ Հայուն, որ հեռի ի սիրելի հայրենեացն՝ կնքեր է յատար պանդխտութեան իր կեանքը։ Քանի՛ սրտագին, հուձոյական, միանգամայն և տխրագին մտածութիւնք չեն յարուցաներ հայ սրտերու մէջ այդ անուացեալ խաչքարինք. որոնք եկեղեցեաց պատերուն մէջ ագուցած, այլք բարձր բերդերու

1. In partibus Armeniæ majoris, in quibus Soldajensis ecclesia sita est. Բրիւն էջ 58.

պարսպաց վրայ։ Շատ անգամ ինձ պատահել է կանգ առնուլ այդպիսի խաչքարանց դիմաց, մանաւանդ Սուտաղի գենուացի բերդին մեծ կրկնայարկ դրան ճակատակողմեան որմին առաջ, ուր մեծ բարձրութեան վերայ, առանձնացեալ հայակոփ և հայաքանդակ քար մի, վկայէ վեցհարիւր տարիներով յառաջ՝ այդ տեղուանք Հայոց գոյութեան, որ Գենուացւոց հետ աջակից չինել են այդ աշտարակազարդ բերդը։

Մեր նպատակէն չհեռանալու համար՝ Կաֆայի վրայ ամփոփենք խօսքերնիս։

Ինչպէս 1475ին Թուրքաց Կաֆայի տիրապետելու միջոց, նոյնպէս և անցեալ դարու վերջերը (1773) Ռուսաց ձեռք անցնելու պատերազմաց պատճառաւ՝ քարուքանդ եղած է Կաֆա, մեծամեծ շէնքերը հիմնայատակ, դռներուն և պատուհանաց շրջանակք և բարաւորք՝ իբրև նիւթ վառելի կամ վառելափայտ գործածուած են բնակչաց, ամենեւին ակնածութիւն չանելով ոչ ճարտարապետական ձևին և ոչ շէնքին հնութեան. և մինչդեռ այժմ, հարիւր տարի անցնելէն վերջ, ի հնութենէ մնացած կիսաւեր ու գրեթէ անպէտ շէնքերու վրայ մասնաւոր հոգ և հսկողութիւն կը լինի կառավարութեան ու քաղաքապետութեան խնամօք, հարիւր տարի յառաջ, հարկ է խոստովանիլ, անխնայ կերպով կործանուած և ոտնակոխ եղած են՝ քաղաքիս կարևորագոյն և փառաւոր շէնքերը։ Հաւանութեան է որ եթէ անոնց յարգը չի ճանչցող տգէտ ամբոխն և ռամիկ՝ այդպէս անխնայ վարուած չլինէին Թէոդոսիոյ հին շինուածոց նկատմամբ, ո՞ գիտէ դեռ քանի՛ գեղեցիկ յիշատակարանք կ'ունենայինք մեր ձեռքը, նոյն իսկ հայկական գաղթականաց պատմութեան մասին։ Սակայն յետ կրկին և կրկին Կաֆայի աւեր-

մանց, դարձեալ աստ և անդ՝ Մնացորդք հայրենի յիշատակաց քիչէն շատը մեզ գուշակել կու տան, և գեղեցիկ վայելչութեամբն զոր դեռ անկորուստ պահած են՝ կը քաշեն հետազօտ հայ աչքերը։

Անշուշտ այդ Մնացորդաց մէջ առաջին տեղին բռնողը ազգային եկեղեցիք են. զի ուր և լինի հայ ժողովուրդ, որպիսի հանգամանաց մէջ ալ գտնուի, մինչև անգամ՝ ինքն երկրափոր նկուղներու մէջ ևս բնակի, կ՚աշխատի որ Աստուծոյ տունը, կրօնքի ժողովարանը, եկեղեցին՝ գեղեցիկ և վայելուչ լինի։ Ի հնութենէ մնացած դեռ ևս կանգուն կան Կաֆայի մէջ երեք ազգային եկեղեցիք. Ս. Սարգիս, հին աթոռակալ եկեղեցի. ինչպէս կ՚անուանեն և կը գրեն ազգային յիշատակարանք. — Ս. Հրեշտակապետք, որ մայր եկեղեցեաց կը համարուէր ինչուան վերջին տարիներուս մէջ. — և Ս. Կարապետ, որ այժմ Ռուսաց ձեռքն է։ Այս երեք եկեղեցեաց վրայ ևս ցարդ յայտնի կ՚երևի ազգային ճարտարապետութեան ճաշակ և վայելչութիւն, և որք չեն կորուսած իրենց նախնական տիպարը. մինչ Ս. Գէորգ ի գերեզմանատան, և Ս. Աննա ի սարին, վերջերըս նորոգուելով, բոլորովին կորուսել են իրենց առաջին վայելչութիւնը։

# ԺԱ

## ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻՔ ՀԱՅՈՑ· — ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ·

Սրբոյն Սարգսի նուիրուած եկեղեցին, Կաֆայի ազգայնոց հին և նոր եկեղեցեաց մէջ հնագոյնն է, քաղաքին կեդրոն տեղին շինուած, և շատ ձեռագրաց մէջ, ինչպէս հիմայ ալ յիշատակեցինք· նշանակուած է իբր աթոռակալ կամ մայր եկեղեցի· ունի ընդարձակ բակ չորս կողմը, որոյ մի անկիւնը քաշուած է եկեղեցին, յոյժ համեստ ձեւով· և որովհետև քաղաքին հրապարակին արևմըտեան հարաւային կողմը կ'իյնայ, այն պատճառաւ կարծես խռոված, և կռնակ դարձուցած է դէպ ի քաղաք։ Այդ բակին մէջ, ուր այժմ կայ տղայոց և աղջկանց համար ազգային ծխական ուսումնարան, հին ատեն, ըստ ազգիս սովորութեան, վանք և բնակութիւն եղած է աբեղայից և վարդապետաց, ուր շատ աբեղայք բազում ձեռագրեր օրինակել են՝ ընդ հովանեաւ Ս· Սարգիս տաճարին։

Եկեղեցւոյն դիրքը և տեղը, հանդերձ ընդարձակ բակով, քաղաքին մէջ տեղ շինուած, յայտնի ապացոյց են որ այս եկեղեցիս Գենուացւոց ի Թէոդոսիա գալէն առաջ շինուած է· վասն զի ԺԴ դարու հայ բազմաթիւ գաղթականութեան՝ Գենուացիք նշանակած են առանձին թաղ Հայոց, այժմեան արգելանոցին տեղը և անտի դէպ ի հարաւակողմեան սարերը, ուր և Հայք նոր պատ քաշելով իրենց բնակութեան չորս կողմը, ապահովել են զիրենք ընդդէմ թշնամեաց յարձակման·

բաց ի Ս. Սարգսէ միւս այլ եկեղեցիք՝ բոլորը կամ այդ պարսպածին մէջն եղել են, և կամ պարսպէն եւս դուրս, այլ ոչ քաղաքին կեդրոն տեղը։

Այս եկեղեցին հաւանական է որ յընթացս ութ հարիւր տարիներու՝ շատ անգամ նորոգուելով, այլայլութիւններ կրած է, այլ գլխաւոր մասն եկեղեցւոյն՝ բեմն և գաս, նոյն հին ձևով մնացել են, ոչ միայն ներքին կողմէն, այլ նոյնպէս և արտաքին տեսքով. քանզի դրսէն եկեղեցւոյս պատին վրայ ագուցած քանի մի խաչքարինք՝ բոլորովին մաշուած են օդէն և անձրևներէն, և որոց վրայի տառերը սրբուած, որ մեծ հնութեան նշան է։ Հայոցմէ վերջ Գենուացիք, տակից կառուան գտնելով, կամ լաւ եւս՝ տիրանալով Կաֆայի, Ս. Սարգսի անմիջապէս մօտ, քաղաքին մեծ հրապարակին միջավայրը կը շինեն իրենց փառահեղ մայր եկեղեցին, ի պատիւ Ս. Ագնէս կուսին, որ ըստ վկայելոյ պատմագրաց, իր գեղեցկութեամբ նշանաւոր եղած է ընդ համօրէն Եւրոպա. հաւանական է որ՝ նախ քան զԳենուացիս, Յոյնք նոյն հրապարակին վրայ ունեցել են իրենց եկեղեցին, յետ Գենուացւոց՝ Թուրք գմբեթազարդ և փառաւոր մզկիթ կանգնել են Ս. Ագնէս եկեղեցւոյն հիման վրայ, նոյն տաճարին աւերակներով. իսկ մեր օրեր՝ Ռուսք՝ ճիշդ այդ մզկիթին տեղ, հին եկեղեցւոյն հիմանց վերայ շինեցին իրենց մայր եկեղեցին։

Ինչպէս տեսանք՝ ի հոլովել դարուց և ի փոփոխիլ տիրապետող ազգաց, եկեղեցւոյն տեղը բռնած է մզկիթ, և ապա դարձեալ տեղի տուած է եկեղեցւոյ, քաղաքիս կեդրոնին վերայ. մինչդեռ

Նոյն միջոց ժամանակին՝ Հայոց բազմադարեան Ս. Սարգիս եկեղեցին կը մնայ իւր սեպհականութիւն, և մինչև ցայսօր կանգուն գրեթէ նոյն ձևով՝ ինչպէս ասկէ ութ հարիւր տարի յառաջ։ Եկել են ի Կաֆա Կազարք և Սարմատացիք, Խփչաղ և Գոման Թաթարք, և այլն, քարուքանդ արել են քաղաքը իւր մեծամեծ շէնքերով, այլ կարծես թէ քանդողաց աչքէն վրիպել է սուրբ տաճարս իր անփառունակ ձևովը. օտարաց աչքին աննշան, այլ ազգիս՝ մանաւանդ Կաֆայեցի Հայկազանց համար յոյժ սիրելի և նշանաւոր. և պէտք է որ միշտ այնպէս լինի՝ իր դարերէ ի վեր ունեցած հնութեամբ և արժանաւոր աթոռակալ անուամբ անդըստին ի հնոց։ Անշուշտ չինողք տաճարիս, խոհական խորհրդով նախագուշակելով ապագայ աւերմունք և արկածք, զգուշացել են, ինչպէս յառաջ ալ կանխեցինք ըսել, խորանաց կամարները բարձրացընելու, ինչպէս այլ եկեղեցեաց. չունի եկեղեցիս երկնաբերձ կաթողիկէ՝ վեղարի ձևով, ինչպէս ունին յետաշէն եկեղեցիք։ Առաջին գաղթական Հայք ի Թէոդոսիա, քաղաքիս մէջ տեղը, շրջապատեալ ընդարձակ բակով, քարաշէն պարըսպաց մէջ շինել են ի ցածագոյն տեղւոջ, խոնարհ սրբավայրը, որպէս զի կարող լինին, առանձնացեալ յօտարաց, առանց աչքի զարնուելու, ժողովիլ սուրբ տաճարիս մէջ, կորուսեալ հայրենեաց սէրը նորոգելու, նախնի հարց և վարդապետաց լեզուով և հնագոյն արարողութեամբ իրենց յարգութիւնն ու գովաբանութիւնը, սրտի և հոգւոյ պիտոյքը, վիշտերը և ցաւերը հեղլու և տարածանելու առաջի երկնաւոր Թագաւորին, որ ամէն տեղէ, ամէն լեզուով, իրեն դիմողաց ձայնը կը լսէ, կարեաց դար-

ման կը տանի և պիտոյքը կը հոգայ աստուածախնամ սիրով սփոփելով, քաջալերելով և արտասուքը քաղցրացնելով։

Ցանցեալ դարու (1787 ին) ի Նոր Նախիջևան գրուած ձեռագիր մի, Գիրք ժողովածու[1] վերնագրով, ի մէջի այլոց կը գրուցէ Ս. Սարգիս եկեղեցւոյ համար.

« Սուրբ Սարգիս յոյժ մեծ ժամ է.
Նախնեաց մերոց հաստատեալ է,
Եկեղեցեաց աթոռակալ է »։

Յոյժ մեծ ժամ բացատրութիւնը չափազանցութեամբ տրուած կ'երևնայ այս եկեղեցւոյ. զի այժմ, այն է ի վերջին նորոգմանն որ յամի 1888, թէպէտև փոքրկացուցած է, այլ նորոգմանէն յառաջ ալ կարելի չէր այդ մակդիրով կոչել. այլ այս բացատրութենէ կարող եմք գուշակել թէ այլոց մեծութիւնն որչափ պիտի լինի. սակայն և այնպէս՝ ոչ իր ձևոյն կամ գեղեցկութեան, այլ վաղեմի հնութեանն համար, եկեղեցեաց աթոռակալ, կամ այժմեան բացատրութեամբ մայր եկեղեցի ճանչցուած է մինչև ցառաջին Արևելեան պատերազմն Սևաստոպոլի. այդ միջոց ժամանակին անտէր մնալով, և եկեղեցւոյն երկրորդ մասն առիքն վնասուելով, տակաւ խարխուլ վիճակի մէջ ինկած,

1. Եթէ չեմ սխալիլ, ձեռագիրս այս մասը որ Կաֆայի եկեղեցեաց վրայ կը խօսի ընդօրինակուած է 1756 թուականին, նոյն քաղաքի մէջ գրուած Պարմաբեան Անէ հողատէր ի ձեռն Աբրահամու րաբունապետի ձեռագրէն, և պահուած է ի մատենադարանին Էջմիածնի։

եթէ այդ մասին (1888) գերապատիւ Խորէն Ս. Վարդապետ Ստեփանէ հոգ չի տանէր, կամաց կամաց այդ հնաւանդ եկեղեցին եւս Թէոդոսիոյ քառասուն կործանուած ազգային եկեղեցեաց կարգը պիտի անցնէր. այլ Ժրաջան փոյթ վարդապետին և ազգայնոց, որպէս և օտարաց, առատ նուիրատուութիւնք, վերահաս կործանմանէ մը և ի սպառսպառ անչքութենէ ազատեցին այդ եկեղեցին։

Ներսի կողմէն երեք մասն կը բաժանուին ազգային եկեղեցիք Կաֆայի. նախ բեմը իւր դասով, ուստի մի աստիճանով ցածագոյն կ'իջնէ ժողովրդոց կամ հաւատացելոց կանգնելու տեղը։ Այս երկրորդ մասը ընդհանրապէս փոքր է. և այն պատճառաւ ամենայն եկեղեցիք ունին և երրորդ մասն մի, որ ինչպէս եկեղեցեաց ներքին կողմէն երեք դռներով բաժնուած է եկեղեցւոյն բեմէն և դասէն, նոյնպէս և արտաքին կողմէն բոլորովին զատ է նոյն շէնքէն, երդիքը աւելի ցածագոյն և ժողովուրդք երկրորդ բաժանման դռներէն միայն կարող են տեսնալ պատարագ և այլ արարողութիւնք։ Այս երրորդ մասին կանանց կողմ անունը կը տրուի. այլ արդեօք հին ժամանակն ևս այնպէ՞ս էր, կը տարակուսիմ. ինձ այնպէս կ'երեւի որ Կաֆայեցի նախնի Հայկազունք, հնաւանդ քրիստոնէական սովորութեան համեմատ, բուն սրբավայրը, հասարակաց ժողովրդեան կենալու տեղէն բաժնել են դռներով. այդ զգուշութիւնը ունեցել են՝ որ չլինի օտար անհաւատք կամ Թերահաւատք անպատուութիւն մի հասցընեն սուրբ խորհրդոց. անշուշտ երբոր սարկաւագը մեղմիկ եղանակաւ ազդ կ'անէր դպրաց, «Զդրունս ամենայն իմաստութեամբ և զգուշութեամբ» փակեցէք, դպիրք դռներն ևս վրայ կը

բերէին որբագործութեան միջոց ի սուրբ պատարագին, որով օտարաց հետ ի միասին և բազմութիւնք ազգայնոց եկեղեցւոյն երրորդ մասին մէջ կը սպասէին, մինչև երկրորդ անգամ դռները բացուելուն։

Ի Թէոդոսիա՝ Ս. Հրեշտակապետք և Ս. Կարապետ. ի Հին Ղրիմ՝ Ս. Խաչ վանքի եկեղեցին բոլորն ալ վերոգրեալ բաժանմունքով շինուած են. միայն այժմ Ս. Սարգիս եկեղեցւոյն այդ բաժանմունքը քանդուած է, և փոխանակ հին դռներուն՝ մեծ կամար մի կը բաժանէ եկեղեցին երրորդ մասէն։ Այդ նորաձևութիւնը դարուս սկիզբները եղած է Ս. Սարգսի մէջ, որ թէպէտ ամէն կողմանէ վայելուչ և ազատ տեղ ունի խորանը, սակայն եկեղեցին իւր վաղեմի ձևը կորուսել է ներքին կողմէն, այս մասամբ։ Նոյն միջոցին մտածած են ազգայինք Ս. Հրեշտակապետաց ևս դռներուն բաժանմունքը մի մեծ կամարի վերածել. այլ բարեբաղդաբար, ճարտարապետը խորհուրդ չէ տուել, որպէս զի կաթուղիկէն՝ և զայն վեր բռնող կամարները չի խախտին։

Վայելչաձև են յոյժ Ս. Սարգսի երեք խորանաց ևս կամարները։ Դիտելու արժանի է և այս, որ ազգային հին եկեղեցեաց ընծայարանները, երկու կողմէն խորանին դուրսն են, և ոչ խաչկալին ետևէն. ինձ այսպէս կ'երևի որ խաչկալին ետևը ընծայարան շինելը՝ Յունաց հետևողութեամբ մտած է նորաշէն ազգային եկեղեցեաց մէջ։ Խորանին աջակողմեան ընծայարանին անմիջապէս մօտ կը գտնուի որմին մէջ շինուած մկրտութեան աւազանը, ինչպէս որ կը պատուիրէ Ս. Սահակ հայրապետ իր կանոնաց մէջ։ Փոքր վարագուրի սովորութիւնն

ամէն հին եկեղեցեաց վերայ կ՚երևի, այժմ միայն դադրած է ոմանց եկեղեցեաց մէջ, Ռուսաստանի մի քանի քաղաքներուն, որ կամայականութիւն է, և ոչ ըստ ազգային արարողութեան։

## Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏՔ

Այժմ Ս. Հրեշտակապետք համարուած է գլխաւոր կամ մայր եկեղեցի. որ թէպէտ Ս. Սարգսի նման քաղաքիս կեդրոնական տեղին շինուած չէ, այլ որովհետև աւելի ընդարձակ է և կաթուղիկէիւ և բարձրաբերձ կամարներով յօրինուած, և վերջին քանի մի տասնեակ տարիներու մէջ կիսաւեր վիճակ ունէր Ս. Սարգիս, բնականաբար Ս. Հրեշտակապետաց անցած է մայր եկեղեցի լինելու պատիւը, որ հնութեամբ շատ հին շէնք մը չէ, ինչպէս կը վկայէ քարաքանդակ արձանագրութիւնն։

Շինուած է եկեղեցիս հալալ արդեամբք Աստուածատրոյ ուրումն և նորա ընտանեաց ի ՊԾԷ (1408), Կաֆայի արևմտեան կողմը բարձր դիրքի վերայ դրսի կողմէն բոլորովին անպաճոյճ. ունի հայկական կաթուղիկէ ոսկեզօծ խաչիւ պսակուած, այլ խաչին ձևը ազգային չէ. և համեմատութեամբ կաթուղիկէն խոշոր է, կը յիշեցընէ տիրող ազգային ճաշակը, մինչ մի փոքրաձև խաչ թերևս աւելի համեմատ և վայելուչ կը լինէր ի ծայր կաթուղիկէին Հրեշտակապետաց։ Եկեղեցւոյն ներսի կողմը վայելուչ է և գեղեցիկ, բարձրաբերձ և համեմատաչափ կամարներով, որոց վերայ կը հանգչի կաթուղիկէն։ Վայելչագեղ են և բոլորովին հայկական խորանները, բեմը և դասը. ժողովրդոց կամ կանանց կողմը զատ շինուած է ցած երդիքով,

այլ կցուած է եկեղեցւոյն հետ, այս մասին մէջ կանգնող ժողովուրդը, երբ դրանց կամարաց մէջէն կարող է տեսնել սրբազան պաշտամունքը։ Սենի եկեղեցիս իւր անանուն նաւհատակը, որ պաշտպան է ընդդէմ ջերմախտի։

Առ հասարակ Թէոդոսիոյ եկեղեցիք անզարդ են, և չեն համապատասխանել մի ձեռագրի մէջ գըտնուած տողերուն.

«Քէֆէ քաղաք ծովահայեաց,
Եկեղեցիքը զարդարած»։

Անշուշտ այս տողերը գրողը՝ վերջին, այն է 1779 ին, Հայոց ի Ղրիմէ ելնելէն առաջ տեսել և գրել է Կաֆայի եկեղեցիներու զարդերու մասին, և հաւանական է ենթադրելը հետերնին տարել են բոլոր եկեղեցեաց զարդարանքը. և վերջին հարիւր տարուան միջոցին կարող չեն եղած եկեղեցիք իրենց նախկին յարդն ու զարդը ունենալ ժողովրդոց սակաւութեան պատճառաւ։

## Ս. ԿԱՐԱՊԵՏ

Սրբոյն Սարգսի և սրբոց Հրեշտակապետաց եկեղեցեաց վրայ համառօտ ակնարկս ընելէն վերջ, պատշաճ կը համարիմ լռելով չանցնիլ մի փոքրադիր, այլ յոյժ գեղեցիկ և վայելչադիր, երբեմն հայ եկեղեցւոյ մասին, ուր այժմ Ռուսք կը պատարագեն, այն է արգելանոյի Ս. Կարապետի կամ Ս. Օվանիսի մասին։

Արգելանոցը՝ որ քաղքին արեւելեան ծայրը կ՚իյնայ, չորս կողմանէ պարսպած, ժամանակաւ Հայոց

Թաղ եղած է, ուր խիտ բնակած են յԱքսէրայէ
աստ գաղթող ժողովուրդը. այն պատճառաւ մերթ
կը պատահի որ առաջին անգամ այս տեղւոյն յայց
ելնող Հայը կանգ կ'առնու այս կամ այն սանդուղին,
քարին, պատին և կիսաւեր մի շէնքի քով. աչքերուն
զարնուելով քարաքանդակ հայ տառեր. այլ երբ
կամարակապ դռներէն ներս մտնելով կարգաւ կը
տեսնէ երեք հայ եկեղեցիք, սիրտը կը տրոփէ։ Այլ
ես խորհուրդ կու տամ մասնաւոր ուշադրութեամբ
զննել երեք եկեղեցեաց միջինը. որ ցարդ վայելուչ
ձևով կանգուն կեցած է իւր գեղեցիկ կաթուղիկէիւ.
դա է Ս. Կարապետն, որոյ համար հին յիշատա-
կարան մի գրուցէ.

«Ս. Օվանէս տեղըն ձոր է,
Կաթուղիկէն յոյժ յարմար է»։

Այս տողերուս մէջ յոյժ յարմար բառերը ճիշդ
և տեղովը գործածուած են. յիրաւի այդ ձորակին
մէջ, այդ համեստ և փոքրիկ եկեղեցւոյն վերայ,
երկայնաձև և բոլորշի կաթուղիկէն փոքրիկ խաչիւ
պսակեալ՝ յոյժ յարմար է։ Համեստ բառը արտաքին
ձևոյն իբրև տիպար կարելի է գործածել. այլ եկե-
ղեցւոյն ներքին կողմն, մանաւանդ երեք կամա-
րակապ դռներէն դէպ ի դասը և բեմը, պէտք է
գրուցել որ շքեղ է և հոյակապ, բարձր և վայելուչ,
քանդակագործ և նաշխուն. ըստ իս, այս եկեղե-
ցին իւր փոքրկութեամբ հանդերձ, մի շքնաղ գո-
հար է հայկական ճարտարապետութեան ի Կաֆա։
Առաջին դռնէն ներս մտնելով, պէտք է երկու
աստիճանով վայր իջնել. երկայնաձև սենեակ մի է
այդ, կամարաձև յօրինուած, և ժողովրդեան տեղն

է. ճակատը երեք դռներ ունի դէպ ի խորան, որոնք վերուստ ի վայր ծածկուած են գեղեցիկ քանդակներով, մանր նաշխերով. դրանց շեմերը, բարաւորները բանուած են, կամարներն ալ շատ վայելուչ ձև ունին. Այս կամարներէն դէպ ի խորան մտնողը՝ ակամայ կը հարկադրուի գլուխը վեր վերցընել, մինչև ցտանջել պարանոցի, — ըստ բացատրութեան Թովմայի Արծրունւոյ. — վասն զի բարձրաբերձ պատերը կամարակապ նեղնալով դէպ ի վեր, փոքրիկ կաթուղիկէն իրենց ուսերուն վրայ առած կ'երևնան, որ իւր նեղ պատուհաններէն աղօտ լուսոյ ճառագայթներ կը սփռէ դէպ ի վայր. Խորանին վայելուչ գոգաձևին մէջ՝ կիսով չափ յորին-ցցուած են խորաքանդակ կիսանդրիք երկոտասան առաքելոց, և ի միջին՝ Փրկիչն. Այս խորաքանդակ կիսարձաններուն վերայ յայտնի կ'երևի ճաշակ քանդակագործութեան, որոնք թէպէտ թանձր կրով ծածկուած են, սակայն և այնպէս կրին տակէն ևս կ'երևի չափակցութիւնն և համեմատութիւն, նոյն և վայելչութիւնն. յորոց զուրկ են կողմնակի պատերուն վերայ քանդակեալ Սրբոյն Կարապետի և Լուսաւորչի խորաքանդակք, մարդաչափ արձանք, խոշոր և անարուեստ քերչաց գործ.

Այժմ մեր ազգայինք՝ Ս. Սարգսէ և Հրեշտակապետաց եկեղեցիներէ զատ՝ ունին Ս. Գէորգ և Ս. Աննա, քաղաքին հարաւային սարին վերայ, և որ ուխտատեղի է, զի հոն թաղուած է ժամանակաւ Լոյս-Պարոն նահատակն.

Քիչ ետքը կարգաւ պիտի նշանակեմք Կաֆայի մէջ երբեմն գտնուած ազգային եկեղեցեաց անունները, որչափ ինչ յաջողեցաւ մեզ գտնել՝ մի դար յառաջ գրուած ձեռագրէ մը. Այս յառաջ քան զայս

հետաքննական ցուցակ մէջ բերելու՝ համառօտիւ խօսինք կաթուղիկեայ Հայոց Վերափոխման Սրբոյ Կուսին նուիրուած եկեղեցւոյ մասին, որոյ հարիւրամեայ յոբելեանը կատարուեցաւ ի 1887 ի 15 օգոստոսի։

## ԺԲ

## ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԵԿԵՂԵՑԻ ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿԱՑ

Թէոդոսիոյ մեծ հրապարակին միջավայրը, ուր երբեմն չքեղափայլ կանգնուած էր առ Գենուացւոց Սուրբ Ագնէս եկեղեցի Փրանկաց, և ապա բաղմագմբէթ մզկիթ մահմանաց, այժմ շինուած է վայելչաձև մայր եկեղեցին Ռուսաց. յարևելակողմն կայ միւս ալ փոքրագոյն հրապարակ, և հարաւային ճակատը մի խորհրդաւոր շէնք. որոյ վրայ առաջին անգամ նայողը՝ խառնուրդ մը կը գտնէ քրիստոնէութեան կրօնի և իսլամութեան։ Ցաղթաձև քառակուսի շէնքը, որոյ վերայ լայնատարած կաթուղիկէն՝ իբրև հսկայի մը գլխոյն համեմատ փեղուրիւ մը զարդարուած, քովի բարձրադիտակ մինրայն, այս ամէնը մահմանութեան յայտարար նշանակք են. այլ ինչպէս ի ծայր կաթուղիկէին՝ մեր փրկութեան նշանը, նոյնպէս և մինրային խաչապսակ՝ կ'աւետեն որ այդ շէնք տաճար է քրիստոնէից։

1783ին երբ Ռուսք կը տիրեն Թէոդոսիոյ, շատ արքութեան տաճարաց հետ նաև Հայոց կաթոլիկաց բազմաթիւ եկեղեցիք՝ պատերազմական շփոթից միջոց քանդուելով կը կործանին։ Իսկ որովհետև

Հայոց մեծամասնութիւնն 1778 ին Թողլով զՂրիմ. գաղթեր էին յԵկատարինոսլաւ, Մնացեալ սակաւաթիւ Հայք միաբանելով ընդ Փրանկաց կը խնդրեն ի Կատարինեայ Բ կայսրուհւոյ որ իրենց եկեղեցի շնորհուի այդ մզկիթը, որ ի ժամանակին միրզֆի ձամիսի անունը կը կրէր։ Կայսրուհին՝ որովհետև Թաթարք և Թուրքք, Թողլով քաղաքը աւերակաց կոյտ մի՝ կը քաշուին կը հեռանան, անտէր և անժողովուրդ մնացած երկու մեծագոյն մզկիթներուն մին կը շընորհէ Ռուսաց. և միւսը՝ վերը յիշուած միրզֆի ձամիսին՝ կաթոլիկաց ընդհանրապէս։ Կաթոլիկք՝ շէնքին արտաքին ձևը նոյն կը պահեն, միայն մահկին տեղ խաչը փոխանակելով. իսկ ներքին կողմը կը յարմարցընեն քրիստոնէական պաշտամանց պատշաճական արդուզարդին համեմատ, ի միջավայրին՝ ուր էր միհրապը. սուրբ սեղան մը կանգնելով ու Աստուածամօր պատկերը զետեղելով։ Այս կարևոր փոփոխութենէն հինգ տարի վերջը, 1787 օգոստոսի 23 ին, մեծահանդէս շքով կ'օծէ զայն յեկեղեցի կաթոլիկաց՝ Ռուսաստանի համօրէն կաթոլիկաց մետրապոլիտն Ստանիսլաւ Գեր. Սեստրենցեւիչ Բոգուշ։

Գեղեցիկ է աւագ խորանին ճարտարապետութիւնն. ինչպէս ընդհանրապէս սուրբ տաճարին շէնքը, նմանութիւն մը բերելով եւրոպական եկեղեցեաց, թէպէտև արուեստական անփառունակ պարզութեամբն շատ հեռի կը մնայ անոնցմէ։ Ընտիր և ճաշակաւոր են նաև երկու կողմնական խորաններն՝ զոգաձևերու մէջ ագուցած յորմին, գեղեցիկ և թանկագին պատկերներով. մին նուիրեալ յանուն սրբոյն Անտոնի Պատուացւոյ, և միւս սրբոյն Յովհաննու Նեպոմուկացին, երկուքն ալ նկարուած

# ԺԱ

## ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻՔ ՀԱՅՈՑ. — ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍ.

Սրբոյն Սարգսի նուիրուած եկեղեցին, Կաֆայի ազգայնոց հին և նոր եկեղեցեաց մէջ հնագոյնն է, քաղաքին կեդրոն տեղին շինուած, և շատ ձեռագրաց մէջ, ինչպէս հիմայ ալ յիշատակեցինք, նշանակուած է իբր աթոռական կամ մայր եկեղեցի. ունի ընդարձակ բակ չորս կողմը, որոյ մի անկիւնը քաշուած է եկեղեցին, յոյժ համեստ ձեւով. և որովհետև քաղաքին հրապարակին արևմըտեան հարաւային կողմը կ'իյնայ, այն պատճառաւ կարծես խռոված, և կանուխ դարձուցած է դէպ ի քաղաք: Այդ բակին մէջ, ուր այժմ կայ տղայոց և աղջկանց համար ազգային ծխական ուսումնարան, հին ատեն, ըստ ազգիս սովորութեան, վանք և բնակութիւն եղած է արեղայից և վարդապետաց, ուր շատ արեղայք բազում ձեռագրեր օրինակել են՝ ընդ հովանեաւ Ս. Սարգիս տաճարին:

Եկեղեցւոյն դիրքը և տեղը, հանդերձ ընդարձակ բակով, քաղաքին մէջ տեղ շինուած, յայտնի ապացոյց են որ այս եկեղեցիս Գենուացւոց ի Թէոդոսիա գալէն առաջ շինուած է. վասն զի ԺԴ դարու հայ բազմաթիւ գաղթականութեան՝ Գենուացիք նշանակած են առանձին թաղ Հայոց, այժմեան արգելանոցին տեղը և անտի դէպ ի հարաւակողմեան սարերը, ուր և Հայք նոր պատ քաշելով իրենց բնակութեան չորս կողմը, ապահովել են զիրենք ընդդէմ թշնամեաց յարձակման.

բաց ի Ս. Սարգսէ միւս այլ եկեղեցիք, բոլորը կամ այդ պարսպածին մէջն եղել են, և կամ պարսպէն եւս դուրս, այլ ոչ քաղաքին կեդրոն տեղը։

Այս եկեղեցին հաւանական է որ յընթացս ութ հարիւր տարիներու՝ շատ անգամ նորոգուելով, այլայլութիւններ կրած է, այլ գլխաւոր մասն եկեղեցւոյն՝ բեմն և գաւ, նոյն հին ձևով մնացել են, ոչ միայն ներքին կողմէն, այլ նոյնպէս և արտաքին տեսքով. քանզի դրսէն եկեղեցւոյս պատին վրայ ագուցած քանի մի խաչքարինք՝ բոլորովին մաշուած են օդէն և անձրևներէն, և որոց վրայի տառերը սրբուած, որ մեծ հնութեան նշան է։ Հայոցմէ վերջ Գենուացիք, ոտից կառւան գտնելով, կամ լաւ եւս՝ տիրանալով Կաֆայի, Ս. Սարգսի անմիջապէս մօտ, քաղաքին մեծ հրապարակին միջավայրը կը շինեն իրենց փառահեղ մայր եկեղեցին, ի պատիւ Ս. Ագնէս կուսին, որ ըստ վկայելոյ պատմագրաց, իր գեղեցկութեամբ նշանաւոր եղած է ընդ համօրէն Եւրոպա. հաւանական է որ՝ նախ քան զԳենուացիս, Յոյնք նոյն հրապարակին վրայ ունեցել են իրենց եկեղեցին, յետ Գենուացւոց՝ Թուրք գմբեթազարդ և փառաւոր մզկիթ կանգնել են Ս. Ագնէս եկեղեցւոյն հիման վրայ, նոյն տաճարին աւերակներով. իսկ մեր օրեր՝ Ռուսք՝ ճիշդ այդ մզկիթին տեղ, հին եկեղեցւոյն հիման վերայ շինեցին իրենց մայր եկեղեցին։

Ինչպէս տեսանք՝ ի հոլովել դարուց և ի փոփոխիլ տիրապետող ազգաց, եկեղեցւոյն տեղը բռնած է մզկիթ, և ապա դարձեալ տեղի տուած է եկեղեցւոյ, քաղաքիս կեդրոնին վերայ. մինչդեռ

Նոյն միջոց ժամանակին՝ Հայոց բազմադարեան Ս. Սարգիս եկեղեցին կը մնայ իւր սեպհականութիւն, և մինչև ցայսօր կանգուն գրեթէ նոյն ձևով՝ ինչպէս ասկէ ութ հարիւր տարի յառաջ: Եկել են ի Կաֆա Կազարք և Սարմատացիք, Խփչաղ և Գոման Թաթարք, և այլն, քարուքանդ արել են քաղաքը իւր մեծամեծ շէնքերով, այլ կարծես թէ քանդողաց աչքէն վրիպել է սուրբ տաճարս իր անփառունակ ձևովը. օտարաց աչքին աննշան, այլ ազգիս՝ մանաւանդ Կաֆայեցի Հայկազանց համար յոյժ սիրելի և նշանաւոր. և պէտք է որ միշտ այնպէս լինի՝ իր դարերէ ի վեր ունեցած հնութեամբ և արժանաւոր պատուական անուամբ անդըստին ի հնոց: Անշուշտ շինողք տաճարիս, խոհական խորհրդով նախագուշակելով ապագայ աւերմունք և արկածք, զգուշացել են, ինչպէս յառաջ ալ կանխեցինք ըսել, խորանաց կամարները բարձրացընելու, ինչպէս այլ եկեղեցեաց. չունի եկեղեցիս երկնաբերձ կաթողիկէ՝ վեղարի ձևով, ինչպէս ունին յետաշէն եկեղեցիք: Առաջին գաղթական Հայք ի Թէոդոսիա, քաղաքիս մէջ տեղը, շրջապատեալ ընդարձակ բակով, քարաշէն պարըսպաց մէջ շինել են ի ցածագոյն տեղւոջ, խոնարհ սրբավայրը, որպէս զի կարող լինին, առանձնացեալ յօտարաց, առանց աչքի զարնուելու, ժողովիլ սուրբ տաճարիս մէջ, կորուսեալ հայրենեաց սէրը նորոգելու, նախնի հարց և վարդապետաց լեզուով և հնագոյն արարողութեամբ իրենց յարգութիւնն ու գովաբանութիւնը, արտի և հոգւոյ պիտոյքը, վիշտերը և ցաւերը հեղլու և տարածանելու առաջի երկնաւոր Թագաւորին. որ ամէն տեղէ, ամէն լեզուով, իրեն դիմողաց ձայնը կը լսէ, կարեաց դար-

ման կը տանի և պիտոյքը կը հոգայ աստուածախնամ սիրով սփոփելով, քաջալերելով և արտասուքը քաղցրացնելով։

Յանցեալ դարու (1787 ին) ի Նոր Նախիջևան գրուած ձեռագիր մի. Գիրք ժողովածու[1] վերնագրով, ի միջի այլոց կը գրուցէ Ս. Սարգիս եկեղեցւոյ համար.

« Սուրբ Սարգիս յոյժ մեծ ժամ է.
Նախնեաց մերոց հաստատեալ է,
Եկեղեցեաց աթոռակալ է »։

Յոյժ մեծ ժամ բացատրութիւնը չափազանցութեամբ տրուած կ'երևնայ այս եկեղեցւոյ. զի այժմ, այն է ի վերջին նորոգմանն որ յամի 1888, թէպէտև փոքրկացուցած է, այլ նորոգմանէն յառաջ ալ կարելի չէր այդ մակդիրով կոչել. այլ այս բացատրութենէ կարող եմք գուշակել թէ այլոց մեծութիւնն որչափ պիտի լինի. սակայն և այնպէս՝ ոչ իր ձևոյն կամ գեղեցկութեան, այլ վաղեմի հնութեանն համար, եկեղեցեաց աթոռակալ, կամ այժմեան բացատրութեամբ մայր եկեղեցի ճանչցուած է մինչև ցառաջին Արևելեան պատերազմն Սևաստոպոլի. այդ միջոց ժամանակին անտէր մնալով, և եկեղեցւոյն երկրորդ մասին առիքն վնասուելով, տակաւ խարխուլ վիճակի մէջ ինկած,

1. Եթէ չեմ սխալիր, ձեռագրիս այս մասը որ Կաֆայի եկեղեցեաց վրայ կը խօսի ընդօրինակուած է 1756 թուականին, նոյն քաղաքի մէջ գրուած Պոփմանեան Անէ ժողովէ ի ձեռն Աբրահամու ռաբունապետի ձեռագրէն, և պահուած է ի Մատենադարանին Էջմիածնի։

եթէ այդ մասին (1888) գերապատիւ Խորէն Ծ. Վարդապետ Ստեփանէ հոգ չի տանէր, կամաց կամաց այդ հնաւանդ եկեղեցին եւս Թէոդոսիոյ քառասուն կործանուած ազգային եկեղեցեաց կարգը պիտի անցնէր. այլ ժրաջան փոյթ վարդապետին և ազգայնոց, որպէս և օտարաց, առատ նուիրատուութիւնք, վերահաս կործանմանէ մը և ի սպառսպառ անչքութենէ ազատեցին այդ եկեղեցին։

Ներսի կողմէն երեք մասն կը բաժանուին ազգային եկեղեցիք Կաֆայի. նախ բեմը իւր դասով, ուստի մի աստիճանով ցածագոյն կ'իջնէ ժողովրդոց կամ հաւատացելոց կանգնելու տեղը։ Այս երկրորդ մասը ընդհանրապէս փոքր է. և այն պատճառաւ ամենայն եկեղեցիք ունին և երրորդ մասն մի, որ ինչպէս եկեղեցեաց ներքին կողմէն երեք դռներով բաժնուած է եկեղեցւոյն բեմէն և դասէն, նոյնպէս և արտաքին կողմէն բոլորովին զատ է նոյն չէնքէն, երդիքը աւելի ցածագոյն և ժողովուրդք երկրորդ բաժանման դռներէն միայն կարող են տեսնալ պատարագ և այլ արարողութիւնք։ Այս երրորդ մասին կանանց կողմ անունը կը տրուի. այլ արդեօք հին ժամանակն ևս այնպէ՞ս էր, կը տարակուսիմ. ինձ այնպէս կ'երեւի որ կաֆայեցի նախնի Հայկազունք, հնաւանդ քրիստոնէական սովորութեան համեմատ, բուն սրբավայրը, հասարակաց ժողովրդեան կենալու տեղէն բաժնել են դռներով. այդ զգուշութիւնը ունեցել են՝ որ չլինի օտար անհաւատք կամ Թերահաւատք անպատուութիւն մի հասցընեն սուրբ խորհրդոց. անշուշտ երբոր սարկաւագը մեղմիկ եղանակաւ ազդ կ'անէր դպրաց. «Զդրունս ամենայն իմաստութեամբ և զգուշութեամբ» փակեցէք, դպիրք դռներն ևս վրայ կը

բերէին սրբագործութեան միջոց ի սուրբ պատարագին, որով օտարաց հետ ի միասին և բազմութիւնք ազգայնոց եկեղեցւոյն երրորդ մասին մէջ կը սպասէին, մինչև երկրորդ անգամ դռները բացուելուն։

Ի Թէոդոսիա՝ Ս. Հրեշտակապետաց և Ս. Կարապետ. ի Հին Ղրիմ՝ Ս. Խաչ վանքի եկեղեցին բոլորն ալ վերոգրեալ բաժանմունքով շինուած են. միայն այժմ Ս. Սարգիս եկեղեցւոյն այդ բաժանմունքը քանդուած է, և փոխանակ հին դռներուն՝ մեծ կամար մի կը բաժանէ եկեղեցին երրորդ մասէն։ Այդ նորաձևութիւնը դարուս սկիզբները եղած է Ս. Սարգսի մէջ, որ թէպէտ ամէն կողմանէ վայելուչ և ազատ տեղ ունի խորանը, սակայն եկեղեցին իւր վաղեմի ձևը կորուսել է ներքին կողմէն, այս մասամբ։ Նոյն միջոցին մտածած են ազգայինք Ս. Հրեշտակապետաց ևս դռներուն բաժանմունքը մի մեծ կամարի վերածել. այլ բարեբաղդաբար, ճարտարապետը խորհուրդ չէ տուել, որպէս զի կաթուղիկէն՝ և զայն վեր բռնող կամարները չի խախտին։

Վայելչաձև են յոյժ Ս. Սարգսի երեք խորանաց ևս կամարները։ Դիտելու արժանի է և այս, որ ազգային հին եկեղեցեաց ընծայարանները, երկու կողմէն խորանին դուրսն են, և ոչ խաչկալին ետևէն. ինձ այսպէս կ'երևի որ խաչկալին ետևը ընծայարան շինելը՝ Յունաց հետևողութեամբ մտած է նորաշէն ազգային եկեղեցեաց մէջ։ Խորանին աջակողմեան ընծայարանին անմիջապէս մօտ կը գտնուի որմին մէջ շինուած մկրտութեան աւազանը, ինչպէս որ կը պատուիրէ Ս. Սահակ Հայրապետ իր կանոնաց մէջ։ Փոքր վարագուրի սովորութիւնն

ամէն հին եկեղեցեաց վերայ կ'երևի, այժմ միայն դադրած է ոմանց եկեղեցեաց մէջ, Ռուսաստանի մի քանի քաղաքներուն, որ կամայականութիւն է, և ոչ ըստ ազգային արարողութեան։

## Ս. ՀՐԵՇՏԱԿԱՊԵՏՔ

Այժմ Ս. Հրեշտակապետք համարուած է գլխաւոր կամ մայր եկեղեցի. որ թէպէտ Ս. Սարգսի նման քաղաքիս կեդրոնական տեղին շինուած չէ, այլ որովհետև աւելի ընդարձակ է և կաթուղիկէիւ և բարձրաբերձ կամարներով յօրինուած, և վերջին քանի մի տասնեակ տարիներու մէջ կիսաւեր վիճակ ունէր Ս. Սարգիս, բնականաբար Ս. Հրեշտակապետաց անցած է մայր եկեղեցի լինելու պատիւը, որ հնութեամբ շատ հին շէնք մը չէ, ինչպէս կը վկայէ քարաքանդակ արձանագրութիւնն։

Շինուած է եկեղեցիս հալալ արդեամբք Աստուածատրոյ ուրումն և Նորա ընտանեաց ի ՊԾԷ (1408), Կաֆայի արևմտեան կողմը բարձր դիրքի վերայ դրսի կողմէն բոլորովին անպաճոյճ. ունի հայկական կաթուղիկէ ոսկեզօծ խաչիւ պսակուած, այլ խաչին ձևը ազգային չէ. և համեմատութեամբ կաթուղիկէն խոշոր է, կը յիշեցընէ տիրող ազգային ճաշակը, մինչ մի փոքրաձև խաչ թերևս աւելի համեմատ և վայելուչ կը լինէր ի ծայր կաթուղիկէին Հրեշտակապետաց։ Եկեղեցւոյն Ներսի կողմը վայելուչ է և գեղեցիկ, բարձրաբերձ և համեմատաչափ կամարներով, որոց վերայ կը հանգչի կաթուղիկէն։ Վայելչագեղ են և բոլորովին հայկական խորանները, բեմը և դասը. ժողովրդոց կամ կանանց կողմը զատ շինուած է ցած երդիքով.

այլ կցուած է եկեղեցւոյն հետ. այս մասին մէջ կանգնող ժողովուրդը, երբ դրանց կամարաց մէջէն կարող է տեսնալ սրբազան պաշտամունքը։ Ունի եկեղեցիս իւր անանուն նահատակը, որ պաշտպան է ընդդէմ ջերմախտի։

Առ հասարակ Թէոդոսիոյ եկեղեցիք անզարդ են, և չեն համապատասխանել մի ձեռագրի մէջ գըտնուած տողերուն.

« Քէֆէ քաղաք ծովահայեաց,
Եկեղեցիքը զարդարած »։

Անշուշտ այս տողերը գրողը՝ վերջին, այն է 1779 ին, Հայոց ի Ղրիմէ ելնելէն առաջ տեսել և գրել է Կաֆայի եկեղեցիներու զարդերու մասին, և հաւանական է ենթադրելը հետերնին տարել են բոլոր եկեղեցեաց զարդարանքը. և վերջին հարիւր տարուան միջոցին կարող չեն եղած եկեղեցիք իրենց նախկին յարդն ու զարդը ունենալ ժողովըրդոց սակաւութեան պատճառաւ։

## Ս. ԿԱՐԱՊԵՏ

Սրբոյն Սարգսի և սրբոց Հրեշտակապետաց եկեղեցեաց վրայ համառօտ ակնարկս ընելէն վերջ, պատշաճ կը համարիմ լռելով չանցնիլ մի փոքրադիր, այլ յոյժ գեղեցիկ և վայելչադիր, երբեմն հայ եկեղեցւոյ մասին, ուր այժմ Ռուսք կը պատարագեն, այն է արգելանոյի Ս. Կարապետի կամ Ս. Օվանիսի մասին։

Արգելանոցը՝ որ քաղքին արեւելեան ծայրը կ'իյնայ, չորս կողմանէ պարսպած, ժամանակաւ Հայոց

Թող եղած է, ուր խիտ բնակած են յԱքսէրայէ տոտ գաղթող ժողովուրդը. այն պատճառաւ մերթ կը պատահի որ առաջին անգամ այս տեղւոյն յայց ելնող Հայը կանգ կ՚առնու այս կամ այն սանդուղին, քարին, պատին և կիսաւեր մի չէնքի քով. աչքերուն զարնուելով քարաքանդակ հայ տառեր. այլ երբ կամարակապ դռներէն ներս մտնելով կարգաւ կը տեսնէ երեք հայ եկեղեցիք, սիրտը կը տրոփէ։ Այլ ես խորհուրդ կու տամ մասնաւոր ուշադրութեամբ զննել երեք եկեղեցեաց միջինը. որ ցարդ վայելուչ ձևով կանգուն կեցած է իւր գեղեցիկ կաթուղիկէիւ. դա է Ս. Կարապետն, որոյ համար հին յիշատակարան մի գրուցէ.

« Ս. Օվանէս տեղըն ձոր է,
Կաթուղիկէն յոյժ յարմար է »։

Այս տողերուս մէջ յոյժ յարմար բառերը ճիշդ և տեղովը գործածուած են. յիրաւի այդ ձորակին մէջ, այդ համեստ և փոքրիկ եկեղեցւոյն վերայ, երկայնաձև և բոլորշի կաթուղիկէն փոքրիկ խաչիւ պսակեալ՝ յոյժ յարմար է։ Համեստ բառը արտաքին ձևոյն իբրև տիպար կարելի է գործածել. այլ եկեղեցւոյն ներքին կողմն, մանաւանդ երեք կամարակապ դռներէն դէպ ի գաւը և բեմը, պէտք է գրուցել որ շքեղ է և հոյակապ, բարձր և վայելուչ, քանդակագործ և նաշխուն. ըստ իս, այս եկեղեցին իւր փոքրկութեամբ հանդերձ, մի չքնաղ գոհար է հայկական ճարտարապետութեան ի Կաֆա։ Առաջին դռնէն ներս մտնելով, պէտք է երկու աստիճանով վայր իջնել. երկայնաձև սենեակ մի է այդ, կամարաձև յօրինուած, և ժողովրդեան տեղն

է. ճակատը երեք դռներ ունի դէպ ի խորան, որոնք վերուստ ի վայր ծածկուած են գեղեցիկ քանդակներով, մանր նաշխերով. դրանց շեմերը, բարաւորները բանուած են, կամարներն ալ շատ վայելուչ ձև ունին. Այս կամարներէն դէպ ի խորան մտնողը՝ ակամայ կը հարկադրուի գլուխը վեր վերցընել, մինչև ցտանջել պարանոցի, — ըստ բացատրութեան Թովմայի Արծրունւոյ. — վասն զի բարձրաբերձ պատերը կամարակապ նեղնալով դէպ ի վեր, փոքրիկ կաթուղիկէն իրենց ուսերուն վրայ առած կ՚երևնան, որ իւր նեղ պատուհաններէն աղօտ լուսոյ ճառագայթներ կը սփռէ դէպ ի վայր: Խորանին վայելուչ գոգաձևին մէջ՝ կիսով չափ յորմն ցցուած են խորաքանդակ կիսանդրիք երկոտասան առաքելոց, և ի միջին՝ Փրկիչն: Այս խորաքանդակ կիսարձաններուն վերայ յայտնի կ՚երևի ճաշակ քանդակագործութեան, որոնք թէպէտ թանձր կրով ծածկուած են, սակայն և այնպէս կրին տակէն եւս կ՚երևի չափակցութիւնն և համեմատութիւն, նոյն և վայելչութիւնն. յորոց զուրկ են կողմնակի պատերուն վերայ քանդակեալ Սրբոյն Կարապետի և Լուսաւորչի խորաքանդակք, մարդաչափ արձանք, խոշոր և անարուեստ քերչաց գործ:

Այժմ մեր ազգայինք՝ Ս. Սարգսէ և Հրեշտակապետաց եկեղեցիներէ զատ՝ ունին Ս. Գէորգ և Ս. Աննա, քաղաքին հարաւային սարին վերայ, և որ ուխտատեղի է, զի հոն թաղուած է ժամանակաւ Լոյս-Պարոն նահատակն:

Քիչ ետքը կարգաւ պիտի նշանակեմք Կաֆայի մէջ երբեմն գտնուած ազգային եկեղեցեաց անուններն, որչափ ինչ յաջողեցաւ մեզ գտնել՝ մի դար յառաջ գրուած ձեռագրէ մը: Ամ յառաջ քան զայս

հետաքննական ցուցակ մէջ բերելու՝ համառօտիւ խօսինք կաթուղիկեայ Հայոց Վերափոխման Սրբոյ Կուսին նուիրուած եկեղեցւոյ մասին, որոյ հարիւրամեայ յոբելեանը կատարուեցաւ ի 1887 ի 15 օգոստոսի։

## ԺԲ

### ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ԵԿԵՂԵՑԻ ՀԱՅ-ԿԱԹՈԼԻԿԱՑ

Թէոդոսիոյ մեծ հրապարակին միջավայրը, ուր երբեմն չքեղափայլ կանգնուած էր առ Գենուացւոց Սուրբ Ագնէս եկեղեցի Փրանկաց, և ապա բազմագմբէթ մզկիթ մսլիմանաց, այժմ շինուած է վայելչաձև մայր եկեղեցին Ռուսաց. յարևելակողմն կայ միւս ալ փոքրագոյն հրապարակ, և հարաւային ճակատը մի խորհրդաւոր շէնք. որոյ վրայ առաջին անգամ նայողը՝ խառնուրդ մը կը գտնէ քրիստոնէութեան կրօնի և իսլամութեան։ Ցաղթաձեւ քառակուսի շէնքը, որոյ վերայ լայնատարած կաթուղիկէն՝ իբրև հսկայի մը գլխոյն համեմատ փեղուրիւ մը զարդարուած, քովի բարձրադիտակ մնիրայն, այս ամէնը մսլիմանութեան յայտարար նշանակք են. այլ ինչպէս ի ծայր կաթուղիկէին՝ մեր փրկութեան նշանը, նոյնպէս և մնիրայն խաչապսակ՝ կ'աւետեն որ այդ շէնք տաճար է քրիստոնէից։

1783ին երբ Ռուսք կը տիրեն Թէոդոսիոյ, շատ արքութեան տաճարաց հետ նաև Հայոց կաթոլիկաց բազմաթիւ եկեղեցիք՝ պատերազմական շփոթից միջոց քանդուելով կը կործանին։ Եւ որովհետև

Հայոց մեծամասնութիւնն 1778 ին Թողլով զՂրիմ. գաղթեր էին յԵկատարինալաւ, Մնացեալ սակաւաթիւ Հայք միաբանելով ընդ Փրանկաց կը խնդրեն ի Կատարինեայ Բ կայսրուհւոյ որ իրենց եկեղեցի շնորհուի այդ մզկիթը, որ ի ժամանակին միրզֆի ձամիսի անունը կը կրէր: Կայսրուհին՝ որովհետև Թաթարք և Թուրքք, Թողլով քաղաքը աւերակաց կոյտ մի՝ կը քաշուին կը հեռանան, անտէր և անժողովուրդ մնացած երկու մեծագոյն մզկիթներուն մին կը շընորհէ Ռուսաց. և միւսը՝ վերը յիշուած միրզֆրի ձամիսին՝ կաթոլիկաց ընդհանրապէս: Կաթոլիկք՝ շէնքին արտաքին ձևը նոյն կը պահեն, միայն մահկին տեղ խաչը փոխանակելով. իսկ ներքին կողմը կը յարմարցընեն քրիստոնէական պաշտամանց պատշաճական արդուզարդին համեմատ, ի միջավայրին՝ ուր էր միհրապը, սուրբ սեղան մը կանգնելով ու Աստուածամօր պատկերը զետեղելով: Այս կարևոր փոփոխութենէն հինգ տարի վերջը, 1787 օգոստոսի 22 ին, մեծահանդէս շքով կ'օծէ զայն յեկեղեցի կաթոլիկաց՝ Ռուսաստանի համօրէն կաթոլիկաց մետրապոլիտն Ստանիսլաւ Գեր. Սեստրենցեւիչ Բոգուշ:

Գեղեցիկ է աւագ խորանին ճարտարապետութիւնն. ինչպէս ընդհանրապէս սուրբ տաճարին շէնքը, նմանութիւն մը բերելով եւրոպական եկեղեցեաց, թէպէտև արուեստական անփառունակ պարզութեամբն շատ հեռի կը մնայ անոնցմէ: Ընտիր և ճաշակաւոր են նաև երկու կողմնական խորաններն՝ գոգաձեւերու մէջ ագուցած յորմին, գեղեցիկ և թանկագին պատկերներով. մին նուիրեալ յանուն սրբոյն Անտոնի Պատուացւոյ, և միւս սրբոյն Յովհաննու Նեպումուցին, երկուքն ալ նկարուած

ի մայրաքաղաքն Փրանկիոյ, ի մեծանուն և ի ճարտարարուեստ Բէցգըման ուսու նկարչէ. որոյ գործ է և խաչելութեան պատկերն՝ կախուած ընդ մէջ երկու խորանաց, աւագին և սրբոյ Պատուացւոյն խորանաց:

Եկեղեցւոյս առաջին ժողովրդապետն եղած է՝ տէր Օգոստինոս քահանայ Ճէննարի, գենուացի, ազգաւ իտալացի: Ինք եղած է, ինչպէս կը վկայէ ի կեան արձանագրութեանց մատեննին եկեղեցւոյ, հիմնադիր Օտեսայի կաթոլիկաց եկեղեցւոյն. և առաջին ժողովրդապետ ի Թէոդոսիա յամի 1807 ի 24 Նոյեմբերի. և շարունակեր է ի նոյն պաշտաման մինչ ի վերջ 1819 տարւոյն. Սիմֆէրոպոլի քաղաքի ժողովրդապետի անուամբ ալ յիշատակուած և արձանագրուած կը գտնենք զինքը: Նոյն ատենէ մնացած եկեղեցական մատենից մէջ Ճէննարի քահանայէն ետքը՝ երկու կաթոլիկ հայազգի քահանայից անուանք ալ կը յիշուին. և են տէր Գրիգոր Կոսիկեան և տէր Սահակ Ցոմխանեան որ ի յատուկ ստորագրութեանն կ՚անուանէ զինք ժողովրդապետ եկեղեցւոյն Եւպատորիայ (Կէօզլէվ). կայ և Խաչատուր կանոնիկոս վարդապետ մը Տուհայեան՝ ժողովրդապետ եկեղեցւոյն Խարասուբի:

1819 ին առաջին անգամ մուտ գտած է Թէոդոսիոյ եկեղեցւոյն արձանագրութեանց մէջ հայ լեզուն. որ և այսպիսի սկզբնաւորութիւն ունի. «Ես Հ. Պօղոս Տէրվիչեան՝ քահանայ եկեղեցւոյս Կաֆայի ուղղափառաց» և այլն: Ինքն էր յուխտէ Անտոնեան հարց որ ի Լիբանան, և ժողովրդապետական պաշտօնը կատարած է մինչ ի 1826: Հետեւեալ տարիէն կը սկսուին արձանագրութիւնքն

ռուս լեզուաւ, ի ձեռն Հոգաբարձուի եկեղեցւոյս Հ. Աթանաս քահանայի Խոտիկեան մինչև ի 1830. տարի մինչ ի 1832՝ եկեղեցւոյն և ժողովրդեան հոգևոր խնամքն և առաջնորդութիւն կը վարէր քիչ մը յառաջ յիշուած Եւպատորիոյ և Սիմֆէրոպոլի ժողովրդապետ Յովնանեան քահանայն. Իսկ 1832 էն կը սկսին դարձեալ արձանագրութիւնքն ի հայ լեզու Երեմեան տէր Յովհաննէս քահանային ձեռքով։ Մինչև ի 1840 ուրիշ քանի մի եկեղեցականք վարած են առժամանակեայ կերպով դայդ պաշտօն, և վերջապէս նոյն տարւոյն՝ Տաւրիոյ առաջնորդ Բժշկեան Հ. Մինաս վարդապետի առաջարկութեամբ միճակաւոր եպիսկոպոսէն ժողովրդապետ դրուած է Հ. Յովսէփ Գարամուրզա վարդապետ։ Ամբողջ երեսուն տարուան միջոց՝ մինչ ի մահն (1840–70), եռանդուն բարեպաշտութեամբ և ամենուն հաճութեամբն և արժանաւոր մեծարանօք վարեց դայդ պաշտօն՝ բազմավաստակ և բազմահմուտ վարդապետս, որ մայրենի հայ լեզուին հաւասար յաջողութեամբ կը խօսէր նաև իտալական, գաղղիական, ռուս, լեհ և Թուրք լեզուները. և Թէոդոսիոյ եկեղեցւոյս և ժողովրդեան բարոյական զարգացմանն էն նպաստաւոր երեւցած նաև նիւթական բարւոքման.

1887 տարւոյն օգոստոսի 18ին մեծաշուք հանդիսութեամբ կատարուեցաւ եկեղեցւոյս հարիւրամեակը՝ իր առաջին միճակն փոխելէն ու կրկին քրիստոնէական սուրբ կրօնի պաշտամանց նուիրուելէն ետքը։

Յետ առաւօտեան ժամերգութեանց՝ յառաջ քան զմէջօրէ ժամը տասնին, եկեղեցւոյն երեք զանգակներն իրենց քաղցրանուագ հնչմամբ չէն չէն կը

հրաւիրէին զհաւատացեալս՝ Հարիւրամեկի կրկին յոբելինի հանդիսին մասնակից լինելու։ Ժամը տասնուկիսուն սկսաւ սուրբ պատարագն. Հնչեց երգեհոն Նուիրական մեղեդեաց, և կը ձայնակցէին դպիրք իրենց անոյշ երգերովն։ Առաջին աւետարանէն անմիջապէս ետքը՝ Ժամարար քահանայն դարձաւ առ խռնեալ բազմութիւն հաւատացեալ ժողովրդեան, և շնորհաւորելով Հարիւրամեակը, համառօտիւ յիշեցուց նոյն Նուիրական չէնքին պատմութիւնն ու կրած յեղափոխութիւններն. դրուատեց արժանապէս Նախորդ ժողովրդապետին, Մխիթարեան Գարամուրզա Հ. Յովսէփ վարդապետին գործունէութիւնն ու աշխատանք ի վայելչութիւն սուրբ տաճարիս. և դառնալով դէպ ի սեղանն որ բազմաթիւ ջահերով և ծաղկըներով զարդարուած էր «Ասոնք ամէնքն, ըսաւ, մեր հանգուցեալ ժողովրդապետին աստուածանուէր եռանդեանն և փութոյն արդիւնք են»։

## ԺԳ

### ԿԱՖԱՑԻ ՔԱՌԱՍՈՒՆ ԵՒ ՀԻՆԳ ԵԿԵՂԵՑԻՔ

Հայոց վերջին և մեծ գաղթականութեան համառօտ պատմութիւնն, ոչ միայն ազգայնոց՝ Թաթարաց խումբերը ճեղքելով Վոլգայի եզերքէն մինչ ի տաւրիկեան Թերակղզին գալը կը յիշատակեն, այլ Հարևանցի մէջ բերելով նոցա ձեռքով եղած չինութիւնքն, կը հաւաստարմացընեն թէ որպիսի ընդարձակ ասպարէզ մը եղած է երկիրն՝ ընդ հուր և ընդ սուր անցած ժողովրդեան մը, իրենց բնածին

հանճարով ու ճարտարութեամբ հանդիսանալու։ Ափսո՜ս որ կը պակսին մեզ պատմական ամբողջ վաւերականք. որով կը բռնադատուինք ցրիւ աստի անտի հաւաքուած յիշատակարաններով գոհ ըլլալ։ Այսպիսի գրուած մը ձեռուընիս անցաւ, գրեթէ հարիւր տարի յառաջ գրուած ի Նոր Նախիջեւան, յորմէ կը տեղեկանամք թէ մինչեւ անցեալ դարուն վերջերը դեռ կանգուն մնացած էին ի Կաֆա քսանըչորս եկեղեցիք, զորս յանուանէ կը յիշատակէ գրիչն։ Մէջ բերենք այդ իրաւամբ հետաքննական ցուցակը.

«Քէֆէ, կ՚ասեն, մեծ քաղաք է.
Թագաւորաց հաստատած է.
Քսանուչորս եկեղեցի է.
Քարերն ամէն սրբատաշ է։
Քէֆէ քաղաք ծովահայեաց,
Եկեղեցիքըն զարդարած։
— Սուրբ Աննա բարձըր տեղ է,
Աստուածածին անոր քովն է
Վարդապետաց օթարան է.
Համբարձումն անկից վար է.
Սուրբ Թորոս բերդէն դուրս է.
Սուրբ Գէորգ ամենահաս է.
Հրեշտակապետ բերդէն ներս է.
Ամենեցուն բարեխոս է։
Սուրբ Նիկողոս սարի վրայ է.
Սուրբ Ակոբ հայրապետ է.
Սուրբ Խաչն անկից վեր է,
Քրիստոնէից մեծ նշան է։
Սուրբ Սարգիս յոյժ մեծ ժամ է.
Մարտիրոս որդւովըն գինուոր է.

Նախնեաց մերոց հաստատեալ է.
Եկեղեցեաց աթոռակալ է.
Սուրբ Լուսաւորիչ կաթուղիկէ.
Հաւատացելոց մեծ պարիսպ է.
Հայոց ազգի հայրապետ է.
Հերձուածողացըն վանիչ է.
Քէֆէ քաղաք ծովահայեաց
Եկեղեցիքըն զարդըրած:
— Սուրբ Յարութիւն բերդի քով է.
Քարէ խաչերըն խիստ շատ է.
Տասը սեղան շըրջապատէ.
Մէկ քան զմէկըն պայծառ է:
Սուրբ Աստուածածին Նոր ժամ է.
Չորեք կողմը Հայոց տուն է.
Հաւատացելոց մեզ յոյս է.
Դատաստանին բարեխօս է:
Սուրբ Անտոն փոքրիկ ժամ է.
Սուրբ Նիկողոս տեղըն տիւզ է.
Սուրբ Սիմէոն բերդէն դուրս է.
Մէջի Նահատակն երկուս է:
Քէֆէ քաղաք ծովահայեաց,
Եկեղեցիքըն զարդարած.
— Սուրբ Քառասունք աննըման է.
Կաթուղիկէն խանէ խանէ.
Վերնատունըն բարձըրման է.
Երկոտասան աստիճան է:
Սուրբ Կարապետ տեղըն ձոր է.
Քովըն կ'ասեն մեծ ջըրհոր է.
Սուրբ Մերկիանոս տեղըն սար է.
Քաջամարտ զինուոր է:
Սուրբ Օվանէս պատըն ցած է.
Չորեք կողմը պարըսպած է.

Սուրբ Օգսենտ մեծ բժիշկ է։
Սուրբ Օհաննէս տեղըն ձոր է.
Կաթուղիկէն յոյժ յարմար է.
Սուրբ Ստեփաննոս վըկայ Նախ է.
Սա մէկ փոքրիկ մատուռ է։
Սուրբ Մինասն է զօրաւոր,
Նորաշէն գեղեցիկ տաճար է.
Մէջըն կայ չորեսին կամար,
Ուխտաւոր երթայ անհամար։
Քէֆէ քաղաք ծովահայեաց,
Եկեղեցիքըն զարդարած »։

Նոյն ձեռագիր՝ յորմէ այս տեղեկութիւնը քաղեցինք, կը յաւելու թէ Հայք՝ քառասուն և հինգ եկեղեցիք ունեցել են ի Կաֆա. քանոնուինն՝ պարըսպին մէջ, իսկ տասնուվեցն պարսպապատէն դուրս։ Այս բազմաթիւ եկեղեցիք պիտի չկարծենք թէ մեծամեծ շէնքեր լինին. զի ի բաց առեալ մէկ քանին՝ միացեալքն փոքրիկ մատուռներ են, ինչպէս կը վկայեն ցարդ մնացեալ աւերակք։ Ուրիշ տեղ մ՚ալ կ՚ըսէ նոյն ձեռագիր. « Օսմանցիի թագաւորի այսքան մուշխաքատէ խնդրեաց. տարւոյ տարի կու տայինք ամէն եկեղեցւոյ իւր կարողութեամբ. Ս. Սարգիս, տասնըմէկ ոսկի. Սան-փէթրօ մէկ ոսկի... Ս. Ուրբաթ՝ չորս ֆլորի... Ս. Երրորդութիւն՝ չորս ֆլորի. և այլ. կու ուղարկէին Ստամպօլ պատրիարքարանը. Նա ալ թագաւորի դուռը կու տար, կ՚ասէր թէ Ղրըմի եղեալ Հայոց ազգի եկեղեցիին մուխաթտէն է։ Այսպէս էր մեր տղայ եղած ու մինչև ի տարիս եկածը »։

## ԺԴ

### ՊԱՐՈՆ-ԼՈՅՍ ՆՈՐ ՆԱՀԱՏԱԿ

Քեզ երանի՜ Կաֆա քաղաք,
Զի նոր նըշան քեզ երեւի.
Քոյ քահանայքըն ժողովին՝
Տաւնեն ըղտաւն Պարոն-Լուսին։
Սուրբ Պարոն-Լոյս քեզ երանի՜,
Եւ քո զարմիցն որ ի մարմնի.
Դու Քրիստոսի վըկայ եղեր,
Պարծանք Հայոց տանս Արմենի։
Այս մըթացեալ ժամանակի
Դու լոյս եղեր մէջ աշխարհի,
Եւ սառնացեալ ձմերայնի
Վարդ և շուշան մէջ պարտիզի։

Ո՞վ էր այն երջանիկ նահատակը, որոյ տարաժամ և նախանձելի անմահառիթ մահը այս սրտաշարժ տողերով կը գրուատէր մեզմէ երեք դար և աւելի յառաջագոյն Վրթանէս անունով վարդապետն «յետինս ի Քարողողաց[1]» ինչպէս ինքզինքը կ'անուանէ, որ տեսող և սքանչացող էր հանդիսի նահատակութեանն, զմարմինն «անմաքուր բազկաւ իմով գրկեցի և եդի ի տապանի»։

1. Անշուշտ ի կարգէ հայ Դոմինիկեան միանձանց, որ բազմաթիւ էին ի ժամանակին ի Թերակղզւոջ Տաւրիոյ։

Կաֆայի հայ գաղթականութեան ծնունդ, պարծանք ու պաշտպան նոր վկայ մ'է Պարօն-Լոյս պատանեակն, որ դատաւորաց առջև հասակէն վեր արիութեամբ դաւանելով զճշմարտութիւն քրիստոսական հաւատոյ. կարմրերփեան մաքուր արեամբ դրաւ կեանքն, և սուրբ գերեզմանն հռչակաւոր ուխտատեղի եղաւ. և է ցայսօր, յեկեղեցւոջ սրբոցն Յովակիմայ և Աննայի, հաւատացեալ ժողովրդոց։ Կաֆայի գաղթականութեան և իրենց եռանդուն բարեպաշտութեամբ կանգնած եկեղեցեաց վրայ խօսած ատեններս, հարկ է համառօտ նուէր մ'ալ ընծայել իր անմոռաց և փառաւոր յիշատակին, քաղելով իր սրբական վարուց համառօտութիւնն ի Նոր Նախիջևան պահուած Յայսմաւուրք գրքէ մը, զոր նոյն ականատես վկայն Վրթանէս վարդապետ շարագրած է։

Աստուածատուր անուն բարեպաշտ և ընտիր հօր զաւակն էր Պարօն-Լոյս պատանի նահատակն, սուլտան Սէլիմի թագաւորութեան ժամանակ, և ըստ գեղեցիկ բացատրութեան վկայագրին «ի ձմեռնացեալ ժամանակի վարդ անուշահոտ երևեալ ի մէջ աշխարհի, և վառեցաւ որպէս հուր ի սէրն Քրիստոսի»։

Հայոց ՌԺԶ թուականն էր, և Քրիստոսի սուրբ աստուածայայտնութեան ճրագալուցի օրը։ Եւ ահա յանկարծ մոլեգնեալ խուժան մը դիմեց այս ութուտասնամեայ պատանեկին վրայ, «որ էր մանուկ տիօք, և տեսլեամբն գեղեցիկ, հասակաւ վայելուչ և լեզուաւ ճարտար. աստուածային շնորհօքն զարդարեալ». կ'ամբաստանէին թէ ի քրիստոսական հաւատոց հրաժարած ըլլայ երբեմն ի Կէօզլէվ և այլազգութիւնն ընդունած. և կը բռնադատէին կը

ստիպէին որ թողու զՔրիստոս, կրկին դառնալով իրենց հաւատոց ուղղութեան: Այսպիսի սուտ և անիրաւ ամբաստանութեան չիկրցաւ հանդուրժել երջանիկ պատանեակն. Նայեցաւ չորս կողմը խըռնեալ պաշարեալ անխորհուրդ բազմութեան. և արտասուալից աչուըններն վերցընելով յերկինս՝ դիմեց վստահութեամբ առ Քրիստոս, յորմէ երբէք զատուած բաժնուած չէր հոգւովն ու սրտով. ապաւինեցաւ յաղօթս լուսաւորութեան մեծ Հօրն, որ համբերատար չարչարանօքն և աստուածուսոյց վարդապետութեամբ՝ անցաւոր ու առօրեայ կենաց փըշալից ու բազմավտանգ ճանապարհին մէջ՝ ցուցեր էր զշաւիղս փրկութեան, և վկայական մահուամբ իրենց արիւնը գնող սրբոց բազմութենէն սորված արիութեամբ՝ համարձակաձայն դաւանեց իր հաւատքը:

Վրայ հասան՝ բռնեցին կապկըպեցին զինքը, ու դատաւորին ներկայացընելով, սուտ վկայիւք ալ կը ջանային իրենց ամբաստանութիւնը հաստատելու: Այն բազմավրդով աղաղակին, վրէժխնդիր ու անմեղ արեան ծարաւի նախանձայուզութեան գոռում գոչումին՝ երջանիկ պատանեակն միայն անխռով և անյողդողդ, նախավկային նման պայծառափայլ, հրեշտակատեսիլ և լի հոգւով սրբով, ցըցուց իրեն դէմ եղած ամբաստանութեանց ստութիւնն և հաւատոցը անյեղլի հաստատութիւնն:

Այդպիսի անկեղծ խոստովանութեան առջև տկարացան անզօր մնացին սպառնալիք և աղերս, սաստ և խոստմունք, անգութ տանջանք և առատատուր պարգևաց յուսադրութիւնք: «Եթէ սրով սպանանէք զիս, կ'ըսէր, եթէ կրակով այրէք, խոստմանց ընդարձակ ծովուն մէջ զիս ուզենաք

խեղդել, եւ զՔրիստոս Աստուած ոչ ուրանամ։ Դատաւորը ճանչցաւ պատանեկին անմեղութիւնը. խանդաղատեցաւ անոր հասակին, և քրիստոնէից երաշխաւորութեամբ համոզուեցաւ ազատ թողուլ զինքն՝ դառնալ ի տուն ծնողացն։

Բայց այդպիսի արդարադատ վճռով մը չէին կրնար գոհ մնալ երանելւոյն թշնամիքը. մանաւանդ թէ ա՛լ աւելի զայրացած՝ դատելոյն հետ իրենց ամբաստանութիւնը դարձուցին նաև դատողին դէմ. և տեղւոյն տանիշմանին կամ դենպետին դիմելով՝ արդարութիւն և իրաւունք պահանջեցին՝ և այս կարծըւած արդարութեան նպատակն ու վախճան՝ անպարտ պատանեկին անմեղ արիւնն էր։ Համաձայնեցաւ դենպետը, հրաման ղրկեց դատաւորին որ կրկին բռնել տայ զամբաստանեալն, և ստիպէ ի հաւատափոխութիւն. և եթէ անլուր գտնուի՝ մահուան պատուհասիւ վերցընէ զնա։ Բռնադատեցաւ դատաւորն՝ իր համոզմանն վրայէն անցնելով, կատարել տրուած հրամանը. ղրկեց ի տուն, բռնի ի դատաստան զնա կանչելով։ Գորովալիր ծնողքն՝ ահաբեկ և զարհուրած, ջանացին թաքուցանել զպատանին ի տան. և երբ խնդրակք՝ ծնողաց ալ դէմ մահասաստ սպառնալեօք վեր վայր կը փնտռէին զինքն, երանելի մանուկն ցատկեց դուրս պահուած տեղէն. յօժարակամ և յօժարափոյթ մատոյց ձեռքը կապանաց. ու մինչ ծնողք և ազգականք արտասուալից կը հառաչէին ու անմխիթար կը սգային այն ազնիւ գանձուն ու կենաց անհրաժեշտ ու անմխիթար կորուստը, ինք միայն ուրախ ու զուարթադէմ կը զատուէր անոնց գրկէն, կրկին կը ներկայանար դատաւորին։ Ցետին փորձ մը ըրաւ նա. աղերսանաց ու սիրագորով թելադրութեանց հետ՝ դրաւ պատանեկին առջեւ տխուր մահուան ար-

հաւիրքը․ կը յորդորէր խնայել գթալ այն կեանքին որ իրաւամբ այնչափ սիրելի էր և պատուական ամենուն։ Բայց Ցիսուսի քաղցր ու զմայլական հրաւիրանաց դիւրալուր և դիւրանսաց սիրտը՝ անխռով, անսասան, անտեղիտալի մնաց առ ամենայն երկրաւոր ձայն և հրապուրանք։

Մահը՝ անդարձ հետևանք մը պիտի ըլլար այդպիսի աստուածախրախոյս արիութեան։

Այդ էր իր անգութ և անգորով Թշնամեաց սրտին փափաքը․ երանելի պատանեակն և իր կեանքն՝ ալ իրենց ձեռքն էր, մէկէն, ինչպէս կ՚աւանդէ վկայագիրն, «առեալ ի մէջ իւրեանց՝ նեղէին զնա և կոփահարէին և գգլուխն ծեծէին․ Թքանէին յերեսն և ապտակէին, և նա էր ի մէջ նոցա՝ որպէս գառն ի մէջ գայլոց»։

Երբ դենպետին առջև տարին զնա, դատաւորէն աւելի ողոքանօք խօսեցաւ, խրատեց յորդորեց, պարգևներ ու մեծութիւն խոստացաւ․ և տեսնելով Թէ անոնցմէ ամենէն աւելի զօրաւոր կ՚ազդէր ի նա սէրն քրիստոսանուէր, փոխեց լեզուն․ տանջանաց ու մահուան խիստ և անողոք սպառնալիքն ու վտանգը յիշեցուց․ և պատանին չվախցաւ, չի քաշ կամ չտարակուսեցաւ․ այլ «ղուարթ և պայծառ դիմօք, անահ և աներկիւղ արար պատասխանի իւրաքանչիւր հարցուածոց նորա»։

Մոնչեց բարկութեամբ դենպետն․ ապտակի ուժգին հարուածով մը կարծեց ահաբեկել զպատանին․ ուր նա՝ Հոգւով սրբով զօրացած՝ ճշմարիտ աշակերտ Քրիստոսի, միւս ծնօտն ալ դարձուց։ Հասկըցաւ դենպետն Թէ զուր ջանք էր կարծելն յաղթել անոր մտաց հաստատութեան․ ուզեց ղրկել առ սանձախ Պարոն-Լուսին․ Թերևս նա աւելի բարեբաստ գտնուի փափաքելի

յաղթանակը ձեռք բերելու. բայց հոն ալ՝ նոյն անվկանդ ամրութիւն ի պատանեակն, հաւասար կորանք պարտութեան։

Բանտին մէջ ուր ձգեցին զինքը, և մնաց յունուարի քսանըհինգէն մինչև ի հնգետասան մայիսի, քահանայք և բազմութիւն ժողովրդեան, և որ աւելի սրտաշարժ է, նաև հասակակից քրիստոնեայ մանկունք կը յաճախէին առ նա, կը խրախուսէին, կը քաջալերէին և սուրբ կապանքն համբուրելով երանի կու տային նմա։ Հոն ի բանտին զօրացաւ նաև երկնահրաշ այցելութեամբ սրբոյ Լուսաւորչին, և հրեշտակաց Աստուծոյ, որ ըստ վկայագրին, «ըստ նմանութեան մանկանց տղայոց երևէին նմա. այլ և տէր մեր Յիսուս Քրիստոս՝ բազում զօրօք և հրեշտակօք իջանէր յերկնից ի բանտն, և զօրացուցանէր զծառայն իւր զսուրբն Պարոն Լոյս»։

Երանելւոյն ծնողքն ամէն ջանք ըրին ազատել իրենց սիրելի որդեակը. սրտաճմլիկ աղաչանօք, դրամոց և առատ պարգևաց խոստմամբ կը յուսային ապրեցընել զնա ի մահուանէ. և նաւով Սեաւ ծովու վտանգաւոր ճամբան կտրելով՝ գնացին մինչ ի Պոլիս, արտասուագին պաղատանաց ձայնը հասուցին առ Թագաւորն, և ազատութեան հրամանագրով դարձան ի Կաֆա. բայց պատանեկին դէմ յուզուած ատելութիւնը այնչափ բուռն էր և սպառնալից, որ դատաւորք չհամարձակեցան այդ արքունի պատուէրը ի գործ դնել, և դատապարտեցին զնա ի մահ։

Գլխատման տեղը ուրախութեամբ կը դիմէր բարեբաստիկն Լոյս–Պարոն. և «բանակք հրեշտակաց Աստուծոյ, — կ՚ըսէ վկայագիրն, — շուրջ եղեն զնովաւ. և տէր մեր Յիսուս Քրիստոս յայտնապէս երթայր առաջի նորա, և ցուցանէր նմա

զանթառամ պսակն. և սատանայ ամենայն դիւօքն ի հեռաստանէ կացեալ՝ կրճտէր զատամունս իւր և ողբայր զկործանումն իւր՝ որ յաղթեցաւ ի փոքր մանկանէ միոջէ»։ Երեք անգամ ճամբուն վրայ կանգ առաւ դահիճն՝ խոստմամբք հրապուրելով և մերձաւոր մահուան մը վախով ուզելով ահաբեկել՝ իսկ նա ուրախ և զուարթադէմ կը նայէր մերկացեալ սրոյն որ երեք անգամ շողայր անմեղ պարանոցին վրայ, փափաքանօք ակնկալով այն ցանկալի մահուան։

Մայիսի հնգետասան ու մարերի ութերորդ օրն էր յորում հանդիպեցաւ երջանիկ վկային նահատակութիւնը, և մարմինը անթիւ բազմութեամբ ամենայն քրիստոնեայ բնակչաց քաղաքին՝ ամփոփեցաւ պատուով։

Նոր Նախիջեւանի Սուրբ Խաչ եկեղեցւոյ Գանձարան գրքէ մը քաղենք հետևեալ տողերը ի գովեստ նահատակին։

«Սուրբ Պարոն-Լոյս ծաղիկ ծիրանի,
Կարմիր արեամբ ներկեալ ի մարմնի.
Սուրբ Պարոն-Լոյս նոր շող երփնարփի՝
Աստղ առաւօտու նոր արուսեկի,
Սուրբ Պարոն-Լոյս նոր վարդ ի թփի՝
Ի ձմերային սուղ ժամանակի.
Սուրբ Պարոն-Լոյս նոր արմաւենի,
Տնկեալ ի գնացըս ջրոյն կենդանի.
Սուրբ Պարոն-Լոյս նոր շուշան հովտի
Նարդոս քրքքում զմուռ ընդ հալուէ.

*Սուրբ Գարոն–Լոյս պարարտ ձիթենի*
*Նոր պատուաստեալ յորթըն Հայրենի։*
*Սուրբ Գարոն–Լոյս մաքուր աղաւնի՝*
*Բարձրաթըռիչ որպէս զարծուի...*



# ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

## ԱՌ ՏԻՐԱՄԱՅՐՆ ՀԱՅՈՑ[1]

## Ի ԿԱՄԵՆԻՑ ՓՈՏՈԼԵԱՆ

16 Օգոստոս. — 16 Սեպտեմբեր. 1883։

### ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՏԵՂ

*Լեհաստան աշխարհն՝ ԺԱ դարէն սկսեալ, մեր ազգին Հայ գաղթականաց ապաստանարան եղած է. ուր մեծամեծ արտօնութիւններ վայելած են բազմաթիւ ազգայինք, քանի քանի անգամ թողած իրենց հայրենիքը, իրենց փառաշէն Անին, երկրորդ հայրենիք ընտրած են այդ աշխարհը։ Նշանաւոր են ասոր երկու քաղաքները, Կալիցիոյ մէջ Իւլվով (կամ ըստ մեր ձեռագրաց Լով) որ այժմ գերմանական անուամբ Լեմպէրկ կը կոչուի, Փոտոլիոյ նահանգին մէջ՝ Կամենից, զոր Հայք շինած և շէնցուցած են, և 600 տարի Հայոց քաղաք համարուած է։ Յամին 1876, հոկտեմբեր ամ-*

1. Այսպէս է անուն պատկերին ըստ համօրէն Լեհաստան, Matka Boska Armianska.

սոյն մէջ, ճանապարհորդութեան ելած էի յԻլվով, ուր ցարդ կանգուն կայ ազգային փառաւոր եկեղեցին, հանդերձ Լուսաւորչայ խորանով, ուր կը նստի և Հայոց արքեպիսկոպոս, յիւրում վեհարանին, ունի իրեն կղերանոցը, ուր կայ և ցարդ Հայոց կուսանաց վանք, որոյ մայրապետք օրիորդաց դաստիարակութեան կը պարապին։ Նոյն ժամանակի Թեմակալ առաջնորդն էր գերապատիւ, Տէր Գրիգոր Ռոմաշքան, որ մեծաւ մարդասիրութեամբ հիւրընկալեց մեր նուաստութիւնը։ Իլվովցի Հայոց մէջ՝ այն ատեն միայն երկու անձինք կային որ լաւ համարձակ կը խօսէին հայերէն, առաջինն անշուշտ ինքն էր Գերապատիւ Տէրն, իսկ երկրորդն՝ կուսանաց վանքին պառաւեալ Մայրը՝ Վարդուհի, որ մեծ հաճութեամբ ալ կը խօսէր ազգային լեզուն։ Անշուշտ այժմ տեղացի երիտասարդ քահանայք ևս կը խօսին իրենց բնիկ լեզուով, վասն զի մեծ ջանք տեսայ ես նոցա մէջ հայերէն լեզուի մշակութեան, շնորհիւ Արհիապատիւ Հանգուցելոյն։ Գրաբար լեզուիս անսայթաք ընթերցանութիւնը ժամասացութեան մէջ՝ հաւաստիք են գրածիս։

Ցրաւի՝ ինչպէս ես, նոյնպէս կարծեմ ամենայն ազգային ճանապարհորդ, նոր տեսակ մի զգացումն կ՚ունենայ, երբ Եւրոպայի անկիւն մի հանդիպի ազգային հաստատութեան մի, ուր ազգային լեզուն հնչէ ականջաց մէջ, ուր ազգային եկեղեցի մի ամբառնայ աչաց դիմաց։ Այդ սրտամերձ և մտահաճոյ զգացումը՝ ո՛չ վսեմութեան, ո՛չ գեղեցկութեան և ո՛չ փարթամութեան զմայլումն կամ ախորժումն է, այլ ներքին և բնածին իմն զգացումն, զոր չեն կարող տալու ոչ փառահեղ տաճարք օտարաց, ոչ երկնաբերձ կոթողք կամ բրգունք, և ոչ իսկ ներդաշնակ երաժշտու-

թիւնք, զի առ այն, ըստ ռամիկ բացատրութեան՝ Մարդուս արիւնը կը քաշէ։

Ահա այդ զգացմամբ տոգորեց սիրտս, երբ զկնի տեսանելոյ Եւրոպայի հոյակապ տաճարները Ս. Պետրոս, Ս, Պօղոս Հռովմայ, Տիրամօրն Փարիզու, ոսկէգմբէթն Անկարողաց (des invalides), Ս. Մարկոս Վենետկոյ, Մայր եկեղեցին Միլանու, Ս. Սոփիա Կ. Պոլսոյ, Ս. Ստեփանոս Վեննայի, տեսայ հեռուէն տխրադոյն եկեղեցին Հայոց Իլվովի. այն զգացումը տասնապատկեցաւ՝ երբ վաղ առաւօտու երիցունք շարուած 'ի դասուն ժամասացութիւնք սկսան, վայելուչ ձեւով, շարականները գնացք երգելով. այլ ամենայն բառ որոշ և գեղեցիկ արտասանելով։ Այդ տաճարին մի անկիւնը քաշուած, ուշադրութեամբ կը փափաքէի միտ դնել պաշտաման, սակայն հարկ է խոստովանիլ, թէ և անձամբ ներկայ, լսելեացս մէջ կը հնչէին հայկական բառեր, այլ մտօք բազմադարեան պատմութեան մէջ կը ծփայի, հազարաւոր մղոն հեռուն, Բագրատունիք, նոցա ոստանը Անին, և այլն, փոխն 'ի փոխ կը պատկերանային մտացս մէջ։

Ժամերգութենէ վերջը յայտնեցի սրտիս գոհունակութիւնը Գերապատիւ ասպնջականիս, որ մեծապէս հաճեցաւ, և երկու օր մնալով յԻլվով երկաթի ճամբով դէպ 'ի Կամենից ճանապարհ ելայ։ Հասայ Փոտ—Վոլոչիսկ, որ սահման է ընդ մէջ Աւստրիոյ և Ռուսիոյ. աստի Կամենից գնալու երկաթի ճանապարհ չկայ և ոչ խճաքար ճամբայ։ Աշնանային անձրեւոտ էր օդն, ճանապարհին ծանօթք զգուշացուցին զիս, զի վաթսուն վերստ պէտք էր կառօք գնալ 'ի Կամենից, և այդ վաթսուն վերստը՝ անհնարին ցեխին պատճառաւ՝ երբեմն հարկ կը լինի օրերով ճամբայ մնալ անձրեւի

ներքոյ ։ Օդոյն անհարթութեանց դէմ եւ՝ ճանապարհի լաւ պատրաստութիւն չունենալով, խոհեմութիւն համարեցայ ուրիշ յարմար միջոցի թողուլ ի Կամենից ճանապարհորդութիւնս, և ուղղեցի ընթացքս յՕտեսսա և անտի 'ի Թէոդոսիա ։

Հարկ եղաւ սպասել այլ եւս եօթը տարի և ահա այս ամառ (1883) ամսօրեայ արձակուրդ և անցագիր, միանգամայն և յանձնարարական նամակ մի տանելով, առ տեղական վարչութիւնս 'ի Կամենից և 'ի Քիէվ, 'ի կողմանէ Արքունի հնագիտական ընկերութեան Օտեսսայի, օգոստոսամսոյն 14 ին, երեկոյեան շոգենաւով ճամբայ ելայ 'ի Թէոդոսիոյ՝ յուխտագնացութիւն առ Տիրամայրն Հայոց 'ի Կամենից ։

Օգոստոս 14 թէպէտ Ռուսաստանի համար աշունք է, այլ Ղրիմու համար դեռ ամառն. սակայն այն օրը՝ կարծես Ռուսաստանի աշունք կը շնչէր. խոնաւ էր օդն, մութ և անլուսին գիշեր, աստղերն՝ իբրև աղօտ լապտերներ շարուած էին երկնից կապոյտին վրայ, և 'ի խոնարհ դէպ 'ի հորիզոն՝ քաղաքիս տանց ճրագներուն խառնուելով, շարունակութիւն կը գործէին երկնաւոր լոյսերը՝ երկրաւորաց, և երկոցունց անդրադարձութիւնը 'ի ծովուն՝ երրորդ շարք մի էր լուսերու. սակայն և այնպէս՝ այս երեք կարգ լոյսերն միանալով՝ չէին բաւական գիշերուան մթութիւնը ոչ միայն փարատելու, այլ և ոչ մեղմելու ։ Մութ գիշերն՝ մութ մութ խորհուրդներ կը յարուցանէր մտացս մէջ ։ Մերձաւորաց, բարեկամաց հրաժարականս տալով՝ առանձնացած էի նաւուն բարձրաւանդակին մի կողմը, երևակայութեանս մէջ կը պատկերանային բազմաթիւ Անեցի գաղթականք, որք իբր թէ Թէոդոսիոյ ափանց վրայ

վխտային. Նոցա համար պատրաստ մակոյկները, կարծես ափանց մօտ կ'երերային անհանդարտ կոհակաց վրայ։ Այս աշխարհն՝ որ ասկէ ութ դար առաջ թատր մի եղած է ազգիս զանազան ողբերգութեանց, սոյն այս ալիքներն (կ'որոճայի մտօք) իրենց շալակաց վրայ առած բիւրաւոր Անեցիք, տարած ձգած են 'ի հեռաւոր՝ հիւսիսական աշխարհներ։ Հաւանական է որ մեծ մասն Անեցի գաղթականաց նոյն ճամբով անցել գնացել էին, որով ես երթալ մտածեր էի։

Բայց ո՜րչափ տարբերութիւն այժմեան և դարերով առաջ Անեցւոց հատած ճանապարհին մէջ։ Ո՜ւր այն ատեն շոգեկառք... բազմաթիւ ժողովուրդ մի հուրէ, թուրէ, ժամէ՝ փախստական, յօտարութենէ յօտարութիւն, հետերնին առած գերեզմանաց խաչքարինք [1] 'ի յիշատակ անգին վաղամեռիկ սիրելեաց, եկեղեցեաց դռներ, հրաշագործ Զարխափան, Հանկատար, Ողիատակատար Աստուածամօր պատկերներ, կ'երթան և չգիտեմ ո՜ւր...։ Շոգենաւն երրորդ անգամ սուլելով՝ նաւամատոյցէն կը բացուէր դէպ 'ի ծով, այլ աչացս կամ լաւ ևս մտացս առաջ, դարձեալ նոյն հին Անեցւոց ստուերներ կը տարուբերէին։ Ծերք, պառաւներ՝ գաւազաններու վրայ կռթնած, շատ մանկամարդք և բազմաթիւ օրիորդք՝ «Առաւօտեան լուսնի նման յօնքերով [1] », և այլ շատ երիտասարդք նորատէզ մօրուօք՝ «Սիրականթեղ

1. Թէոդոսիոյ հնութեանց թանգարանին մէջ քառակուսի յասպիս խաչքար մի կայ 837 տարուան յորում խաչին պատուանդանին վրայ, կայ փորագրուած. Բարեխօս է սուրբ Նշանս Գրիգորին և իւր ծառայիցն. ՆՀԶ։

և լուսափայլ աչերով», որը կը թիավարէ, որը բեռներ կը կրէ....: Առաջ գնացել էր նաւն, մութ-կապոյտ՝ այլ աստեղազարդ երկինքն վերև, սեւ-կապուտակ ծովն ստորև. ճանապարհորդք ամէնքն իրենց ննջարանները քաշուած, իմացայ որ ինձ ևս քաշուելու ատեն է. զի խոնաւ օդն կրնար վնասել: Ելայ նստած տեղէս., աչացս հանդիպեցաւ հիւսիսակողմն՝ երկնից վրայ մեծ արջ համաստեղութիւնն, որ անտարբեր՝ աղօտ լոյսը կու սփռէր ծովուն երեսը. անտարակոյս ասկէ ութ դար առաջ սոյն այս համաստեղութիւնն իւր տեղը կեցած դիտած էր մեր Անեցւոց գաղթը:

Դու ինձ պատմէ երկնից Սայլիկ [1],
Մըտքէս ասի, կ'աղաչեմ քեզ.
Թուի որ այդպէս թառած երկինք
Ի ծով, ցամաք լոյս կու սըփռես.
Անշուշտ՝ տեսար, առաջ ութ դար,
Ծովուն երես երեր-տատան,
Մեր Անեցի քուրերն ու աղբար,
— Ո՞ւր գընացին կամ ի՞նչ եղան: —
Դուն լըսեցիր նոցա գանգատ,
Անէծք և իղձք, լացն, հառաչանք,
Մըրմունջ սըրտից, երգ սիրակաթ.
— Ասա, դու ինձ մի խօսք միակ. —
Արդեօք նոցա սըրտին խորեր,
Դեռ կա՞յ նըշան մի հայութեան.
Թէ չէ. աւա՜ղ, բնաւ անտարբեր
Բոլորովին օտարացա՞ն:

1. Ռամկական ղըրիմեցի երգ:

Դուն լըսեցիր անշուշտ շատ հեղ
Նոցա բերնէն Անի անուն.
Եւ անըզգա՛յ, դու Եօթնաստեղ,
Եղար նոցա սըրտցաւերուն։
Օտար երկիր թափառական,
Մեր եղբայրներ, անտուն, անտէր,
Ի ծով, ցամաք հալածեցան,
Դուն նայեցար միշտ անտարբեր։
Շատ պառաւներ, ա՜յլ շատ ծերեր,
Տեսողք Անի շահաստանին,
Մինչև իրենց վերջի օրեր,
Անին մտքէ չըհանեցին։
Հարկաւ նոքա երբ յիշէին
Այս մեծ քաղաքըն սիգապանծ,
Խոր կը խոցուէր հայ սըրտերնին,
Այլ դու մնացիր միշտ անըզգած։
Այլ ես ըզքեզ վըկայ կ'առնում,
Աստղ անբարբառ և անըզգայ,
Ականատեսդ մեր ցաւերուն՝
Կեցիր քո տեղդ, մինչ ատեն գայ՝
Որ քու տեսած այդ թըշուառ ազգն,
Յօտարութեան ցանած ցըրուած,
Մէկ մ'արթըննայ ճանչնայ իւր յարգ,
Եւ նորոգի լուսով ուսմանց.
Այն ժամանակ դարձեալ այդպէս
Դուն անտարբեր երկինք թառած
Նայէ՛, լինիս ականատես
Ցուսանորոգ ազգիս փառաց։

Սոյն և այսոր նման այլ մտածութիւնք գիրար կը յաջորդէին մտացս մէջ. մինչ քաղցրիկ քունն վերջ տուաւ ցնորից երևակայութեան։

# Ա

## ԵԱԼԸԹԱՅԷ ՄԻՆՉԵՒ ՑՕՏԵՍՍԱ

*Առաւօտը մութնուլուսին՝ զմեզ կրող նաւն հասաւ Ղրիմու հարաւային ափանց նշանաւոր քաղաքը Եալըթա[1], որ ամարանոց է արքայից Ռուսաց, ուր կը յաճախեն ամէն տարի հազարաւոր օտարականներ՝ կորուսեալ առողջութիւննին վերըստին ստանալու, բարեխառն և ջերմին կլիմայիւ և առողջարար խաղողով։ Երբ ահագին շառաչմամբ խարիսխ ձգեց նաւն ծովածոցոյն մէջ, իսկոյն վեր ելայ՝ վայելելու Եալըթայի ակնապարար տեսիլը։ Սա՝ յիրաւի իւր գեղեցիկ ծոցովն մշտադալար լեռներով, գեղեցկաշէն ապարանքներով և ճենացի վերնատուններով, կրանիտեայ թումբերով, և այլն, բնութեան և արուեստի սակաւագիւտ տեսարանաց մին կ՚ընծայէ. Նորա ՚ի ծովէ տեսիլն աննման է։ Քաղաքն թեթև մշուշով քօղարկուած էր, գունդագունդ ամպերն իբրև սարաբեր գառանց խումբեր, քաղաքին կռնակը բարձրացած անտառին ծառոց գագաթը մակաղած էին։ Ծովը թէպէտ բոլորովին խաղաղ, այլ ոչ խոր յատակն արգելք էր մեծ նաւուն մօտենալու նաւամատուցին։ Նաւուն այս*

1. Նշանակելու կ՚արժէ՝ որ Եալըթա փոքրիկ քաղաքը՝ երկոտասաներորդ դարու Նուպիացի Իդրիս անունով աշխարհագիրն կը կոչէ Ճալիթա անուամբ։

դրից մէջ ճանապարհորդք տեսնել զգալի կերպով կրնային վայելել բնութեան գեղեցիկ տեսարանը։ Արեւելք բոլորովին մանիշակագոյն հագուած էր. ծովուն երեսն՝ կարծես նոյն գունով երերուն մեծ կապերտ մի փռուած։ Երկինք և ծով՝ մեծ պատրաստութեան մէջ էին, համարեա՛ թէ մեծապատիւ հիւրի մը գալստեան սպասելով. սակայն ճշմարտապէս կ'արժէր այդ պատրաստութեանց՝ գալու հիւրն. արեւելք տակաւ կարմիր, ատրաշէկ և փայլուն գոյն առաւ, քիչ ատենէն հրոյ ճառագայթներ երեւցան ծովուն երեսը, ճանապարհորդք ստիպուեցան կրկնադիտակնին վար առնուլ. զօրաւոր և հրաքորբոք աչք մի՝ կարծես նայեցաւ հորիզոնէն՝ որ շուտով սկաւառակի ձև առաւ. տեսնալու բան էր միգին և մշուշին հալածական փախչիլը, ծառոց վրայ մակաղեալ ամպոց արագ արագ 'ի վեր բարձրանալը։ Եալըթա՝ փոքրիկ քաղաքն՝ հիանալի տեսքով, խաչապսակ եկեղեցիներով, խումբ խումբ կոնաձև նոճիներով, դալարայեղց գիւղատուններով, ձեմելիքներով, իբրև մեծ ափսէի մի շարուած յախճապակի նաշխուն գաւաթներ, յայտնի և պայծառ երեւեցաւ։ «Ի՞նչ գեղեցիկ տեսարան, որպիսի՜ գեղապատկեր», կամայ և ակամայ, մեքենաբար կը գրուցէին ճանապարհորդք, մանաւանդ 'ի միգապատէն և 'ի հեռաւոր հիւսիսոյ եկաւորք, որոց համար նոր և անսովոր էր այս տեսիլս, որք չէն տեսած ո՛չ յՈսկեղջերէ դէպ 'ի Պոլիս տանող հիանալու նեղուցը, և ո՛չ Նէապոլսոյ աննման ծոցը։ Մինչև առաւօտեան ժամը ութ մնաց շոգենաւն 'ի Եալըթա, բեռ տալով և առնըլով, և ապա մեկնեցաւ 'ի Սեւաստապօլ՝ ծովափէն քերելով։

Տակաւ Եալըթա ետև մնալով՝ մանրանկար պատ-

կերի երևոյթ կը ստանար. իսկ առաջնիս յերևան կու գային Լևատիոյ արքունի ապարանք, Օրիանտա՝ Կոստանդին Նախարարին Գիւղատունն, Ալուփքա՝ Վորոնցով (Ազուաւեան) կոմսին կրանիտեայ դղեակն, և այլոց մեծամեծ իշխանաց ամարանոցք. մինչև որ հասանք ծովով Պայտառ կոչուած կրճին կամ լերանց անցքին ստորոտը: Նշանաւոր է այս տեղս. շատ ճանապարհորդք 'ի Տաւրիայ գալով, ծովու ճանապարհին կը նախադասեն ցամաքի երկար ճամբան 'ի Սևաստապօլէ Եալթա անցնելու, միայն այս կրճէն անցնելու հաճութիւնը զգալու համար: Վասն զի խիտ առ խիտ անտառները քարուխիճ և օձապտոյտ ճանապարհով անցնելէն վերջը, երբ կը հասնի ճանապարհորդն այս Պայտառ կամ Դուռն Պայտառի կոչուած անցքին բերան, յանկարծ առաջը կը բացուի համատարած ծովը, մէկ կողմանէ ալիքներն՝ հորիզոնին վրայ՝ երկնից կցելով, միւս կողմանէ կանաչագեղ բլուրները փայփայելով՝ անհանդարտ կոհակօք մինչև ցԵալթա:

Ցառաջ վարելով ճանապարհը, կէս օրէն վերջը ժամը մէկին հասանք 'ի համբաւաւորն Սևաստապօլ: Այս քաղաքս առաջին Արևելեան պատերազմէն մինչև երկրորդն՝ քսան և վեց տարի անխնամ մնալուն պատճառաւ, ցարդ ողիտաւոր տեսարան մի կը ներկայացընէ ճանապարհորդին. մեծամեծ բազմայարկ անծածկ և աներդիք շէնքեր՝ իբրև մահագոյժ կանգուն կմախքներ, իրենց կոյր և անլոյս աչքերով և անլեզու բերանով, — անդուռն, և անփեղկ պատուհաններով, — յայտնի կը քարոզեն քաղաքին անցեալ փառքը, և առհասարակ անկայուն վիճակ իրաց աշխարհի: Նոյնը կը քարոզէ

Սեւաստապօլէ եօթը վերստ հեռաւորութեամբ շիջելափառն Քերսոնէս[1], որ նախ քան զՔրիստոս հզօր հասարակապետութիւն, այժմ քարուքանդ հողերու տակ ծածկուած։

Այլ Ինքերման որ նոյնչափ հեռաւորութիւն ունի 'ի Սեւաստապօլէ, որ երկաթի ճանապարհին վրայ կարկառեալ և իւր խոռոչաւոր քարահանքներով, նոր լեզուով հին և սրբազան խրատ մի կու տայ ճանապարհորդին։ Խորհուրդ կու տամ, այդ տեղէն անցնելու ժամանակ՝ եթէ ոչ կօշիկներ հանել, գէթ գլուխ մերկացընել, բանալ. զի սուրբ է այդ տեղին ոռոգեալ քրտամբ և արեամբ առաջին դարու հայրապետաց հաւատոյս մերոյ։ Հռովմայեցւոց կայսրութեան ժամանակ Կրիմ վայր աքսորանաց համարուելով Տրայանու և այլոց կայսերաց ատեն, ջատագովք քրիստոնէութեան, իբր քրէական յանցաւորք հոս աքսորուած են. աստ ճգնած և 'ի Քերսոնէս ջրահեղձ նահատակուած է Պօղոս առաքելոյն աշակերտ Կղեմէս, որ 'ի շարս Հռովմայ Սրբազանից երրորդն է զկնի Ս. Պետրոսի։ Հոս՝ քարածայռին մէջ քանդակուած սանդուխ մի՝ վեր կը հանէ զճանապարհորդը դէպ 'ի սրբոց խղիկներ. ուր կան ժայռին մէջ կոփած քանդակուած կրկին գեղեցիկ վկայարաններ. յորոց վայելչագոյնն Ս. Կղեմայ անունը կը կրէ. աւանդութիւնն կը վկայէ՝ որ սեղանին վրայ, վայելչաձև խաչն՝ սրբոյն մա-

1. Շնորհիւ հանգուցեալ (1883) փոխանախագահին Օտեսայի հնագիտական ընկերութեան Ն. Մուրզաքեւչի, հին քաղաքին յատակը յերեւան ելաւ, տեղ տեղ միւսաիոն և մարմարիոն, քանդակազարդ սեանց խարիսխներ և խոյակներ, և այլն։

տանց գործը լինի։ Այս մատուռն շատ գեղեցիկ է, համեմատ սիւներով, և այլն։ Այսոր մօտ փոքրիկ մատուռ մի ևս կայ, որ Մարտինոս քահանայապետին կ'ընծայուի, որ նոյնպէս աքսորուած է 'ի Հռովմայ 'ի քարահանքս Ինքիրմանի։

Սևաստապօլ իր պատմական մահարձանօք՝ Քերսոնէսիւ և Ինքիրմանով, Մալախով բարձամբ և հրաշալի նաւահանգստով 26 տարի երեսի վրայ մնալէն վերջը, այժմ վերստին տէրութեան մեծ խնամքով կը շինուի, կամ թէ գրուցեմ իբրև փիւնիկ հաւ՝ իւր մոխրէն կամ աւերակաց մէջէն՝ նորափետուր կը զարդարուի. վերջին երեք տարիներուս միջոց 700էն աւելի մեծամեծ շէնքեր, քան զառաջինս առաւել վայելչութեամբ կը փայլին։ Կրանիտեայ սալայատակն՝ առաջուան կրախառն ամպի նման փոշին իջոյց, քաղաքին ամէն կողմ քաղցրահամ ջրոյ ագուգայք և շատրուանք՝ հարաւային բարկ արևուն ներգործութիւնը մեղմելով՝ օդի կու տան զալարեաց և ծառոց, միով բանիւ այդ բնութեան նշանաւոր անկիւնն՝ տակաւ պիտի ստանայ իւր վայելուչ կերպարանը, եթէ վերստին քանդիչ ձեռք մի չապականէ զնա։

Շատ չի կենար նաւն 'ի Սևաստապօլ. երկու ժամէն մեկնեցաւ յԵւպատորիայ, ուր ժամը եօթին հասանք։ Այս քաղաքս թէպէտ և ունի իւր առանձին յատկութիւնները՝ մաքուր և առողջարար օդոյն և քաղցրահամ ջրոյն հետ 'ի միասին կապտամորթ գառներ, որոց միսն քաղցրաճաշակ լինելէն զատ, անուանի և յարգի է սոցա մորթն ընդհամօրէն Ռուսաստան. մեծամեծ աղահան լիճեր, և յօդացաւի դէմ աղային ցեխեր. սակայն և այնպէս Ղրիմու յետամնաց քաղաքաց կարգէն է, յամր և

դանդաղ առաջ կ'երթայ։ Նշանաւոր է 'ի սմա փառագմբէթ Խան-ճամին, 'ի Թաթարաց Մնացեալ մըզկիթն. սակաւաթիւ են հօս ազգայինք, Էջմիածնական Հայք ունին վայելուչ եկեղեցի, իսկ Հայ-կաթօլիկք մատուռ մի փոքրիկ։ Նաւն ժամ մի հօս Մնալէն վերջը, յառաջ վարեց ընթացքը դէպ յՕտեսսա, և 18 ժամ միակերպ ընթանալով՝ միւս կէս օր՝ ժամը 12ին հասանք յՕտեսսա։

## Բ

### ՅՕՏԵՍՍԱՅԷ ՄԻՆՉԵՒ ՅԿԱՄԵՆԻՑ

Օտեսսա՝ 'ի Ռուսաց Հարաւային գեղեցկուհի (южная красавица) վերաձայնեալ, զի հարաւային և Նոր Ռուսիոյ մէջ նմանն չկայ, նոյնպէս և ընդհանրօրէն Ռուսաստան, յետ մայրաքաղաքին Պետրբուրգի՝ բարեշէն քաղաքաց առաջինն է՝ վաճառաշահութեամբ ծաղկած։ Իննսուն տարի առաջ Օտեսսայի տեղ (1794) Հաճի-Պէյ անունով փոքրիկ գիւղ և ամրոց մի կար, ուսկից՝ 'ի Լեհաստանէ և 'ի Ռուսաստանէ աւարն և կողոպուտ 'ի Տաճկաստան կ'անցնէր. զի Հաճի-Պէյ՝ Տաճկաց ամրոց էր։ Այժմ այդ փոքր գիւղին և ամրոցին տեղ կանգուն կայ 250,000 բնակչօք փառաւոր քաղաք մի, որ նախանձորդ է Փրանկաց մայրաքաղաքին, յար և նման սալայատակով, ջրոց ագուգաններով ամէն կողմ, մարգերով, շատրուաններով, մեծագործ ճեմելեօք. ունի իրեն արքունի պալատը (palais royal), համալսարան, թանգարան, հնագիտաց ընկերութիւն, փառաւոր շէնքեր, եկեղեցիք. և այլն։

Եկեղեցեաց մէջ Հռովմէականաց եկեղեցին փառա-
աշէն է, և յաճախութեամբ պատուական քարերու՝
նմանութիւն կը բերէ Վենետկոյ ճոխ և վայելչա-
զարդ եկեղեցեաց։ Սակայն այնու ամենայնիւ,
դեռ շատ հեռու է իւր նախատիպէն, շատ բան
դեռ կը պակասի Փարիզի հասնելու։ Վաճառա-
կանութիւնն մեծ է, մանաւանդ անգործ կամ հում
ապրանքով, այնպէս որ տարուէ տարի Օտեսսայի
մէջ եղած շահավաճառն՝ որ 200 միլիոն րուբլեաց
կը հասնի, կէսը՝ այն է 100 միլիոնն՝ արտասահման
կ'երթայ, ցորեն, իւղ, աղ, բուրդ, և այլն։ Օտեսսա
կէս օր միայն մնացի. օգոստոս 19, երեկոյեան
ժամը իննին, երկաթուղւով ճամբայ ելայ դէպ 'ի
Փոտոլիա։ Օտեսսայէ երկաթուղւով մեկնողաց 'ի
Փոտոլիա՝ խորհուրդ կու տամ. եթէ անպատճառ
փութալու հարկ չունին, ուրբաթ երեկոյի ընթաց-
քով մեկնիլ, զի միւս օրեր՝ ինչպէս ինձ պատա-
հեցաւ այս անգամ, Իսրայելացւոց բազմութիւնն՝
բոլոր ճանապարհին մէջ անհանգստութիւն և նե-
ղութիւն կը պատճառեն. ապա մինչև ցԿամենից
կը վխտան որդիք Իսրայելի. իսկ Կամենից՝ որ
երբեմն Հայոց վաճառաշահ քաղաք էր, այժմ
բոյն է Հրէից։

8Օտեսսայէ Կամենիցի մերձաւոր երկաթուղւոյ
կայարանը Փրոսքուրով քաղաքն է, անտի ցԿա-
մենից հարկ է կառք երթալ. միւս օր կէս օրին
հասայ 'ի Փրոսքուրով. անկարելի էր նոյն օրը
հասնիլ 'ի Կամենից, զի դեռ 90 վերստ ճամբայ
կար ընելու։ Օտար և նոր աշխարհք էր ինձ համար
Փոտոլիա, ցանկալի էր լոյս աչքով ճանապարհոր-
դել. բարեպատեհ դէպք մի՝ այս նպատակին նպաս-
տաւոր եղաւ։ Օտեսսա ծանօթանալով Սթանքեւիչ

մականուամբ բժշկին հետ, յանձնարարական նամակ մի տուաւ ինձ առ իւր եղբայրը. որ կալուածատէր էր Փրոսքուրովէ 'ի Կամենից ճանապարհին վրայ։

Երկաթուղւոյ կայարանէն կառք մի վարձեցի մինչև Սթանքևչի գիւղը, որ 15 վերստ էր, և երկու ժամէն հասայ հոն։ Շնորհակալութիւն մեծ՝ հիւրընկալ պարոնին, որոյ մարդասէր ասպընջականութիւնը վայելելով, գիշերս հոն անցընելէն վերջը, վաղ առաւօտու ճամբայ ելայ։ Օդն բարեխառն և քաղցր կը շնչէր, ցորենաշատ դաշտերն հնձուած, այլ տակաւին որաներն բարդ բարդ, դէզ դէզ դաշտաց վրայ էին։

Այն Փոտոլիա կամ Ուքրայինա կոչուած աշխարհին մէջն էր, զոր տեղացի Փոքր-Ռուս Թարաս Շեւչենքոյ քերդողն՝ զանազան գողտրիկ տողերով երգած և գովասանած է. այն հացաշատ և ջրարբի աշխարհն, որ համբարանոց է արևմտեան Ռուսիոյ, բաց կեցած էր առաջս. այս այն աշխարհն էր՝ որոյ ծոցը՝ ըստ քերդողին դղըշալով կը խայտայ ալևորն Տնեբեր։ Առաջ կ'երթայի՝ լայն ծառազարդ ճանապարհին վրայէն, որոյ վրայ հովանի կ'առնէին մեծամեծ բարտի, նշդարի, կակղի և հաստաբուն կեռասի ծառեր։ Դաշտին մշակներն նոյն պուետին Շեւչենքոյի երգած «գանգուր մազերով Քոզաքներն» էին, «մրայօն և սևաչեայ Քոզաքուհիք», ցորենի որաները բեռնաւորած սայլերու վրայ 'ի կալ՝ կառելու կը տանէին։ Ճանապարհին վրայ մարդաշատ գեղեր, բարեկարգ անտառներ՝ մերթ ընդ մերթ իրարու կը յաջորդէին, պտղատու պարտէզներ առատ մեծամեծ խնձորներով և տանձերով և այլ պտղօք. փորձեցի այդ պտուղներուն համը, այլ

տեղերուն համեմատ չզտայ. զի հարաւոյ բարկ արեւուն ճառագայթներէն զուրկ լինելով, ոչ Ղրիմու պտղոց քաղցրութիւնը ունին եւ ոչ հոտը։ Հանդիպած գեղերուս մէջ մանաւոր յիշատակելու արժանի է Թինեա կոչուածն, ուստի 40 վերստ է Կամենից, փառաւոր է գիւղիս եկեղեցին, եւ համբաւաւոր 'ի Փոտոլիա՝ հրաշագործ պատկերաւ Տիրամօր։ Եկեղեցւոյն մեծապատիւ կանոնիկոս ժողովրդապետն Լըռեճքի, ղրիմեցւոյ համար հետաքրքրական դէպք մի կարդաց եկեղեցւոյն տարեգրութեան մէջ, զոր կ'արժէ հոս յիշատակել։ Անկէ 100 տարի առաջ ժամանակին ժողովրդապետն ղրած է, որ Ղրիմու վերջին Թաթարաց Շահան–Գերէհ խանն, Ռուսաց Թերակղզւոյս տիրելէն վերջը, Մոսկուա գնալու ժամանակ իջեւանած է այս Թինեա գիւղիս մէջ, եկեղեցւոյս աւագ երէցն հիւրընկալելով զնա՝ ճաշ մի տուած է, առաջնորդարանին ետեւ մեծամեծ կակղի ծառոց ստուերին ներքեւ. դարեւոր կակղիք դեռ եւս կանգուն, մեղմ հովիկին շնչելով, ներդաշնակ խօշիւն մի կը հանէին, իբր թէ հաստատելով կանոնիկոսին կարդացածը. Շահան–Գերեհի համար այսպէս կը գրէր տարեգիրն. « Շատ կարգաւորեալ մարդ էր, լատին եւ իտալացի լեզուները համարձակ կը խօսէր »։

Պատուական կանոնիկոսն չթողուց՝ որ առանց իրեն մօտ ճաշելու՝ առաջ երթամ. երբ ասացի թէ՝ Մութին կը մնամ. — Աւելի լաւ կը լինի, ասաց, զի ճրագի լուսով Կամենից « առաւել չքեղ կ'երեւնայ, քան ցորեկ ատեն »։ Երեք ժամ մնացի գիւղիս մէջ, այլ գոհ եմ մեծապէս, զի պատկառելի երիցուն կենցաղավարութիւնն ինձ մեծապէս շինութեան պատճառ եղաւ։ Քանի՜ քաղցր

է լսել բազմափորձ և խոհական վարդապետի խօսակցութիւնը։

Նախընթաց օրը Կամենիցի քառաձի փայետոն մի ուղևորներ բերելով 'ի Թիննա, պարապ յետս պիտի դառնար. աւագ երէցն խորհուրդ տուաւ՝ փոխանակ փոստի, այդ փայետոնը վարձել. կառավարն աժան գնով յօժարեցաւ տանել զիս, որով բաղդ ունեցայ նոյն օրը օգոստոսի 20 ին, փառաւոր քառաձի փայետոնով մտնել, յետին ժամին, երբեմն մեր Անեցի Հայկազանց հռչակեալ քաղաքը։

## Գ

### ԿԱՄԵՆԻՑ

Հեռուէն չերևիր Կամենից, թէպէտ և բարձր ժայռի վրայ շինուած է. զի ևս բարձրագոյնք զնա կը շրջապատեն։ Տասն վերստ հեռացած, յաջմէ ճանապարհին կ'երևի Հայք (Արմեանէ) կոչուած գիւղն. որ ըստ վկայելոյ Անտոնի, հնախօսին Կամենիցու. Հայոց սեփականութիւն տրուած է ժամանակաւ (1280) Լեւոն Դանիելովիչ Կալիցիոյ Նախարարէն. Հայոց նման մատուցած մեծամեծ ծառայութեանց փոխարէն. աստի՝ ժամանակ անցնելէն վերջը գաղթեր են Հայք 'ի Կամենից։

Թէպէտ և այժմ գիւղիս մէջ Հայ չկայ, սակայն լոկ Արմեանէ անունն քաղցր կը հնչէ յականջս ազգայնոյ։ Դեռ ևս առաջ գնալով՝ յերևան ելաւ Կամենից մասամբ, արուարձանօք. ապա իւր ամենայն պչրանօք, լուսաւորեալ 'ի վերուստ և 'ի ներքուստ։

Քաղաքն հեռուէն ճիշդ ամփիթատեր ձև ունի. բարձր ժայռի վրայ, խիտ առ խիտ փողոցներով, կարգ կարգ տուներով. այս ժայռն օրինաւոր կղզի մի է, որոյ չորս կողմը կը պատէ Սմոթռիչ գետն, այնպէս որ քաղաք մտնելու համար, հարկ է կամրջէ անցնիլ։ Տանց պատուհաններն կարգաւ լուսաւորած էին, զի յետին ժամ էր, հեռուէն կարծես յերկինք կը հասնէր նոցա լոյսն. այս լուսերն կ'անդրադառնային Սմոթռիչի ջրերուն մէջ, այնպէս որ լուսաւոր գունտ մի կ'երևնար, համատարած և ընդարձակ մթութեան մէջ։ Քաղաքս այս ձևոյն մէջ տեսնելով միտքս ինկաւ պատուական կանոնիկոսին խօսքն, և սրտանց շնորհակալ եղայ հեռուէն։

Փոտոլիոյ գլխաւոր քաղաքն է Կամենից, հին Պետրիդաւրոսի աւերակաց վրայ շինուած՝ Անեցի գաղթականաց ձեռքով, և 600 տարի ճանչցուած իբր Հայոց քաղաք։

Պարսպապատ է, բերդերով և աշտարակներով ամրացուցած. երբ կամրջէ մի անցնելով կրկնայարկ բերդադռնէն ներս մտաւ մեր կառքն, ձիոց սմբակաց տրոփիւնն, բերդին խուլ արձագանգքն, սայլորդաց և կառավարաց կանչն և աղաղակ, շէն և մեծ քաղաքի տպաւորութիւն գործեցին։ Թէպէտ և գաւառին գլխաւոր քաղաքն է, այլ մեծ քաղաք կարելի չէ զրուցել, բնակիչն հազիւ 20,000, տեղը նեղ, ժայռի վրայ կարգ ըստ կարգէ տներ։ Տակաւ Սմոթռիչի միւս եզերը կ'ընդարձակի քաղաքն լայն փողոցներով և մեծ հրապարակներով։ Հին, կամ Սմոթռիչի մէջ ամփոփուած Հայոց քաղաքն՝ Իտալիոյ հին քաղաքաց ձևն ունի, կրկին և եռայարկ տներ, սալայատակ նեղ փողոցներու վրայ. այդ

պատճառաւ օդն միշտ ապականած է, միւս գլխաւոր պատճառն օդոյն ապականութեան Իսրայելի կեղտոտ որդիքն են, որ ամէն կողմ կը վխտան, քաղաքին կիսէն աւելի բնակիչքն Հրեայք են։

Այլ ինձ նոր հայրենիք երևցաւ այդ քաղաքն՝ նոյն հատած գիշերս. այդ որտահաճոյ զգացմանս ուրիշ պատճառ չկայ, բայց եթէ պատմական ճոխութիւն և քաջագործութիւնք հին Կամենիցի ազգայնոց։

Կանգ առաւ գիս կրող ֆայետոնն՝ ընդարձակ, երկայնաձև, սալայատակ հրապարակին արևելեան ծայրը, փառաւոր կրկնայարկ շէնքի մ'առաջ։

Այդ այն հրապարակն էր՝ յորում շատ դարեր վեր վար ճեմել են Հայք, զոր լցուցել են արևելեան վաճառքով, որոյ չորս կողմը փառաւոր տներով զարդարել են. այդ հրապարակին վրայ էր Հայոց դատարանն (Մագիստրատն), յորում հայ դատաւորք մահու և կենաց վճիռներ տուել են. այդ հրապարակին արևելեան ծայրը, դէպ 'ի Հայոց փողոցը, դեռ ևս կանգուն կայ Հայոց փառաւոր եկեղեցին, հրաշագործ պատկերաւ Տիրամօրն Հայոց։ Այդ եկեղեցւոյն առաջնորդարանին կամ վարդապետանոցին դրան առաջ կանգ առած էր ֆայետոնն. իսկոյն ընդ առաջ վազեց երիտասարդ մի, որ էր լուսարար եկեղեցւոյն, և իմ ճանապարհի պարկս կառքէն վար առնելով՝ առաջնորդեց ինձ առաջնորդարանին երկաթի դռնէն դէպ 'ի ներս, սանդուխներէ վեր ելնելով շէնքին երկրորդ յարկը, խնդրեց որ սակաւ մի սպասեմ. «Աւագ երէցն տունը չէ, ասաց, այլ շուտով կը դառնայ»։ Մինակ մնացի քանի մի վարկեան այդ անծանօթ շէնքին մէջ, որ իւր ամրակուռ կազմածովն, երկայն

պահոցն և առանձին առանձին սենեկներով, ամէն սենեակ որմնամէջ դարանով, յայտնի կը ցուցընէր յորմէ և ինչ վախճանաւ շինուիլը։ Նախ՝ շինողաց ճոխութիւնն յայտնի կ'երևնար, զի փող չէին խնայել ամրութեան և հաստատութեան մասին. իսկ առանձին դէմ ընդդէմ միմեանց սենեակներն իրենց դարաններով, անբարբառ կը զրուցէին որ իրենք աբեղայից և վարդապետաց համար շինուած են։ Այլ ես զմուր տեղ փնտռեցի այդ տանը մէջ երբեմն բնակող Ռոշքան, Մուրատեան, Ստեփանեան, Վարդերեսեան, Տէր-Գաբրիէլեան, Թադոսեան վարդապետաց ստուերը կամ շուքը՝ որ մէկ անկիւնէ երևան...։

Շուտով եկաւ եկեղեցւոյն երէցն Տէր Ալոզիոս Շշեփայնաքի, լեհ ազգաւ, գոնէ այժմ այնպէս ճանչցուած. հաւանական է որ սա ևս հին Անեցւոց սերնդոցմէ լինի, այլ այնպէս այլայլած, որ քանի մի բառ հայերէն յօդելէն զատ, և մարդասէր հիւրընկալութենէն, որ ազգիս սեփական յատկութիւնն է, ամենևին այլ նշան չունէր հայութեան։

Հարկ եղաւ ինձ այդ հայաշէն և հայաբնակ վարդապետանոցին մէջ օտար լեզուաւ խօսիլ և հարցընել, մերձաւոր Նպատակիս մասին։

Գիտէի արդէն որ Կամենիցի Վերափոխման Տիրամօր՝ Հայոց եկեղեցւոյն մէջ՝ մեծահանդէս ութօրէքիւ կը տօնուի Աստուածամօր փոխման տօնն. համանուն եկեղեցւոյն մէջ տօնելով զփոխումն Կուսին 'ի Թէոդոսիա, կը փափաքէի մասնակցել նոյն տօնական հանդիսին 'ի տաճարի Սքանչելագործ Տիրամօրս 'ի Կամենից։

Տէր Ալոզիոս ինձ իմացուց՝ որ վաղը վերջին է հանդիսին։ Ցոգնած էր ճանապարհէն, քաղցր

քուննն (հայրենի ստացուածոց ներքև), որոյ եղանակին մէջ տարբերութիւն չկայ, վերջ տուաւ մեր այլախօս թարգմանին։

## Դ

## ՈՒԹԵՐՈՐԴ ՕՐ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՏՕՆԻՆ

Առաւօտուն կանուխ իջնալով վանքին սանդուխներէն և անցնելով մէջ ընդ մէջ կրկին պարսպապատ բակերէ, մտայ աւանդատան դռնէն Աստուածամօր տաճարին դասուն մէջ. խուռն բազմութիւն եկեղեցւոյ մէջ ժողոված կը սպասէին. աւագ խորանը՝ որուն գոգաձևին մէջ զետեղուած է հրաշագործ պատկերը, ծածկուած կերպաս վարագոյրներու ներքև, բազում կերոններով բոցավառ կը փայլէր։ Զգեստաւորեալ քահանայ մի, երկայն գաւազանով բացաւ վարագոյրը. ցոլացին երեսք հրաշափառ կուսին, և բազմութիւն հաւատացելոց, 'ի գուճս անկեալ առաջի Տիրամօրս Հայոց, ուրախութեան և ցնծութեան երգով լցին տաճարը։ Սոյն այս օրն համարեա թէ ամբողջ 'ի պատիւ պաշտաման Աստուածամօր նուիրուած էր։ Պատարագք, ժամասացութիւնք, երգք, նուագք, թափօրք և քարոզք, մէկզմէկ կը յաջորդէին առաւօտէ մինչև երեկոյ. սակայն այս ամենայն պաշտամունք օտար լեզուով կը լինէր։ Դասին մի անկիւն քաշուած, փափաքելի էր ինձ հասուցանել յունկն Տիրամօրս՝ ուխտս և իղձս, աղերս և պաղատանք, սակայն վրդովեալ խորհուրդքս զիս կը տագնապէին. մերթ տխուր և մերթ զուարթ

մտածմունք իրարու կը յաջորդէին։ Կը տեսնայի աչացս առաջ փառաւորեալ Հայոց եկեղեցի, Լուսաւորչի փառաւոր պատկերաւ, արձանով և արծաթապատ նշխարով զարդարուած. այլ այդ տաճարին մէջ և ոչ մի բառ հայերէն չէր հնչել, Լուսաւորչի լեզուն հասկըցող չկար, Լուսաւորչի որդիք անծանօթ էին իրենց լուսատու հօր բարբառոյն, կը կոտրէր սիրտս։ Այլ միւս կողմանէ տեսնալով Աստուածամայրս Հայոց, փառաւորեալ 'ի բազմախուռն ժողովրդոց, հանգչած խորանին ոսկեզօծ գոգաձևոյն մէջ, բոցավառ կերոններ առաւօտէ մինչև ցերեկոյ առաջը բորբոքած, բուն պատկերին օրինակը վայելչաձև մի գահաւորակի վրայ յարմարցուցած, որոյ չորս ծայրը սպիտակազգեստ կուսանաց ուսերուն վրայ, որք Թափօրին առջևէն պատկառանօք կը կրէին, բազմութիւն ժողովրդոց գոհութեան երգ ի բերան, ձեռքերը վառեալ ճրագներով՝ տաճարին սրահները կը թնդացընէին, ուրախութեամբ կը լեցուէր սիրտս, և ես ձեռքի ճրագս վեր բարձրացընելով, Թափօրին խառնուած մասնակցիլ կը փափագէի փառաբանչաց Տիրամօրս։

Քառակուսի է Տիրամօրս պատկերը, և կանգնաչափ մեծութեամբ տախտակի վրայ նկարուած է. ցորենատիպ է Աստուածամօր երեսաց գոյնն, աչքերը մեծ և զօրաւոր նայուածքով. ձախ գիրկն է Աստուածամանուկը. սև լաչակ գլխին առած, նոյնագոյն վերարկու՝ լայն թևերով հագած։ Գլխոյն վրայ մանեկաձև վերտառութիւն մի կայ, զոր երևակայութեամբ կարելի է կարդալ՝ Աստուածամայր. այլ իսկապէս առ այժմ անվերծանելի, թերևս աւելի վարժ և կիրթ աչքերու պէտք ունի.

տառերէն ոմանք մեծ նմանութիւն ունին մեր երկաթագիր տառերուն։ Սակայն ակամայ կամաք պէտք է խոստովանիլ, որ պատկերին նկարչութեան եղանակը աւելի յունական է, քան թէ Հայկական։ Ոմանք այնպէս կը կարծեն, որ մեր նախնիք՝ Անեցիք՝ գաղթելու միջոց՝ 'ի Սեւաստոպօլ Տաւրիոյ ձեռք բերած են այդ պատկերն. այլ 'ի վերայ այսր ամենայնի՝ Հայոց է Տիրամայրս, յազգայնոց և յօտարաց այնպէս ճանչցուած շատ դարերով։ Այլք ոմանք Ս. Ղուկաս աւետարանչի մատանց գործ կը համարին, ուրիշ այլ պատկերաց հետ. այս կարծեաց գլխաւոր պատճառը՝ ես այնպէս կարծեմ թէ են բազմապատիկ հրաշագործութիւնք, զորս հաճել է Աստուածամայրն ցուցանել պատկերիս միջոցաւ՝ ջերմեռանդն հաւատացելոց։ Զի ազգիս մէջ աւանդութիւն կայ, որ պատկերի միոյ հրաշագործ լինելուն գլխաւոր հանգամանքներէն մէկն ևս նկարողին սրբասէր վարքն են։ Առ այժմ սքանչելագործ պատկերիս մասին այսչափովս գոհ լինելով՝ խօսինք. Հայոց եկեղեցեաց վրայ, որք ցարդ կանգուն կան 'ի Կամենից. յետոյ մանր կը խօսիմք այս Հրաշագործ Պատկերիս վրայ։

# Ե

## ԵԿԵՂԵՑԻՔ ՀԱՅՈՑ

Երկին են եկեղեցիք Հայոց 'ի Կամենից. մին փառաւոր և հոյակապ 'ի պատիւ Վերափոխման Աստուածամօր, ուր դրուած կը պաշտի Հրաշագործ պատկերն. երկրորդն Ս. Նիկողայոս անշուք մատուռ, որ այժմ Ռուսաց ձեռքն է։

Առաջինը՝ հին ատեն նուիրեալ է յանուն Աքանչելագործ հայրապետին, և երկրորդն 'ի պատիւ Աւետման Ս. Կուսին։ Ահաւասիկ ինչ կը գրէ այս երկրորդիս մասին հնագէտն Ռոլլէ[1]. «Երեքտասաներորդ դարու Յեացած, որով յառաջ քան զտիրել քաղաքիս (Կամենիցի) Կորիաթովիչ Նախարարաց, որք էին սերունդ Լիթվայի կոմսին. ուշադրութեան արժանի է վաղեմի սրբավայրս, որ շատ ու շատ յեղափոխութեանց ենթակայ եղած է։ Այդ է, 'ի Հայոց յանուն Աւետման կուսին կանգնեալ եկեղեցին, որ այժմ կը կրէ զանուն Ս. Նիկողայոսի։ Կը պակասին մեզ գրաւոր յիշատակարանք, որով չեմք կարող դրականապէս հաստատել անոր ԺԳ դարու լինելը. այլ Հայոց գաղթականութեան միջոցը 'ի Փոտոլիա, և նոյն իսկ

1. Հեղինակս գրուածոց մէջ Անտոնի անունը կը գործածէ, որ է հմուտ հնագէտ Փոտոլիոյ գաւառին. գրած է Ցեղատաճարանք Փոդոլիոյ և Վորդոգեր վերնագրով հատորներ. դարձեալ Գորանովիչ Ռուս երեցը գրած է Փոտոլիոյ Հայոց վրայ։

շէնքին ճարտարապետութիւնը կը համարձակեն
մեզ առ այն։ Առաջին անգամ 1009ին, Ռուս
Նախարարք հրաւիրած են զՀայս 'ի Քիեւ, յօգնու-
թիւն 'ի պատերազմունս ընդդէմ Խրոբրոն Բոլե-
սլաւի, որ այն ատեն արշաւելով կ'ապականէր
նոցա երկիրը։ Հայք 'ի Քիեւ անցան ընդ այլ մա-
սունս Ռուսաց աշխարհին և բնակեցան յԼվով և
'ի Լուցք։

Երկրորդ անգամ զՀայս յօգնութիւն կանչեց,
Թաթարաց հետ մէկտեղ՝ 1280ին Լեւոն Դանե-
լովիչ Գալիցքի, ընդդէմ պատերազմաց դրացի
ազգաց. Հայք այն պատերազմներուն հաստ թի-
կունք եղած են Լեւոն Դանիելովչի. զի իշխանս
երկիրներով վարձատրած է նոցա ծառայութիւն-
ները։ Հայք հաստատած են իրենց բնակութիւնը
Կամենիցի մօտ, այն տեղը՝ որ մինչև ցայսօր Ար-
մեանէ կը կոչուի։ Անշուշտ այս միջոցիս շինել են
նոքա իրենց առաջին եկեղեցին, հին և քարու-
քանդ Պետրիդաւրի (Կամենիցի) աւերակաց վրայ,
Թաթարաց տիրապետութեան միջոց։... Ինչպէս
շրջարնակ ժողովուրդք, նոյն և բնակիչք Արմեանէ
գիւղին, աւանդութեամբ գիտեն՝ թէ գիւղին նախ-
կին բնակիչքը գաղթած եկած են 'ի Հայաս-
տանէ....։ Հետևաբար կարող ենք ասել, որ գիւ-
ղիս նախկին բնակիչքը, թողլով իրենց ազգին անունը
գիւղին ժառանգութիւն, անցած են 'ի Կամենից-
Պետրիդաւրիս, և նորա աւերակաց վրայ շինել են
իրենց բնակութիւնը։ Յայտնի է՝ որ այն ատեն ստուա-
ւոր եղած են Հայք, զի նոցա երրորդ գաղթա-
կանութիւնն 'ի Հայաստանէ 1331ին, բազմացու-
ցած է նոցա թիւը, Կորիաթ իշխանի պայազատաց
միջոց։ Մեք կարծեմք՝ թէ Հայք թէպէտ և սա-

կուռաթիւ, նախ քան զերրորդ գաղթականութիւնը շինած են այս եկեղեցին, թէպէտ և չունենամ յայտնի մասին գրաւոր ապացոյց մի։ Ճանչնալով զՀայս և նոցա խիստ կրօնական սկզբունքը, չեմք կրնար համաձայնիլ, որ նոքա տեղւոյ մի վրայ հարիւր տարի բնակելով՝ չունենան իրենց աղօթատեղին, մինչդեռ այլ տեղուանք նոցա փոքրախումբ ժողովրդոց, ինչպէս Ղրիմու թերակղզւոյն մէջ կամ Կովկասու սարերուն վրայ՝ առաջին շինութիւնքը՝ եկեղեցիք են։ Հուսկ ապա եկեղեցւոյս ճարտարապետական ոճը՝ որոշ և յայտնի ապացոյց մի է նորա խորին հնութեան[1]։

Ձուաձև է շէնքն, ճակատը վերուստ ՚ի վայր ուղղաբերձ հատած. ստուար պատերն անարդիլ յենարաններ ունի, լուսամուտներն սակաւաթիւ, երկու կողմէն մի հատ, փոքրադիր և անմիջապէս կից կամարին, որք աւելի բերդերու որմնածերպի՝ քան պատուհանի ձև ունին։ Ի միջավայրի է եկեղեցին, նորա չորս պտոյտը կան գերեզմանաքարինք, որոց շուրջը որմած։ Եկեղեցւոյս շինողաց միտքը յայտնի կը ցուցընէ այդ որմածը. զի [illegible] պէտք ժամանակին՝ նախատեսեղած են՝ աղօթից նուիրեալ անկիւնս ՚ի բերդ փոխարկելու՝ ուր կարելի լինի պաշտպանուիլ, պատերազմի իրաց անտեղեակ, յարձակող թշնամւոյն դէմ. դպրձեալ այդ եօթնկանգնեան պարիսպն արգելք է թշնամւոյն, որ չի տեսնար ինչ կը լինի պարսպապատին մէջ։ Բարձրաբերձ զանգակատան պակասութիւնը՝ ցոյց է այն սոլր-

1. Թէոդոսիա քաղաքին արգելանոցին մէջ գտնուած Հայոց դատարկ եկեղեցիներուն և այս եկեղեցւոյս շինութեան ոճոյն մէջ՝ շատ մերձաւոր նմանութիւն կը նշմարուի։

կատար երկիւղին, զոր միշտ կրած են և կը կրեն քրիստոնեայք, որոց հարկ կը լինի կանգնել իրենց աղօթատեղին այն աշխարհաց մէջ.... Ամենայն ինչ 'ի տաճարիս պարկեշտին է և աղքատ. չկայ առարկայ մի որ աչքի զարնէ։ Տաճարիս ներքին կողմը նսեմ է և մթին, և այնպէս անձուկ որ հազիւ հարիւր մարդ կը հաւաքի։ Գերեզմաննոցին արևելեան կողմէն եթէ դիտելու լինիս, այնպէս կ'երևայ' որ եկեղեցիս խորշի մէջ մտած է' չերևնալու համար»։ Այս է երբեմն Հայոց Աւետման կուսին և այժմ Ռուսաց Ս. Նիկողայոս մատրան ստորագրութիւնը։

Մեր ազգային հատուկտոր յիշատակարաններէ ևս կ'երևի. համաձայն կարծեաց Ռոլլէի, որ այս եկեղեցւոյս տեղ' վաղեմի փայտաշէն եկեղեցի մի կայ եղել. «Էր եկեղեցիս այս փայտաշէն, վաղուց և հին ժամանակի». ուր ապա, նոյն հիման վրայ, 1597ին քարաշէն կանգնել են Կամենիցի ազգայինք։ 1602ին հրդեհին միջոց' մեծ վնաս կրած է եկեղեցիս. զոր ապա բազում գովեստից արժանաւոր Գ. Միխնոյ երէցփոխանը նորոգել է. ինչպէս եկեղեցւոյս նոյն և եպիսկոպոսարանին երդիքը ծածկելով, և չորս պտոյտի պատը նորոգելով և սպիտակ թաելով։ Այսպէս կը գրէ ՌԾԱ թվ. յիշատակարանը, «Պր. Միխնոյ երեսփոխանն... վերևս ծածկել ետուր Ս. Աւետման Աստուածածնայ եկեղեցոյ. նոյնպէս և քարուկիր եպիսկոպոսարանին վերևս ծածկել ետուր...»,

Մինչև մեր դարուն սկիզբը (1811) այս եկեղեցիս ազգիս կառավարութեան ձեռքն եղած է, իբրև մատուռն կամ գուստր մեծ Վերափոխման եկեղեցւոյն, և Հայ քահանայք եղած են ժամա-

տացք։ Յետոյ տրուած է յունածէս հռովմէադաւան Ռուսաց կամ ունիթից, որք և նուիրած են յանուն Սքանչելագործ հայրապետին, սոքա այսօրինքն ունիթք 1840, մայիսի 15, Ռուսաց օրինաղին հպատակելով, անցած է Հայոց եկեղեցիս Ռուսաց ձեռքը, ուր կը պատարագեն ցարդ նոցա երիցունք։ Այս եկեղեցին նշանաւոր է ազգիս համար այնու ևս, զի գերեզման է սա ազգիս բազմավիշտ հայրապետաց մէկուն. Մելքիսեդեկ Կաթողիկոսի, որ թողլով կաթողիկոսական աթոռը, չորս տարի վարած է յԼվով Թեմակալ եպիսկոպոսի պաշտօն. և ապա գալով 'ի Կամենից վախճանած է, 18 մարտի 1627ին. և թաղուած է այս եկեղեցւոյս մէջ, աւագ խորանին աջակողմը, հիւսիսային պատին ներքև, ուր ցարդ կ'երևի պատին վրայ խորաքանդակ արձանը՝ ննջման ձևով, գլուխը հայրապետական թագ. յաջին աւետարան։ Տապանաքարին չորս կողմը երկաթագիր կաթուղիկոսի անունը անվերծանելի էր, զի ինչպէս մահարձանը՝ նոյն և տապանագիրը ծածկուած գտայ կրախառն կարմրագոյն ներկով։

Աւետման եկեղեցիէն քիչ հեռու, դէպ 'ի մեծ Հայոց հրապարակը, Հայոց փողոցին վրայ կանգուն կեցած է երբեմն Ս. Նիկողայ, այժմ Վերափոխման փառաւոր եկեղեցին Հայոց, որ յիրաւի՝ իւր մեծութեամբ, փառաւոր ճակատովն, վայելուչ և բոլորաձև կաթուղիկէիւ, բարձրաբերձ և լայնանիստ զանգակատամբ, շօշափելի և յայտնի կը ցուցընէ՝ զինքը կանգնողաց ճոխութիւնը, զարգացեալ ճաշակը, որ և միակ յիշատակ և արձան մնացած է Կամենիցի Հայոց մեծազանձ հարստութեան։ Դեռ ևս անտիպ, այլ վաւերական մագաղաթեայ կտակագիր մի, որ վերջերս գտնուած

է Կամենիցի Հայոց դատարանին գրուածներէն՝ կը վկայէ որ այս եկեղեցւոյս տեղը 1398ին, Սինան Խութլու-պէյի որդի հայկազնն շինել տուած է փայտաշէն եկեղեցի մը յանուն Ս. Նիկողայոսի։ Հետաքննական է յիշատակարանս շատ կողմանէ. յայտնի կ'երևի նորա մէջ շինողին զգուշութիւնը, զի չլինի՝ որ մի հայախօս և հայածէս ժողովուրդը օտարանայ իւր հայրենեաց աւանդութիւններէն և կորսուի օտարաց հետ խառնուելով. այս է պատճէն կտակին. «Այս իմ կամաց և հաստատութեան անձին ձեռագիր է, Սինանի որդոյ Խութլու-պէյի, յաղագս որոյ կու տամ առաջի Աստուծոյ զգիրս զայս Լուսաւորչին սուրբ աթոռոյն և նահանգիս առաջնորդացն, ով որ պատահէ, (և այժմ տէր Յովհաննէս արքեպիսկոպոսի ամենայն Ռուսաց և Ազախաց աշխարհի և 'ի ներկայ ժամանակս՝ հոգևոր առաջնորդ է նահանգիս և մեզ). վասն որոյ խոստացեալ էի շինել եկեղեցի յանուն սրբոյն Նիկաւղայոսի սքանչելագործ հայրապետին, և այժմ Աստուծոյ առաջնորդութեամբն յանկ ելեալ կատարեցաւ. և ես ըստ խոստման իմում նուիրեցի Աստուծոյ և Լուսաւորչին սուրբ աթոռոյն և առաջնորդի նահանգիս. և ազատ կու առնեմ 'ի մարմնաւոր տերանց։ Ոչ որ իշխանութիւն չունի որ տիրէ սուրբ տաճարիս, ոչ ես, և ոչ իմ տունն, և ոչ իմ տղայք, և ոչ այլ ազգականք, ոչ հեռաւորք և ոչ մերձաւորք։ Եւ ով որ յանդգնի և տէրութիւն կամենայ առնել, սուտ է և անիրաւ յամենայն դատաստան, և տուգանս տացէ հոգևոր և մարմնաւոր դատաւորաց, և տացէ զանէծս զԱստուծոյ և զսուրբ առաքելոցն և հայրապետացն։ Բայց միայն այս՝ որ թէ պատահէ՝ որ

յիմ զաւակացն և կամ յազգականացն քահանայ լինի, և Լուսաւորչին հաւանութեամբն լինի, և Լուսաւորչի նա աթոռոյն հնազանդ լինի, նա հանց բաժին առնու 'ի յեկեղեցւոյն մտացն, որպէս բնական երէց մի, այլ ոչ տէրութիւն առնէ եկեղեցւոյն։ Վկայութեամբն Աստուծոյ և արժանահաւատ վկայից որ աստ պատահեցան։

Գրեցաւ գիրս 'ի Թվիս Հայոց (տեղի կնքոյ) ՊԽԷ »։

Եկեղեցաշէն Պ. Սինանս գնած և ընծայած է Ս. Նիկողայոս եկեղեցւոյն գեղեցկագիր և ընտիր ճաշոց մի, որ ցարդ պահուած է եկեղեցւոյս դիւանին մէջ։ Ճաշոցը գրուած է 'ի Թուականութեան Հայոց ՁՂԸ, յաշխարհն Հոնաց ('ի Ղրիմ), յերբեմն հոյակապ և 'ի հռչակաւոր մայրաքաղաքն Սուրխաթ, (այժմ ողորմելի գիւղաքաղաք, Հին կամ Էսկի Ղրիմ կոչուած), ձեռամբ Ստեփանոս երիցու։ Ճաշոցիս կրկին հին յիշատակարաններէն վերջը, (առաջինը գրութեան ճաշոցին, երկրորդը՝ Սինանին նուիրատուութեան), մաքուր՝ բոլոր գրով գտայ գրուած. «Ցամի Տեառն 1756, օրն յունիսի 28, սկսաւ շինումն եկեղեցւոյս Կամենիցոյ Հայոց Ս. Նիկողայոսի, և աւարտեցաւ յամի Տեառն 1767, օրն առաջին յուլիսի, շինումն նոյնոյ եկեղեցւոյն։ Ցամի Տեառն 1767 օգոստոսի եղև բերումն Թափօրով հրաշագործ պատկերին Երանուհոյ Կուսին՝ 'ի նոյն եկեղեցին »։

Ժամանակ անցնելէն վերջը՝ Սինանի շինել տուած եկեղեցին նեղ եկել է, այն պատճառի՝ ոմն Հրիհոր՝ որդի Զատկի « յոյժ քրիստոսասէր » ընդարձակել է. « վասն զի փոքրագոյն էր եկեղեցիս այս, քանզի միշտ տեսանելով եթէ ոչ գոյր տեղի բա-

ւական ժողովրդեանս 'ի միջի սորա, եդ հիմունս սորա, այլ մեծագոյն..., Գր. Հրիհորն և տիկինն իւր Թանի Ազիզքոյ իւրեանց սեպհական ընչիւք, և արդեամբ և քրտնաջան վաստակօք... հրաշափառագոյն մեծացուցին և պայծառացուցին Ս. Թուին Հայոց», 'ի 1551: Երեսուն տարի վերջը Գ. Միխնոյ գործունեայ երէցփոխանը, ընդ Կուլաֆ տիկնոջ և 'ի ձեռն այլ բարերարաց՝ շատ աշխատած է եկեղեցւոյս պայծառութեան մասին. Տաճարիս գանձատան մէջ տեսայ վայելչաձև սկիհ մի ՌԼ (1581) Թուականով, որ Միխնոյի անունը վրան կը կրէր: ՌԾԲ Թուին գրուած յիշատակարան մի այսպէս կը խօսի. «Աստուածային առհնութիւն և ողորմութիւն հանապազ եղիցի վրայ Գր. Միխնոյ երեսփոխանին... Սուրբ Նիկողայ եկեղեցւոյ վրայ զճակատն շինել ետուր ա փառաւոր երևելի և գեղեցկաշէն զշիդ. և 'ի վերայ ոսկէզօծ խաչ կանգնեց... դարձեալ Ս. Նիկողայ տաճարի վրայ կայր մի մեծ և բարձրադիտակ քումպէթ և առաւել ծանր էր, եկեղեցւոյ կամարի վրայ. զոր տեսեալ զայն Գր. Միխնոյ երէցփոխանն հրամայեաց իջուցանել զայն քումպէթն. և դարձեալ երրորդումն շինել ետուր՝ այլ փոքրագոյն և գեղեցիկ շինուածով. և բոլորովին պատուհան էր և կամարակապ արար. և վերևս ծածկեց սանով և նկարել ետ ոսկով և 'ի վրայ ոսկէզարդ խաչ կանգնեց...»: Շատ երկար կը լինէր եթէ արդիւնաշատ երէցփոխանին բոլոր աշխատութիւնքը յիշէինք:

1672ին Մէհմէտ Դւ. Կամենից առած ատեն՝ Հայոց շատ տներ նիւթ կամ ճարակ կրակի եղած են: Նոյն միջոց քանդուած է Հայոց Վերափոխման

մայր եկեղեցին, որ հրապարակին միւս ծայրն եղած է, ընդդէմ Ս. Նիկողայ եկեղեցւոյն։ Թրքած տիրապետութեան միջոց քանդուած են Ս. Աւետման և Ս. Նիկողայոս եկեղեցեաց դռներն, և պատուհաններն նուէթ կրակի եղած։ Այժմեան Աստուածամոր Վերափոխման եկեղեցին՝ ոչ Սինանին շինածն է և ոչ Հրիհորի և ոչ Միխնոյի հրաշափառ և պայծառ զարդարածը, այլ ինչպէս կը վկայէ հին ճաշոցին նոր յիշատակարանը. ԺԸ դարու վերջին կիսուն մէջ շինուած է, հանդերձ իւր լայնանիստ զանգակատամբ։ Մեծամեծ հրդեհներ և թշնամեաց յարձակմունքներ՝ այնպիսի զօրաւոր դաս եղած են Կամենիցի հայկազանց՝ որ ստիպուած են ներկայ քարակարկառ շէնքը շինել որ կարենայ դիմանալ հրդեհի դէմ, և թշնամեաց յարձակմանց։ Զի ինչպէս ճակատը՝ նոյն իսկ ամբողջ շէնքն ամբարտակ մի է սրբատաշ քարերով շինած և կրով մածուցած։ Քարէ սանդուխներով վեր կ'ելնըցուի, սիւնազարդ ճակատը, ուստի կը մտնայ եկողն ընկարձակ գաւթի մէջ որ սրահի ձևով զեկեղեցին երեք կողմանէ կը պատէ։ Եթէ շէնքս աւելի հին լինէր, կարելի էր ենթադրել որ այդ սրահը իբրև մատաղատուն շինուած լինի։ Ըստ քերանացի վկայութեան Բոլլէ հնախօսին այդ ընդարձակ սրահը՝ հեռաւոր տեղերէ եկող ուխտաւորաց ապաստանարան շինուած է, ընդդէմ արևու և անձրևի. վասն զի ընդ համօրէն Լեհաստան հռչակեալ են հրաշք Աստուածամօրս Հայոց՝ որ կը պաշտի այս սուրբ Տաճարիս մէջ. այն պատճառաւ ոչ միայն հարուստ ունևորներ ուխտադիր կը լինին առ Տիրամայրս, այլ և չքաւորներ ևս, որք հեռաւոր տեղերէ կու գան, որոց ծախք հարկաւոր է։

Այս լայն տրահը մեծամեծ պատուհաններ կը լուսաւորեն. յատակը՝ ինչպէս և եկեղեցւոյն՝ մեծ և տափարակ քարերով սալած է։ Տրահիս միջէն երեք մեծամեծ դռներով եկեղեցին կը մտցուի հարաւային դրան մօտ, պատին վրայ մարմարիոնի վրայ արձանագրութիւն մի կայ, որ է շիրիմ Ովանէս Թաքաղամեան անունով Երեւանցի մեծ վաճառականին, որ վախճանած է ՌՃԿԶ Թվ. (1717). Տրահին արեւելեան պատին վրայ, հարաւային դրան անմիջապէս մօտ խորան մի շինուած է, որոյ պատկերը կը ներկայացընէ զծնօղս Ս. Աստուածածնի, Յովակիմ և Աննա, և 'ի միջի նոցա մանկահասակ Կոյսն Մարիամ. Թէպէտ և յիշատակարան կամ Թուական չգտայ պատկերին վրայ, այլ ամենահին է պատկերը, հայկական նկարչի գործ, հաւանական է որ Հայաստանէ բերուած լինի։ Ճակատի դրան վրայ, դէպ 'ի փողոց, գոգաձևի մէջ դրուած է պղնձաձոյլ ոսկէզօծ մարդաչափ մեծութեամբ Անարատ յղութեան կուսին արձանը, որ շատ վայելչագեղ է. իսկ վարով սիւներուն վրայ դրուած են երկուց հայրապետաց կիսանդրիք, որք անշուշտ կը ներկայացընեն զԼուսաւորիչ և զՍքանչելագործ հայրապետները, պաշտպանք եկեղեցւոյս. ինձ յարգի արձաններ չերևցան։

Եկեղեցւոյս մէջը ընդարձակ է. վեց խորան ունի. մեծավայելուչ է աւագը, որոյ խաչկալը Թէպէտ փայտաշէն է, այլ այնպէս ճարտար ներկած՝ որ չի տարբերիր մարմարիոնէ։ Սեղանէն վեր՝ պատին մէջ գոգաձև շինուած է ոսկէզօծ, յորում դրուած է Հրաշագործ պատկերը, բազմաթիւ նուէրներով զարդարուած։ Գոգաձևէն վեր կայ Լուսաւորչի մեծ պատկեր մի՝ հայրապետական

ձեւով, որոյ տարազը աւելի արեւմտեան է քան թէ հայկական, Լուսաւորչի աջէն ծունր դրած են Տըրդատ թագաւոր եւ Աշխէն տիկին։ Այդ պատկերին օրինակը կայ Խարասու Ս. Լուսաւորչի եկեղեցւոյն մէջ, այլ բունը շատ գերազանց է քան զգաղափարը։ Ունի եկեղեցիս բարձր վերնատուն մի, յորում վայելուչ կը հնչէ ներդաշնակ երգեհոնն։ Երկարօրէն խօսեցանք երկու հայկական եկեղեցեաց վրայ. վասն զի արդէն հայ ճանապարհորդի համար այդ եկեղեցիքն են քաղցր յիշատակ ազգութեան, մինչդեռ նոցա ծուխն եւ ժողովուրդք օտարացած են եւ այլախօսք։

## Ձ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑՔ

Ազգային պատմիչք որոշ չեն նշանակած ազգիս 'ի Ռուսաստան, 'ի Լեհաստան եւ Ղրիմ գաղթման ժամանակամիջոցը։ Թէպէտ եւ 'ի Թէոդոսիա գրուած Յայսմաւուրք[1] մի գոհացուցիչ կերպով կը

1. ԺԷ դարուն մէջ մագաղաթեայ Յայսմաւուրք 'ի Կաֆա գրուած։ Այս Յայսմաւուրքն Նոր Նախիջեւանցիք 1776 ին Ղրիմէ գաղթած միջոցնին հետերնին տարած են։ Վ. Հ. Մինաս Բժշկեան՝ Նախիջեւանու Նեսվիթա գիւղին մէջ ձեռք ձգելով այդ Յայսմաւուրքը օրինակած եւ ապագրած է յիւրում Ճանապարհորդութեան 'ի Լեհաստան այդ թանկագին յիշատակարանը. Պօտմանեան Անեցւոյ Քեֆէի վերնագրով. տես 'ի Ճանապարհորդութեանն, էջ 335։ Այս տարի (1884) մայիսի մէջ գնալով 'ի Նեսվիթա գիւղը՝ խնդրեցի տեսնալ այդ Յայսմաւուրքը, այլ 'ի զուր. զի հոն չէր։ Ցաւալի է եթէ ձեռքէ ձեռք անցնելով կորսուի այդպիսի հազուագիւտ յիշատակարան։

պատմէ Թաթարաց Զարմա - ղանի Անեցւոց տուած կոտորածը, և նոցա փախուստը յԱխսարայ, որ էր 'ի մէջ Աժտերխանի և Ղազանի. և անտի՝ յԱխսարայէ 'ի Թէոդոսիա չուելը Անեցւոց 1330ին։ Սակայն օտարաց՝ նոյն իսկ և ազգիս յիշատակք՝ այդ աշխարհաց մէջ ցիր և ցան, յայտնի կը ցուցընեն՝ որ քան զայդ Թուականը շատ առաջ եղած են գաղթականութիւնք 'ի Հայաստանէ 'ի Ռուսաստան 'ի Լեհս և 'ի Ղրիմ։

Քարամզին[1] Ռուսաց պատմահայրը կը գրէ՝ որ Ղազան քաղաքէն 90 վերստ հեռուն, երբեմն Բուլղար կոչուած քաղաքին մէջ՝ գտնուած են հայ արձանագրութիւնք. այժմ այն քաղաքին տեղ կայ Սիլիթրեանը անունով քաղաքը։ Օտեսայի Հնագիտական Յիշատակարանաց Ե հատորին մէջ, 'ի Ժ դարու կ'ըսուի Հայոց գաղթականութիւնը Սև ծովուն և Վոլկա և Տներեր գետոց եզերաց վրայ։ Հին և Թերակատար յունարէն գրուած Յայսմաւուր մի կը գրէ որ 1292ին 'ի Սուտաղ Տաւրիոյ բնակող Հայք՝ համօրէն քրիստոնէից հետ 'ի միասին տօնած չեն Զատիկը, այլ մոլորած են (Ծռազատիկ)։

Հնագէտն Անտոնի, ինչպէս յիշեցինք քիչ առաջ կը գրէ՝ որ Հայոց առաջին գաղթականութիւնը 'ի Հայաստանէ դէպ 'ի Ռուսաստան պատահած է 1009ին, հրաւիրեալ 'ի Նախարարաց Քիեւի յաջակցութիւն ընդդէմ պատերազմաց Խրոխտն Բոլեսլաւի՝ որ յարձակմամբ ոտնակոխ կ'առնէր նոցա երկիրը։ Ի 1062 դարձեալ Քիեւի Նախարարն Թէոդորոս Դէմետրեան (Տիմթրիեւիչ) յօգ-

1. Ե հատոր Օտեսայի Հնագիտական Յիշատակարանաց։

նութիւն կը կոչէ զՀայս։ Հայք նմա հաստատ թիկունք կը լինին 'ի պատերազմունս ընդդէմ Փոլոկցի իշխանաց։ Պատերազմէն վերջը Թէոդոր համոզած է զՀայս գալ 'ի Ռուսաստան, շնորհելով շատ արտօնութիւններ։

Երբ այդ երկիրներուն կը տիրեն Լեհք, ըստ վկայութեան փիտոռ Կարմէնիանի և Ասսոնիի Նոցա ևս վաւերացընեն Հայոց սանձնաշնորհութիւնները։

1280ին Լեւոն Դանիէլովիչ Կալիցիոյ նախարարը զՀայս Թաթարաց հետ 'ի միասին օգնութեան կը կանչէ դրացի ազգաց հետ ունեցած պատերազմաց միջոց. և ապա մեծ հողերով կը վարձատրէ զՀայս։ Անշուշտ Կամենիցէ 10 վերստ հեռաւորութեամբ գտնուած Արմեանէ և Արմեանքի գիւղերը՝ նոյն ատենէն այդ անունները կը կրեն։

Ջարմա-ղանի արշաւանօք բոլորովին քարուքանդ կը լինի Անի, և նորա ոստանիկ բնակիչքն՝ « Թողլով զոսկէզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտըս, զվանորայս և զեկեղեցիս աւեր, չուեալ եկին՝ որպէս փախստական 'ի յԱխստղայ, որ է 'ի մէջ Հաշտարխանու և Ղազանու, ոմանք գնացին 'ի Ճուղայ, ոմանք 'ի Վան և այլք 'ի Սիս »։ Ախստարայի գաղթականութիւնը հոն ևս հանգստութիւն չգտանելով Թաթարաց ձեռքէն, « Ցղեն 'ի Ղրիմ առ իշխանն Ջինիւիզաց, որ բնակէր 'ի մէջ Ֆռանկ-Հիսարին Ֆէոդոսիու, ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէոդոսիու, ելեալք 'ի յԱխստարայէ իշխանք և հասարակ ժողովուրդք վառեալք զինու, պատերազմելով ընդ Թաթարացն, ճեղքեալ գան 'ի Ղրիմ, և բնակին 'ի Ֆէոդոսիա։ Ի Կազարաթ[1] և

1. Կազարաթ Հայոց մեծ աւան եղած է Հին-Ղրիմու և Սուդաղի մէջ։

'ի Սուրխաթ[1] և 'ի կողմանս սոցա ... յայնժամ զօրացաք մեք և բազմացաք և շինեցաք զգիւղս և զգաւառս իշխանք և ազնուականք. 'ի Ղարապազարէն սկսեալ մինչև 'ի Սուրխաթ և 'ի Թէօդօսիա, 'ի լերինս և 'ի դաշտս լի արարին վանօրէիւք և եկեղեցեօք, շինեցաք տունս 100,000 և զեկեղեցիս 1000, և 'ի ահէ Հոնականաց պարապեցին 'ի քաղաքին Թէօդոսիա »: Մեզ այնպէս կ'երևի որ այս 'ի Ղրիմ գաղթող բիւրաւոր հայկազանց մի մասն, այսինքն 40,000 հոգի, գործածելու յարմար անձինք, կամ պարզ զրուցելով՝ զօրականք. Ղրիմէ դէպ 'ի հիւսիս դիմած են, ինչպէս յԱխսարայէ մինչև 'ի Ղրիմ պատերազմելով և ճեղքելով Թաթարաց խումբերը՝ կու գան, նոյնպէս աստի այսինքն 'ի Ղրիմէ մինչև ցԿամենից՝ նոյն թշնամեաց դէմ սուր գործածելով կը հասնին: 1331 ին կը դնէ Անտոնի Հայոց մեծ գաղթականութիւնը 'ի Կամենից: Յարմար միջոց կը գտնան Հայք՝ հայրենեաց (կործանեալ Անւոյ) քանդեալ և կործանեալ եկեղեցեաց և պալատից վրէժը հանելու 'ի տնաւեր Թաթարաց. կը խառնուին Կորիաթովիչ իշխանաց զօրախմբին մէջ և հալածելով զԹաթարս՝ բնակութիւն կը հաստատեն Կամենիցի մէջ. և տակաւ պատերազմական սուրերն վաճառականութեան տումարներու փոխելով՝ ձեռք կը զարնեն փոխանակ Անւոյ զԿամենից շէնցընել: Կորիաթովիչ իշ-

1. Սուրղաթ՝ այժմեան Հին–Ղրիմն է. ոմանք նմանաձայնութենէ շփոթելով զՍուտաղ կը կարծեն, որ սխալ է. Սուտաղի հին անունը՝ 'ի Յունաց է Սուգտէա, 'ի Ճենովացւոց՝ Սօլտայա (Soldaja), մեր ձեռագրաց մէջ կայ Սուդաղա գրուած:

*խանաց այդ միայն հարկաւոր էր, որ 'ի Թաթարաց սրբեալ աշխարհքը նորէն շէննայ, ուստի կը շնորհեն Հայոց մեծամեծ արտօնութիւններ: Գէորգ Կորիաթովիչ իշխանին Կամենիցեաց տուած պարգեւագրին ներքոյ՝ Հայոց անուններ կան*[1]*: Այլ հաւանական է՝ որ այդ հայկազունք առաջի գաղթականացմէ լինին: Հայք ինչպէս 'ի Ղրիմ. նոյնպէս և 'ի Կամենից կը զօրանան կը բազմանան, կը շնուն քաղաքը մեծամեծ շէնքերով, կ'ամրացընեն բերդերով, ազգային առանձին դատաստանով. իսկ վաճառականութեամբ ոչ թէ միայն Կամենից քաղաքին, այլ բոլոր բովանդակ Փոտոլիոյ և անդր ևս քան զՓոտոլիա կը տիրեն:*

*Երբ Փոտոլիա Լեհաց իշխանութեան ձեռք կ'անցնի, Հայոց առաջին գործը կը լինի՝ իրենց արդէն ստացած առանձնաշնորհութիւնքը վաւերացընել տալ Լեհ Թագաւորաց. որոց առաջինն կը լինի Վլադիսլաւ Եագելլոյ: Լաւրենտիոս Մարչինսքի*[2] *16 Լեհ արքայից ստորագրութիւնք կը հաշուէ, Հայոց զանազան ժամանակ տրուած արտօնութեանց ներքոյ:*

*Ա. 1496ին խնդրած են Հայք Լեհաց Յովհաննէս Ալբերտոս Թագաւորէն հաստատութիւն ազգային առանձնաշնորհութեանց. արքայն՝ 'ի նկատի ունենալով որ Կամենից սահմանածայր քաղաք է և շատ անգամ զրկանք կրած 'ի թշնամեաց, կը հաստատէ Հայոց արտօնութիւնքը, և կը հրամայէ՝ որ Հայք 'ի մեծի և 'ի փոքու՝ ազգային դատաս-*

1. Հայք 'ի Փոտոլիա, Դորոնովիչ ռուս երիցու:

2. Աշխարհագրական, Տեղագրական և Պատմական տեղեկարան կոչուած գրքին մէջ:

տանին ենթարկուին և չդիմեն այլազգի դատաւորաց։

Բ. 1502ին, Կրակովի մէջ Աղեքսանդր Թագաւորն կը վաւերացընէ Հայոց ունեցած արտօնութիւնքը 'ի նախնեաց իշխանաց և արքայից։

Գ. Հինգ տարի վերջը, 1507ին Սիգիզմունդ Թագաւորն նոյնպէս կը հաստատէ զՀայս իրենց առանձնաշնորհութեանց մէջ։ Եւ այսպէս յաջորդաբար մինչև ց1766, տասնուվեց Թագաւորք արտօնութիւններով կը ճոխացընեն զՀայս, իրենց աշխարհին օգտակար ծառայութեան փոխան. այնպէս որ շատ աւելի առանձնաշնորհութիւն կը վայելեն Հայք քան զԼեհս, և այլն։

Հայք այս տուած առանձնաշնորհութեանց պտուղը ժամանակին կու տան, որով ինչպէս 'ի պատերազմական յասպարիզին սկզբան, ապա 'ի վաճառականութեան արուեստին, նոյնպէս յետոյ ասպետականութեան և ազնուականութեան մէջ՝ ճոխ և վայելչակենցաղ կը հանդիսանան։ Առաջին գաղթականացմէ ոմանք տուած են ասպետական պատիւ, և որոց ցեղը հին ազնուականաց կարգը մտած է, որպիսիք են Թէոդորովիչք և Սոլթանք։ Դարձեալ նշանաւոր եղած են՝ Աւագք, Սեֆերովիչք, Շատպէյք և Խրիսթոֆովիչք՝ ցեղովին։ Աւագամեծար քաղաքացեաց կարգն անցած են Ակոբսովիչք և Աւգոստինովիչք և Ակսենտովիչք, Պոկտանովիչք և Պօղոսեանք (Պօկուշք), Բուտագովիչք, Եանովիչք[1] (Յովհաննիսեանք), Տօնա-

1. Այդ անուանի տոհմին շառաւիղ Պ. Թէոփիլէ Եանովիչ, շատ մարդասիրութիւն ցըցուց մեզ. թէպէտ հայերէն չի խօսիր, այլ կը խոստովանի որ ինքն իսկապէս հայ է։

ներքոյ։ Օդոյն անհարթութեանց դէմ եւ՝ ճանապարհի լաւ պատրաստութիւն չունենալով, խոհեմութիւն համարեցայ ուրիշ յարմար միջոցի թողուլ ի Կամենից ճանապարհորդութիւնս, և ուղղեցի ընթացքս յՕտեսսա և անտի 'ի Թէոդոսիա։

Հարկ եղաւ սպասել այլ ևս եօթը տարի և ահա այս ամառ (1883) ամսօրեայ արձակուրդ և անցագիր, միանգամայն և յանձնարարական նամակ մի տանելով, առ տեղական վարչութիւնս 'ի Կամենից և 'ի Քիէվ, 'ի կողմանէ Արքունի հնագիտական ընկերութեան Օտեսսայի, օգոստոսի ամսոյն 14 ին, երեկոյեան շոգենաւով ճամբայ ելայ 'ի Թէոդոսիայ՝ յուխտագնացութիւն առ Տիրամայրն Հայոց 'ի Կամենից։

Օգոստոս 14 թէպէտ Ռուսաստանի համար աշունք է, այլ Ղրիմու համար դեռ ամառն. սակայն այն օրը՝ կարծես Ռուսաստանի աշունք կը շնչէր. խոնաւ էր օդն, մութ և անլուսին գիշեր, աստղերն՝ իբրև աղօտ լապտերներ շարուած էին երկնից կապոյտին վրայ, և 'ի խոնարհ գէպ 'ի հորիզոն՝ քաղաքիս տանց ճրագներուն խառնուելով, շարունակութիւն կը գործէին երկնաւոր լոյսերը՝ երկրաւորաց, և երկոցունց անդրադարձութիւնը 'ի ծովուն՝ երրորդ շարք մի էր լուսերու. սակայն և այնպէս՝ այս երեք կարգ լոյսերն միանալով՝ չէին բաւական գիշերուան մթութիւնը ոչ միայն փարատելու, այլ և ոչ մեղմելու։ Մութ գիշերն՝ մութ մութ խորհուրդներ կը յարուցանէր մտացս մէջ։ Մերձաւորաց, բարեկամաց հրաժարականս տալով՝ առանձնացած էի նաւուն բարձրաւանդակին մի կողմը, երևակայութեանս մէջ կը պատկերանային բազմաթիւ Անեցի գաղթականք, որք իբր թէ Թէոդոսիոյ ափանց վրայ

վխտային. նոցա համար պատրաստ մակոյկները, կարծես ափանց մօտ կ'երերային անհանդարտ կոհակաց վրայ: Այս աշխարհն՝ որ ասկէ ութ դար առաջ Թատր մի եղած է ազգիս զանազան ողբերգութեանց, սոյն այս ալիքներն (կ'որոճայի մտօք) իրենց շալակաց վրայ առած բիւրաւոր Անեցիք, տարած ձգած են 'ի հեռաւոր՝ հիւսիսական աշխարհներ: Հաւանական է որ մեծ մասն Անեցի գաղթականաց նոյն ճամբով անցել գնացել էին, որով ես երթալ մտածեր էի:

Բայց ո՞րչափ տարբերութիւն այժմեան և դարերով առաջ Անեցւոց հատած ճանապարհին մէջ: Ո՞ւր այն ատեն շոգեկառք... բազմաթիւ ժողովուրդ մի հուրէ, թուրէ, ժաժէ՝ փախստական, յոտարութենէ յոտարութիւն, հետերնին առած գերեզմանաց խաչքարինք[1] 'ի յիշատակ անգին վաղամեռիկ սիրելեաց, եկեղեցեաց դռներ, հրաշագործ Զարխափան, Հաձկատար, Ուխտակատար Աստուածամօր պատկերներ, կ'երթան և չգիտեմ ո՞ւր...: Շոգենաւն երրորդ անգամ սուլելով՝ նաւամատոյցէն կը բացուէր դէպ 'ի ծով, այլ աչացս կամ լաւ ևս մտացս առաջ, դարձեալ նոյն հին Անեցւոց ստուերներ կը տարուբերէին: Ծերք, պառաւներ՝ գաւազաններու վրայ կռթնած, շատ մանկամարդք և բազմաթիւ օրիորդք՝ «Առաւօտեան լուսնի նման յօնքերով[1] », և այլ շատ երիտասարդք նորատէգ մօրուօք՝ «Սիրականթեղ

1. Թէոդոսիոյ հնութեանց թանգարանին մէջ քառակուսի յաւալիս խաչքար մի կայ 837 տարուան յորում խաչին պատուանդանին վրայ, կայ փորագրուած. Բարեխաւս է տէրք Նշանս Գրիգորին և իւր ծնողացն. ՆՀՋ:

և լուսափայլ աչերով», որը կը թիավարէ, որը բեռներ կը կրէ...։ Առաջ գնացել էր նաւն, մութ-կապոյտ՝ այլ աստեղազարդ երկինքն վերև, սեւ-կապուտակ ծովն ստորև. Ճանապարհորդք ամէնքն իրենց ննջարանները քաշուած, իմացայ որ ինձ ևս քաշուելու ատեն է. զի խոնաւ օդն կրնար վնասել։ Ելայ նստած տեղէս., աչացս հանդիպեցաւ հիւսիսակողմն՝ երկնից վրայ մեծ արջ համաստեղութիւնն, որ անտարբեր՝ աղօտ լոյսը կու սփռէր ծովուն երեսը. անտարակոյս ասկէ ութ դար առաջ սոյն այս համաստեղութիւնն իւր տեղը կեցած դիտած էր մեր Անեցւոց գաղթը։

Դու ինձ պատմէ երկնից Սայլիկ [1],
Մըտքէս ասի, կ'աղաչեմ քեզ.
Թուի որ այդպէս թառած երկինք
Ի ծով, ցամաք լոյս կու սըփռես.
Անշուշտ՝ տեսար, առաջ ութ դ.ար,
Ծովուն երես երեր–տատան,
Մեր Անեցի քուրերն ու աղբար,
— Ո՞ւր գընացին կամ ի՞նչ եղան։ —
Դուն լըսեցիր նոցա գանգատ,
Անէծք և իղձք, լացն, հառաչանք,
Մըրմունջ սըրտից, երգ սիրակաթ.
— Ասա, դու ինձ մի խօսք միակ. —
Արդեօք նոցա սըրտին խորեր,
Դեռ կա՞յ նըշան մի հայութեան.
Թէ չէ. աւա՜ղ, բնաւ անտարբեր
Բոլորովին օտարացա՞ն։

1. Ռամկական ղրիմեցի երգ։

Դուն լըսեցիր անշուշտ շատ հեղ
Նոցա բերնէն Անի անուն.
Եւ անըզգա՛յ, դու Եօթնաստեղ,
Եղար նոցա սըրտցաւերուն։
Օտար երկիր թափառական,
Մեր եղբայրներ, անտուն, անտէր,
Ի ծով, ցամաք հալածեցան,
Դուն նայեցար միշտ անտարբեր։
Շատ պառաւներ, ա՛յլ շատ ծերեր,
Տեսողք Անի շահաստանին,
Մինչև իրենց վերջի օրեր,
Անին մտքէ չըհանեցին։
Հարկաւ նոքա երբ յիշէին
Այս մեծ քաղաքըն սիգապանծ,
Խոր կը խոցուէր հայ սըրտերնին,
Այլ դու մնացիր միշտ անըզգած։
Այլ ես ըզքեզ վըկայ կ'առնում,
Աստղ անբարբառ և անըզգայ,
Ականատեսդ մեր ցաւերուն՝
Կեցիր քո տեղդ, մինչ ատեն գայ՝
Որ քու տեսած այդ թըշուառ ազգն,
Յօտարութեան ցանած ցըրուած,
Մէկ մ'արթըննայ ճանչնայ իւր յարգ,
Եւ նորոգի լուսով ուսմանց.
Այն ժամանակ դարձեալ այդպէս
Դուն անտարբեր երկինք թառած
Նայէ՛, լինիս ականատես
Յուսանորոգ ազգիս փառաց։

Սոյն և այսոր նման այլ մտածութիւնք գիրար կը յաջորդէին մտացս մէջ. մինչ քաղցրիկ քունն վերջ տուաւ ցնորից երևակայութեան։

# Ա

## ԵԱԼԹԱՅԷ ՄԻՆՉԵՒ ՑՕՏԵՍՍԱ

Առաւօտը մութնոլուսին՝ զմեզ կրող նաւն հասաւ Ղրիմու հարաւային ափանց նշանաւոր քաղաքը Եալթա[1], որ ամարանոց է արքայից Ռուսաց, ուր կը յաճախեն ամէն տարի հազարաւոր օտարականներ՝ կորուսեալ առողջութիւննին վերըստին ստանալու, բարեխառն և ջերմին կլիմայիւ և առողջարար խաղողով։ Երբ ահագին շառաչմամբ խարիսխ ձգեց նաւն ծովածոցոյն մէջ, իսկոյն վեր ելայ՝ վայելելու Եալթայի ակնապարար տեսիլը։ Սա՝ յիրաւի իւր գեղեցիկ ծոցովն մշտադալար լեռներով, գեղեցկաշէն ապարանքներով և ճենացի վերնատուններով, կրանիտեայ թումբերով, և այլն, բնութեան և արուեստի սակաւագիւտ տեսարանաց մին կ՚ընծայէ. Նորա ՚ի ծովէ տեսիլն աննման է։ Քաղաքն թեթև մշուշով քօղարկուած էր, գունդագունդ ամպերն իբրև ասրաբեր գառանց խումբեր, քաղաքին կռնակը բարձրացած անտառին ծառոց գագաթը մակաղած էին։ Ծովը թէպէտ բոլորովին խաղաղ, այլ ոչ խոր յատակն արգելք էր մեծ նաւուն մօտենալու նաւամատուցին։ Նաւուն այս

1. Նշանակելու կ՚արժէ՝ որ Եալթա փոքրիկ քաղաքը՝ երկոտասաներորդ դարու Նուպիացի Իդրիս անունով աշխարհագիրն կը կոչէ Ճալիթա անունով։

դրիցս մէջ ճանապարհորդք տեսնել զգալի կերպով կրնային վայելել բնութեան գեղեցիկ տեսարանը։ Արեւելք բոլորովին մանիշակագոյն հագուած էր. ծովուն երեսն՝ կարծես նոյն գունով երերուն մեծ կապերտ մի փռուած։ Երկինք և ծով՝ մեծ պատրաստութեան մէջ էին, համարեա թէ մեծապատիւ հիւրի մի գալստեան սպասելով. սակայն ճշմարտապէս կ՚արժէր այդ պատրաստութեանց՝ գալու հիւրն. արեւելք տակաւ կարմիր, արտաշէկ և փայլուն գոյն առաւ, քիչ ատենէն հրոյ ճառագայթներ երեւցան ծովուն երեսը, ճանապարհորդք ստիպուեցան կրկնադիտակնին վար առնուլ։ զօրաւոր և հրաբորբոք աչք մի՝ կարծես նայեցաւ հորիզոնէն՝ որ շուտով սկաւառակի ձև առաւ. տեսնալու բան էր միգին և մշուշին հալածական փախչիլը, ծառոց վրայ մակաղեալ ամպոց արագ արագ 'ի վեր բարձրանալը։ Եալըթա՝ փոքրիկ քաղաքն՝ հիանալի տեսքով, խաչապսակ եկեղեցիներով, խումբ խումբ կոնաձև նոճիներով, դալարայեղց գիւղատուններով, ձեմելիքներով, իբրև մեծ ափսէի մի շարուած յախճապակի նաշխուն գաւաթներ, յայտնի և պայծառ երեւեցաւ։ « Ի՞նչ գեղեցիկ տեսարան, որպիսի՜ գեղապատկեր », կամայ և ակամայ, մեքենաբար կը գրուցէին ճանապարհորդք, մանաւանդ 'ի միգապատէն և 'ի հեռաւոր հիւսիսոյ եկաւորք, որոց համար նոր և անսովոր էր այս տեսիլս, որք չեն տեսած ո՛չ յՕսկեղջերէ դէպ 'ի Պոլիս տանող հիանալու նեղուցը, և ո՛չ Նէապոլսոյ աննման ծոցը։ Մինչև առաւօտեան ժամը ութ մնաց շոգենաւն 'ի Եալըթա, բեռ տալով և առնըլով, և ապա մեկնեցաւ 'ի Սևաստապօլ՝ ծովափէն քերելով։

Տակաւ Եալըթա եւ Եալայով՝ մանրանկար պատ-

կերի երևոյթ կը ստանար. իսկ առաջնիս յերևան կու գային Լևատիոյ արքունի ապարանք, Օրիանտա՝ Կոստանդին Նախարարին Գիւղատունն, Ալուփքա՝ Վորոնցով (Ազուաւեան) կոմսին կրանիտեայ դղեակն, և այլոց մեծամեծ իշխանաց ամարանոցք. մինչև որ հասանք ծովոմ Պայտառ կոչուած կրճին կամ լերանց անցքին ստորոտը։ Նշանաւոր է այս տեղս. շատ ճանապարհորդք 'ի Տաւրիայ գալով, ծովու ճանապարհին կը նախադասեն ցամաքի երկար ճամբան 'ի Սևաստապոլէ Եալըթա անցնելու, միայն այս կրճէն անցնելու հաճութիւնը զգալու համար։ Վասն զի խիտ առ խիտ անտառները քարուխիճ և օձապտոյտ ճանապարհով անցնելէն վերջը, երբ կը հասնի ճանապարհորդն այս Պայտառ կամ Դուռն Պայտառի կոչուած անցքին բերան, յանկարծ առաջը կը բացուի համատարած ծովը, մէկ կողմանէ ալիքներն՝ հորիզոնին վրայ՝ երկնից կցելով, միւս կողմանէ կանաչագեղ բլուրները փայփայելով՝ անհանդարտ կոհակօք մինչև ցԵալըթա։

Յառաջ վարելով ճանապարհը, կէս օրէն վերջը ժամը մէկին հասանք 'ի համբաւաւորն Սևաստապօլ։ Այս քաղաքս առաջին Արևելեան պատերազմին մինչև երկրորդն՝ քսան և վեց տարի անխնամ Թեալուն պատճառաւ, ցարդ աղիտաւոր տեսարան մի կը ներկայացընէ ճանապարհորդին. մեծամեծ բազմայարկ անծածկ և աներդիք շէնքեր՝ իբրև մահագոյժ կանգուն կմախքներ, իրենց կոյր և անլոյս աչքերով և անլեզու բերանով, — անդուռն, և անփեղկ պատուհաններով, — յայտնի կը քարոզեն քաղաքին անցեալ փառքը, և առհասարակ անկայուն վիճակ իրաց աշխարհի։ Նոյնը կը քարոզէ

Սեւաստապօլէ եօթը վերստ հեռաւորութեամբ չիջելափառն Քերսոնէս[1], որ նախ քան զՔրիստոս հզօր հասարակապետութիւն, այժմ քարուքանդ հողերու տակ ծածկուած։

Այլ Ինքիրման որ նոյնչափ հեռաւորութիւն ունի 'ի Սեւաստապօլէ, որ երկաթի ճանապարհին վրայ կարկառեալ և իւր խոռոչաւոր քարահանքներով, նոր լեզուով հին և սրբազան խրատ մի կու տայ ճանապարհորդին։ Խորհուրդ կու տամ, այդ տեղէն անցնելու ժամանակ՝ եթէ ոչ կօշիկներ հանել, գէթ գլուխ մերկացընել, բանալ. զի սուրբ է այդ տեղին ոռոգեալ քրտամբ և արեամբ առաջին դարու հայրապետաց հաւատոյս մերոյ։ Հռովմայեցւոց կայսրութեան ժամանակ Ղրիմ վայր աքսորանաց համարուելով Տրայանու և այլոց կայսերաց ատեն, ջատագովք քրիստոնէութեան, իբր քրէական յանցաւորք հոս աքսորուած են. աստ ճգնած և 'ի Քերսոնէս ջրահեղց նահատակուած է Պօղոս առաքելոյն աշակերտ Կղեմէս, որ 'ի շարս Հռովմայ Սրբազանից երրորդն է զկնի Ս. Պետրոսի։ Հոս՝ քարածայռին մէջ քանդակուած սանդուխ մի՝ վեր կը հանէ զճանապարհորդը դէպ 'ի սրբոց խցիկներ. ուր կան ժայռին մէջ կոփած քանդակուած կրկին գեղեցիկ վկայարաններ. յորոց վայելչագոյնն Ս. Կղեմայ անունը կը կրէ. աւանդութիւնն կը վկայէ՝ որ սեղանին վրայ, վայելչաձև խաչն՝ սրբոյն մա-

1. Շնորհիւ հանգուցեալ (1883) փոխանախագահին Օտեսայի հնագիտական ընկերութեան Ն. Մուրզաքեւիչի, հին քաղաքին յատակը յերեւան ելաւ, տեղ տեղ միւսիոն և մարմարիոն, քանդակազարդ սեանց խարիսխներ և խոյակներ, և այլն։

տանց գործը լինի։ Այս մատուռն շատ գեղեցիկ է, համեմատ սիւներով, և այլն։ Այսոր մօտ փոքրիկ մատուռ մի ևս կայ, որ Մարտինոս քահանայապետին կ'ընծայուի, որ նոյնպէս աքսորուած է 'ի Հռովմայ 'ի քարահանքս Ինքերմանի։

Սեւաստապօլ իր պատմական մահարձանօք՝ Քերսոնէսիւ և Ինքերմանով, Մալախով բարձամբ և հրաշալի նաւահանգստով 26 տարի երեսի վրայ Ձաւլէն վերջը, այժմ վերստին տէրութեան մեծ խնամքով կը շինուի, կամ թէ գրուցեմ իբրև փիւնիկ հաւ՝ իւր մոխրէն կամ աւերակաց մէջէն՝ նորափետուր կը զարդարուի. վերջին երեք տարիներուս մինչ 700էն աւելի մեծամեծ շէնքեր, քան զառաջինս առաւել վայելչութեամբ կը փայլին։ Կրանիտեայ սալայատակն՝ առաջուան կրախառն ամպի նման փոշին իջոյց, քաղաքին ամէն կողմ քաղցրահամ ջրոյ ագուգայք և շատրուանք՝ հարաւային բարկ արևուն ներգործութիւնը մեղմելով՝ ոգի կու տան դալարեաց և ծառոց. միով բանիւ այդ բնութեան նշանաւոր անկիւնն՝ տակաւ պիտի ստանայ իւր վայելուչ կերպարանը, եթէ վերստին քանդիչ ձեռք մի չապականէ զնա։

Շատ չի կենար նաւն 'ի Սեւաստապօլ. երկու ժամէն մեկնեցաւ յԵւպատորիայ, ուր ժամը եօթին հասանք։ Այս քաղաքս թէպէտ և ունի իւր առանձին յատկութիւնները՝ մաքուր և առողջարար օդոյն և քաղցրահամ ջրոյն հետ 'ի միասին կապտամորթ գառներ, որոց միսն քարցրաճաշակ լինելէն զատ, անուանի և յարգի է սոցա մորթն ընդհամօրէն Ռուսաստան. մեծամեծ աղահան լիճեր, և յօդացաւի դէմ աղային ցեխեր. սակայն և այնպէս Ղրիմու յետամնաց քաղաքաց կարգէն է, յամր և

դանդաղ առաջ կ'երթայ։ Նշանաւոր է 'ի սմա փառագմբէթ Խան-ճամին, 'ի Թաթարաց Մնացեալ մըզկիթն. սակաւաթիւ են հօս ազգայինք, Էջմիածնական Հայք ունին վայելուչ եկեղեցի, իսկ Հայ-կաթոլիկք մատուռ մի փոքրիկ։ Նաւն ժամ մի հօս մնալէն վերջը, յառաջ վարեց ընթացքը դէպ յՕտեսսա, և 18 ժամ միակերպ ընթանալով՝ միւս կէս օր՝ ժամը 12ին հասանք յՕտեսսա։

## Բ

## ՅՕՏԵՍՍԱՅԷ ՄԻՆՉԵՒ ՅԿԱՄԵՆԻՑ

Օտեսսա՝ 'ի Ռուսաց Հարաւային գեղեցկուհի (южная красавица) վերաձայնեալ, զի հարաւային և Նոր Ռուսիոյ մէջ նմանն չկայ, նոյնպէս և ընդհամօրէն Ռուսաստան, յետ մայրաքաղաքին Պետըրբուրգի՝ բարեշէն քաղաքաց առաջինն է՝ վաճառաշահութեամբ ծաղկած։ Իննսուն տարի առաջ Օտեսսայի տեղ (1794) Հաճի-Պէյ անունով փոքրիկ գիւղ և ամրոց մի կար, ուսկից՝ 'ի Լեհաստանէ և 'ի Ռուսաստանէ աւարն և կողոպուտ 'ի Տաճկաստան կ'անցնէր. զի Հաճի-Պէյ՝ Տաճկաց ամրոց էր։ Այժմ այդ փոքր գիւղին և ամրոցին տեղ կանգուն կայ 250,000 բնակչօք փառաւոր քաղաք մի, որ նախանձորդ է Փրանկաց մայրաքաղաքին, յար և նման սալայատակով, ջրոց ագուգաններով ամէն կողմ, մարգերով, շատրուաններով, մեծագործ ճեմելեօք. ունի իրեն արքունի պալատը (palais royal), համալսարան, թանգարան, հնագիտաց ընկերութիւն, փառաւոր շէնքեր, եկեղեցիք. և այլն։

Եկեղեցեաց մէջ Հռովմէականաց եկեղեցին փառաշէն է, և յաճախութեամբ պատուական քարերու՝ նմանութիւն կը բերէ Վենետկոյ ճոխ և վայելչազարդ եկեղեցեաց։ Սակայն այնու ամենայնիւ, դեռ շատ հեռու է իւր նախատիպէն, շատ բան դեռ կը պակսի Փարիզի հասնելու։ Վաճառականութիւնն մեծ է, մանաւանդ անգործ կամ հում ապրանքով, այնպէս որ տարուէ տարի Օտեսայի մէջ եղած շահավաճառն՝ որ 200 միլիոն րուբլեաց կը հասնի, կէսը՝ այն է 100 միլիոնն՝ արտասահման կ'երթայ, ցորեն, իւղ, աղ, բուրդ, և այլն։ Օտեսա կէս օր միայն մնացի. օգոստոս 19, երեկոյեան ժամը իններին, երկաթուղւով ճամբայ ելայ դէպ 'ի Փոտոլիա։ Օտեսայէ երկաթուղւով մեկնողաց 'ի Փոտոլիա՝ խորհուրդ կու տամ. եթէ անպատճառ փութալու հարկ չունին, ուրբաթ երեկոյի ընթացքով մեկնիլ, զի միւս օրեր՝ ինչպէս ինձ պատահեցաւ այս անգամ, Իսրայելացւոց բազմութիւնն՝ բոլոր ճանապարհին մէջ անհանգստութիւն և նեղութիւն կը պատճառեն. աստի մինչև ցԿամենից կը վխտան որդիք Իսրայելի. իսկ Կամենից՝ որ երբեմն Հայոց վաճառաշահ քաղաք էր, այժմ բոյն է Հրէից։

ՅՕտեսայէ Կամենիցի մերձաւոր երկաթուղւոյ կայարանը Փրոսքուրով քաղաքն է, անտի ցԿամենից հարկ է կառաք երթալ. միւս օր կէս օրին հասայ 'ի Փրոսքուրով. անկարելի էր նոյն օրը հասնիլ 'ի Կամենից, զի դեռ 90 վերստ ճամբայ կար ընելու։ Օտար և նոր աշխարհք էր ինձ համար Փոտոլիա, ցանկալի էր լոյս աչքով ճանապարհորդել. բարեպատեհ դէպք մի՝ այս նպատակին նպաստաւոր եղաւ։ Օտեսա ծանօթանալով Սթանքևիչ

մականուամբ բժշկին հետ, յանձնարարական նամակ մի տուաւ ինձ առ իւր եղբայրը· որ կալուածատէր էր Փրօպըուրօվէ 'ի Կամենից ճանապարհին վրայ։

Երկաթուղւոյ կայարանէն կառք մի վարձեցի մինչև Աթանքևչի գիւղը, որ 15 վերստ էր, և երկու ժամէն հասայ հոն։ Շնորհակալութիւն մեծ՝ հիւրընկալ պարոնին, որոյ մարդասէր ասպընջականութիւնը վայելելով, գիշերս հոն անցընելէն վերջը, վաղ առաւօտու ճամբայ ելայ։ Օդն բարեխառն և քաղցր կը շնչէր, ցորենաշատ դաշտերն հնձուած, այլ տակաւին որաններն բարդ բարդ, դէզ դէզ դաշտաց վրայ էին։

Այն Փոտոլիա կամ Ուքրայինա կոչուած աշխարհին մէջն էի, զոր տեղացի Փոքր-Ռուս Թարաս Շեւչենքոյ քերդողն՝ զանազան գողտրիկ տողերով երգած և գովասանած է. այն հացաշատ և ջրարբի աշխարհն, որ համբարանոց է արևմտեան Ռուսիոյ, բաց կեցած էր առաջս. այս այն աշխարհն էր՝ որոյ ծոցը՝ ըստ քերդողին դգըշալով կը խայտայ ալևորն Տնեբեր։ Առաջ կ'երթայի՝ լայն ծառազարդ ճանապարհին վրայէն, որոյ վրայ հովանի կ'առնէին մեծամեծ բարտի, նշդարի, կակղի և հաստաբուն կեռասի ծառեր։ Դաշտին մշակներն նոյն պուետին Շեւչենքոյի երգած «դռուզ մազերով Քօզաքներն» էին, «մրայօն և սևաչեայ Քօզաքուհիք», ցորենի որաններըը բեռնաւորած սայլերու վրայ 'ի կալ՝ կասելու կը տանէին։ Ճանապարհին վրայ մարդաշատ գեղեր, բարեկարգ անտառներ՝ մերթ ընդ մերթ իրարու կը յաջորդէին, պտղատու պարտէզներ առատ մեծամեծ խնձորներով և տանձերով և այլ պտղօք. փորձեցի այդ պտուղներուն համը, այլ

տեղերուն համեմատ չգտայ. զի հարաւոյ բարկ արեւուն ճառագայթներէն զուրկ լինելով, ոչ Ղրիմու պտղոց քաղցրութիւնը ունին և ոչ հոտը։ Հանդիպած գեղերուս մէջ մասնաւոր յիշատակելու արժանի է Թիննա կոչուածն, ուստի 40 վերստ է Կամենից. փառաւոր է գիւղիս եկեղեցին, և համբաւաւոր 'ի Փոտոլիա՝ հրաշագործ պատկերաւ Տիրամօր։ Եկեղեցւոյն մեծապատիւ կանոնիկոս ժողովըրդապետն Լըսեճցքի, ըրիմեցւոյ համար հետաքրքրական դէպք մի կարդաց եկեղեցւոյն տարեգրութեան մէջ, զոր կ'արժէ հոս յիշատակել։ Ասկէ 100 տարի առաջ ժամանակին ժողովրդապետն ըրած է, որ Ղրիմու վերջին Թաթարաց Շահան–Գերէհ խանն, Ռուսաց Թերակղզւոյս տիրելէն վերջը, Մոսկուա գնալու ժամանակ իջևանած է այս Թիննա գիւղիս մէջ, եկեղեցւոյս աւագ երէցն հիւրընկալելով զնա՝ ճաշ մի տուած է, առաջնորդարանին ետև մեծամեծ կակղի ծառոց ստուերին ներքև. դարևոր կակղիք դեռ ևս կանգուն, մեղմ հովիկին շնչելով, ներդաշնակ խօշիւն մի կը հանէին, իբր թէ հաստատելով կանոնիկոսին կարդացածը. Շահան - Գերեհի համար այսպէս կը գրէր տարեգիրն. « Շատ կարգաւորեալ մարդ էր, լատին և իտալացի լեզուները համարձակ կը խօսէր »։

Պատուական կանոնիկոսն չթողուց՝ որ առանց իրեն մօտ ճաշելու՝ առաջ երթամ. երբ ասացի թէ՝ Մութին կը մնամ. — Աւելի լաւ կը լինի, ասաց, զի ճրագի լուսով Կամենից « առաւել շքեղ կ'երևնայ, քան ցորեկ ատեն »։ Երեք ժամ մնացի գիւղիս մէջ, այլ գոհ եմ մեծապէս, զի պատկառելի երիցուն կենցաղավարութիւնն ինձ մեծապէս շինութեան պատճառ եղաւ։ Քանի՛ քաղցր

է լսել բազմափորձ և խոհական վարդապետի խօսակցութիւնը։

Նախընթաց օրը Կամենիցի քառաձի ֆայետոն մի ուղևորներ բերելով 'ի Թիննա, պարապ յետս պիտի դառնար. աւագ երէցն խորհուրդ տուաւ՝ փոխանակ փոստի, այդ ֆայետոնը վարձել. կառավարն աժան գնով յօժարեցաւ տանել զիս, որով բաղդ ունեցայ նոյն օրը օգոստոսի 20 ին, փառաւոր քառաձի ֆայետոնով մտնել, յետին ժամին, երբեմն մեր Անեցի Հայկազանց հռչակեալ քաղաքը։

## Գ

## ԿԱՄԵՆԻՑ

Հեռուէն չերևիր Կամենից, թէպէտ և բարձր ժայռի վրայ շինուած է. զի ևս բարձրագոյնք զնա կը շրջապատեն։ Տասն վերստ մնացած, յաջմէ ճանապարհին կ'երևի Հայք (Արմեանէ) կոչուած գիւղն. որ ըստ վկայելոյ Անտոնի, հնախօսին Կամենիցու, Հայոց սեփականութիւն տրուած է ժամանակաւ (1280) Լեւոն Դանիլովիչ Կալիցիոյ Նախարարէն. Հայոց նմա մատուցած մեծամեծ ծառայութեանց փոխարէն. աստի՝ ժամանակ անցնելէն վերջը գաղթեր են Հայք 'ի Կամենից։

Թէպէտ և այժմ գիւղիս մէջ Հայ չկայ, սակայն լոկ Արմեանէ անունն քաղցր կը հնչէ յականջս ազգայնոյ։ Դեռ ևս առաջ գնալով՝ յերևան ելաւ Կամենից մասամբ, արուարձանօք, ապա իւր ամենայն պչրանօք, լուսաւորեալ 'ի վերուստ և 'ի ներքուստ։

Քաղաքն հեռուէն ճիշդ ամփիթատեր ձև ունի. բարձր ժայռի վրայ, խիտ առ խիտ փողոցներով, կարգ կարգ տուներով. այս ժայռն օրինաւոր կղզի մի է, որոյ չորս կողմը կը պատէ Սմոթաւիչ գետն, այնպէս որ քաղաք մտնելու համար, հարկ է կամըրջէ անցնիլ։ Տանց պատուհաններն կարգաւ լուսաւորած էին, զի յետին ժամ էր, հեռուէն կարծես յերկինք կը հասնէր նոցա լոյսն. այս լուսերն կ'անդրադառնային Սմոթաւիչի ջրերուն մէջ, այնպէս որ լուսաւոր գունտ մի կ'երևնար, համատարած և ընդարձակ մթութեան մէջ։ Քաղաքս այս ձևոյն մէջ տեսնելով միտքս ինկաւ պատուական կաննոնիկոսին խօսքն, և սրտանց շնորհակալ եղայ հեռուէն։

Փոտոլիոյ գլխաւոր քաղաքն է Կամենից, հին Պետրիդաւրոսի աւերակաց վրայ շինուած՝ Անեցի գաղթականաց ձեռքով, և 600 տարի ճանչցուած իբր Հայոց քաղաք։

Պարսպապատ է. բերդերով և աշտարակներով ամրացուցած. երբ կամրջէ մի անցնելով կրկնայարկ բերդադռնէն ներս մտաւ մեր կառքն, ձիոց ամբակաց տրոփիւնն, բերդին խուլ արձագանգքն, սայլորդաց և կառավարաց կանչն և աղաղակ, չէն և մեծ քաղաքի տպաւորութիւն գործեցին։ Թէպէտ և գաւառին գլխաւոր քաղաքն է, այլ մեծ քաղաք կարելի չէ գրուցել, բնակիչն հազիւ 20,000, տեղը նեղ, ժայռի վրայ կարգ ըստ կարգէ տներ։ Տակաւ Սմոթաւիչի միւս եզերը կ'ընդարձակի քաղաքն լայն փողոցներով և մեծ հրապարակներով։ Հին, կամ Սմոթաւիչի մէջ ամփոփուած Հայոց քաղաքն՝ Իտալիոյ հին քաղաքաց ձևն ունի, կրկին և եռայարկ տներ, սալայատակ նեղ փողոցներու վրայ. այդ

պատճառաւ օդն միշտ ապականած է, միւս գլխաւոր պատճառն օդոյն ապականութեան իսրայելի կեղտոտ որդիքն են, որ ամէն կողմ կը վխտան, քաղաքին կէսէն աւելի բնակիչքն Հրեայք են։

Այլ ինձ Նոր հայրենիք երեւցաւ այդ քաղաքն՝ նոյն հատած գիշերս. այդ սրտահաճոյ զգացմանս ուրիշ պատճառ չկայ, բայց եթէ պատմական ճոխութիւն և քաղաքագործութիւնք հին Կամենիցի ազգայնոց։

Կանգ առաւ գիս կրող ֆայետոնն՝ ընդարձակ, երկայնաձև, սալայատակ հրապարակին արևելեան ծայրը, փառաւոր կրկնայարկ չէնքի մ'առաջ։

Այդ այն հրապարակն էր՝ յորում շատ դարեր վեր վար ճեմել են Հայք, զոր լցուցել են արևելեան վաճառքով, որոյ չորս կողմը փառաւոր տներով զարդարել են. այդ հրապարակին վրայ էր Հայոց դատարանն (Մագիստրատն), յորում հայ դատաւորք մահու և կենաց վճիռներ տուել են. այդ հրապարակին արևելեան ծայրը, դէպ 'ի Հայոց փողոցը, դեռ ևս կանգուն կայ Հայոց փառաւոր եկեղեցին, հրաշագործ պատկերաւ Տիրամօրն Հայոց։ Այդ եկեղեցւոյն առաջնորդարանին կամ վարդապետանոցին դրան առաջ կանգ առած էր ֆայետոնն. իսկոյն ընդ առաջ վազեց երիտասարդ մի, որ էր լուսարար եկեղեցւոյն, և իմ ճանապարհի պարկս կառքէն վար առնելով՝ առաջնորդեց ինձ առաջնորդարանին երկաթի դռնէն դէպ 'ի ներս, սանդուխներէ վեր ելնելով չէնքին երկրորդ յարկը, խնդրեց որ սակաւ մի սպասեմ. «Աւագ երէցն տունը չէ, ասաց, այլ շուտով կը դառնայ»։ Մինակ մնացի քանի մի վարկեան այդ անծանօթ չէնքին մէջ, որ իւր ամրակուռ կազմածովն, երկայն

պահոցն և առանձին առանձին սենեակներով, ամէն սենեակ որմնամէջ դարանով, յայտնի կը ցուցընէր յորոց և ինչ վախճանաւ շինուիլը։ Նախ՝ շինողաց ճոխութիւնն յայտնի կ'երևնար, զի փող չէին խնայել ամրութեան և հաստատութեան մասին. իսկ առանձին դէմ ընդդէմ միմեանց սենեակներն իրենց դարաններով, անբարբառ կը զրուցէին որ իրենք աբեղայից և վարդապետաց համար շինուած են։ Այլ ես զձեր տեղ փնտռեցի այդ տանը մէջ երբեմն բնակող Բոշքեան, Մուրատեան, Ստեփանեան, Վարդերեսեան, Տէր-Գաբրիէլեան, Թադոսեան վարդապետաց ստուերը կամ շուքը՝ որ մէկ անկիւնէ երևան...։

Շուտով եկաւ եկեղեցւոյն երէցն Տէր Ալոզիոս Շչեփայնեաքի, լեհ ազգաւ, զոնէ այժմ այնպէս ճանչցուած. հաւանական է որ սա ևս հին Անեցւոց սերնդոցմէ լինի, այլ այնպէս այլայլած, որ քանի մի բառ հայերէն յօդելէն զատ, և մարդասէր հիւրընկալութենէն, որ ազգիս սեփական յատկութիւնն է, ամենևին այլ նշան չունէր հայութեան։

Հարկ եղաւ ինձ այդ հայաշէն և հայաբնակ վարդապետանոցին մէջ օտար լեզուաւ խօսիլ և հարցընել, մերձաւոր Նպատակիս մասին։

Գիտէի արդէն որ Կամենիցի Վերափոխման Տիրամօր՝ Հայոց եկեղեցւոյն մէջ՝ մեծահանդէս ութօրէիւ կը տօնուի Աստուածամօր փոխման տօնն, համանուն եկեղեցւոյն մէջ տօնելով զփոխումն Կուսին 'ի Թէոդոսիա, կը փափաքէի մասնակցել նոյն տօնական հանդիսին 'ի տաճարի Աքանչելագործ Տիրամօրս 'ի Կամենից։

Տէր Ալոզիոս ինձ իմացուց՝ որ վաղը վերջին է հանդիսին։ Յոգնած էր ճանապարհէն, քաղցր

քունն (հայրենի ստացուածոց ներքև), որոյ եղանակին մէջ տարբերութիւն չկայ, վերջ տուաւ մեր այլախօս բարբառին։

## Դ

## ՈՒԹԵՐՈՐԴ ՕՐ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՏՕՆԻՆ

Առաւօտուն կանուխ իջնալով վանքին սանդուխներէն և անցնելով մէջ ընդ մէջ կրկին պարըսպապատ բակերէ, մտայ աւանդատան դռնէն Աստուածամօր տաճարին դասուն մէջ. խուռն բազմութիւն եկեղեցւոյ մէջ ժողոված կը սպասէին. աւագ խորանը՝ որուն գոգաձևին մէջ զետեղուած է հրաշագործ պատկերը, ծածկուած կերպաս վարագոյրներու ներքև, բազում կերոններով բոցավառ կը փայլէր։ Զգեստաւորեալ քահանայ մի, երկայն գաւազանով բացաւ վարագոյրը. ցոլացին երեսք հրաշափառ կուսին, և բազմութիւն հաւատացելոց, 'ի գուճս անկեալ առաջի Տիրամօրս Հայոց, ուրախութեան և ցնծութեան երգով լցին տաճարը։ Այն այս օրն համարեա թէ ամբողջ 'ի պատիւ պաշտաման Աստուածամօր նուիրուած էր։ Պատարագք, ժամասացութիւնք, երգք, նուագք, Թափօրք և քարոզք, մէկզմէկ կը յաջորդէին առաւօտէ մինչև երեկոյ. սակայն այս ամենայն պաշտամունք օտար լեզուով կը լինէր։ Դասին մի անկիւն քաշուած, փափաքելի էր ինձ հասուցանել յունկն Տիրամօրս՝ ուխտս և իղձս, աղերս և պաղատանք, սակայն վրդովեալ խորհուրդքս զիս կը տագնապէին. մերթ տխուր և մերթ զուարթ

մտածմունք իրարու կը յաջորդէին։ Կը տեսնայի աչացս առաջ փառաւորեալ Հայոց եկեղեցի, Լուսաւորչի փառաւոր պատկերաւ, արձանով և արծաթապատ նշխարով զարդարուած. այլ այդ տաճարին մէջ և ոչ մի բառ հայերէն չէր հնչել, Լուսաւորչի լեզուն հասկըցող չկար, Լուսաւորչի որդիք անծանօթ էին իրենց լուսատու հօր բարբառոյն, կը կոտրէր սիրտս։ Այլ միւս կողմանէ տեսնալով Աստուածամայրս Հայոց, փառաւորեալ 'ի բազմախուռն ժողովրդոց, հանգչած խորանին ոսկէզօծ գօգաձևոյն մէջ, բոցավառ կերոններ առաւօտէ մինչև ցերեկոյ առաջը բորբոքած, բուն պատկերին օրինակը վայելչաձև մի գահաւորակի վրայ յարմարցուցած, որոյ չորս ծայրը սպիտակազգեստ կուսանաց ուսերուն վրայ, որք թափօրին առջևէն պատկառանօք կը կրէին, բազմութիւն ժողովրդոց գոհութեան երգ ի բերան, ձեռքերը վառեալ ճրագներով՝ տաճարին սրահները կը թնդացընէին, ուրախութեամբ կը լեցուէր սիրտս, և ես ձեռքի ճրագս վեր բարձրացընելով, թափօրին խառնուած մասնակցիլ կը փափագէի փառաբանչաց Տիրամօրս։

Բառակուսի է Տիրամօրս պատկերը, և կանգնաչափ մեծութեամբ տախտակի վրայ նկարուած է. ցորենատիպ է Աստուածամօր երեսաց գոյնն, աչքերը մեծ և զօրաւոր նայուածքով. ձախ գիրկն է Աստուածամանուկը. սև լաչակ գլխին առած, նոյնագոյն վերարկու՝ լայն թևերով՝ հագած։ Գլխոյն վրայ մանեկաձև վերտառութիւն մի կայ, զոր երեւակայութեամբ կարելի է կարդալ՝ Աստուածամայր. այլ իսկապէս առ այժմ անվերծանելի, թերևս աւելի վարժ և կիրթ աչքերու պէտք ունի.

տառերէն ոմանք մեծ նմանութիւն ունին մեր երկաթագիր տառերուն։ Սակայն ակամայ կամօք պէտք է խոստովանիլ, որ պատկերին նկարչութեան եղանակը աւելի յունական է, քան թէ հայկական։ Ոմանք այնպէս կը կարծեն, որ մեր նախնիք՝ Անեցիք՝ գաղթելու միջոց՝ 'ի Սեւաստոպոլ Տաւրիոյ ձեռք բերած են այդ պատկերն. այլ 'ի վերայ այսր ամենայնի՝ Հայոց է Տիրամայրս, յազգայնոց և յօտարաց այնպէս ճանչցուած շատ դարերով։ Այլք ոմանք Ս. Ղուկաս աւետարանչի մատանց գործ կը համարին, ուրիշ այլ պատկերաց հետ. այս կարծեաց գլխաւոր պատճառը՝ ես այնպէս կարծեմ թէ են բազմապատիկ հրաշագործութիւնք, զորս հաճել է Աստուածամայրն ցուցանել 'պատկերիս միջոցաւ՝ ջերմեռանդն հաւատացելոց։ Զի ազգիս մէջ աւանդութիւն կայ, որ պատկերի միոյ հրաշագործ լինելուն գլխաւոր հանգամանքներէն մէկն ևս նկարողին սրբասէր վարքն են։ Առ այժմ աքանչելագործ պատկերիս մասին այսչափովս գոհ լինելով՝ խօսինք. Հայոց եկեղեցեաց վրայ, որք ցարդ կանգուն կան 'ի Կամենից. յետոյ մանր կը խօսիմք այս Հրաշագործ Պատկերիս վրայ։

# Ե

## ԵԿԵՂԵՑԻՔ ՀԱՅՈՑ

Կրկին են եկեղեցիք Հայոց 'ի Կամենից, մին փառաւոր և հոյակապ 'ի պատիւ Վերափոխման Աստուածամօր, ուր դրուած կը պաշտի Հրաշագործ պատկերն. երկրորդն Ս. Նիկողայոս անշուք մատուռ, որ այժմ Ռուսաց ձեռքն է։

Առաջինը՝ հին ատեն Նուիրեալ է յանուն Աքանչելագործ հայրապետին, և երկրորդն 'ի պատիւ Աւետման Ս. Կուսին։ Ահաւասիկ ինչ կը գրէ այս երկրորդիս մասին հնագէտն Ռոլլէ[1]. «Երեքտասաներորդ դարու Յեացած, որով յառաջ քան զտիրել քաղաքիս (Կամենիցի) Կորիաթովիչ Նախարարաց, որք էին սերունդ Լիթվայի կոմսին. ուշադրութեան արժանի է վաղեմի սրբավայրս, որ շատ ու շատ յեղափոխութեանց ենթակայ եղած է։ Այդ է, 'ի Հայոց յանուն Աւետման կուսին կանգնեալ եկեղեցին, որ այժմ կը կրէ զանուն Ս. Նիկողայոսի։ Կը պակասին մեզ գրաւոր յիշատակարանք, որով չեմք կարող դրականապէս հաստատել անոր ԺԳ դարու լինելը. այլ Հայոց գաղթականութեան միջոցը 'ի Փոտոլիա, և նոյն իսկ

1. Հեղինակս գրուածոց մէջ Անտոնի անունը կը գործածէ, որ է նմուտ հնագէտ Փոտոլիոյ գաւառին. գրած է Ցէշո-տոխոլառնէ Փոտոլիոյ և Վոլհինիոյ վերնագրով հատորներ. գործեալ Դորոնովիչ Ռուս երեցը գրած է Փոտոլիոյ Հայոց վրայ։

չէնքին ճարտարապետութիւնը կը համարձակեն մեզ տալ այն։ Առաջին անգամ 1009ին, Ռուս նախարարք հրաւիրած են զՀայս 'ի Քիեւ, յօգնութիւն 'ի պատերազմունս ընդդէմ Խրախտն Բոլեսլաւի, որ այն ատեն արշաւելով կ'ապականէր նոցա երկիրը։ Հայք 'ի Քիեւ անցան ընդ այլ մասունս Ռուսաց աշխարհին և բնակեցան յԼվով և 'ի Լուցք։

Երկրորդ անգամ զՀայս յօգնութիւն կանչեց, Թաթարաց հետ մէկտեղ՝ 1280ին Լեւոն Դանելովիչ Կալիցքի, ընդդէմ պատերազմաց դրացի ազգաց. Հայք այն պատերազմերուն համար թիկունք եղած են Լեւոն Դանիելովչի. զի իշխանս երկիրներով վարձատրած է նոցա ծառայութիւնները։ Հայք հաստատած են իրենց բնակութիւնը Կամենիցի մօտ, այն տեղը՝ որ մինչև ցայսօր Արմեանէ կը կոչուի։ Անշուշտ այս միջոցիս շինել են նոքա իրենց առաջին եկեղեցին, հին և քարուքանդ Պետրիդաւրի (Կամենիցի) աւերակաց վրայ, Թաթարաց տիրապետութեան միջոց։... Ինչպէս շրջաբնակ ժողովուրդք, նոյն և բնակիչք Արմեանէ գիւղին, աւանդութեամբ գիտեն՝ թէ գիւղին նախկին բնակիչքը գաղթած եկած են 'ի Հայաստանէ...։ Հետևաբար կարող ենք ասել, որ գիւղիս նախկին բնակիչքը, թողլով իրենց ազգին անունը գիւղին ժառանգութիւն, անցած են 'ի Կամենից-Պետրիդաւրիա, և նորա աւերակաց վրայ շինել են իրենց բնակութիւնը։ Յայտնի է՝ որ այն ատեն սակաւաւոր եղած են Հայք, զի նոցա երրորդ գաղթականութիւնն 'ի Հայաստանէ 1331ին, բազմացուցած է նոցա թիւը, Կորիաթ իշխանի պայազատաց միջոց։ Մեք կարծեմք՝ թէ Հայք թէպէտ և սա-

կաւաթիւ, նախ քան զերրորդ գաղթականութիւնը շինած են այս եկեղեցիս, թէպէտ և չունենամ յայամ մասին գրաւոր ապացոյց մի։ Ճանչնալով զՀայս և նոցա խիստ կրօնական սկզբունքը, չեմք կրնար համաձայնիլ, որ նոքա տեղւոյ մի վրայ հարիւր տարի բնակելով՝ չունենան իրենց աղօթատեղին, մինչդեռ այլ տեղուանք նոցա փոքրախումբ ժողովրդոց, ինչպէս Ղրիմու Թերակղզւոյն մէջ կամ Կովկասու սարերուն վրայ՝ տաճարին շինութիւնքը՝ եկեղեցիք են։ Հուսկ ապա եկեղեցւոյս ճարտարապետական ոճը՝ որոշ և յայտնի ապացոյց մի է նորա խորին հնութեան[1]։

Զուածև է շէնքն, ճակատը վերուստ 'ի վայր ուղղաբերձ հատած. ստուար պատերն անարդիլ յենարաններ ունի, լուսամուտներն սակաւաթիւ, երկու կողմէն մի հատ, փոքրադիր և անմիջապէս կից կամարին, որք աւելի բերդերու որմնածերպի՝ քան պատուհանի ձև ունին։ Ի միջավայրի է եկեղեցիս, նորա չորս պտոյտը կան գերեզմանաքարինք, որոց շուրջը որմած։ Եկեղեցւոյս շինողաց միտքը յայտնի կը ցուցընէ այդ որմածը. գի [illegible] պէտք ժամանակին՝ նախատեսեղած են՝ աղօթից նուիրեալ անկիւնս 'ի բերդ փոխարկելու՝ ուր կարելի լինի պաշտպանուիլ, պատերազմի իրաց անտեղեակ, յարձակող թշնամւոյն դէմ. դարձեալ այդ եօթնկանգնեան պարիսպն արգելք է թշնամւոյն, որ չի տեսնար ինչ կը լինի պարսպապատին մէջ։ Բարձրաբերձ զանգակատան պակասութիւնը՝ ցոյց է այն ստըր-

1. Թէոդոսիա քաղաքին արգելանոցին մէջ գտնուած Հայոց դատարկ եկեղեցիներուն և այս եկեղեցւոյս շինութեան ոճոյն մէջ՝ շատ մերձաւոր նմանութիւն կը նշմարուի։

կարար երկիւղին, զոր միշտ կրած են և կը կրեն քրիստոնեայք, որոց հարկ կը լինի կանգնել իրենց աղօթատեղին այն աշխարհաց մէջ....: Ամենայն ինչ 'ի տաճարիս պարկեշտին է և աղքատ. չկայ առարկայ մի որ աչքի զարնէ: Տաճարիս ներքին կողմը նսեմ է և մթին, և այնպէս անձուկ որ հազիւ հարիւր մարդ կը հաւաքի: Գերեզմաննոցին արևելեան կողմէն եթէ դիտելու լինիս, այնպէս կ'երևայ՝ որ եկեղեցիս խորշի մէջ մտած է՝ չերևնալու համար »: Այս է երբեմն Հայոց Աւետման կուսին և այժմ Ռուսաց Ս. Նիկողայոս մատրան ստորագրութիւնը:

Մեր ազգային հատուկտոր յիշատակարաններէ ևս կ'երևի. համաձայն կարծեաց Ռոլլէի, որ այս եկեղեցւոյս տեղ՝ վաղեմի փայտաշէն եկեղեցի մի կայ եղել. « Էր եկեղեցիս այս փայտաշէն, վաղուց և հին ժամանակի ». ուր ապա, նոյն հիման վրայ, 1597ին քարաշէն կանգնել են Կամենիցի ազգայինք: 1602ին հրդեհին միջոց՝ մեծ վնաս կրած է եկեղեցիս. զոր ապա բազում զովեստից արժանաւոր Պ. Միխնոյ երէցփոխանը նորոգել է. ինչպէս եկեղեցւոյս նոյն և եպիսկոպոսարանին երդիքը ծածկելով, և չորս պտոյտի պատը նորոգելով և սպիտակ բռելով: Այսպէս կը գրէ ՌԾԱ Թվ. յիշատակարանը, « Պր. Միխնոյ երեսփոխանն... վերևս ծածկել ետուր Ս. Աւետման Աստուածածնայ եկեղեցոյ. նոյնպէս և քարուկիր եպիսկոպոսարանին վերևս ծածկել ետուր... »,

Մինչև մեր դարուն սկիզբը (1811) այս եկեղեցիս ազգիս կառավարութեան ձեռքն եղած է, իբրև մատուռն կամ դուստր մեծ Վերափոխման եկեղեցւոյն, և Հայ քահանայք եղած են ժամա-

տացք։ Յետոյ տրուած է յունածէս հռովմէադաւան Ռուսաց կամ ունիթից, որք և նուիրած են յանուն Աքանչելագործ հայրապետին, նոքա այսինքն ունիթք 1840, մայիսի 15, Ռուսաց սինոդին հպատակելով, անցած է Հայոց եկեղեցիս Ռուսաց ձեռքը, ուր կը պատարագեն ցարդ նոցա երիցունք։ Այս եկեղեցին նշանաւոր է ազգիս համար այնու ևս, զի գերեզման է սա ազգիս բազմավիշտ հայրապետաց մէկուն, Մելքիսեդեկ Կաթողիկոսի, որ թողլով կաթողիկոսական աթոռը, չորս տարի վարած է յԻլվով Թեմակալ եպիսկոպոսի պաշտօն, և ապա գալով 'ի Կամենից վախճանած է, 18 մարտի 1627ին. և թաղուած է այս եկեղեցւոյս մէջ, աւագ խորանին աջակողմը, հիւսիսային պատին ներքև, ուր ցարդ կ'երևի պատին վրայ խորաքանդակ արձանը՝ ննջման ձևով, գլուխը հայրապետական թագ. յաջին աւետարան։ Տապանաքարին չորս կողմը երկաթագիր կաթուղիկոսի անունը անվերծանելի էր, զի ինչպէս մահարձանը՝ նոյն և տապանագիրը ծածկուած գտայ կրախառն կարմրագոյն ներկով։

Աւետման եկեղեցիէն քիչ հեռու, դէպ 'ի մեծ Հայոց հրապարակը, Հայոց փողոցին վրայ կանգուն կեցած է երբեմն Ս. Նիկողայ, այժմ Վերափոխման փառաւոր եկեղեցին Հայոց, որ յիրաւի՝ իւր մեծութեամբ, փառաւոր ճակատովն, վայելուչ և բոլորաձև կաթուղիկէիւ, բարձրաբերձ և լայնանիստ զանգակատամբ, շօշափելի և յայտնի կը ցուցընէ՝ զինքը կանգնողաց ճոխութիւնը, զարգացեալ ճաշակը, որ և միակ յիշատակ և արձան մնացած է Կամենիցի Հայոց մեծագանձ հարստութեան։ Դեռ ևս անտիպ, այլ վաւերական մագաղաթեայ յիշատակագիր մի, որ վերջերս գտնուած

է Կամենիցի Հայոց դատարանին գրուածներէն՝ կը վկայէ որ այս եկեղեցւոյս տեղը 1398ին, Սինան Խութլու-պէյի որդի հայկազնն շինել տուած է փայտաշէն եկեղեցի մը յանուն Ս. Նիկողայոսի։ Հետաքննական է յիշատակարանս շատ կողմանէ. յայտնի կ'երևի նորա մէջ շինողին զգուշութիւնը, զի չլինի՝ որ մի հայախօս և հայածէս ժողովուրդը օտարանայ իւր հայրենեաց աւանդութիւններէն և կորսուի օտարաց հետ խառնուելով. այս է պատճէն կտակին. «Այս իմ կամաց և հաստատութեան անձին ձեռագիր է, Սինանի որդոյ Խութլու-պէյի, յաղագս որոյ կու տամ առաջի Աստուծոյ զգիրս զայս Լուսաւորչին սուրբ աթոռոյն և նահանգիս առաջնորդացն, ով որ պատահէ, (և այժմ տէր Յովհաննէս արքեպիսկոպոսի ամենայն Ռուսաց և Ազախաց աշխարհի և 'ի ներկայ ժամանակս՝ հոգևոր առաջնորդ է նահանգիս և մեզ). վասն որոյ խոստացեալ էի շինել եկեղեցի յանուն սրբոյն Նիկաւղայոսի սքանչելագործ հայրապետին, և այժմ Աստուծոյ առաջնորդութեամբն յանկ ելեալ կատարեցաւ. և ես ըստ խոստման իմում նուիրեցի Աստուծոյ և Լուսաւորչին սուրբ աթոռոյն և առաջնորդի նահանգիս. և ազատ կու առնեմ 'ի մարմնաւոր տերանց։ Ոչ որ իշխանութիւն չունի որ տիրէ սուրբ տաճարիս, ոչ ես, և ոչ իմ տունն, և ոչ իմ տղայք, և ոչ այլ ազգականք, ոչ հեռաւորք և ոչ մերձաւորք։ Եւ ով որ յանդըգնի և տէրութիւն կամենայ առնել, սուտ է և անիրաւ յամենայն դատաստան, և տուգանս տացէ հոգևոր և մարմնաւոր դատաւորաց, և տացէ զանէծս զԱստուծոյ և զսուրբ առաքելոցն և հայրապետացն։ Բայց միայն այս՝ որ թէ պատահէ՝ որ

յիմ զաւակացն և կամ յազգականացն քահանայ լինի, և Լուսաւորչին հաւանութեամբն լինի, և Լուսաւորչի նա աթոռոյն հնազանդ լինի, նա հանց բաժին առնու 'ի յեկեղեցւոյն մտոցն. որպէս քնական երէց մի, այլ ոչ տէրութիւն առնէ եկեղեցւոյն։ Վկայութեամբն Աստուծոյ և արժանահաւատ վկայից որ աստ պատահեցան։

Գրեցաւ գիրս 'ի Թվիս Հայոց (տեղի կնքոյ) ՊԽԷ »։

Եկեղեցաշէն Պ. Սինանս գնած և ընծայած է Ս. Նիկողայոս եկեղեցւոյն գեղեցկագիր և ընտիր ճաշոց մի, որ ցարդ պահուած է եկեղեցւոյս դիւանին մէջ։ Ճաշոցը գրուած է 'ի Թուականութեան Հայոց ՋԴԸ, յաշխարհն Հոնաց ('ի Ղրիմ), յերբեմն հոյակապ և 'ի հռչակաւոր մայրաքաղաքն Սուրխաթ, (այժմ ողորմելի գիւղաքաղաք, Հին կամ Էսկի Ղրիմ կոչուած), ձեռամբ Ստեփանոս երիցու։ Ճաշոցիս կրկին հին յիշատակարաններէն վերջը, (առաջինը գրութեան ճաշոցին, երկրորդը՝ Սինանին նուիրատուութեան), մաքուր՝ բոլոր գրով գտայ գրուած. «Յամի Տեառն 1736, օրն յունիսի 28, սկսաւ շինուիլ եկեղեցոյս Կամենիցոյ Հայոց Ս. Նիկողայոսի, և աւարտեցաւ յամի Տեառն 1767, օրն առաջին յուլիսի, շինուիլ նոյնոյ եկեղեցւոյն։ Յամի Տեառն 1767 օգոստոսի եղև բերումն Թափորով հրաշագործ պատկերին Երանուհոյ Կուսին՝ 'ի նոյն եկեղեցին »։

Ժամանակ անցնելէն վերջը՝ Սինանի շինել տուած եկեղեցին նեղ եկել է, այն պատճառի՝ ոմն Հրիհոր՝ որդի Ջատկի « յոյժ քրիստոսասէր » ընդարձակել է. « վասն զի փոքրագոյն էր եկեղեցիս այս, քանզի միշտ տեսանելով եթէ ոչ գոյր տեղի բա-

ւական ժողովրդեանս 'ի միջի սորա, եդ հիմունս սորա, այլ մեծագոյն..., Պր. Հրիհորն և տիկինն իւր Բանի Ազիզքոյ իւրեանց սեպհական ընչիւք, և արդեամբ և քրտնաջան վաստակօք... հրաշափառագոյն մեծացուցին և պայծառացուցին Ո Թուին Հայոց», 'ի 1551: Երեսուն տարի վերջը Պ. Միխնոյ գործունեայ երէցփոխանը, ընդ Կուլաֆ տիկնոջ և 'ի ձեռն այլ բարերարաց՝ շատ աշխատած է եկեղեցւոյս պայծառութեան մասին: Տաճարիս գանձատան մէջ տեսայ վայելչաձև սկիհ մի ՌԼ (1581) Թուականով, որ Միխնոյի անունը վրան կը կրէր: ՌԾԲ Թուին գրուած յիշատակարան մի այսպէս կը խօսի. «Աստուածային արհնութիւն և ողորմութիւն հանապազ եղիցի վրայ Պր. Միխնոյ երեսփոխանին... Սուրբ Նիկողայ եկեղեցւոյ վրայ զճակատն շինել ետուր ա փառաւոր երևելի և գեղեցկաշէն զչիդ. և 'ի վերայ ոսկէզօծ խաչ կանգնեց... դարձեալ Ս. Նիկողայ տաճարի վրայ կայր մի մեծ և բարձրադիտակ քումպէթ և տաւել ծանր էր, եկեղեցւոյ կամարի վրայ. զոր տեսեալ զայն Պր. Միխնոյ երէցփոխանն հրամայեաց իջուցանել զայն քումպէթն, և դարձեալ երրորդումն շինել ետուր՝ այլ փոքրագոյն և գեղեցիկ շինուածով. և բոլորովին պատուհան էր և կամարակապ արար. և վերևս ծածկեց սանով և նկարել ետ ոսկով և 'ի վրայ ոսկէզարդ խաչ կանգնեց...»: Շատ երկար կը լինէր եթէ արդիւնաշատ երէցփոխանին բոլոր աշխատութիւնքը յիշէինք:

1672ին Մէհմէտ Դի. Կամենից առած ատեն՝ Հայոց շատ տներ նիւթ կամ ճարակ կրակի եղած են: Նոյն միջոց քանդուած է Հայոց Վերափոխման

մայր եկեղեցին, որ հրապարակին միւս ծայրն եղած է, ընդդէմ Ս. Նիկողայ եկեղեցւոյն։ Թրքած տիրապետութեան միջոց քանդուած են Ս. Աւետման և Ս. Նիկողայոս եկեղեցեաց դռներն, և պատուհաններն նիւթ կրակի եղած։ Այժմեան Աստուածամօր Վերափոխման եկեղեցին՝ ոչ Սինանին շինածն է և ոչ Հրիհորի և ոչ Միխնոյի հրաշափառ և պայծառ զարդարածը, այլ ինչպէս կը վկայէ հին ճաշոցին նոր յիշատակարանը, ԺԸ դարու վերջին կիսուն մէջ շինուած է, հանդերձ իւր լայնանիստ զանգակատամբ։ Մեծամեծ հըրդեհներ և թշնամեաց յարձակմունքներ՝ այնպիսի զօրաւոր դաս եղած են Կամենիցի հայկազանց՝ որ ստիպուած են ներկայ քարակարկառ շէնքը շինել որ կարենայ դիմանալ հրդեհի դէմ, և թշնամեաց յարձակմանց։ Զի ինչպէս ճակատը՝ նոյն իսկ ամբողջ շէնքն ամբարտակ մի է սրբատաշ քարերով շինած և կրով մածուցած։ Քարէ սանդուխներով վեր կ՚ելնըցուի, սիւնազարդ ճակատը, ուստի կը մտնայ եկողն ընկարձակ գաւթի մէջ որ սրահի ձևով զեկեղեցին երեք կողմանէ կը պատէ։ Եթէ շէնքս աւելի հին լինէր, կարելի էր ենթադրել որ այդ սրահը իբրև մատաղատուն շինուած լինի։ Ըստ քերանացի վկայութեան Ռոլլէ հնախօսին այդ ընդարձակ սրահը՝ հեռաւոր տեղերէ եկող ուխտաւորաց ապաստանարան շինուած է, ընդդէմ արևու և անձրևի. վասն զի ընդ համօրէն Լեհաստան հռչակեալ են հրաշք Աստուածամօրս Հայոց՝ որ կը պաշտի այս սուրբ Տաճարիս մէջ. այն պատճառաւ ոչ միայն հարուստ ունևորներ ուխտադիր կը լինին առ Տիրամայրս, այլ և չքաւորներ ևս, որք հեռաւոր տեղերէ կու գան, որոց ծածք հարկաւոր է։

Այս լայն սրահը մեծամեծ պատուհաններ կը լուսաւորեն. յատակը՝ ինչպէս և եկեղեցւոյն՝ մեծ և տափարակ քարերով սալած է։ Սրահիս միջէն երեք մեծամեծ դռներով եկեղեցին կը մտցուի. հարաւային դրան մօտ, պատին վրայ մարմարիոնի վրայ արձանագրութիւն մի կայ, որ է շիրիմ Ոսկանեան Բարսեղեան անունով Երևանցի մեծ վաճառականին, որ վախճանած է ՌՃԿԶ Թվ. (1717)։ Սրահին արևելեան պատին վրայ, հարաւային դրան անմիջապէս մօտ խորան մի շինուած է, որոյ պատկերը կը ներկայացընէ զծնողս Ս. Աստուածածնի, Յովակիմ և Աննա, և 'ի մէջի նոցա մանկահասակ կոյսն Մարիամ. Թէպէտ և յիշատակարան կամ Թուական չգտայ պատկերին վրայ, այլ ամենահին է պատկերը, հայկական նկարչի գործ, հաւանական է որ Հայաստանէ բերուած լինի։ Ճակատի դրան վրայ, դէպ 'ի փողոց, գոգաձևի մէջ դրուած է պղնձաձոյլ ոսկէզօծ մարդաչափ մեծութեամբ Անարատ յղութեան կուսին արձանը, որ շատ վայելչագեղ է. իսկ վարով սիւներուն վրայ դրուած են երկուց հայրապետաց կիսանդրիք, որք անշուշտ կը ներկայացընեն զԼուսաւորիչ և զՍքանչելագործ հայրապետները, պաշտպանք եկեղեցւոյս. ինձ յարգի արձաններ չերևցան։

Եկեղեցւոյս մէջը ընդարձակ է. վեց խորան ունի. մեծավայելուչ է աւագը, որոյ խաչկալը Թէպէտ փայտաշէն է, այլ այնպէս ճարտար ներկած՝ որ չի տարբերիր մարմարիոնէ։ Սեղանէն վեր՝ պատին մէջ գոգաձև շինուած է ոսկէզօծ, յորում դրուած է Հրաշագործ պատկերը, բազմաթիւ նուէրներով զարդարուած։ Գոգաձևէն վեր կայ Լուսաւորչի մեծ պատկեր մի՝ հայրապետական

ձեւով, որոյ տարազը աւելի արեւմտեան է քան թէ հայկական, Լուսաւորչի առջեւ ծունր դրած են Տրդատ Թագաւոր եւ Աշխէն տիկին։ Այդ պատկերին օրինակը կայ Խարասուի Ս. Լուսաւորչի եկեղեցւոյն մէջ, այլ բունը շատ գերազանց է քան զգաղափարը։ Ունի եկեղեցիս բարձր վերնատուն մի, յորում վայելուչ կը հնչէ ներդաշնակ երգեհոնն։ Երկարօրէն խօսեցանք երկու հայկական եկեղեցեաց վրայ. վասն զի արդէն հայ ճանապարհորդի համար այդ եկեղեցիքն են քաղցր յիշատակ ազգութեան, մինչդեռ նոցա ծուխն եւ ժողովուրդք օտարացած են եւ այլախօսք։

## Ջ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑՔ

Ազգային պատմիչք որոց չեն նշանակած ազգիս 'ի Ռուսաստան, 'ի Լեհաստան եւ Ղրիմ գաղթման ժամանակամիջոցը։ Թէպէտ եւ 'ի Թէոդոսիա գրուած Յայսմաւուրք[1] մի գոհացուցիչ կերպով կը

1. ԺԷ դարուն մէջ մագաղաթեայ Յայսմաւուրք 'ի Կաֆա գրուած։ Այս Յայսմաւուրքն նոր Նախիջեւանցիք 1776 ին Ղրիմէ գաղթած միջոցնին հետերնին տարած են։ Վ. Հ. Մինաս Բժշկեան՝ Նախիջեւանու Նեսվիթա գիւղին մէջ ձեռք ձգելով այդ Յայսմաւուրքը օրինակած եւ տպագրած է յիւրում Ճանապարհորդութեան 'ի Լեհաստան այդ թանկագին յիշատակարանը. Պօտօլեան Անեցւոց Քէֆէի վերնագրով. տես 'ի Ճանապարհորդութեանն, էջ 335։ Այս տարի (1884) մայիսի մէջ գտնալով 'ի Նեսվիթա գիւղը՝ խնդրեցի տեսնել այդ Յայսմաւուրքը, այլ 'ի զուր. զի հոն չէր։ Ցաւալի է եթէ ձեռքէ ձեռք անցնելով կորսուի այդպիսի հազուագիւտ յիշատակարան։

պատմէ Թաթարաց Զարմա-ղանի Անեցւոց տուած կոտորածը, և նոցա փախուստը յԱխսարայ, որ էր 'ի մէջ Աժտերխանի և Ղազանի. և անտի՝ յԱխսարայէ 'ի Թէոդոսիա չուելը Անեցւոց 1330ին։ Սակայն օտարաց՝ նոյն իսկ և ազգիս յիշատակք՝ այդ աշխարհաց մէջ ցիր և ցան, յայտնի կը ցուցնեն՝ որ քան զայդ Թուականը շատ առաջ եղած են գաղթականութիւնք 'ի Հայաստանէ 'ի Ռուսաստան 'ի Լեհս և 'ի Ղրիմ։

Քարամզին[1] Ռուսաց պատմահայրը կը գրէ՝ որ Ղազան քաղաքէն 90 վերստ հեռուն, երբեմն Բուլղար կոչուած քաղաքին մէջ՝ գտնուած են հայ արձանագրութիւնք. այժմ այն քաղաքին տեղ կայ Սիլիթրեաննը անունով քաղաքը։ Օտեսայի Հնագիտական Յիշատակարանաց Ե հատորին մէջ, 'ի Ժ դարու կ'ըսուի Հայոց գաղթականութիւնը Սև ծովուն և Վոլկա և Տնեբեր գետոց եզերաց վրայ։ Հին և Թերակատար յունարէն գրուած Յայսմաւուր մի կը գրէ որ 1292ին 'ի Սուտաղ Տաւրիոյ բնակող Հայք՝ համօրէն քրիստոնէից հետ 'ի միասին տօնած չեն Զատիկը, այլ մոլորած են (Ծռազատիկ)։

Հնադէտն Անտոնի, ինչպէս յիշեցինք քիչ առաջ կը գրէ՝ որ Հայոց առաջին գաղթականութիւնը 'ի Հայաստանէ դէպ 'ի Ռուսաստան պատահած է 1009ին, հրաւիրեալ 'ի Նախարարաց Քիեւի յաջակցութիւն ընդդէմ պատերազմաց Խրոխտն Բոլեսլաւի՝ որ յարձակմամբ ոտնակոխ կ'առնէր նոցա երկիրը։ Ի 1062 դարձեալ Քիեւի Նախարարն Թէոդորոս Դէմետրեան (Տիմթրիեւիչ) յօգ-

1. Ե հատոր Օտեսայի Հնագիտական Յիշատակարանաց։

նութիւն կը կոչէ զՀայս։ Հայք նմա հաւատ թիկունք կը լինին 'ի պատերազմունս ընդդէմ փոլոկցի իշխանաց։ Պատերազմէն վերջը Թէոդոր համօզած է զՀայս մնալ 'ի Ռուսաստան, շնորհելով շատ արտօնութիւններ։

Երբ այդ երկիրներուն կը տիրեն Լեհք, ըստ վկայութեան փիտոր Կարամէլեանի և Ալեաննիի նոցա և վաւերացընեն Հայոց առանձնաշնորհութիւնները։

1280 ին Լեւոն Դանելովիչ Կալիցիոյ նախարարը զՀայս Թաթարաց հետ 'ի միասին օգնութեան կը կանչէ դրացի ազգաց հետ ունեցած պատերազմաց միջոց. և ապա մեծ հողերով կը վարձատրէ զՀայս։ Անշուշտ Կամենիցէ 10 վերստ հեռաւորութեամբ գտնուած Արմեանէ և Արմեանքի գիւղերը՝ նոյն ատենէն այդ անունները կը կրեն։

Զարմա-ղանի արշաւանօք բոլորովին քարուքանդ կը լինի Անի, և նորա ոստանիկ բնակիչքն՝ «Թողլով զոսկեզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտըս, զվանորայս և զեկեղեցիս աւեր, չուեալ եկին՝ որպէս փախստական 'ի յԱխստղայ, որ է 'ի մէջ Հաշտարխանու և Ղազանու, ոմանք գնացին 'ի Ճուղայ, ոմանք 'ի Վան և այլք 'ի Սիս»։ Ախստարայի գաղթականութիւնը հօն ևս հանգստութիւն չգտանելով Թաթարաց ձեռքէն, «Յղեն 'ի Ղրիմ առ իշխանն Ջինիւիզաց, որ բնակէր 'ի մէջ Ֆռանկ-Հիսարին Ֆէոդօսիու, ուխտ դնեն ընդ իշխանին Ֆէոդօսիու, եղեալք 'ի յԱխստարայէ իշխանք և հասարակ ժողովուրդք վառեալք զինու, պատերազմելով ընդ Թաթարացն, ճեղքեալ գան 'ի Ղրիմ, և բնակին 'ի Ֆէոդօսիա։ Ի Կազարաթ[1] և

1. Կազարաթ Հայոց մեծ աւան եղած է Հին-Ղրիմու և Թուստաղի մէջ։

'ի Սուրխաթ[1] և 'ի կողմանս սոցա ... յայնժամ զօրացաք մեք և բազմացաք և շինեցաք զգիւղս և զգաւառս իշխանք և ազնուականք. 'ի Ղարապա-զարէն սկսեալ մինչև 'ի Սուրխաթ և 'ի Թէոդո-սիա, 'ի լերինս և 'ի դաշտս լի արարին վանօրէիւք և եկեղեցեօք, շինեցաք տունս 100,000 և զեկե-ղեցիս 1000, և 'ի ահէ Հոնականաց պարսպեցին 'ի քաղաքին Թէոդոսիա »: Մեզ այնպէս կ'երևի որ այս 'ի Ղրիմ գաղթող բիւրաւոր հայկազանց մի մասն, այսինքն 40,000 հոգի, գործածելու յարմար անձինք, կամ պարզ զրուցելով՝ զօրականք. Ղրիմէ դէպ 'ի հիւսիս դիմած են, ինչպէս յԱխսարայէ մինչև 'ի Ղրիմ պատերազմելով և ճեղքելով Թա-թարաց խումբերը՝ կու գան, նոյնպէս աստի այսինքն 'ի Ղրիմէ մինչև ցԿամենից՝ նոյն թշնա-մեաց դէմ սուր գործածելով կը հասնին: 1331 ին կը դնէ Անտոնի Հայոց մեծ գաղթականութիւնը 'ի Կամենից: Ցարմար միջոց կը գտնան Հայք՝ հայրե-նեաց (կործանեալ Անւոյ) քանդեալ և կործանեալ եկեղեցեաց և պալատից վրէժը հանելու 'ի տնաւեր Թաթարաց. կը խառնուին Կորիաթովիչ իշխանաց զօրախմբին մէջ և հալածելով զԹաթարս՝ բնակու-թիւն կը հաստատեն Կամենիցի մէջ. և տակաւ պատերազմական սուրերն վաճառականութեան տումարներու փոխելով՝ ձեռք կը զարնեն փոխա-նակ Անւոյ զԿամենից շէնցընել: Կորիաթովիչ իշ-

1. Սուրղաթ՝ այժմեան Հին-Ղրիմն է. ոմանք նմանա-ձայնութենէ չփոթելով զՍուտաղ կը կարծեն, որ սխալ է. Սուտաղի հին անունը՝ 'ի Յունաց է Սուկտէա, 'ի Ճենովա-ցւոց՝ Սօլտայա (Soldaja), մեր ձեռագրաց մէջ կայ Սուդըա գրուած:

խանաց այդ միայն հարկաւոր էր, որ 'ի Թաթարաց սրբեալ աշխարհքը նորէն շէննայ, ուստի կը շնորհէն Հայոց մեծամեծ արտօնութիւններ։ Գէորգ Կորիաթովիչ իշխանին Կամենիցւոց տուած պարգեւագրին ներքոյ՝ Հայոց անուններ կան[1]։ Այլ հաւանական է՝ որ այդ հայկազունք առաջի գաղթականացմէ լինին։ Հայք ինչպէս 'ի Ղրիմ. նոյնպէս և 'ի Կամենից կը զօրանան կը բազմանան, կը լնուն քաղաքը մեծամեծ շէնքերով, կ'ամրացընեն բերդերով, ազգային առանձին դատաստանով. իսկ վաճառականութեամբ ոչ թէ միայն Կամենից քաղաքին, այլ բոլոր բովանդակ Փոտոլիոյ և անդր ևս քան զՓոտոլիա կը տիրեն։

Երբ Փոտոլիա Լեհաց իշխանութեան ձեռք կ'անցնի, Հայոց առաջին գործը կը լինի՝ իրենց արդէն ստացած առանձնաշնորհութիւնքը վաւերացընել տալ Լեհ թագաւորաց. որոց առաջինն կը լինի Վլատիսլաւ Եագելլոյ։ Լաւրենտիոս Մարչինսքի[2] 16 Լեհ արքայից ստորագրութիւնք կը հաշուէ, Հայոց զանազան ժամանակ տրուած արտօնութեանց ներքոյ։

Ա. 1496ին խնդրած են Հայք Լեհաց Յովհաննէս Ալբերտոս թագաւորէն հաստատութիւն ազգային առանձնաշնորհութեանց. արքայն՝ 'ի նկատի ունենալով որ Կամենից սահմանածայր քաղաք է և շատ անգամ զրկանք կրած 'ի թշնամեաց, կը հաստատէ Հայոց արտօնութիւնքը, և կը հրամայէ՝ որ Հայք 'ի մեծի և 'ի փոքու՝ ազգային դատաս-

1. Հայք 'ի Փոտոլիա, Դորոնավիչ ռուս երիցու։

2. Աշխարհագրական, Տեղագրական և Պատմական Փոտոլիա-նիանք կոչուած գրքին մէջ։

տանիլն ենթարկուիլն և չդիմեն այլազգի դատաւորաց։

Բ. 1503ին, Քրաքովի մէջ Ալեքսանդր Թագաւորն կը վաւերացընէ Հայոց ունեցած արտօնութիւնքը 'ի Նախնթաց իշխանաց և արքայից։

Գ. Հինգ տարի վերջը, 1507ին Սիգիզմունդ Թագաւորն նոյնպէս կը հաստատէ զՀայս իրենց առանձնաշնորհութեանց մէջ։ Եւ այսպէս յաջորդաբար մինչև ց1766. տասնուվեց Թագաւորք արտօնութիւններով կը ճոխացընեն զՀայս, իրենց աշխարհին օգտակար ծառայութեան փոխան. այնպէս որ շատ աւելի առանձնաշնորհութիւն կը վայելեն Հայք քան զԼեհս, և այլն։

Հայք այս տուած առանձնաշնորհութեանց պտուղը ժամանակին կու տան, որով ինչպէս 'ի պատերազմական յասպարիզին սկզբան, ապա 'ի վաճառականութեան արուեստին, նոյնպէս յետոյ ասպետականութեան և ազնուականութեան մէջ՝ ճոխ և վայելչակենցաղ կը հանդիսանան։ Առաջին գաղթականացմէ ոմանք տուած են ասպետական պատիւ, և որոց ցեղը հին ազնուականաց կարգը մտած է, որպիսիք են Թէոդորովիչք և Սոլթանք։ Դարձեալ նշանաւոր եղած են՝ Աւագք, Սեֆերովիչք, Շատպէյք և Խրիսթոֆովիչք՝ ցեղովին։ Աւագամեծար քաղաքացեաց կարգն անցած են Ակորսովիչք և Աւգոստինովիչք և Ակսենտովիչք, Պոկտանովիչք և Պօղոսեանք (Պօկուշք), Բուտագովիչք, Եանովիչք[1] (Յովհաննիսեանք), Տօնա-

1. Այդ անուանի տոհմին շառաւիղ Պ. Թէոփիլէ Եանովիչ, շատ մարդասիրութիւն ցըցուց մեզ. թէպէտ հայերէն չի խօսիր, այլ կը խոստովանի որ ինքն իսկապէս հայ է։

պետովիչք, Քերեմեթովիչք, Աւլանովիչք, Սիմեոնովիչք, Ռուքեան, Գաբրելովիչք և Մըսրովիչք, և այլք։

Այս ազգ մարդիկն իրենց միջէն կ'ընտրէին կառավարիչ պաշտօնեաներ, որոց գերագոյնն էր վոյթ կամ ազգագլուխը, որոյ կու տային ընտրութեամբ ութ առաջիկայ կամ խորհրդական, որոց գլխաւորը երէցփոխանն էր և տեղակալ ազգագլխոյն։ Բաց 'ի սոցանէ կ'ընտրէին և քառասուն Ընկերք կամ Եղբարք, որոց ներկայութեամբ և խորհրդով կը վարէին դատաստանք, և վճիռները քարտուղարն 'ի գիր կ'անցնէր։ Դատաստանական մատեաններէն կ'երևայ որ՝ վոյթն ընդհանուր օրինաց կամ արդարութեան պաշտօնեայ է, իսկ ազգային շահուց, եկեղեցեաց և դպրոցաց վերակացու և պաշտպան՝ երէցփոխանն է, ութ առաջիկայից գլխաւորն։ Անուանի և բազում գովեստից արժանի է երէցփոխանաց կարգին Պարոն Միխնոյ, որդի Տօնուշի, իւր երկար և արդիւնական պաշտօնավարութեամբ։ Կամենիցի Հայոց դատարանին մատեանք լի են սորա գործերով ԺԶ-ԺԷ դարերուն մէջ։ Եկեղեցեաց և առաջնորդարանաց նորոգման և շինութեան միջոց, արդեամբ և աշխատութեամբ մեծամեծ ծառայութիւններ մատուցած է ազգիս պատուական երէցփոխանն։ Նորա անուան մեծ փառք բերողը, 1604ին Կամենիցի մեծ հրդեհէն վերջը, դէմ ընդ դէմ միմեանց երկու երկսեռ դպրոցաց կանգնումն է, որպէս զի նոցա մէջ հայ մանկտին ուսանի իւր մայրենի լեզուով կրօնք և աստուածպաշտութիւն։ Եթէ Միխնոյի՝ արժանաւոր երէցփոխանք զնա յաջորդած լինէին՝ ցայսօր կենդանի կը մնար 'ի Կա-

մենից հայութիւնն։ Քաղաքիս՝ Հայոց կոչուած թաղին մէջ պտըտած միջոցիս. ուր ցարդ երկաթագիր սևացեալ տառեր՝ Հայ աչքերու հաճոյ և միանգամայն տխուր տեսիլ կ'ընծայեն, աստ և անդ քարերու վրայ, կարծես իբր ականջացս մէջ կը հնչէր Միխնոյի խօսածը երբեմն 'ի ժողովք տանուտեարց. « Ո՛վ Եղբարք իմ, առաւել եւս սքանչանամ և հիանամ վասն այս բանի՝ զի անուանիմք քրիստոնեայ, և ոչ կատարեմք զկարգ քրիստոնէից, և ոչ ողորմեցարուք դուք ձեզի... զի ահա բ ամ է, քանի այրեցաւ քաղաքն մեր, և դուք ոչ խորհիք զի մի դպրատուն շինել տայք՝ որ զձեր տղայքն ժողովեալ 'ի մի տեղ և ուսանին 'ի գիրս, և այլն »։ Այս յորդորակս Պր. Միխնոյ խօսած է 1604, մայիսի 18, Կամենիցի առաջաւորաց ժողովին մէջ. ճառիս աւանդողը կը յաւելու՝ թէ երէցփոխանի խօսածը դպրատանց մասին « յոյժ հաճոյ թուեցաւ տանուտեարց և ժողովրդոց »։ Պր. Միխնոյ յանձն կ'առնու դպրոցաց շինութիւնը. « Արկ զձեռն 'ի գործ, և ետ շինել բ տունս հանդէպ միմեանց փայտաշէն, մեծամեծ, վայելուչ և գեղեցիկ շինուածով, այսինքն է՝ զպատուհաններն ազնիւ ապիկի, որ կոչի Վէնէտիկի, նկարած ծածկոյթներով... յոյժ գեղեցկազարդ, և ամրացոյց 'ի ներքոյ և արտաքոյ։ Կատարեցաւ 'ի փառս աւրհնելոյն բ դպրատունս և սրահիւնս, Նոյեմբեր Ը. ՌԾԳ »։

Ի պարծանս ազգիս պէտք է աւելցնել հոս, որ ազդայինք 'ի Լեհաստան, յարքայից ստացած արտօնութիւնքը արդիւնաւորելով և ճարտարութեամբ մեծամեծ գումարներ հաւաքած են, և այդ դրամը

պէտք եղած տեղ խոհական առատաձեռնութեամբ գործածած։

Հայաստանում լեհախօս հեղինակը, նախ Նէմցեւիչ և ապա Հ. Պարոնչ կը վկայեն, որ անուանի հայ վաճառականն Կոստանդին, մեծագումար դրամով օգնութեան հասած է Լեհաց Աւգոստոս-Սիգիզմունդ Թագաւորին. Նոյնպէս Պոկտան Տօնաւագովիչ՝ Սիգիզմունդ Գ. և նորա թոռն Դոմինիկոս Պոկտանովիչ՝ Իլվովի հարուստ բնակչաց մին եղած է, և 1707ին վախճանելով 250,000 զլօթի[1] արժողութեամբ կալուածներ թողած ժառանգաց։ Բեռնարդովիչ Խրիստոֆ-Աւետիք հարստութեամբ գերազանցած է քան զամենեսին, Վլատիսլաւ Դ. երբ 100,000 ոսկի (չեռվոնեց) փոխ կը խնդրէ, Աւետիք կը հարցունէ՝ թէ որ տեսակ, ոսկի, արծաթի թէ պղնձի դրամով կամենայ ստանալ։ Արքայն տարակուսելով, կամ լաւ ևս՝ փորձել ուզելով, — Երեք տեսակովն ևս, կ'ասէ։ Բեռնարդովիչ իսկոյն կը կատարէ Վլադիսլաւ Գ. կամքը։ Այս գիպուածէս ետև արքայն մեծ յարգութեան ցոյցեր կու տայ առ հասարակ Հայոց, և Բեռնարդովիչեանց տունը իշ[illegible] կը դառնայ արքային։ Թէպէտ և ԺԷ դարու՝ առանձնականի քով այդպիսի. մեծ գումար գտնուիլը առասպել երևի, սակայն պատմութիւնն յայտնի կը վկայէ։ 1677ին Նիկոլայ անունով հայազգին 500,000 զլօթի և այլ անշարժ կալուածներ կը թողու աշխարհին

1. Զլօթի լեհաց դրամ է, որ այժմ կը համապատասխանէ 60 հարիւրչէք։

բարեկարգութեան համար։ Կամենիցի Հայք[1] այլ և այլ դարերու մեծ բարեգործութիւններ կ'առնեն հասարակաց բարւոյն համար. ոմն 'ի ԺԶ. դարու՝ եկեղեցի շինել կու տայ, ինչպէս Սինան Խութլուպէյ. Ներսէս ոմն 'ի ԺԷ դարու՝ ջրոյ ագուգաներ շինել կու տայ Կամենիցի մէջ, իւր հաշուին. Զաքարիա Խրիսթոֆովիչ միջնաբերդը կ'ամրացընէ իւր հաշուով, սոցա նման և այլ շատեր։

Ընդհանուր Լեհահայոց պատմութենէն կ'երևայ՝ որ Լեհաց կառավարութիւնն միշտ լաւ և խոհական կերպով վարուած է Հայոց հետ, և Հայք շատ անգամ իրենց երախտագիտութիւնը ցուցած են առ Թագաւորս. այլ հասարակ ժողովուրդն՝ Հայոց ճոխութեան վրայ նախանձու աչօք նայած է. որով կէս արդարացի և կէս հեգնական բառը, այսինքն քապզան, որ կը նշանակէ մեծաքսակ, գործածած են առ Հայս։ Սակայն զայս պէտք է խոստովանիլ, զոր և Լեհք լաւ կը ճանչնան, որ վաճառականու-

1. Կամենիցի Հայոց հարստանալուն պատճառն՝ արթուն աշխատութիւնը և չափաւորեալ ծախքով խոհական գիւղատնտեսութիւնը կը համարի հնադէտն Ռոլլէ. միւս այլ պատճառ մի ևս կայ՝ որ ամենոց ականջին թերևս ախորժ չէ հնչեր. այն է գերեաց վաճառականութիւնը, Թաթարաց Ռուսաստան և Լեհաստան արշաւած և կողոպտած միջոցին։ Քինեւի դիւանին մէջ ձեռքս անցաւ դատաստանական գործ մի Վոլինի դաւառին Վլադիմիր քաղաքը գրուած ԺԶ դարու (1579) յորում՝ խառն լեհ և ռուս լեզուով կայ գրուած Օվանէս Պոկտանովիչ կամենիցացի հայազգոյն 'ի Կաֆա (Ղրիմու) գնելը՝ Քուրիլ (Կիւրեղ) անունով ռուս իշխանին կինը, և սոցա երկանը դարձընելը, մանրամասն պարագաներով։

թիւնը հարստութեան հետ մէկ տեղ Հայոց ձեռք
եղած միջոց, չէն և բարօրութեան մէջ էր Փո-
տոլիա, այլ երբ վաճառականութիւնն տակաւ
Հրէից ձեռքը կ'անցնի՝ Լեհք և Հայք 'ի միասին
կը սնանկանան.

1672ին Մէհմէտ Դ. Կամենիցի առնելով, Հըր-
եայք՝ որոց արգիլուած էր 'ի Լեհաց Կամենիցի մէջ
հաստատուն գործ բանել, կամաց կամաց անտից
կռուան կը գտնան. 1699ին երբ Տաճիկք դար-
ձեալ Լեհաց թողլով զԿամենից կը հեռանան.
Հրեայք ամենայն ջանք կը բանեցընեն մէջ մնալու,
և իրենց նպատակին հասնելու՝ փող չեն խնայեր.
'ի զուր կը բողոքեն Հայք, գուշակելով զապագայն։
Տակաւ կը տեղաւորին Հրեայք, և ըստ տեղւոյն
սարկարար խոնարհելով, և այլ երբեմն դաւով և
խարդախութեամբ կամաց կամաց ցանցերը կը
սփռեն, վաճառականութեան ձեռք կը զարնեն.
Հայք կամայ և ակամայ տեղիք կու տան, և Լեհ
ազնուականաց օրինակին հետևելով գեղերը կը
քաշուին։ Ցայսմ ևս կը յաջողին և ըստ վկայելոյ
Ալտոնիի, խելացի տնտեսութեամբ, չափաւորեալ
կենաք, իրենց ձեռքը կը հաւաքեն հարաւային-
արևմտեան Լեհաստանի դրամագլուխը. Նոցա ճո-
խութեան անունը 'ի հեռաւոր տեղեր կը հռչակուի.
և Փոտոլիոյ բերք և ապրանք «Վաճառք Հայոց»
անունը կը կրէ, ԺԷ դարէ սկսեալ, որում կը
վկայեն մաքսատանց մատեանք։ Այլ տակաւ Հայք
Լեհաց ձևոյն և օրինակին հետևելով, կամաց կա-
մաց ամուսնութեամբ խառնուելով, և ամբողջ մի
տեղւոյ վրայ (այսինքն Կամենիցի մէջ) միութիւն
և ամփոփութիւններն քակուելով, ցիր և ցան կա-
լուածներու և գեղերու մէջ, կը խառնուին Լեհաց

հետ, և Թաթար լեզունին լեհերէնի փոխելով՝ գրեթէ բոլորովին կը լեհանան։

Սակայն պէտք է այս ևս խոստովանինք՝ որ Հայք շատ երկար ժամանակ պատերազմած են այդ բանին դէմ․ 600 տարի դիմացած են, իրենց ազգութեան մէջ 'ի հեռաւոր հիւսիսական աշխարհին՝ հրջապատեալ օտար տարրերով։ Ժամանակին պատմիչ մի կը վկայէ (Վերդում), որ «Հայք իրենք զիրենք հեռու կը բռնեն, ինչպէս 'ի Լեհաց նոյնպէս և յայլոց ազգաց, յար և նման Հրէից, միայն այս տարբերութեամբ որ՝ Հրեայք աղքատ են և ծառայամիտ, այլ Հայք ճոխք և ինքնապանծք։ Նոցա Թխամորթ կերպարանքէն և դուրս ցցուած համարձակ հայուածքէն շուտով կարելի է զանազանել զնոսա այլ ազգերէ, ինչպէս զՀրեայս՝ իրենց տժգոյն և ապուշ կերպարանքէն։ Հայք ոչ կամաւ կամ յօժարութեամբ կը կապուին ամուսնութեամբ օտարաց հետ»․

Մինչև ԺԶ դար հայերէն խօսած են Կամենիցի Հայք․ այդ դարուն վերջերը, Անեցւոց կոկ հայերէնը փոխած են իրենց տունը ալրող-քանդող Թաթարաց խոշորալուր բարբառին, և մինչև 1625 այդ խժալուր բարբառով խօսելէն և գրելէն վերջը, նաև առանց ամաչելու այդ լեզուաւ աղօթելէն վերջը, սկսած են Լեհաց լեզուն գործածել, մեր նախնեաց լեզուն Տէրտէրներու ժառանգութիւն թողլով։

Լեզուի հետ անխտիր խնամութիւնը մտած է, որ եղած է պատճառ այս վերջին 200 տարուան միջոցին մերոց լեհանալուն։ Վասն զի 1676 ին Լեհաստանի մէջ 4000 հայ ընտանիք կը համրուին, միայն Կամենիցի մէջ 1200 տուն, որ քաղաքին

բնակչաց մեծամասնութիւնը կը կազմէ։ Ըստ իմ կարծեաց լեզուափոխութիւնը և անխտիր խնամութիւնը զօրաւոր պատճառներ եղած են ազգիս օտարանալուն։ Թէպէտ և ըստ ոմանց՝ Թորոսեւիչ Նիկոլ եպիսկոպոսի ժամանակ եղած համարձակ ձեռնամխութիւնը մեր ժամական մատեաններուն մէջ և ամպէտ ծիսափոխութիւնք եղած են պատճառ ազգիս օտարութեան, այլ այնպէս կը կարծեմ՝ որ եթէ մերոնք լեզունին պահած լինէին և խորշէին, ինչպէս առաջ, անխտիր խնամութենէ, Նիկոլի բռնութիւնք ոչ միայն օտարանալու, այլ ազգութիւննին ամբողջ պահելու մի զօրաւոր պատճառ կը լինէր. ըստ առածին «բռնութեամբ գեղեցկութիւն չի լինիր»։ Այլ մեք դառնանք դարձեալ առ Տիրամայրն Հայոց։

## Է

## ՏԻՐԱՄԱՅՐՆ ՀԱՅՈՑ

Ութ հարիւր կամ աւելի կամ սակաւ մի պակաս տարիներէ մինչև ցայսօր, այդ սրբազան աւանդն ազգիս, որ ընդ համօրէն Լեհաստան հռչակեալ է սքանչելեօք, միշտ Հայոց անունը կրած է։ Տէր Մովսէս Դորոնովիչ Ռուս երէցն կը գրէ. «Սրբազնագոյն և մեծագին աւանդ Կամենիցի Հայոց կրօնական կենաց՝ եղած է և է միշտ մինչև ցայսօր, Հայոց Ս. Նիկոլայոս եկեղեցւոյ մէջ պատուեալ Տիրամօր Պատկերն»։ Հեղինակն Կամենիցի Յիշատակարանաց Աննոնի. «Կամենիցի

Հայոց եկեղեցւոյն մէջ, յանուն սքանչելագործին[1] Նիկողայի, կը պահուի հնաւանդ յիշատակ մի. այն է սքանչելագործ պատկեր Սրբուհի Կուսին Մարիամու։ Այդ պատկերը՝ մեզ անծանօթ հեղանիւթով ծածկուած մի տախտակի կտորի վրայ նկարուած է. Աստուածածին՝ ձախ ձեռքը Յիսուս մանուկը։ Տիրամօր կուսին գլուխը ծածկուած է սև լաչակով, ըստ արևելեայց, նոյնագոյն վերարկուն կրծոց վրայ հանգրիճած. լուսոյ ճառագայթք կը պատեն գլուխը. որոց մէջ կայ գրուածք մի՝ որ անընթեռնլի է. պատկերին ստորին ծայրը գրուած կայ լատիներէն։ O Maria, mater Dei Christi. Պատկերիս ծագումը, տեղին, նկարման միջոցը, և նկարիչն անծանօթ են մեզ։ Հմուտք արուեստին, ըստ վկայութեան Կալանոսի և Զորբի, ոչ առանց հիման՝ Ժ դարու գործ կը համարին զայն, և կ'ասեն՝ որ Հայք բերած են այդ պատկերը 'ի Սևաստոպոլէ 1331 ին, Հայոց երրորդ և բազմաթիւ գաղթականութեան միջոց 'ի Փոտոլիա[2]... Եւ որովհետև արդէն կար Կամենիցի մէջ Հայոց եկեղեցի, յանուն սրբոյ Կուսին, (այժմեան Ռուսաց Ս. Նիկոլա եկեղեցին) դրած են հոն։ Ապա ԺԵ դարու (հարիւր տարի վերջը, 1495 ին) տեղափոխած է, ուր կայ ցայսօր։ 1672 ին Տաճիկք տիրելով Կամենիցի, Լեհք՝ ըստ պայմանաց յաղթօ-

1. Լեհք՝ առաւել ևս Ռուսք՝ Միւռոնայ հայրապետին լատինաւորէն ածականը կու տան. վերը ևս նոյնպէս գործածել է. թարգմանութեան միջոց Սրբոյն յատկացեալ Սքանչելագործ ածականը դրի, միւսը ազգիս լուսաւորչին յատկանիշ պահելով.

2. Հեղինակն այս տեղ Հայոց երրորդ գաղթումը 1380 ին կը դնէ, թերևս սխալմամբ։

ղին հեռացան 'ի Կամենիցէ. այլ Հայոց չեն թողուլ ելնելու, որով և նոցա մայրապետք կը մնան 'ի քաղաքին։ Երկու ամիս հոն մնալէն վերջը, առանց հալածանք կրելու 'ի յաղթականաց, հրաման կ'ելնէ՝ որ հեռանան քաղաքէն. քութիւնք եղած են պատճառը... 'ի թիւս Հայոց կային 14 մայրապետ կուսանք։ Սոքա ամսօրեայ մի ճանապարհորդելով կը հասնին յափն ծովուն, և կը մտնեն երեք նաւերու մէջ, յորոց մին 'ի ճանապարհին կ'ընկղմի, և այլ երկուքն կը հասնին 'ի Սիզոպոլ քաղաք Տաճկաց։ Անճար պանդուխտներն անմարդի կը գտնեն քաղաքը, զի նախընթաց տարւոյն ժանտախտը ջարդել էր անոր բնիկները, և ողջ մնացողները թողել գնացել էին քաղաքը. սակայն Սուլտանին հրամանն այն էր՝ որ Հայք ներքին գաւառները չզաղթին։ Հոն կ'անցընեն բովանդակ ձմեռը, գարնան (1673) կ'անցնին 'ի Մակեդոնիա գաւառն, ուր և ազատ շունչ կ'առնուն։ Կը շինեն իրենց համար եկեղեցի, ուր կը զետեղեն հետերնին բերած Հրաշագործ պատկերը։ Այլ սէր Լեհաստան (երկրորդ) հայրենեաց կը մաշէ նոցա սիրտը։ 1675ին կ'որոշեն մայրապետք լռելեայն՝ դառնալ վերստին 'ի Լեհաստան։ Յաջողութեամբ կը հասնին 'ի Պուքարեշտ, ուր Ուլախաց իշխանուհին իրեն մօտ կը պահէ զնոսա տասն ամիս. 1676ին կը հասնին 'ի Ստանեսլաւով քաղաք. Իլվովի Թորոսեւիչ արքեպիսկոպոսին խնդրանօք, կ'անցնին մայրապետք 'ի Սթանեսլաւովէ յԻլվով, ուր Հայոց գերեզմանատան անշուք վանքին մէջ կը պատըսպարին։ Այն միջոցին Կամենիցէն ելնող մայրապետաց թիւը երեքի հասած էր. զի նոցանէ երեքն Հայոց լեզուն չգիտնալնուն պատճառաւ՝

քաժնուած էին ընկերներէն. և այլ հինգն՝ պանդխտութեան մինչեւ վախճանած... Ինն տարիէ վերջը 1685ին, Հրաշագործ պատկերը Խլվլի մայր եկեղեցւոյ մէջ կը զետեղեն, և Եղբայրութիւն մի կը հաստատեն Ս. Նիկողայոսի անուամբ։ Եղբայրութեանս մատեանները կարգաւորեալ ձևով գրուած են և ցարդ կը պահուին եկեղեցւոյ դիւանին մէջ։ Երբ Տաճիկ կառավարութիւնն ձեռքը կը քաշէ Կամինիցէ, Եղբայրութեանս հոգաբարձու քահանայք՝ Ոնուփրիոս Ասլանովիչ և Ստեփան Բարուքովիչ՝ կը բերեն Աստուածամօր պատկերը, 22 մայիսի 1700, մեծահանդէս թափօրով, և կը զետեղեն Ս. Ստեփանոս մատրան մէջ, զոր առ ժամանակեայ կը յարդարեն Ս. Նիկոլ եկեղեցւոյ զանգակատան ստորին յարկին մէջ. վասն զի նոյն ատեն Հայոց երկու եկեղեցիքն ես աւեր վիճակի մէջ էին։ Կը գտնուի նոր քարերար մի, Պոկտան Լատինովիչ, որ շուտով նորոգել կու տայ Աստուածամօր Աւետման մատուռը և կարևոր սպասները կը հայթայթէ։ Աստ կը մնայ Տիրամօր Հրաշագործ պատկերը, մինչև որ նորոգի Աքանչելագործ հայրապետին եկեղեցին 1767»։ «Ցամի տեառն 1767, օրն 22 օգոստոսի, եղև բերումն թափօրով Հրաշագործ պատկերին երանուհւոյ կուսին, 'ի նոյն եկեղեցին.» կը ծանուցանէ հին ճաշոցին նոր յիշատակարանը. և այժ Ս. Նիկողայոս եկեղեցւոյն մէջ մինչև ցայսօր կը պաշտուի 'ի բազմախուռն ժողովրդոց Տիրամայրս Հայոց։ Բաց 'ի սովորական ջերմեռանդութեանց և ութօրեայ Վերափոխման տօնին ցնծութեանց, տարւոյն մէջ բոլոր շաբաթ օրերը նուիրեալ են Աստուածամօրս պաշտաման, և միշտ խուռն բազմութիւն կը ժողովի նոյն օրերը

փառաւորելու և պատուելու պատարագօք և երգօք զՏիրամայրս մեր։ Առ Աստուածամայրն ջերմեռանդութեան համար կայ տպուած լեհ լեզուով աղօթամատոյց–երգարան մի, որ զայս վերնագիրս կը կրէ. «Երկրպագութիւն մեղաւորին 'ի պատիւ և 'ի փառս Սրբուհւոյ Կուսին Մարիամու, որ հասանէ յօգնութիւն հաւատացելոյն հրաշափառապէս առ պատկերին որ կայ 'ի ժողովրդապետական եկեղեցւոջ Հայոց 'ի Կամենից Փոտոլեան, յանուն Նիկոլայ աքանչելագործ եպիսկոպոսին Միւռոնայ». որ է տպագրեալ 'ի Կամենից, 1860։ Այդ երգարանը շատ անգամ տպագրուած է. 1860ին տպագրուածին սկիզբը հետեւեալ տեղեկութիւնը կը կարդանք. «Ծանօթութիւն զպատկերէ Սրբուհւոյ Կուսին Մարիամու, որ համբաւեալն է հրաշագործութեամբ յեկեղեցւոջ Հայոց 'ի Կամենից»։ — Մինչև ցարդ եղած մանր հետազօտութիւնք, ինչպէս եկեղեցւոյ դիւանին, նոյն և այլ տեղեր չտուին մեզի հաւաստի տեղեկութիւնք Հրաշագործ պատկերին ծագման կամ հնութեան մասին. վասն զի ամենայն դիւանական գրուածք Հայոց եկեղեցւոյն՝ կորսուած են Թուրքաց 'ի Փոտոլիա յարձակման միջոց։ Ստիպուած եմ հաւաքելու հաւատացելոց աւանդութեամբ պահածը, մանաւորապէս Հայոցը։ Այդ աւանդութիւնք ցայսօր պահուած են անայլայլակ առ ջերմեռանդ հաւատացեալս։ Հաւաստիք են աւանդութեանցս հին աղօթամատոյցք, նորատիպքն կրած են սակաւ այլայլութիւնք, մինչդեռ հինք՝ տասն տպագրութեամբ 'ի լոյս ընծայուած են անփոփոխ։

Հին աղօթամատոյցք միակ տպագրեալ յիշատա-

կարան են Հրաշագործ պատկերին. Նոքա միայն սրբազան աւանդապահք՝ անցելոյ ժամանակաց։ Եկեղեցական պաշտամունք, երգք և աղօթք կը յայտնեն մեզ ծագումն և սքանչելիք Պատկերիս. Նոցա մէջ բացատրուած կը գտնենք նաև նշանաւոր դէպքեր։ Ցիրաւի՝ անոնք բացորոշ չեն գրուած, ինչպէս կը փափաքէինք գիտնալ. սակայն և այնպէս լիուլի կը համաձայնին բերանացի աւանդութեանց արժանահաւատ մարդոց։ Ահա այդպիսի աղբիւրներէ հաւաքեալ կ՚ընծայի համառօտ տեղեկութիւնս՝ Հայոց Հրաշագործ Երանուհւոյ Կուսին Մարիամու Պատկերին »։

Չորս հարիւր ութսուն տարի առաջ[1], այդ Աստուածամօր պատկերը բերած են Հայք 'ի Սևաստոպոլէ 'ի Կամենից Փոտոլեան. և դրած յեկեղեցին Սքանչելագործ հայրապետին, ուր կայ մինչև ցայսօր. վասն զի Հայք հալածուելով 'ի Մուլիմանաց, և չկարենալով այլ ևս դիմանալ նոցա, ժողովելով իրենց կայքը և Հրաշագործ պատկերս գաղթած են 'ի Կամենից։ Այդ պատկերը Կամենիցի մէջ միշտ նշանաւոր եղած է հրաշագործութեամբ, և երեք հարիւր տարուան միջոց եղած է անընդհատ առարկայ՝ ջերմեռանդն յարգութեան հաւատացելոց։ Երբ 1672ին, Աստուծոյ թոյլ տալովը, Փոտոլիա՝ Կամենիցով 'ի միասին ընկաւ ընդ իշխանութեամբ Թուրքաց, այն ատեն ոմանք յեկեղեցեաց քրիստոնէից աւերեցան քանդեցան, և ոմանք Մուլիմանաց մզկիթ եղան։ Բարեպաշտ

1. Եթէ յերրորդ գաղթականութեան խուռեանց 'ի Լեհաստան՝ բերած են Հայք հետերնին այդ Հրաշագործ պատկերը (1331), մինչև ցայժմ 564 տարի կը լինի։

հայկազունք՝ վախնալով որ չըլլայ թէ զրկուին իրենց սրբազան գանձէն, 'ի պատկերէ Տիրամօր, կեանքերնին վտանգի դնելով՝ պահապան եղան պատկերին։ Այլազգիք տեսնելով զՀայս՝ անձնանուէր իրենց սրբատեղւոյն, ուր անպակաս էին, կասկածեցին որ հոն պէտք է լինի պահուած նոցա մեծ հարստութիւնը, ուստի ուզեցին քանդել, աւարել այդ եկեղեցին. այլ Մայրն Ողորմութեան, Երանուհի Կոյսն Մարիամ, արգելք եղաւ նոցա, քանի քանի անգամ հրաշափառ, բոցաճաճանչ աստ և անդ երևցաւ, իբրև թէ պաշտպանելով իւր 300 տարուան սիրելի բնակարանը. և այնպիսի ահ ազդեց, որ քանի մ'անգամ մօտենալով եկեղեցւոյ պատերուն, վախով և ամօթապարտ ստիպուեցան յետ դառնալու։ Հայք նեղուելով յայլազգեաց՝ որոշեցին առ ժամանակ մի հեռանալ 'ի Կամենիցէ...։

Այլ չուզելով բաժնուիլ իրենց սրբազան գանձէն, գաղտուկ մեկնեցան հետերնին առած Տիրամօր պատկերը։ Ողորմածն Աստուած պահեց զնոսա 'ի ցամաքի թշնամեաց ձեռքէն. այլ երբ կը ճանապարհորդէին Սև ծովուն վրայ, տեսան հետամուտ զթշնամիս, և արտասուաք դիմեցին առ Աստուածամայրն Հրաշագործ։ Այդ խեղճ վիճակին մէջ Աստուծոյ կամաց հպատակելով, կ'ընտրէին ամենայն ինչ կորսնցընել, միայն թէ Աստուածամօր պատկերն չլինի աւար։ Հասած էր ժամանակը որ Հայք ընկնին թշնամեաց ձեռք, այլ Աստուած գթութեան աչօք նայեցաւ առ ինքն յուսացեալս. յանկարծ փչեց մրրկախառն փոթորիկ, փրփրեցաւ ծովը, ալիք կը տատանէին զնաւերը, պատեց խաւարը, որոտմունք, փայլակք, ճարճատիւն առագաստից և

նաւուն շուանաց՝ սարսափ կ'ազդէին, տարերց պատերազմի միջոց։ Կլեց ծովը տարաց բոլոր նաւերը, այլ Հայոցը՝ յորում էր պատկեր Երանուհւոյ Կուսին, թէպէտ երկար միջոց պատերազմեցաւ մրրկին և ալեաց դէմ, և մեծապէս վտանգուած, առագաստքն պատառ պատառ, մեծ կայմն միջաբեկ, յիրաւի հրաշքով, յաջողութեամբ հասաւ 'ի ցամաք։ Մեծ վտանգէն ազատած ջերմեռանդն պաշտօնարկուք հրաշագործ պատկերի Տիրամօրն, կրցան ազատ շունչ առնուլ. և շնորհակալ լինելով Նորա գթալիր բարեխօսութեան առաջի Աստուծոյ, հրաշագերծ զանձինս անցան գնացին 'ի Մակեդոնիա։ Հոն՝ ըստ ազդելոյ Տիրամօր, ապահով և յարմար տեղ մի պատրաստեցին սրբազան պատկերին, ինքեանք միշտ երկրպագուք և գոհաբանիչք լինելով. զգուշութեամբ պահելով իրենց զանձը, գիշեր ցորեկ պաշտելով Երկնից Թագուհին։ Երկար ժամանակ մնացին նոքա 'ի Մակեդոնիա, ընդ պաշտպանութեամբ Տիրամօր։ Շուտով տարածուեցաւ Մակեդոնիայ մէջ Ս. Պատկերին հրաշագործութեանց համբաւն. բազմութիւն ժողովրդոց՝ 'ի զանազան պէտս՝ ջերմ աղօթիւք կը դիմէին առ նա. և նա՝ Պաշտպանն յուսացելոց, ինչպէս մինչև ցայսօր, կու տար ցոյց իւր առատ ողորմութեան, և աղաչաւորք մխիթարեալ կը մեկնէին Նորա խորանէն։ Տասը տարիէն վերջը՝ ազդեցութիւն եղաւ ջերմեռանդն պաշտօնասիրաց Տիրամօր պատկերին՝ տանել զնա յԻլվով։ Որովհետև հոն արդէն տարածուած էր համբաւ հրաշից Պատկերին, այն պատճառաւ մեծ հանդիսիւ, 'ի ցոյցս ջերմ հաւատոց ընդունեցան Իլվովցիք զՊատկեր Կուսին, ինչպէս 'ի Մակեդոնիա. և անպակաս էին երկրպագուք

առաջի պատկերին։ Քիչ ատենէն Տիրամօրս հրաշք առ կարօտեալս և վշտացեալս՝ 'ի գովաբանութիւն դրդեցին նաև բոլոր քաղաքը առ Երկնից Թագուհին։ Այն ժամանակ նաև (1699) ողորմելով Աստուած քրիստոնէից՝ ազատեց զՓոտոլիա յօտարաց լուծէն։ . . . Խորհեցան Հայք դառնալ 'ի Կամենից, որպէս զի հանգչեցընեն Տիրամօր պատկերը իր ընտրած տեղին։ Մտանելով Կամենիցի Հայք, կանգ առին Դլուժքա կոչուած գեղը. վասն զի բարեպաշտ Կամենիցցիք կը փափաքէին պարտ ու պատշաճ յարգութեամբ և փառօք ընդունել Երկնից Թագուհին երկրաւոր խոնարհ բնակարանին մէջ։ Անհամար բազմութիւն ժողովրդոց, ազնուականք և ռամիկք, դատաւորք քաղաքին, փառաւորեալ և չքեղ ասպետօք՝ դիմաւորեցին Պատկերին՝ ուրախութեան երգօք և նուագօք, և առաջնորդեցին 'ի քաղաք։ Բոլոր քաղաքացիք երկար միջոց թնդացուցին օդը ուրախութեան և գովութեան երգօք, 'ի պատիւ Մարիամու կուսին։

Եւ որովհետև տաճարն, յորում կը պատուէր Պատկեր Աստուածամօրս 'ի Կամենից, Թուրքաց քաղաքին տիրելէն առաջ, գրեթէ քանդուած էր, այն պատճառաւ դրին զնա 'ի մատրան Աւետման Երանուհւոյ Կուսին Մարիամու,[1] որ մօտ է Հայոց եկեղեցւոյն։ Քանի որ պատկերս այդ մատրան մէջ էր, միշտ կը լինէին անդ հանդիսաւոր պաշտամունք և քարոզք, որոց հռչակէին հրաշք Պաշտպանիս մերոյ։ Աւանդութեամբ գիտենք՝ որ այն միջոցին երաշտութիւնը մեծապէս վտանգած

1. Ըստ Անտոնիի նախ դրած են 'ի մատրան Նախավը-կային, և ապա յեկեղեցւոջն Աւետման։

է դաշտաց, ցորենի և այլոց բուսականութեանց,
որով մօտալուտ սովը սարսափեցուցած է զժողո֊
վուրդը։ Այլ Տիրամօր Պատկերն 'ի Կամենից գտա֊
նալուն պէս, բարեխօսութեամբ Երկնից Թագուհ֊
ւոյն, ուրախարար ցօղը կ'իջնէ յերկիր, առատ
անձրև կը թափեն ամպերն. կը յագի երկիրն, կը
կենդանանայ և կը ծաղկի։ Ուրախութեամբ կը
լեցուի մարդկանց սիրտը, տեսնելով որ Բաշխողն
երկնաւոր ողորմութեանց խնդրեց յԱստուածորդ֊
ւոյն՝ ժողովրդոց կարևորը։ . . .

Ձեռք կը զարնեն Հայք Նորոգելու Ս. Նիկողայոս
եկեղեցին. կարևոր ատաղձը արագ կը պատրաս֊
տեն, գործաւորք անվարձ կ'աշխատին, հարուստ
և պաշտօնավոր անձինք իբրև վարձաւորք կը հայ֊
թայթեն կարևոր պէտքը։ Նոյն իսկ կանայք և տիկ֊
նայք ամէն դասակարգէ պատիւ անձանց կը հա֊
մարին մասնակցիլ գործոյն. Մեծի պատուոյ ար֊
ժանաւոր մեր մամերն՝ յօժարութեամբ կրած են
աղիւս, աւազ և կիր, չնայելով ամենևին ոչ ամ֊
ռան տաքուն, ո՛չ անձրևի և ո՛չ այլ օդոց խառնա֊
կութեան։ Տաճարիս վերանորոգութիւնն աւարտած
է 1767 ին, և նոյն տարին բերուած է Աստուա֊
ծամօր հրաշագործ պատկերն 'ի մատրանէ Աւետ֊
ման, յեկեղեցիս Հայոց, յոր կը պաշտի ցայսօր։—
Ազգիս աւանդութիւնք անընդհատ կը հռչակեն
զսքանչելիս Երկնից Թագուհւոյն. — այն սքանչե֊
լիք կենդանի պահուած են ազգայնոց սրտին մէջ,
և մշտնջենաւոր պիտի մնան աւանդութեամբ, թէ
ինչպէս Սրբուհի կոյսն հասած է օգնութեան՝
ժանտամահի միջոց, բժշկած է ախտաժետս և
խեղանդամս, օգնած է դժբաղդութեան և ցաւոց
միջոց, 'ի սովու և 'ի պատերազմի. դարձեալ թէ

որպիսի՛ մեղաւորք դարձեալ եկած են Պատկերիս դիմաց, և որչափ Թերահաւատք դարձած են առ Քրիստոս՝ ազդեցութեամբ Տիրամօրս:

Հին լեհախօս աղօթագրքէն քանի մը հատուած թարգմանելով՝ կ'աւելցընեմք ստորև, որք ապացոյցք են վերը գրուած աւանդութեանց:

Ա. Ջերմ հառաչանք: « Մայր Աստուծոյ, պաշտպա՛ն քրիստոնէից, պաշտպանեալ պահեա զընակութիւն քաղաքիս և բովանդակ Փոտոլիոյ 'ի թշնամեաց հաւատոյս մերոյ և Թագաւորութեանս: Ունիմք մեք զհաւաստիս մայրենի հովանաւորութեան Քոյ, ոչ 'ի կարծ դատեցեալ, այլ ստուգութեամբ հաւատարմացեալ. Նախ 'ի Կամենից ժամանակս ձիգս, սքանչելեօքդ հովանաւորեալ, Սըրբամաքուր Կոյս, և ապա 'ի Մակեդոնիա, և 'ի Լով քաղաքի: Դու 'ի սրբել քաղաքիս 'ի թշնամեաց, հրաշափառապէս դարձ արարեր այսրէն, ուր և հանապազ գործես սքանչելիս, 'ի ցոյց ողորմութեան Քոյ »:

Բ. Գովութիւն Մարիամու: « Գովաբանեցէք զՄարիամ, հողմք և մրրիկք և ամպք, պարիսպք և հաստատութիւնք, ապառաժք և քարինք, որք շուրջ կայք Կամենից քաղաքիս: Նա է ձեր պաշտպան. Նա՝ որ բնակլին յեկեղեցւոջ Հայոց պահպանէ զձեզ. Նա՝ որ ունի ընդ ոտիւք զլուսին, զթշնամիս առ ոտս իւր խոնարհեցուցանէ: Կա՛ց աներկեան դու Փոտոլիա յերեսաց անհաւատից: Մի՛ երկիցուք մեք 'ի լծոյ թշնամեայն. Աստուածամայրս պահեսցէ և պահպանեսցէ միշտ զՓոտոլիա »:

Գ. Երգ: — « Զորեքհարիւր և այլ տասնեակք ամք անցին՝ յորմէ հետէ Թագաւորէն 'ի Կամե-

նեց՝ Մարիամ. տեղի բնակութեան ընտրեաց նա զեկեղեցին Հայոց, ուր պաշտի պարտուպատշաճ յարգանօք ուստի սիրէ զմեծ զողորմութիւն »։

Դ. Երգ։ — « Մինչդեռ կամաւք Որդւոյ Քո, վասն մեղաց մերոց, էանց Կամենից ընդ իշխանութեամբ այլազգեաց, և հաւատարիմ ծառայք Քոյին, անձամբ չափ պաշտպան կացեալ Քումդ պատկերի, ծովաչու գնացին ընդ Սեաւ ծով, 'ի խորտակել այլոց նաւուց, նաւն՝ որ բարձեալ տանէր զՔոյդ կենդանագիր, ժամանեաց յանքոյթ նաւահանգիստ »։

Ե. Լիտանիա։ — « Սրբուհի Մարիամ, հաստատութեանս այսմիկ (Կամենիցի) հաւատարիմ պահապան. Սրբուհի Մարիամ, բազմապատիկ պաշտպան կողմանցս (Փոտոլիոյ) հարստահարելոց յայլազգենից. Սրբուհի Մարիամ, որ յայտնապէս երևեցար այլազգեաց 'ի վերայ որման գաւթի եկեղեցւոյս Հայոց. Սրբուհի Մարիամ, որ գնացեր տարագիր 'ի ձեռն հաւատարիմ Քոց ծառայից և ընդ ծով հասեր զուղի. Սրբուհի Մարիամ, որ հրաշիւք զերծուցեր զծառայս Քո 'ի ծովակուր լինելոյ, և հաներ զնոսա 'ի մրրկաց 'ի խաղաղ նաւահանգիստ։

Սրբուհի Մարիամ, 'ի Մակեդոնիա հաշակեալ աքանչելեօք։

Սրբուհի Մարիամ, որ յօտարութենէ հասեր յԻլվով։

Սրբուհի Մարիամ, որ յելանելն Թշնամեաց 'ի Կամենիցէ, վաղվաղակի դարձ արարեր 'ի սիրեցեալ Քո տեղին.

Սրբուհի Մարիամ, որ մեծահանդէս պատուով և պաշտամամբ հանգեար 'ի սրբավայր Քոյին. Սրբ-

բուհի Մարիամ, որ 'ի ժամու սրածութեան՝ զապաւինեալս առ Քեզ՝ ողորմութեամբդ կեցուցեր. աղօթեա՛ վասն մեր »:

Ձ. Դարձեալ երգ առ Սրբուհին Մարիամ: — « Սըրբուհի դու, որ ողորմութեանց ես բաշխող, որ զգլորեալ մեղաւորն անդէն կանգնես. առ քեզ համբառնամք զմիտս մեր և զսիրտ, զՔեզ փառաւորեմք. Դու ամուր և վահան կամենիցի՝ 'ի չորեք հարիւր և աւելի ամաց հետէ. Դու ես պաշտպան և բաղդ համօրէն Քոց ծառայից: Թշնամիք մեր խոստովան եղեն յայտնապէս՝ զի 'ի տալ մեզ Մարիամու զօգնութիւն, երկիւղիւ իբրև երկաթ կապեցան աջ բազուկք նոցա և խորտակեցաւ արութիւն: Տեսեալ զՔեզ բոցաճաճանչ՝ ըմբռնեալք մեծաւ երկիւղիւ 'ի փախուստ դարձան թշնամիք, և վարեալք անհնարին տագնապաւ՝ լքին զորբավայր Քոյին: Ի յարձակել թշնամեաց 'ի վերայ մեր խժդժութեամբ՝ հաւատարիմ ապաստաւորք Քոյին փախուցեալ 'ի հալածչաց մտին 'ի նաւ, զՔեզ կրելով 'ի միասին: Դու քաջապէս պահեցեր զնոսա 'ի Սեաւ ծովուն, ընդդէմ մրրկաց և ալեաց խուռն կուտակելոց. զի նոքա զՔեզ ընդ ինքեանս կրելով, Տիրուհի, անվտանգ զերծան:... Դու գեղեցկութիւն Հայոցս, գանձ անսպառելի՛, պարգևեալ մեզ յերկնից. 'ի Քէն է մեզ ողորմութիւն. դու կարօտելոց օգնութիւն. առ ո՛ ոք ձեռք Քո յօգն կարկառիցին՝ նա երկնչի յումեքէ ոչ: Նենգութիւն և պատրանք թշնամեաց հալին որպէս մոմ առաջի Քոյոց խորհրդոց: Հրապոյրք չարին և փորձութիւնք՝ 'ի դիմելն մեր առ Քեզ, 'ի փոշի լուծանին: Թագուհիդ երկնաւոր, ըստ վաղեմի սովորութեան Քում, իշխեա 'ի վերայ մեր, և կառա-

վարեա զաշխարհս մեր։ Տուր մեզ զցանկալին խաղաղութիւն և զկերակուր չափաւոր 'ի անուանդս որդեկաց Քոց »։

## Ը

### ԵՐԳ ԱՌ ՆՈՑՆ ՍՐԲՈՒԹԵԱՆՑ ՄԱՅՐ

Ո՛վ անըսպառ ողորմութեանց Տիրուհի,
Երես յերկիր անկանիմք Քո առաջի,
Աչք յարտասուս աղերսաւորք, անսասան
Պահել ըզմեզ ընդ հովանեաւդ յաւիտեան։
Դու ես պաշտպան հանուրց սեռիս մարդկութեան
Զարդ և պարծանք մեր աշխարհիս փոտոլեան։
Կոյսդ համբաւեալ, յեկեղեցւոջըս Հայոց,
Երևեցար փայլակնացայտ 'ի հօր քոց,
Ցանուցանել նոցա զայս մեր քաղաք 'ի մարտին։
Նոքա ինքեանք ոչ ուրացան, ասացին,
Զի բոցավառ ըզսըրբավայր Քո տեսին,
Ընդ որ աղչեալ, յահ և յերկիւղ պատեցան։
Դու փըրկեցեր ըզՔո որեարդ հայկազեան,
Մինչ զընային հալածական 'ի ծովու,
Հետամուտ լեալ 'ի Թըշնամեաց ահարկու.
Բեկեալ կայմիւ հաներ զնոսա 'ի յանքոյթ
Նաւահանգիստ, ըզԹշնամիս կորուսեալ,
Ըզնաւս նոցին ախիւ զանձիւ ընկըղմեալ։
Իսկոյն ծանեան մերքըն՝ զերծեալք հըրաշիւք
Զի Քո էին կոյս Տիրամայր այն արդիւնք։
Դարձ տարարեալ այսրէն 'ի մերըս աշխարհ
Ի Լով քաղաք առեր հանգիստ և դադար։
Անդ համբաւեալ, աշխարհ վըկայ, ըստ օրում
Ետուր կաղաց, կուրաց, խօԹից բժըշկուԹիւն։

Անտի ապա, ասպետք Լեհաց պար առեալ
Ըզքև, երէցք 'ի Դըլուժքա ներբողեալ՝
Փառօք մեծաւ ածին ըզԿոյսդ յայս քաղաք.
Ուր և իսկոյն եղեն յայտնի Քոյին հրաշք.
Առատ անձրև՝ երաշտացեալն 'ի յերկիր
Ցօղեալ՝ արար բազմապըտուղ կենսակիր:
Ծանեաւ երէցն ըսքանչելիօքդ յայտնի.
Որ կայր յերկար, լոյծ անդամօք 'ի մահճի:
Պատգամ 'ի Քէն եղև Նըմա 'ի տեսլեան
Դիմել առ Քեզ յեկեղեցւոջն հայկական,
Ուր և Թողեալ զմահիճ, ոտիւք գընայուն
Վազվազելով ըզԿոյսդ օրհնեալ դարձ 'ի տուն:
Բազումեն կաղք, կոյրք, գօսացեալք, հաշմանդամք,
Որոց գըտեալ ըզլոյս երկնից և զգընացք,
Թողեալ աստէն ցուպ գաւազան ընդ անթով
Վերադարձան՝ օրհնեալ ըզՔո մեծագով:
Սըրածութեան ժամուն՝ տեսին լուսաւոր
Ըզքոյ տաճար շուրջ բընակիչք մերձաւոր.
Գիտեմք բուրիցըս մեք գըտակ հաւաստեաւ
Զըսքանչելիսդ ակն յանդիման աստ անբաւ.
Դու մըխիթար՝ որոց 'ի վիշտ տագնապին,
Ապաւէն դու մեղաւորաց գըրօհին.
Դու գանձ անգին մեր Կամենից քաղաքի,
Հըզօր պաշտպան Փոտոլիացւոց գաւառի:
Կաս 'ի տախտակ, անաղարտ գոյն Քոց դիմաց,
Երկնաւորի, այո՛, մատանց ես կերտուած:
Լե՛ր մեզ պաշտպան, դու մայր ամբիծ, կոյս գըթած.
Արա՛ ընդ մեզ ըստ սըրբագոյն Քոց կամաց:
Յաւերժաբար երկըրպագուք եմք Քոյին,
Անտես արա ըզպարտիս մեր, Թողութիւն
Մեղաց մերոց հայցեմ. խընդրեմք, Տիրամայր,
Եւ յետ մահուան լե՛ր մեր հոգւոց կենարար:



## ԱՐԿԱԾՔ ԱԿՈԲՑՈՑ ԿԱՄԵՆԻՑՑԻ

## ՀԱՑԱԶԳԻ ԵՐԻՏԱՍԱՐԴԻՆ

1672ին Մէհմէտ Դ. Կամենիցի տիրելով, երբ քրիստոնեայ բնակիչք կը Թողուն, կը հեռանան քաղաքէն, այլազգիք մեծամեծ խոստմունքներ անելով՝ կ՚առնուն կը մնան զՀայս. սակայն 600 հոգի, 'ի Թիւս որոց և 14 կուսանք, կը հեռանան 'ի Կամենիցէ։ Սոցա հետ կար տասներկու տարեկան մանուկ մի, որդի Կամենիցցի Հայու, որ քիչ ժամանակէ 'ի վեր որբ և անտէր մնացել էր։ Մայրը վաղուց մեռած էր, իսկ հայրը դեռ նոր՝ Կամենիցի առման միջոց՝ իւր տունը հրդեհէն ազատելու աշխատելով բոցոյն ճարակ եղել էր։ Այս փոքր երախայն (որովհետև հայրը միշտ յարաբերութիւններ ունեցել էր Թաթարաց հետ), համարձակ կը խօսէր Թաթարաց, նոյն և Թրքաց լեզուով. այդ լեզուաց գիտութիւնը՝ վերջերը՝ մանկան մեծ Թարգմանի պաշտօնի հասնելու պատճառ եղաւ։ Գաղթականացս խուռն բազմութեան մէջ, մի միակ մերձաւոր անձն մի ունէր այս մանուկս, որ էր պառաւեալ կոյսն Հռիփսիմէ, չորեքտասան մայրապետաց մին, որ և իրեն մայրագիր եղած էր։ Կուսանաց վանքին բեռները կրկին ուղտերու շալակի բեռնաւորած էին, և Ստեփանիկ մանուկն՝ այդ ուղտերէն մէկուն վրայ հեծած, որ կապոցներուն և պարկերուն միջէն հազիւ կ՚երևար. և կանանց ճիչն,

խուռն բազմութեան կանչն և աղաղակն անտարբեր մտիկ կ՚անէր. — ո՞ւր և ինչո՞ւ կ՚երթան, արդեօք վերստին պիտի դառնա՞յ իր ծննդեան տեղին, — ամենևին հոգը չէր։ Երևակայութեանը մէջ խոր տպաւորած էր միայն Կամենիցի հրդեհը, որոյ զոհ եղած էր հայրը, ուր և ինքը յուսահատաբար լալուն և ճչելուն մէջեց՝ անծանօթ ծերունի ձեռք մի զինքն ազատած էր կրակէն, և տարած յանձնած էր կուսանաց վանքը՝ Հռիփսիմեայ խնամոց։

Գաղթականաց Հայոց կարաւանն կամ թափօրն կը հասնի Տնեստեր գետին եզերքը. ուստի միւս կողմ անցնելու արգելք կը լինին. զի Խօթինի անցքը կամ կամուրջը՝ այլազգի զօրքն դէպ 'ի ամրոց անելու կը գործածէ։ Հայոց բանակին գիշերօթելու տեղ կը նշանակուի զառիվայր տափարակ մի, ուր երբեմն Սոպիէսքի Լեհաց թագաւորը մեծ յաղթութիւններ գործել էր։ Հայք ստիպուած էին ամէն տեղ այլազգի կառավարչաց ներկայանալ, և նոցա հրամանին համեմատ յառաջ վարել ճամբանին։ Կ՚որոշեն իրենց մէջ այս անգամ պատգամաւոր ղրկելու առ այլազգի կառավարիչն՝ Բուտագովիչ անունով նշանաւոր անձը, որոյ՝ իբրև թարգման՝ կը նշանակեն Ստեփանիկ Ակոբսոյ մանուկը. այս առթիւ նա՝ առաջին անգամ կը վարէ իւր [illegible]պագային պաշտօնը։ Թէպէտ և Խօթինի բերդակալը Տէրիպալթա՝ կը մերժէ Հայոց խնդիրը, սայլեր չի տար, այլ տեսնելով Հայոց Կամենիցի փաշայէն առած անցագիրը, կը հրամայէ որ առանց մտենալու արքունի սայլերուն՝ հեռուէն անցնին երթան։

Երկրորդ օրը՝ առաւօտը կանուխ՝ Հայոց բանակը

կը շարժի տեղէն, և երբ կը հասնին երկրորդ-դիշերօթի տեղը, այլազգի խումբը՝ որ աղայի մի հրամանատարութեամբ՝ Հայոց հետ կ՚երթար, համաձայն Կամենիցի փաշային կարգադրութեան, կը հրաժարի մերոնցմէ. այլ այդ հրաժարականը մեծագին կը լինի մերոց. զի 'ի նշան շնորհակալութեան՝ ոսկւոյ մեծ քսակ մի պարգև կու տան աղային. ապա թէ ոչ՝ այդ աղային պաշտպանութիւնն աւելի ծանրագնի կը լինէր նոցա։

Հայք իրենք իրենց մնալով՝ ազատ այլազգի պաշտպանէ, համարձակ կը լինին պաշտելու իրենց Տիրամայրը. գիշերները՝ խուլ և անմարդի ճանապարհէ դուրս տեղուանք կը զարնեն իրենց բանակը. իրենցմէ պահապաններ կը դնեն բանակին չորս պտոյտը. 'ի բանակամիջին՝ պարսիկ կապերտներով հովանաւորեալ սայլին վրայ է Տիրամօր Հրաշագործ պատկերն, պաշտպան պանդուխտ Հայերուն. Փոխան հրաբորբոք ջահերու՝ փոքրիկ կանթեղ մի կը պլպլայ Պատկերին դիմաց, աղօտ լոյս ձգելով Տիրամօր Թուխ դէմքին վրայ։ Այդ շարժական վրանաձև տաճարին մէջ, ամէն օր պաշտամունք կը կատարուին. Թերևս և ոչ մի փառաւոր տաճարի մէջ այնպիսի ջերմաջերմ պաղատանք չեն դիմած հաւատացեալք առ Աստուած, ինչպէս այս աղքատին խորանին դիմաց։ Երեկոյեան ժամասացութենէն վերջը վանազուրկ և տխրատեսիլ մայրապետք ծունր դրած պատկերին առաջ՝ իրենց առանձին մրմունջը կը հեղուին յունկն Տիրամօր. քաղցր էր նոցա համար այն Աստուածամօր առաջ Անկեալ դիրքը. Անկանիմք առաջի քոյ Աստուածածին, սրտաճմլիկ և խուլ ձայնով կը կրկնէին նոքա, չէր կրնար Հրաշագործ Տիրամայրն անլսող լինել

այն սրտախօսիկ հառաչանաց. մխիթարեալ՝ կը փակէին Նոքա իրենց աչքը 'ի քուն հանգստեան, մինչդեռ Նոցա հոգաբարձուն Տէր Մատթէոս, կանթեղին աղօտ լուսով 'ի գիր կ'անցընէր օրուան պատահարքը: Գիշերուան հանգստենէն վերջը, վաղ առաւօտ երկրպագելով մեր Հայերն դէպ Աստուածամօր պատկերին կողմը, կը շարունակէին ճամբանին միշտ 'ի հարաւ բռնելով: Նոցա հետ էր և Ստեփանիկ Թարգմանիչ, որ Հռիփսիմեայ օրինակին հետևելով ջերմեռանդութեամբ կը համ-բուրէր գետինը: Բայց ո՞ւր պիտի հանգչէր վեր-ջապէս սոցա ճանապարհը. «Նա, Տիրամայրը կը ցուցընէ մեզ», կը հառաչէին Հայք, դէպ 'ի Տիրա-մօր սայլը աչքերնին վերցընելով:

Այս ձևով ամիս մի ճանապարհորդելով՝ կը հասնին յափն ծովու: Արդէն գրեցինք Նոցա 'ի ծովու տագնապը. Մակեդոնիոյ մէջ երկար մնալ-նին և անտի յԻլվով անցնելնին: Իլվովի մէջ՝ Կա-մենիցէ եկող կուսանացմէ ոմանք կը բաժնուին յընկերութենէն: Անոռնի պատճառ կը բերէ Նոցա հայերէն չգիտնալը: Այդ բաժնուող կուսանաց մին է պառաւն Հռիփսիմէ, մայրագիրն Ստեփանի Ակոբսոյ: Սոքա՝ Հռիփսիմէ և Ակոբսոյ՝ ընկերու-թենէն բաժնուելով, հարկ էր որ ապրուստի ճամ-բայ մի գտնային, իրենց համար օտար և անծանօթ Իլվով քաղաքին մէջ: Ստեփանիկ այն ատեն 16 տարեկան էր: Սկսաւ անեղանելի մտածութեան մէջ ընկղմիլ. յԻլվով փողոցէ մ'անցնելուն մի-ջոց՝ պատահմամբ աչքը կ'ելնէ Կամենիցի Խոցի-միրաքի մականունով մեծապատիւ հայազգին. սա (Խոցիմիրաքի) Կամենիցի՝ այլազգեաց ձեռքը ան-միջապէս անցնելուն միջոց՝ տեղափոխուած էր

յԻլվով. այս պատահմունքս կ'ապահովէ ինչպէս Ակորսայի՝ նոյն և Հռիփսիմեայ կեանքը և ապրուստը Իլվովի մէջ։ Խոցիմիրցի Կամենիցի ունևոր և անուանի քաղաքացեաց մին էր, նորա փառաւոր տունն էր Հայոց հրապարակին արևմտեան ծայրը, ուր այժմ Լեհաց փառաւոր եկեղեցին կանգուն կայ 'ի պատիւ Ամենասուրբ Երրորդութեան։ Խոցիմիրցեայ բարօրութեան բան չէր պակասել, ըստ արտաքնոյն. այլ որովհետև չկայ աշխարհիս վրայ կատարեալ երջանկութիւն, սա ևս ունէր իւր վիշտը. զի զաւակները չէին ապրել. այդոր դարման՝ նա բան չէր խնայած, առատ տուրք և ողորմութիւն, ջերմ աղաչանք պաղատանք և սուրբ տեղեաց ուխտագնացութիւն։

Իլվով անցնելուն պէս անմիջապէս կը ծնանի նորա կինը՝ Մարգարիտա դստրիկը. այլ ինքն ճանապարհին վտանգուած լինելով շուտով կը վախճանի։ Խոցիմիրցի երկար ժամանակ կ'ողբայ իւր սիրելի ամուսինը, և բոլոր իւր սէրը փոքրիկ Մարգարիտայի վրայ կեդրոնացընելով՝ երկրորդ ամուսնութիւն մտքէն չանցըներ։

Նորա անկին տան՝ տանտիկին հարկաւոր էր, բարեպաշտօն, զգաստ, միանգամայն Հայ, որ առաջնորդ և խնամակալ լինէր փոքրիկ Մարգարիտային. Հռիփսիմէ պառաւն այդ բանին շատ յարմար էր։ Ստեփանի ալ հայր և առաջնորդ կը պակասէր։ Խոցիմիրցի սիրով բացաւ իւր տան դռները այդ անտուն և անինչ պատանեկին դիմաց։ Շնորհակալութեամբ մտան նոքա իրենց նոր բունին մէջ, որով և երկու կողմէն մեծապէս գոհ եղան։ Կը գտնուան զիրար Կամենիցցի Հայ պանդուխտները, 'ի թիւս որոց կ'աւելնայ ապա և այլ ոմն

հայ Կամենիցցի, Գասպար Բուտագովիչ անուամբ, որ ըստ վկայելոյ Գարոնցի՝ նշանաւոր ոմն եղած է։ Սա երկար ժամանակ ազգայնոց հետ 'ի Մակեդոնիա, 'ի Գալգանս պանդխտելէն վերջը, միշտ պահապան հսկելով Տիրամօր պատկերին, 1682ին կու գայ Իլվով, և հոն Ս. Նիկողայոս կոչուած Երբայրութեան խնամակալի պաշտօնը կը ստանձնէ։ Հայոց մէջ սա ճանչցուած է ճարտարախօս. Լեհաց Յոհան Գ. Թագաւորը Իլվով եկած միջոց՝ Գասպար յիշեցուցուցած է նմա բանաստեղծօրէն Փոտոլիոյ նուաստանալը յայլազգեաց։

Խոցիմիրաքեայ խաղաղաւէտ բնակարանին մէջ կենդանացան հին ազգային և Կամենիցեան յիշատակք. Բուտագովիչ շատ կը սիրէր նորանոր լուրեր պատմել Կամենիցի տիրողաց մասին, թէ Նախախնամութիւնը զանազան պատիժներով կը հարուածէ զնոսա, տիրած են քաղաքին մէջ սով, ցաւ, շփոթութիւնք նաև այլ անսովոր երևոյթք։ Այդ երկու հայ պանդուխտք գաւաթ մի մեղրաջուր խմելուն միջոց՝ շատ ու շատ խորհրդածութիւն կ'անէին. Թէ ինչպէս, եթէ Աստուած տայ, վերադառնան 'ի Կամենից՝ պիտի կարգաւորեն ազգիս գործերը, և առանց խնայելու պիտի դուրս վարեն քաղաքէն բոլոր Հրեայքը. Նոքա լաւ գիտէին որ որդիք Իսրայելի՝ Իսմայելի իշխանութեան ներքոյ՝ իրենց տեղը բռնած էին Կամենիցի մէջ։ Խոցիմիրաքի ալ կը յիշէր զուարթախառն մորմոքմամբ իւր Կամենիցի մէջ գեղայարմար բնակարանը, շուրջ պատեալ կակղի ծառերով, դէպ 'ի փողոց երկնցած ճեմելեօք, ուր երեկոյեան «Հրեշտակ Տեառնի» զանգակին ձայնով կը ժողովէին քաղաքին և դաշտաց պաշտօնավարք, և երկար նստարաններու վրայ հանգչած՝

հանդարտութեամբ կը խօսէին, կը խորհրդածէին հասարակաց գործոց վրայ: Ճեմելեաց մէկ ծայրը բարձրացած էր Կամենիցի անմատչելի բերդին պատը. մութը երթալով կը թանձրանար հորիզոնին վրայ. կակղիկ քաղցրահոտ բուրմունք կը տարածէին օդոյն մէջ, և նոցա տերևաց խօշիւնն, իբրև մըրմունջք երեկոյեան աղօթից կը լսուէր: Բուտագովիչ պատմելով չէր կշտանար Հայոց Ս. Նիկողայոս եկեղեցւոյն փառաւորութիւնը, վայելչութիւնը, նորա ընդարձակ շրջապատ տրահը, և սիւնազարդ մուտքը. կը գովէր Հայոց ճարտարապետս և հոյակապ դատարանը, հաստաբեստ կաղնի մարդակներով. որոց վրայ հայերէն տառերով փորագրուած էր ԺԴ. դարու լինելնին: Փոքրիկ Մարգարիտա այդ հրաշալիքը լսելով, լուիկ մնջիկ նստած՝ երեսները կը կարմրէին, աչքերը կը փայլէին. իսկ Ակոբայ մտադրութեամբ մտիկ անելով, կը փափաքէր որ մի առաջ երթալ տեսնալ այդ առասպելախառն և գեղեցիկ քաղաքը: Ուստի օր մի՝ երբ իմացաւ նա՝ որ Իլվով եկած Ս. Երրորդութեան կարգի միանձունք պիտի երթան 'ի Կամենից՝ Հայ, Ռուս, և Լեհացի գերեալներ յայլազգեաց գնելու և ազատելու համար, մեծ ուրախութիւն զգաց, և հաստատապէս միտքը դրաւ՝ որ անպատճառ ինքն ևս միանձանց ընկերանայ, գերեաց գերեհան լինելու:

Գերեհանաց ընկերութեան երկու անդամք հայ էին, մին դեռ նորընծայ կրօնաւոր, որ արևելեան ծեց բարբառով կը խօսէր, աշխարհական Զաքարիա Միքայէլիչ, որ Կամենիցի առման միջոց փոխադրուած էր յԻլվով. նոցա գլխաւոր ընկերն էր di Sancta Maria Միքայէլ վարդապետ Սպանիացի:

Ակոբայ սկսաւ աղաչել սոցա՝ որ զինքն ևս իրենց ընկեր առնուն։ Այս խնդրոյս համար հարկ եղաւ խորհուրդ մի գումարել Խոջիմիրզէնց տան մէջ, ուր հաւանեցաւ գերահաճ ընկերութիւնն ընդունել զԱկոբայ իրեն ընկերակից։ Ցանուտէրը կը պատուիրէր Ակոբայի՝ որ Կամենից հանելուն պէս երթայ նայի քննէ իւր տունը. խեղճ ծերը չէր գիտել՝ որ վաղուց իւր տունն՝ փայտի տեղ՝ կրակի նիւթ եղած էր յայլազգեաց, և եթէ կակղիք այդ փորձանքէն ազատել էին, ուրիշ պատճառաւ չէր, այլ զի կ՚ախորժէին նոցա շուքին ներքև ծալապատիկ նստած՝ ժամանակ անցնելու. Բուստագովլիշ զանազան առևտրական յանձնարարութիւնք տուաւ Ստեփանի. Հռիփսիմէ յանձնեց նմա, որ անպատճառ երթայ գտնէ նախնեաց գերեզմանքը, և նոցա վրայ մի Հոգւոց ասէ. այլ Մարգարիտայի սիրտը կոտրեցաւ, և աշխարհք հայելու աչք չունէր։

Այս փոքրիկ՝ չորս անձով կազմեալ ընկերութիւնն՝ 1688 յունուարի 15ին, վաղ առաւօտու պատարագ մի տեսնալով, ճամբորդ եղան յելմէ 'ի Կամենից։ Կարգէ դուրս ձեռնարկ մի էր ասցա սկսածն, որոյ նմանը ոչ ոք չէր յիշել։ Միանձունք՝ ոտներուն վրայ խաչ, գրպաններին ոչ լեցուն, զի միայն 4000 զլոտի ունէին հետերնին, կ՚երթային առ այլազգիս՝ իրենց հաւատակից եղբարց ազատութիւնը գնելու։ Անվտանգ հասան Եանովա կոչուած տեղը՝ Թերէպօվլի մօտ, ուստի հարկ էր՝ որ իմաց տրուի Կամենիցի Փաշային սոցա գալըստեան և նպատակին մասին։ Եանովցի մէկը՝ որ միջնորդ պիտի լինէր սոցա և Փաշային մէջ, ուզեց նիւթականապէս շահուիլ այս առթովս. առաջարկեց սոցա որ փողերը իրեն յանձնեն, վասն զի

«Շատ վտանգաւոր է ձեզ, կ'ասէր, այդչափ փող հետերնիդ, առանց վտանգի Կամենից մտնելը»։ — Եւ կը խոստանար ինքն այդ փողերը անձամբ բերել և իրենց յանձնել։ Այլ՝ զգաստ միանձունք այդ շահախնդրին ծուղակին մէջ չընկան. և միւս օր՝ առտու կանուխ՝ մինչդեռ սրտացաւ խորհրդատուն 'ի քուն կը խորդար, կամացուկ ելան գնացին ճամբանին։ Փետրուարի երկուքին՝ յետ շատ սըրտադող քաշելու՝ հասան միանձունք 'ի Կամենից, և Ռուսաց կոչուած դռնէն ներս մտան. պահապանք քաղաքին՝ արգիլեցին նոցա՝ որ բերդերուն վրայ շատ չնային, այլ շուտով անցնին։ Գերեալ քրիստոնեայք լսելով միանձանց գալուստը, սրտերնին կուահեց, և անպատմելի ուրախութեամբ լեցուեցան. իսկ պահապանքն տեսնելով այդպիսի տարօրինակ երևոյթն, կը զարմանան։ «Ասքա կախարդք պէտք է լինին, կը փսփսար ամբոխն, գրպաննին լեցուն ստակ, առանց պահապանաց՝ անկարելի բան էր քաղաք մտնալը»։ Քաղաքին շշնկոցը հասաւ Փաշային ականջը, հրամայեց որ բանտարկուին եկաւորներն. այլ Փաշային մերձաւորներէն մէկը գտնալով նոցա նպատակը, խօսք անցուց Փաշային, ու ինքը մի այլ ուրացող աղայ հետը առած, գնաց միանձանց ցուցընելու արգելական գերիները։ Երբ երեկոյեան դէմ միանձունք մտան գերեաց մօտ, մորմոքեցաւ տրորեցաւ սըրտերնին, տեսնելով նոցա ցաւալի վիճակը, մանաւանդ երբ կը մտածէին որ իրենց քով գտնուած փողը, հազիւ գերեաց տասներորդ մասին ազատութեան փրկանքի կը բաւէր։ Գերեվարք 'ի սկզբան մեծամեծ գիներ կը պահանջէին. մանկամարդ կնոջ փրկանք՝ փոքր երեխայիւ 'ի միասին՝ 1000

զլոթի. աշխատութեան գալու մարդուն համար՝ 800 զլոթի, ծերու գին՝ 300 զլոթի, իսկ պառաւի համար՝ 200 զլոթի։ Այլազգւոյ մը միջնորդելով կամաց կամաց գերեվարք պահանջնին իջեցուցին. այլ միանձանց փողը հազիւ կը բաւէր 'ի փրկանս ութ գերեաց։ Այլ երբ տեսան այլազգիք որ միանձունք յետ դառնալու կը պատրաստուին, աւելի իջեցուցին գերեաց գինը. սակայն՝ ցաւալին այն էր՝ որ միանձանց դրամը բոլոր գերեաց ազատութեան չէր բաւել։ Վերջապէս կրօնաւորք փրկանաւորելով գերեաց մի մասը, խնդրեցին գերեվարներէն՝ որ Մնացելոց հետ քաղցրութեամբ վարուին, և խոստացան վերստին դառնալ 'ի Կամենից մեծ գումարով. և ազատած գերիներովն՝ մեկնեցան 'ի Կամենիցէ վրդովեալ սրտով, զի կատարեալ չէր ուրախութիւննին, թէպէտ ազատեալ գերեաց վրայ հայելով մեծապէս կը մխիթարուէին, այլ Մնացելոց նեղ վիճակն կը ճնշէր նոցա սիրտը. տասնի չափ այլազգի հեծեալ զօրականք՝ զմիանձունս, ազատեալ գերեաց հետ՝ դուրս հանեցին քաղաքէն։ Սոցա ընկերութենէն մին պակաս էր. Ակոբսոյ չդարձաւ յիվվով, նա ընտրեց գերեհանաց փառքէն աւելի՝ Մնալ 'ի Կամենից, և ձեռնտու օգնական լինել համազգի եղբարց. վասն զի վստահ էր նա իւր բնական ձրից վրայ, և հաստատութեամբ միտքը դրած էր՝ տիրողաց սիրտը շահելով տառապելոց նպաստամատոյց լինել. յորում և յաջողեցաւ։

Ակոբսոյի առաջին ջանքն եղաւ Փաշային աչքը մտնել, խոնարհութեամբ և ճարտարութեամբ կատարելով նորա հրամանները. Փաշայն և նորա մերձաւորք սկսան մասնաւոր ուշադրութիւն դարձընել այդ ճարտարախօս և աշխոյժ պատանւոյն վրայ.

շուտով ստացաւ Փաշային մօտ՝ պաշտօն թարգմանի, և Փաշան կը յուսացընէր նմա՝ որ եթէ լաւ վարէ այդ պաշտօնը, կարնոյ արքունի դրան մեծ թարգմանի պաշտօնին հասնի։ Ակոբսոյ նպատակին հասնելով ամենայն հաւատարմութեամբ և աչալրջութեամբ կը ծառայէր, և միջնորդութեամբ առ մեծամեծս՝ խօսքով և դրամով կը թեթևցընէր գերելոց դառն վիճակը, այլ ինչպէս առաքինի հոգի՝ կը զգուշանար որ չլինի թէ յԻլվով կամ այլուր իւր վրայ այլ ընդ այլոյ գրոյցքներ հնարեն նախանձոտ մարդիկ։ Ուստի գրեց առ մի բարեկամն յԻլվով հետևեալ համառօտ նամակն, վկայ և ջատագով իւր ազնիւ սրտին։ «Զկտուռն կամ
» սէր առ ծննդական տեղիս, ստիպեցին զիս հոս
« մնալու. ստացայ պաշտօն 'ի Փաշայէն, այլ ես
« իմ ծնողաց հաւատքը ամուր բռնած եմ, կը
» ցանկամ միայն օգնական և մխիթար լինել՝ 'ի
» գերութեան հեծող եղբարցս »։

Միանձունք հասնելով յԻլվով՝ Կամենիցի քաղաքացիք, հայկազն ծերունիք Խոցիմիրաքի և Բուտազոմիչ՝ զԱկոբսոյ նոցա հետ չգտնալով՝ հարցուցին պատճառը. չախորժեցան անփորձ երիտասարդին յանդուգն գործոյն. այլ միանձունք միամիտ արարին զնոսա՝ թէ Ակոբսոյ թէպէտ պատանի, այլ ամենայն բան հասուն խելքով կը գործէր, և թէ նորա նպատակն շատ առաքինական և գովելի էր։ Ծերունիք հարցմունք հարցմունքի կը յաւելուին. միանձունք քիչ ժամանակի միջոց ինչ որ տեսած էին և լսած՝ պատմեցին։ Եւ մինչդեռ յԻլվով հարցափորձութիւնք կը լինէին, Ակոբսոյ Կամենիցի մէջ ամէն անկիւն կը քալէր, կը զննէր, և շատ անգամ կը զայրանար և սիրտը կը կոտրէր.

զի այն Կամենիցը չէր տեսածը, ինչ որ կ'երեւակայէր՝ լսելով երբեմն Թուստագովչի մեծաբան գովեստները։ Միայն բերդը՝ հասարակաց շինուածոց մէջ, բարեկարգ գտաւ. զի այլազգիք զայն նորոգելով, քանի մի ամրոցք եւս աւելցուցած էին. Մնացեալ ամենայն ինչ աւերակի, դերբուկի երեւոյթ ունէր։ Տասն և վեց տարուան միջոց անխնամ սալայատակք շատ տեղ աւրուած էին, չէն ու բազմամարդ քաղաքն ամայի և անմարդի կ'երեւար. Լեհաց կոչուած հրապարակին կեդրոնը՝ անհեթեթ Կարաւան-Սարայ մի բարձրացած էր. քրիստոնէից չորս փառաւոր եկեղեցիքն 'ի մզկիթ փոխուած, որոց սեւացեալ և ծեփաթափ որմունքն տխրագին տեսիլ կ'ընծայէին. Նոցա գաւթաց մէջ կը վխտային խոցոտ և բորոտեալ տնանկներ։ Ֆրանկիսկեանց վանքի երկղեցին, (որ այժմ եպիսկոպոսական եկեղեցի է Ռուսաց), նոյնպէս Ս. Կատարինէ եկեղեցին, զինուորական կահուց ամբարանոց եղած էին, Յիսուսեանց հոյակապ վանքն ախոռ դարձած, ուր քանի չափ նիհար ուղտեր և քանի մի վատոյժ ձիեր կապուած։ Հայոց Աւետման և Ս. Նիկողայ փառաւոր եկեղեցին, աներդիք, անդուռն և անպատուհան բուոց և ջղջկանց բոյն դարձած. պատերուն վրայ և գաւթաց մէջ՝ եղինճ և այլ մոլախոտեր բուսած. միւս երկու փայտաշէն եկեղեցիքն, մին մեծ՝ Վերափոխման կուսին, հանդիպակաց Ս. Նիկողայ եկեղեցւոյն, Հայոց հրապարակին արեւմտեան ծայրը, միւսը Ս. Ստեփանոսի, որ այժմեան Հայոց զանգակատան տեղը կը կարծուի, երկուքն եւս կրակի ճարակ եղած, տեղերնին, հետքերնին անգամ յայտնի չէր։

Ակոբոյի նշանակուած էր՝ ող ազգիս փառաց,

այլ Թշուառութեան և տառապանաց ականատես լինել և վկայ. դեռ ևս փոքրիկ տղայ, գողցես հրաշքով ազատած հայրենի ծածքին կրակին միջէն, այժմ ևս ոչ առաւել մխիթարական վիճակի մէջ կը գտնէր իւր ծննդեան քաղաքը: Ինչպէս ազգիս շինութեանց աւերակները՝ նոյնպէս փնտռեց գտա-նա՝ ազգիս փշրանք կամ խեշերանք քանի մի հայ ընտանիք, նոքա ևս հարստահարեալ և աղքատ վի-ճակի մէջ: Շատ անգամ պատահեցաւ նմա մտնել Հայոց դատաստանին մէջ, ուր աչքին ծայրով կը խուզէր գտնել մնացորդ ինչ հայրենեաց: Նա իբրև Թարգման՝ բան առ բան այլազգեաց քարոզին ականջը կը հեղուր, դատելոց զրուցածները, իրաւունքները. ձեռքէն բան չէր գար, կամ խիստ քիչ բան կու գար պաշտպանելու իւր համազգիքը: Այն մեծ Հայոց հրապարակն, որոյ վրայ շինուած էր այդ դատարանն, որոյ երբեմն Հայոց առևտուրն և գործունեայ կեանքը մեծ շինութիւն և կենդա-նութիւն կու տային, խուլ և վայրենի փողոցի տեսիլ ունէր: Նորա մեռելութիւնը երբեմն կը կեն-դանացընէին կեղտոտ որդիքն Իսրայելի, և այլ երբեմն խեղճ քրիստոնեայ կալանաւորք, զորս յա-տեան հարցափորձի կը քաշէին չաուշները:

Այս դրից մէջ մնաց Կամենից 27 տարի մինչև ց 1699: Ակոբայ տասը տարի ականատես եղաւ այդ սրտամաշ տեսարանին. այլ նորա ազնուական հոգին առաւել ընտրեց կալ մնալ հոն և վշտակից լինել ազգիս տառապանաց, քան Իլվովի մէջ հան-գիստ կեանք վարել: Վարձատրեցին Երկինք նորա առաքինութիւնքը. քիչ ժամանակէն պիտի տես-նենք զնա, նոյն այս աղետաւոր Կամենիցի մէջ՝

երջանկացեալ կենօք և զուարթ, և բոլոր քաղաքը պիտի օրհնէ զնա լիաբերան։

1699ին Կամենից նորէն Լեհաց անցաւ. և 'ի 18 սեպտեմբերի՝ նոյն տարին, աստ և անդ ցիր և ցան Կամենիցցիք մեծաւ ուրախութեամբ դարձան իրենց ծննդեան տեղին։ Սորա առաջնորդ և պարագլուխն էր Մարտինոս Պօկուշ (Պօղոսովիչ) ծերունի հայ զօրավարն, սոցա հետ էր Հայր Միքայէլ վարդապետը, որ իւր ծոցը կը կրէր երկու Հայ ազնուականաց կտակները, որք Կամենիցի կարօտով, յօտարութեան մէջ թողել էին ոսկորնին, Խոցիմիրաքի և Բուտագովիչ։

Սոցանէ առաջինն՝ ստեփանկան տունը 'ի Կամենից՝ շրջապատ գետնովը՝ կը թողուր Ս. Երրորդութեան կարգի կրօնաւորաց, յորմէ էր և ինքն Միքայէլ վարդապետ. այս պայմանով, որ իւր ձեռատունկ կակղի ծառոց խնամ տարուի, վասն զի այլազգիք ևս խնայել, միանգամայն սիրել էին նոցա հովանին 1։ Մարգարիտէ իւր միակ դստեր կը թողուր Իլվովի տունը և այլ ամենայն շարժական ստացուածք։ Բուտագովիչ ծերունին ևս, որոյ նոյնպէս խոստովանահայր եղած էր Միքայէլ վարդապետ, նոյն կարգին համար նոր շինուելու վանքին կը թողուր 500 զլոթի։ Այս ծերունի հայազգին՝ մեծ փափագ ունէր վերստին տեսնել Սմոտրիչ գետոյն միջավայր կղզիացեալ Կամենիցը, և

1. Խոցիմիրաքի հայկազնոյն տան առջը կայ այժմ դեղեցկաշէն եկեղեցի 'ի պատիւ Ամենասուրբ Երրորդութեան, և նորա ձեռատունկ կակղիք ցարդ կու սփռեն իրենց մեծատարած շուքը այդ եկեղեցւոյն և նորա շրջակայ բնակութեանց վրայ։

մանհուան անկողնոյն մէջ յիշած էր Փոտոլիոյ պայծառ արևը։

Բաց 'ի Գօղոսովչէ և Միքայէլ վարդապետէ, նշանաւոր են Հայոց խմբին մէջ երեք այլ երիցունք՝ Ալլահավիչ, Բարուքովիչ և Գոկասանովիչ։ Առաջին երկուքն Ս. Նիկողայ եղբայրութեան հոգաբարձուք եղած են, և նոցա յանձնուած է՝ Կամենից մըտնելնուն պէս՝ նայիլ պատրաստել Տիրամօր հրաշագործ պատկերին՝ պաշտպանի ազգիս՝ վայելուչ և պատշաճաւոր տեղի. յետինս՝ Գոկասանովիչ մանր գրած է այլազգեաց 'ի Կամենիցէ ելքը և մեծահանդէս կերպով եկեղեցեաց վերստին օրհնումը։

Հայոց 'ի Կամենից վերադարձող խմբին մէջ, առանձին ջոկ մի կը կազմէին կանայք, որոց վերակացուք էին չորս մայրապետք, այլ շատ բարեպաշտ այրիք, և ազնիւ օրիորդք, 'ի թիւն որոց՝ մեզ արդէն ծանօթ Խոցիմիրայի հայազգայն դստրիկն՝ Մարգարիտէ, հասակակից և ընտանի Ակոբայ Ստեփանիկ հայ պատանւոյն։

Սա իր ազնուական ծնողացմէ ստացել էր ժառանգութեան ոչ միայն նիւթական բարիք և ստացուածք, այլ և ազնուական սէր հայրենեաց և ազգին, այն աստիճանի՝ որ հաստատապէս միտքը դրած էր, որ եթէ օր մի արժանի լինի սուրբ պսակի, մի հայ երիտասարդի հետ, անպատճառ Կամենիցի Հայոց եկեղեցեաց միոյն մէջ կատարուի այդ խորհուրդն իւր վրայ։ Կամենից հասնելուն պէս՝ օրիորդից առաջին սրբազան գործն եղաւ՝ փնտռել գտնալ իւր սիրելի ծնողաց տան տեղը, և նստելով հայրատունեկ կակղեաց հովանւոյն ներքև, ձեռն 'ի ծնօտի՝ լալ քաղցրիկ մորը անմոռանալի կորուստը, որ զինքն 'ի լոյս ընծայե-

լովʼ փակել էր աչքերը ստացութեան մէջ։ Գետի պէս կը յորդէին արտասուք նորա նախշուն աչքերէն. տարփանագորով ծերունի հօր յիշատակը, որ զինքն անծայր սիրով կը սիրէր, միակ, որ և անտէր, հայրենի տան դրբկին վրայ կը տեսնար ինք զինքը. նա չէր զիտեր, որ նոյն միջոցին՝ երբ ինք զինք խորհ թէ դերբուկին քարերէն մին, չէնքէ դուրս մնացած՝ անտէր և անոք կը կործէր, երկնաւոր՝ որբոց և այրեաց խնամոտ Հայրն, իրեն տէր և պաշտպան կը պատրաստէր։

Փաշան դիտմամբ մեկնէր կամենցէ. Ստեփանիկ նորանէ իւր հրաժարականն առնելով՝ գնաց գիմաւորելու եկաւոր կամ վերադարձող եղբարքը։ Ամէնքն մեծ և փոքր, քահանայ և աշխարհական, սիրով կը թօթուէին այդ առաքինի երիտասարդին ձեռքը, ամէնքն պատիւ կը տային իրենց նորա հետ խօսակցիլը. անմիջապէս Միքայէլ վարդապետին մօտէն կը դառնար Ստեփանիկ, երբ նորա աչքին զարկաւ տխրագին Մարգարիտէ, որոյ սրտին յուզմունքն և թափած արցունքներն՝ նոր գեղ, նոր շնորհք կու սփռէին նորա գեղեցիկ և պարկեշտ կերպարանաց վրայ. — « Այդ դու Մարգարիտէ՞ », հարցական ձևով բացագանչեց Ստեփանիկ։ Մարգարիտէ տեսաւ իւր դիմաց փառաւոր երիտասարդ մի, ծանօթ կերպարանքով, այլ տասը տարուան միջոց մեծապէս փոխուած, այրական մեծամեծ պեխերն ոլրած, կարին հագուածքով, վայելչադէմ և վայելչակազմ, երեսը արևակէզ. գլուխը փայլուն կարմիր ֆէս, որոյ ծոպը ետևէ կողմէն կ'երերար։ Թէպէտ և դա այն վայելչադէմ պատանեակն էր, որոյ հետ շատ տարի հայրենի ծածքին տակ անմեղութեամբ խաղացել էին. այլ

մրջիւնի փոփոխութիւն։ Սոկայն՝ և այնպէս. Մարգարէական սերտը կատարեց, հազիւ կարողացաւ Սոբիեսկի... անունը արտաբերել, ծունկերն երերացին, կապուեցան շրթունքը, արդէն սիրտը յուզեալ էր։ Այլ մեք թողլով առ այժմ այդ ողորմագին տեսարանը՝ մտնենք Կամենիցի մայր եկեղեցին։ Պայմանագիրը ստորագրուած էր, որոյ զօրութեամբ այլազգիք վերստին Լեհաց թողլով Կամենից քաղաքը՝ հարկ էր որ հեռանային, յետին անգամ ժողոված հին փառաշէն մայր եկեղեցւոյն մէջ, զոր 'ի մզկիթ փոխած էին, կատարեցին իրենց նամազը, յետոյ սանդուխներով դէպ 'ի կաթողիկէն վեր ելան մոլլաները, որ իջեցընեն հոն կախուած ոսկեզօծ դրօշակը։ Երբոր հասաւ դրօշակը՝ վարը սփռած կերպասին վրայ, այնպիսի գոռում և գոչում վերուցին, որոյ նմանը շատ քիչ անգամ պէտք է լսուած լինի աշխարհիս վրայ։ Ոմանք զգեստներին կը պատռէին, երեսի վրայ յերկիր կը կործանէին, մինչդեռ այլք պատկառանօք համբուրելով դրօշակը կ'ամփոփէին կերպասին մէջ, և տխուր եղանակաւ երգելով՝ կը հեռանային տաճարէն։

Այնդին՝ քիչ հեռուն Լեհաց զօրքն կազմ և պատրաստ կանգնած էին, որոյ 'ի գլուխ ալեւոր հին զօրավարն Պոկուչ, վար առնելով գլխէն ցցաւնազարդ սաղաւարտը, կնքեց զինքը նշանաւ Ս. Խաչին, և ապա ծերունւոյն Սիմէոնի խօսքը կրկնեց. «Արդ արձակես զծառայս քո, Տէր»։

Այս ամենայն կատարուեցաւ սեպտ. 22ին, երեքշաբաթի։ Այս դէպքէս հինգ օր վերջը, այն է 27 սեպտ. 1699, առաւօտեան խուռն բազմութիւն ժողովեցան այս եկեղեցւոյս մէջ, գրեթէ

բոլոր Կամենիցի Հայկազունք և այլ ազգեր։ Միքայէլ վարդապէտ սրտաշարժ. քարոզ մի խօսեցաւ հաւատացելոց, որոյ աւարտման միջոց պարկեշտութեամբ մօտեցան բեմին զոյգ մի, որոնք արդէն իրենց առաքինութեամբ բազմութեան համակրութիւնը գրաւած էին. Միքայէլ վարդապետ՝ աւետարանին խօսքերով պսակեց և անլուծանելի կապով կապեց զնոսա. համօրէն ժողովուրդք Հայք և օտարք լիասիրտ մաղթեցին նոր պսակելոց՝ երջանկութիւն և բազդ և շատ երկայն արև։ Փեսայն մեզ ծանօթ Ակոբայ հայ պատանին էր, որ կ'առնուր Խոցիմիրաքիի միակ դուստրը Մարգարիտէ։ Հարսնետունն եղաւ Հայոց դատարանն, զոր հայձեւով պատրաստեցին, փոխանակ աթոռներու՝ երկայն երկայն նստարանները կարպետներով և գորգերով յարդարելով. Շատ էին հարսնեւորքն, ամենեցուն երեսին վրայ գոհութեան զուարթութիւն. շատ մաղթողական բաժակներ պարպուեցան յերջանկութիւն հայ պսակելոց. դողդոջուն ձայներով հայ պառաւներ, յորդորաբար հայերէն օրհնութիւններ կը հեղուին պսակելոց գլխին. «Երկայն արև լինին, ծլին ծաղկին. իրենց թոռներուն պսակները պագնեն»։ Եւ յիրաւի, հասած է նոցա լիաբերան օրհնութիւնն. զի Ակոբայ կամ Ակոբովիչ ցեղը՝ բազմածնունդ և երկար անուանի եղած է Լեհահայոց մէջ։

Պսակելոց արձանագրութեան մէջ, յետ գաղթականաց դարձին, առաջին տեղ կը բռնէ Ակոբայի պսակման արձանագրութիւնն։ Խոցիմիրաքեայ անկած կալկղիք՝ առիթ եղան ինձ ուշադրութիւն դարձնելու այս դէպքիս, որոնք անբարբառ վկայք երկու հարիւր տարի է որ կանգնած իրենց տեղը՝

եթէ լեզու ունենային՝ կարելի է եւս այսօր նման շատ դէպքեր ալ կը հաղորդէին, յանցեալ գնացեալ Կամենիցի Հայկազանց նկատմամբ։

## Ժ

## ՔԻԵՒ, ԵՒ ԱՆՏԻ ԴԱՐՁ 'Ի ԹԷՈԴՈՍԻԱ

Կամենիցի մէջ 12 օր շրջելէն վերջը՝ անկենդան, անցած, մարած Հայութեան հրաժարականս տալով, և յանձն լինելով Հրաշագործ Տիրամօրս Հայոց, ճամբայ ելայ դէպ 'ի Քիեւ՝ սեպտ. 1 ին։

Կառօք 90 վերստ հարկ էր գնալ մինչև ցՓրոսքուրով. այլ ո՜րչափ տարբերութիւն քիչ օրուան մէջ. մէգ, մառախուղ, ցեխ. սակայն և այնպէս՝ երկրորդ կէս օրը հասոյց զմեզ կառավարն՝ Փրոսքուրովի հանգոյցին երկաթուղւոյն. ուստի և շուտով մեկնեցայ շոգեկառօք, և սեպտեմբերի երեքին՝ կէս օրը հասայ 'ի Քիեւ։ Կայարանին տափաձև բարձրաւանդակին վրայ կանգ առնըլով կ'արժէ հայեաց մի տալ այդ Փոքր Ռուսաց մայրաքաղաքին վրայ, որ յիրաւի ակնապարար և մոգական երևոյթ իմն կ'ընծայէ. բլրոց վրայ է քաղաքն, բուսականութիւնը ճոխ, որով կանաչութեան մէջ ընկղմած կ'երևի, վայելչաձև և նախշուն զանգակատունք գեղեցիկ կերպով աստի և անտի 'ի վեր կ'ամբառնան, քաղաքին լայն և դարուվար սալայատակներն՝ օձաձև կ'երևան, և այլ վիթխարի շէնքերն իբր 'ի մանրանկարի կը պատկերանան. Ճշմարտապէս վիթխարի ասելու կ'արժէ մեծ և լայնանիստ համալսարանն՝ իւր պարտիզաւ, որ

ամբողջ թաղ մի է։ Համալսարանիս շէնքին մէջն է երից արևմտեան Ռուսիոյ գաւառաց, այսինքն է Կիեւի, Փոտոլիոյ և Վոլինի՝ հնութեանց դիւանն, յորում կը պահուին Հայոց Կամենիցեան մագիստրատին գործերը՝ 104 տարուան միջոցի, այն է 1560–1664, միածալ, կաշեկազմ, խնամքով գրուած՝ 32 հատ կոճ հատորներ, սակայն որչափ կամին և գրութեան ձևոյն հոգ տարած են գրողք, կարծես նոյնչափ և աւելի ևս՝ անփոյթ եղած են լեզուին մաքրութեան, զի այդ գրուածքն անհնարին խառնուրդ մի են երեք լեզուաց՝ Հայու, Թաթարի և Լեհի։ Առաջին երկու հատորքն՝ աղաւաղ հայ լեզուով գրած են. 1593էն կը սկսի Թաթար լեզուն, խառն հայ և լեհ բառերով, սակայն միշտ հայ կոկիկ նօտրագրով, 1625էն տիրած է այդ գրուածոց մէջ լեհ լեզուն։ Քիեւի մէջ մետասաներորդ դարէն սկսեալ՝ հարկաւ շատ հայ գաղթականներ բնակած են, այլ այժմ այնպէս բնաջինջ եղած են՝ որ և ոչ անգամ հետքերնին կ'երևի. քաղաքին հին փոտոլ կոչուած թաղին Ս. Նիկոլայ եկեղեցւոյն համար, ինձ գրուցեցին, թէ հինէն Հայոց մնացած շէնք է. այլ ես դիտելով հայութեան ոչ մի նշոյլ չգտայ։ Կան Քիեւի մէջ քանի մի հայ ընտանիք՝ որքս վերջին ատենները 'ի Ղրիմէ՝ առևտրով հոն անցած են։

Քիեւ հին քաղաք է և առհասարակ Ռուսաց լուսաւորութեան կեդրոնն եղած է իր հին ակադեմիայիւ. շատ անգամ մերթ Լեհաց և մերթ Ռուսաց ձեռք անցած։ Վերջին ժամանակներս մանաւանդ խնամք եղած է քաղաքին բարեկարգութեան վրայ, Կրեշչատիկ կոչուած՝ ընդարձակ և փառաշէն փողոցն՝ Եւրոպայի որ և իցէ քաղաքին

զարդ կարող է ըլլալու. փառաւոր է և մեծ Վլադիմիր փողոցն. ունի Քրիս. Հարուստ և ճոխ եկեղեցիք՝ վերուստ 'ի վայր արծաթի խաչկալք. Նշանաւոր են յայսմ մասին՝ քաղաքէն դուրս՝ բերդին մէջ Լաւրայի վանքի եկեղեցիք, այլ արուեստ և ճարտարապետական ճաշակ կը պակասի սոցա:

Տեսերը գետոյն եզերքը բարձրաբերձ Նորաշէն եկեղեցին՝ հաշակեալ յանուն Նախակոչ Անդրէի առաքելոյ. ուր գեղեցիկ և չքեղ իտալական ճարտարապետութեան արուեստին և նկարուք՝ Եւրոպայի տաճարացմէ վար չի մնար: Հետաքննելի են քաղաքէն դուրս գետնափոր դամբաններու մէջ ամփոփուած սրբոց տապանք, ուր Ռուսաստանի ամէն կողմէն ուխտաւորք կը յաճախեն. Նշանաւորք են այդ նշխարաց մէջ Ռուսաց Նեստոր և Պիմէն ժամանակագրաց նշխարքն: Ընդարձակ է բարձրադիր Լեհաց եկեղեցին, այլ ներսի կողմէն անշուք, մանաւանդ աւագ խորանն, համեմատութեամբ կամենիցի եկեղեցեաց:

Սեպտ. 9ին՝ ճեպընթացիկ շոգեկառօք ելայ 'ի ճանապարհ դէպ յՕտեսսա: Քիեւի և Քերսոնի նահանգաց հացաշատ դաշտերն աշնանային տարազու մէջ էին. հունձք ժողոված, աստ և անդ յարդի և խոտոյ մեծամեծ դէզեր, անտառք և պարտէզք կիսամերկք, Թացեալ կարմիր և դեղին տերևներն կը սպասէին ցուրտ պախրցոյն՝ որ ազատէ զիրենք երերուն վիճակէն: Հասայ յՕտեսսա սեպտ. 11ին, ուր քանի մ'օր մնալով, ամսոյն 17ին կանուխ առաւօտը հասայ շոգենաւով, երբեմն հայութեամբ նշանաւոր Կաֆայ, այժմ Թէոդոսիա: Ի վաղուց փափաքելի ճանապարհորդութիւնս՝ ամսուան մէջ կատարեցաւ, ցնորք և երևակայութիւնք աղետաւոր

խրախանութեան մի դիմաց պարզեցան և ցրուեցան․ Հարկ է ինձ, Աւաքել պատմչին հետ, մեր Կամենիցցի եղբարց մասին ասել. «Եղեն վտարանդեալք և տարամերժեալք յերկիր օտար և յազգ այլասեռ և այլալեզու . . . և անդէն օր աւուր՝ առ սակաւ սակաւ նուազին մահուամբ և կորուստեամբ», Աստուած ամուր պահէ՝ այլ տեղուանք մնացեալները։ Անեցւոց մի ամբողջ մասն, քան հազարի չափ ժողովուրդ, հաւատարիմ իրենց նախնեաց աւանդութեան, հայախօս և հայածէս Դոն գետոյն եզերաց վրայ կը դեգերին, մեծաւ մասամբ կեդրոնացած Հայահնչիւն Նոր-Նախիջևան քաղաքին մէջ։



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹԻՒՆ

### Ի ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՒԱՆ



## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԷՈԴՈՍԻՈՅ

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

# ԿԱՐԵՒՈՐ

## ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

| ԷՋ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 30 | 5 | *հողեր* | *հողեր կան* |
| 45 | 30 | *այծմ* | *այժմ* |
| 45 | 31 | *գումար յօգուտ* | *գումար տուեր է յօգուտ* |
| 106 | 8 | *Մնացորք* | *Մնացորդք* |
| 158 | 11 | *կողվն* | *կողմն* |
| 168 | 12 | *ժոգովրդապետան* | *ճողովրդապետան* |
| 168 | 22 | *Քերեհի* | *Քերէյ* |
| 184 | 2 | *Թրքած* | *Թրքաց* |
| 188 | 17 | *Մնի* | *Անի* |
| 188 | 29 | *յԱխսատղայ* | *յԱխսարայ* |

